*վերաբերել Մեքքայի մարդկանց վատ սովորություններին մինչ Իսլամը, որը չէր համապատասխանում Մարգարեի մաքուր և պարզ ներքնաշխարհին, այսպիսով Ալլահը հեռացրեց այն նրանից, ուղարկելով նրան հայտնություն,)* ﴾
3﴿ ինչը ծանրացավ քո մեջքին:﴾
4﴿ Եվ արդյո՞ք Մենք չենք բարձրացրել քո հեղինակությունը *(և դու ունեցար բարձր աստիճան և քո անունը սկսվեց նշվել աղոթքի ամեն կոչում, աղոթքի ժամանակ և Ուրբաթ Օրվա արարողությանը:)* ﴾
5﴿ Իրոք, ամեն դժվարությունից հետո գալիս է մեղմացում *(այսպիսով, թող ոչ մի վնաս, որ դու կրում ես անհավատների կողմից, չկանգնեցնի քեզ կոչելու Ալլահին և Նրա կրոնին:)* ﴾
6﴿ Իրոք, *(կրկին)*, ամեն դժվարության, հետևում է մեղմացում: ﴾
7﴿ Այսպիսով, երբ դու ավարտում ես *(քո ամենօրյա գործերը)*, նվիրիր քեզ անկեղծորեն Ալլահի երկրպագությանը, ﴾
8﴿Եվ քո Տիրոջը *(Եզակիին)*, ուղղիր ամբողջ քո մտադրությունները և հույսերը:﴾

# Սուրա 95 Ատ-Թին

**[Թուզ]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*, Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1﴿ *(Ես երդվում եմ)* թզով և ձիթապտղով *(մեջբերելով վայրը, որտեղ սկսվեց Հիսուսի առաքելությունը, վայր, որը հայտնի է այդ երկու տեսակի ծառերի արտադրությամբ,)* ﴾
2﴿Եվ Սինայի Լեռով *(մեջբերվում է վայրը, որտեղից սկսվել է Մովսեսի առաքելությունը,)*﴾
3﴿ Եվ այս ապահով քաղաքով *(այսինքն, Մեքքայով) (մեջբերվում է վայրը, որտեղից սկսվել է Մուհամմեդի առաքելությունը:)* ﴾
4﴿ Իրոք, Մենք արարել ենք մարդուն իր լավագույն բարձրությամբ *(կաղապարով, լավագույն ողջամտությամբ և բնածին բնույթով, որը առաջնորդում է նրան Ալլահի հավատք, արդարադատություն, բարիք, բարձր բարոյականություն և այլն:Եվ լավագույն կերպարով, կանգնելու, ուղղվելու և հավասարակշռվելու)*, ﴾
5﴿Այնուհետ, Մենք վերածեցինք նրան ցածրագույներից ցածրագույնի *(այսինքն, այս մարդը, ով չի հետևում իր մաքուր և լավ բնույթին և բնածին էությանը և հետևում է իր ցանկություններին կամ վատ սովորություններին կամ սովորույթներին, որը նա սովորել է իր միջավայրից, այս մարդը կլինի ցածրագույներից ցածրագույնը,*

سُورَةُ التِّينِ — ترتيبها 95 — آياتها 8

بِسۡمِ ٱللَّهِ ٱلرَّحۡمَٰنِ ٱلرَّحِيمِ

وَٱلتِّينِ وَٱلزَّيۡتُونِ ١ وَطُورِ سِينِينَ ٢ وَهَٰذَا ٱلۡبَلَدِ ٱلۡأَمِينِ ٣
لَقَدۡ خَلَقۡنَا ٱلۡإِنسَٰنَ فِيٓ أَحۡسَنِ تَقۡوِيمٖ ٤ ثُمَّ رَدَدۡنَٰهُ أَسۡفَلَ سَٰفِلِينَ
٥ إِلَّا ٱلَّذِينَ ءَامَنُواْ وَعَمِلُواْ ٱلصَّٰلِحَٰتِ فَلَهُمۡ أَجۡرٌ غَيۡرُ مَمۡنُونٖ ٦
فَمَا يُكَذِّبُكَ بَعۡدُ بِٱلدِّينِ ٧ أَلَيۡسَ ٱللَّهُ بِأَحۡكَمِ ٱلۡحَٰكِمِينَ ٨

سُورَةُ العَلَقِ — ترتيبها 96 — آياتها 19

بِسۡمِ ٱللَّهِ ٱلرَّحۡمَٰنِ ٱلرَّحِيمِ

ٱقۡرَأۡ بِٱسۡمِ رَبِّكَ ٱلَّذِي خَلَقَ ١ خَلَقَ ٱلۡإِنسَٰنَ مِنۡ عَلَقٍ ٢ ٱقۡرَأۡ وَرَبُّكَ
ٱلۡأَكۡرَمُ ٣ ٱلَّذِي عَلَّمَ بِٱلۡقَلَمِ ٤ عَلَّمَ ٱلۡإِنسَٰنَ مَا لَمۡ يَعۡلَمۡ ٥ كَلَّآ إِنَّ
ٱلۡإِنسَٰنَ لَيَطۡغَىٰٓ ٦ أَن رَّءَاهُ ٱسۡتَغۡنَىٰٓ ٧ إِنَّ إِلَىٰ رَبِّكَ ٱلرُّجۡعَىٰٓ ٨ أَرَءَيۡتَ
ٱلَّذِي يَنۡهَىٰ ٩ عَبۡدًا إِذَا صَلَّىٰٓ ١٠ أَرَءَيۡتَ إِن كَانَ عَلَى ٱلۡهُدَىٰٓ ١١ أَوۡ أَمَرَ
بِٱلتَّقۡوَىٰٓ ١٢ أَرَءَيۡتَ إِن كَذَّبَ وَتَوَلَّىٰٓ ١٣ أَلَمۡ يَعۡلَم بِأَنَّ ٱللَّهَ يَرَىٰ ١٤ كَلَّا لَئِن
لَّمۡ يَنتَهِ لَنَسۡفَعَۢا بِٱلنَّاصِيَةِ ١٥ نَاصِيَةٖ كَٰذِبَةٍ خَاطِئَةٖ ١٦ فَلۡيَدۡعُ نَادِيَهُۥ
١٧ سَنَدۡعُ ٱلزَّبَانِيَةَ ١٨ كَلَّا لَا تُطِعۡهُ وَٱسۡجُدۡ وَٱقۡتَرِبۡ ۩ ١٩

*նա կընկնի ագահության, թշվառության, վատ էթիկայի մեջ հետևելով առասպելների և կեղծ աստվածների և այլն: Այն նույնպես, կարող է նշանակել, որ նա կլինի ամենացածր աստիճանում Դժոխքում, եթե նա չի հավատում Ալլահին և շնորհակալ չէ Նրան արարելու իրեն լավագույն կերպարով և Իր բոլոր ծանրություններով:)*﴾
6﴿Բացառությամբ նրանց, ովքեր հավատում և առաքինի արարքներ են գործում *(նրանք, ովքեր հետևում են իրենց մաքուր բնույթին դեպի Ալլահի հավատքը և լավ բարոյականությունը:)* Նրանք կունենան անվերջանալի և անդադար պարգև *(Դրախտ)*: ﴾
7﴿ Այսպիսով, ի՞նչն է ստիպում քեզ *(ով անհավատ)* զրպարտել Հատուցման Օրը *(մինչ դու տեսել ես Ալլահի նշանները, որը ցույց է տալիս Նրա հզորությունը այս ամբողջ տիեզերքում:)* ﴾
8﴿Արդյո՞ք Ալլահը Ամենաարդարը չէ *(Ամենաիմաստունը)* դատավորներից *(երբ Նա նշանակեց Օրը դատելու արարածների միջև և վերադարձնելու սեփականատերերի*

*իրավունքները:) (Իհարկե, Նա է:)*

## (96) Սուրա Ալ-Ալաք

[Կախված արյան ռունո]

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*, Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 Կարդա, քո Տիրոջ Անունով, Ով արարել է *(ամենը, որը գոյություն ունի:)*
2 Նա արարել է մարդուն ՙ*Ալաքից* *(Կախված արյան գնդից:)*
3 Կարդա. Եվ քո Տերը Ամենաառաքինին է:
4 Ով սովորեցրել է *(գրելը)* գրիչով:
5 Նա սովորեցրել է մարդուն, ինչ նա չգիտեր:
6 Ոչ: Իրոք, մարդ ոտնահարել է *(անհավատության մեջ և չար արարքներում)*,
7 Քանի որ նա տեսնում է իրեն ունևոր և ինքնբավ:
8 Իրոք, քո Տիրոջն է վերադարձը *(բոլոր մարդկանց Հարության Օրը և Նա կպարգևատրի կամ կպատժի յուրաքանչյուրին ըստ ինչի նրանք արժանի են)*:
9 Դու *(Օվ Մուհամմեդ)* տեսել ես նրան *(Աբու Ջահլին)*, ով խանգարում է,
10 Ստրուկ *(այսինքն, Մուհամմեդին)* *աղոթքի ց: (Այս հարցը վերաբերում է այդ խնդրի զարմանքին, ինչպես կարող է Աբու Ջահլը կանխել Մուհամմեդին աղոթելու Ալլահին, Արարչին, քանի որ աղոթքը կապ է իր ստրուկի և Տիրոջ միջև: Այսինքն, նա ոչ միայն իրեն է հեռացնում հավատքից, այլև նաև փորձում է խոչընդոտել ձեզ և մյուս մարդկանց ուղղորդությունից:Այս միջադեպն է. ՙՙԱբու Ջահլը երդվեց, որ եթե նա տեսնի Մարգարեին աղոթելիս, նա կտրորի իր վիզը, մինչ նա խոնարհիվում է:Երբ նա տեսավ նրան աղոթելիս, նա գնաց անելու այդպես, սակայն երբ նա մոտեցավ, նա զարմացրեց մարդկանց, երբ կանգնեց իր կրունկներին, փորձելով հակահարված տալ ինչ որ բանի իր ձեռքերով և նա ասաց. ՙԻմ և նրա միջև կրակի փոս կա և վախ և թևեր, ՚այնուհետ Մարգարեն ասաց.ՙԵթե նա մոտենար ինձ, հրեշտակները կհափշտակեին նրան մաս առ մաս:՚. հաղորդում է Սահիհ Մուսլիմը.)*
11 Դու տեսել ես *(Օվ Մուհամմեդ)* եթե նա *(աղոթող ստրուկը, այսինքն Մուհամմեդը ինքը)* առաջնորդման մեջ է *(Ալլահից)*,
12 Կամ, պատվիրու մ է բարեպաշտություն *(այս հարցը վերաբերում է այս խնդրի զարմանքին, եթե այս վիճակն է մեկի, կանխելու աղոթքը, որ նա առաջնորդման մեջ է և պատվիրում է բարեպաշտություն, ինչպես կարող է այդպիսի անձին կանխել ունենալու կապ իր և իր Տիրոջ, Արարչի միջև:)*
13 Դու տեսե՞լ ես *(Օվ Մուհամմեդ)* եթե նա *(Աբու Ջահլը, մեղսագործը)* զրպարտում է *(Ղուրանը)* և շրջվում է *(Հավատքից)*, *(ապա զարմանք է առաջանում արդյոք նա չի վախենու՞մ Ալլահից:)*
14 Արդյո՞ք նա *(այս մեղսագործը)* *չգիտի, որ Ալլահը* տեսնում է *(ինչ որ նա անում է:)*
15 Ոչ, եթե նա *(Աբու Ջահլը)* չդադարեր, Մենք կբռնեյինք և կքաշեյինք նրան բռնությամբ իր Նաասահից *(նրա ճակատի բարձր մասից, որը վերաբերվում է ուղեղի դիմային բլթակին, )*
16 Խաբուսիկ, մեղավոր Նաասահ *(ճակատի բարձր մաս, որը վերաբերվում է ուղեղի առաջնային բլթակին, բնութագրվում է որպես խաբուսիկ և մեղավոր, որովհետև դիմային բլթակը կառավարում է գիտակցությունը, որը կառավարում է մեր արարքները, դատապարտելը և ինչ կատարվում է մեր առօրյա գործերում, մեր զգացմունքային անրադարձը, լեզուն, որը մենք օգտագործում ենք:Այն նույնպես կարևոր դեր է խաղում տեղեկությունների ընթացքում, ուստի և ինտելեկտում:Տես.Վիկիպեդիա ՙՃակատային Բլթակ:՚)*
17 Ապա, թող նա կանչի իր աջակիցներին իր մարդկանցից *(ինչպես նա ասաց քեզ, օվ Մուհամմեդ. "Ես ունեմ ամենաշատ աջակիցները ցեղախմբում:")*
18 Մենք կկանչենք Դժոխքի պահապան հրեշտակներին *(քաշելու նրան Կրակի մեջ Հանդերձյալ Կյանքում:)*
19 Ոչ, *(Օվ Մուհամմեդ)* *մի ենթարկվիր նրան* *(ինչից նա կանխում է)*, այլ խոնարհիվիր և մոտեցիր *(քո Տիրոջը, Նրա պատվիրաններին հնազանդվելով)*:

## (97) Սուրա Ալ-Քադր

[Աստվածային Ճակատագրի Գիշեր]

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*, Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 Իրոք, Մենք ուղարկել ենք այն *(այս Ղուրանը, այսինքն, սկսել ենք հայտնել այն)* ներքև Ալ-Քադր գիշերը *(Պատվի և հրամանի գիշերը, որը Ռամադան ամսվա վերջին տաս օրերից մեկն է, որի ընթացքում Ալլահը հրահանգեց Իր ստրուկներին, ճակատագիր հաջորդ տարվա համար, )*

سُورَةُ القَدْرِ — آياتها 5 — ترتيبها 97

بِسْمِ ٱللَّهِ ٱلرَّحْمَٰنِ ٱلرَّحِيمِ

إِنَّآ أَنزَلْنَٰهُ فِى لَيْلَةِ ٱلْقَدْرِ ١ وَمَآ أَدْرَىٰكَ مَا لَيْلَةُ ٱلْقَدْرِ ٢
لَيْلَةُ ٱلْقَدْرِ خَيْرٌ مِّنْ أَلْفِ شَهْرٍ ٣ تَنَزَّلُ ٱلْمَلَٰٓئِكَةُ وَٱلرُّوحُ
فِيهَا بِإِذْنِ رَبِّهِم مِّن كُلِّ أَمْرٍ ٤ سَلَٰمٌ هِىَ حَتَّىٰ مَطْلَعِ ٱلْفَجْرِ ٥

سُورَةُ البَيِّنَةِ — آياتها 8 — ترتيبها 98

بِسْمِ ٱللَّهِ ٱلرَّحْمَٰنِ ٱلرَّحِيمِ

لَمْ يَكُنِ ٱلَّذِينَ كَفَرُوا۟ مِنْ أَهْلِ ٱلْكِتَٰبِ وَٱلْمُشْرِكِينَ مُنفَكِّينَ
حَتَّىٰ تَأْتِيَهُمُ ٱلْبَيِّنَةُ ١ رَسُولٌ مِّنَ ٱللَّهِ يَتْلُوا۟ صُحُفًا مُّطَهَّرَةً ٢
فِيهَا كُتُبٌ قَيِّمَةٌ ٣ وَمَا تَفَرَّقَ ٱلَّذِينَ أُوتُوا۟ ٱلْكِتَٰبَ إِلَّا مِنۢ
بَعْدِ مَا جَآءَتْهُمُ ٱلْبَيِّنَةُ ٤ وَمَآ أُمِرُوٓا۟ إِلَّا لِيَعْبُدُوا۟ ٱللَّهَ مُخْلِصِينَ
لَهُ ٱلدِّينَ حُنَفَآءَ وَيُقِيمُوا۟ ٱلصَّلَوٰةَ وَيُؤْتُوا۟ ٱلزَّكَوٰةَ ۚ وَذَٰلِكَ دِينُ
ٱلْقَيِّمَةِ ٥ إِنَّ ٱلَّذِينَ كَفَرُوا۟ مِنْ أَهْلِ ٱلْكِتَٰبِ وَٱلْمُشْرِكِينَ
فِى نَارِ جَهَنَّمَ خَٰلِدِينَ فِيهَآ ۚ أُو۟لَٰٓئِكَ هُمْ شَرُّ ٱلْبَرِيَّةِ ٦ إِنَّ
ٱلَّذِينَ ءَامَنُوا۟ وَعَمِلُوا۟ ٱلصَّٰلِحَٰتِ أُو۟لَٰٓئِكَ هُمْ خَيْرُ ٱلْبَرِيَّةِ ٧

2 ﴾ Եվ, ինչպե՞ս դու կարող ես իմանալ *(Ով Մարգարե, այսինքն, դու չես կարող պատկերացնել)* որքան *(հիասքանչ է)* Ալ-Քադր գիշերը. *(արտահայտություն, որը ցույց է տալիս, թե որքան կարևոր է այս գիշերը),* ﴿

3 ﴾ Ալ-Քադր գիշերը ավելի լավ է քան հազարավոր ամիսներ *(այսինքն, երկրպագել Ալլահին այդ գիշեր ավելի լավ է, քան երկրպագել Նրան հազարավոր ամիսներ, այսինքն, 83 տարի և 4 ամիս:)* ﴿

4 ﴾ Այնտեղ իջնում են հրեշտակները և Առ-Ռուհը *(Ոգին, այսինքն, Գաբրիելը)* *իրենց Տիրոջ Թույլտվությամբ, բոլոր Հրահանգներով* *(տարվա բոլոր գործերի հետ կապված:)* ﴿

5 ﴾ *(Ամբողջ այդ գիշերը)*, խաղաղություն է *(և Բարիք Ալլահից Իր հավատացյալ ստրուկներին)* մինչ արշալույսի բացվելը: ﴿

# Սուրա 98 Ալ-Բայինաh

**[Ակնհայտ Վկայություն]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 ﴾Նրանք, ովքեր չեն հավատացել Գրերի մարդկանցից *(Հրեաներ և Քրիստոնյաներ, ովքեր եկել են Ալլահի ճիշտ հավատքից, դեպի իրենց նորարարությունները)* և բազմաստվածները, ովքեր չէին պատրաստվում թողնել *(իրենց անհավատությունը)*, մինչ չգա նրանց ակնհայտ վկայություն *(այսինքն, ժամանակի ընթացքում նրանք չեն աճի, բացառությամբ իրենց անհավատությամբ և իրենց նորարարություններով, արդյոք Ալլահը չէր ուղարկել նրանց Մարգարե Մուհամեդին:)* ﴿

3 ﴾ *(Այս ակնհայտ Վկայությունն է)* Մարգարեն Ալլահից, ով ընթերցում է մաքուր էջեր *(Սուրբ Ղուրան)*, ﴿

2 ﴾ Որտեղ կան ճիշտ Գրքեր *(ճիշտ գրեր և գլուխներ, որոնք ասում են ճշմարտությունը, պարունակում են արդար Օրենքներ և նրանք հեռու են որևէ աղավաղումից:)* ﴿

4 ﴾ Եվ, իրոք նրանց, ում տրվել էին Գրեր *(Հրեաները և Քրիստոնյաները)* տարբերություն չեն դնում *(նրանք բոլորը համաձայն են մարգարեի գալստյան հետ)* մինչ որ եկավ նրանց Ակնհայտ Վկայություն *(այսինքն, Մարգարե Մուհամեդը), (մինչ Մարգարե Մուհամեդի գալուստը, նրանք սպասում էին մարգարեի գալստյան, ինչպես նշվել է նրանց Գրերում, սակայն երբ Մարգարե Մուհամեդը եկավ նրանց մոտ ակնհայտ ապացույցներով, նրանք տարբերվեցին և պառակտվեցին, ոմանք մերժեցին նրան և մյուսները հավատացին նրան և հետևեցին նրան:)* ﴿

5 ﴾Եվ, փաստորեն նրանց չէր հրահանգվել *(այս Ղուրանում)*, սակայն *(ինչ նրանց արդեն հրահանգվել էր իրենց բնօրինակ Գրերում)* երկրպագել Ալլահին *(Միայն)*, և նվիրվել Նրան կրոնում և լինել Հունաֆա' *(հեռու լինել բազմաստվածությունից և շրջվել դեպի Միաստվածություն)*, և ներկայացնել աղոթքներ և տալ Զաքյաթ *(պարտադիր բարեգործություն)*. և այս է ճիշտ *(և ուղիղ)* կրոնը: ﴿

6 ﴾ Իրոք, նրանք ովքեր չեն հավատացել Գրերի մարդկանցից *(Հրեաներ և Քրիստոնյաներ, ովքեր չեն հետևում բնօրինակ ուսմունքներին ոչ Մովսեսի և Հիսուսի, ոչ էլ Մուհամեդի)* և բազմաստվածները կբնակվեն Դժոխքի Կրակում, որտեղ կբնակվեն հավերժ:Նրանք արարածներից վատագույններն են: ﴿

7 ﴾ Իրոք, նրանք, ովքեր հավատացել են *(Ալլահի Միակությանը և Նրա Մարգարե Մուհամեդին)* և առաքինի արարքներ են արել, արարածներից լավագույններն են: ﴿

جَزَآؤُهُمْ عِندَ رَبِّهِمْ جَنَّـٰتُ عَدْنٍ تَجْرِى مِن تَحْتِهَا ٱلْأَنْهَـٰرُ خَـٰلِدِينَ
فِيهَآ أَبَدًا ۖ رَّضِىَ ٱللَّهُ عَنْهُمْ وَرَضُوا۟ عَنْهُ ۚ ذَٰلِكَ لِمَنْ خَشِىَ رَبَّهُۥ ٨

ترتيبها 99 — سُورَةُ الزَّلْزَلَةِ — آياتها 8

بِسْمِ ٱللَّهِ ٱلرَّحْمَـٰنِ ٱلرَّحِيمِ

إِذَا زُلْزِلَتِ ٱلْأَرْضُ زِلْزَالَهَا ١ وَأَخْرَجَتِ ٱلْأَرْضُ أَثْقَالَهَا
٢ وَقَالَ ٱلْإِنسَـٰنُ مَا لَهَا ٣ يَوْمَئِذٍ تُحَدِّثُ أَخْبَارَهَا ٤
بِأَنَّ رَبَّكَ أَوْحَىٰ لَهَا ٥ يَوْمَئِذٍ يَصْدُرُ ٱلنَّاسُ أَشْتَاتًا
لِّيُرَوْا۟ أَعْمَـٰلَهُمْ ٦ فَمَن يَعْمَلْ مِثْقَالَ ذَرَّةٍ خَيْرًا
يَرَهُۥ ٧ وَمَن يَعْمَلْ مِثْقَالَ ذَرَّةٍ شَرًّا يَرَهُۥ ٨

ترتيبها 100 — سُورَةُ العَادِيَاتِ — آياتها 11

بِسْمِ ٱللَّهِ ٱلرَّحْمَـٰنِ ٱلرَّحِيمِ

وَٱلْعَـٰدِيَـٰتِ ضَبْحًا ١ فَٱلْمُورِيَـٰتِ قَدْحًا ٢ فَٱلْمُغِيرَٰتِ صُبْحًا
٣ فَأَثَرْنَ بِهِۦ نَقْعًا ٤ فَوَسَطْنَ بِهِۦ جَمْعًا ٥ إِنَّ ٱلْإِنسَـٰنَ
لِرَبِّهِۦ لَكَنُودٌ ٦ وَإِنَّهُۥ عَلَىٰ ذَٰلِكَ لَشَهِيدٌ ٧ وَإِنَّهُۥ لِحُبِّ
ٱلْخَيْرِ لَشَدِيدٌ ٨ ۞ أَفَلَا يَعْلَمُ إِذَا بُعْثِرَ مَا فِى ٱلْقُبُورِ ٩

8 « Նրանց պարգևը իրենց Տիրոջ հետ 'Ադն այգիներն են *(Դրախտը)*, որի տակ գետեր են հոսում, նրանք կբնակվեն այնտեղ հավերժ:Ալլահը կգոհանա նրանցով և նրանք կգոհանան Նրանով:Այս է *(պարգևը)* նրա համար, ով վախենում է իր Տիրոջից: »

## Սուրա 99 Ազ-Զալզալահ

**[Երկրաշարժ]**

Ալլահի Անունով Ար-Ռահման *(Ամենաբարեգութ)*, Ար-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 « Երբ երկիրը թափահարվի իր *(վերջնական)* երկրաշարժով, »
2 « Եվ, երբ երկիրը թոթափի իր բեռը *(մեռյալները)*, »
3 « Եվ մարդիկ *(վախեցած և զարմացած)* կասեն. "Ի՞նչ է պատահել դրա հետ:" »
4 « Այդ Օրը այն *(երկիրը)* կպատմի իր պատմությունները *(ինչ բարիք և չարիք է կատարվել դրա վրա)*, »
5 « Որովհետև քո Տերը կոգեշնչի այդ: »
6 « Այդ Օրը մարդիկ կշարունակեն ցրվել *(խմբերի)*, *(Դատաստանի վայրից դեպի իրենց վերջնակետ, Դժոխք, թե Դրախտ)*, ցուցադրված իրենց արարքներով *(այսինքն, իրենց պարգևով կամ պատժով)*: »
7 « Այսպիսով, ով բարիք է գործում հավասար *(նույնիսկ)* ատոմի քաշի *(կամ փոքրիկ մրջյունի)* կտեսնի այդ *(այսինքն, դրա պարգևը)*, »
8 « Եվ ով չարիք է գործում հավասար *(նույնիսկ)* ատոմի քաշի *(կամ փոքրիկ մրջյունի)* կտեսնի այն *(այսինքն, պատիժը դրա համար)*: »

## Սուրա 100 Ալ-Ադիյա

**[Որոնք վազում են]**

Ալլահի Անունով Ար-Ռահման *(Ամենաբարեգութ)*, Ար-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Նրանցով, որոնք վազում են *(գիտնականների մեծամասնությունը ասում են, որ այն վերաբերում է ձիերին, որոնք վազում են հարձակվելու թշնամուն, - և այս կարծիքը մոտ է ճշտին-, մեկ այլ գիտնականների խումբ, հակված է նրան, որ այն վերաբերում է ուղտերին, որոնք վազում են ՙԱրաֆայից մինչ Մուզդալիֆա, հետո ուխտագնացության ծեսերի Մինա)* փնչացնելով *(ծանր շնչառություն ցուցադրելով, ըստ վազքի ուժգնության)*, »
2 « Հարվածելով կրակի կայծերին *(իրենց սմբակներով, վազելով, երբ իրենց սմբակները հարվածում են ժայռերին, այն վերաբերում է վազքի ուժգնությանը)*, »
3 «Վազելով արշավին *(իրենց թշնամիների վրա)* արշալույսին, »
4 « Եվ բարձրացնելով դրանով *(իրենց վազքով)* փոշի *(երկինք, )* »
5 « Եվ թափանցելով անմիջապես, կարծես որևէ մեկը հավաքի կենտրոնում է *(այսինքն, թշնամու շարքերում:)* »
6 «Իրոք մարդը, *(անհավատը)* անշնորհակալ է իր Տիրոջը: »
7 « Եվ այդ *(երախտամոռությունը իր Տիրոջը)* նա վկայում է *(իր արարքներով:)* »
8 «Եվ, իրոք, նա բռնի է ունեցվածքի սիրո մեջ:»
9 « Արդյո՞ք նա չգիտի, *(մարդը, ինչ է սպասում իրեն, )* երբ գերեզմանների պարունակությունը դուրս գան *(երբ մարդիկ հարություն առնեն)*, »
10 « Եվ, երբ ամենը, որ գոյություն ունի կրծքավանդակի մեջ *(մարդկանց,*

*զաղտնիից և մտադրություններից)* հայտնի կլինի:

11 Իրոք, այդ Օրը իրենց Տերը Քաջատեղյակ կլինի նրանց *(ինչպես իրենց արարքներին և կպարգևատրի կամ կպատժի նրանց ըստ իրենց արարքների:)*

## Սուրա 101 Ալ-Քարիյա

[Դատաստանի Օրը, որը Հարվածում է սրտերը]

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*, Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 Ալ-Քարիյա *(այսինքն, Դատաստանի Օրը, որը կհարվածի մարդկանց սրտերը իր սարսափով)*:

2 Ի՞նչ է Ալ-Քարիյան:

3 Եվ ինչպե՞ս դու կարող ես իմանալ *(այսինքն, դու չես կարող պատկերացնել Օվ, Մուհամմեդ)* ինչ է *(մեծ բան է)* Ալ-Քարիյան *(արտահայտություն, որը ցույց է տալիս, որքան մեծ բան է այն:)*

4 Առ Օր է, որում մարդկությունը ցեցերի նման կլինի ցրված,

5 Եվ լեռները կլինեն ինչպես բուրդ խամխամված:

6 Այնուհետ, նրա համար, ում կշիռը *(բարի արարքների)* ծանր կլինի,

7 Նա կլինի հաճելի կյանքում *(Դրախտում)*,

8 Սակայն, նրա համար, ում կշիռը *(բարի արարքների)* կլինի թեթև,

9 Նրա բնակությունը կլինի Հաուիյայում *(հորում, այսինքն, Դժոխքում:)*

10 Եվ ինչպե՞ս դու կարող էիր իմանալ *(այսինքն, դու չես կարող պատկերացնել Օվ, Մուհամմեդ)* ինչ *(սարսափելի վայր է)* այն *(Ալ-Հաուիյան)*, *(արտահայտություն, որը ցույց է տալիս որքան սարսափելի է այն, )*

11 *(Այն)* կատաղի բոցավառվող Կրակ է:

## Սուրա 102 Ատ-Տակաթուր

[Ցանկություն Ավելիին]

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*, Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 Փոխադարձ մրցակցությունը կուտակելու *(հարստություն, ունենալու երեխաներ և իշխանություն և այլն)* շեղում է քեզ *(Ալլահին հնազանդվելուց. )*

2 Քանի դեռ դուք չեք այցելել գերեզմաններ *(այսինքն, մինչ դուք մահկանացուն կնքեք, այցելություն բառը այստեղ վերաբերում է նրան, որ գերեզմանները վերջնակետը չեն, սակայն վերջնակետը կլինի Դժոխքը կամ Դրախտը, մահվանից և Հարությունից հետո:)*

وَحُصِّلَ مَا فِي الصُّدُورِ ١٠ إِنَّ رَبَّهُم بِهِمْ يَوْمَئِذٍ لَّخَبِيرٌ ١١

سُورَةُ القَارِعَةِ — ترتيبها 101 — آياتها 11

بِسْمِ اللَّهِ الرَّحْمَٰنِ الرَّحِيمِ

الْقَارِعَةُ ١ مَا الْقَارِعَةُ ٢ وَمَا أَدْرَاكَ مَا الْقَارِعَةُ
٣ يَوْمَ يَكُونُ النَّاسُ كَالْفَرَاشِ الْمَبْثُوثِ ٤
وَتَكُونُ الْجِبَالُ كَالْعِهْنِ الْمَنفُوشِ ٥ فَأَمَّا
مَن ثَقُلَتْ مَوَازِينُهُ ٦ فَهُوَ فِي عِيشَةٍ رَّاضِيَةٍ
٧ وَأَمَّا مَنْ خَفَّتْ مَوَازِينُهُ ٨ فَأُمُّهُ هَاوِيَةٌ
٩ وَمَا أَدْرَاكَ مَا هِيَهْ ١٠ نَارٌ حَامِيَةٌ ١١

سُورَةُ التَّكَاثُرِ — ترتيبها 102 — آياتها 8

بِسْمِ اللَّهِ الرَّحْمَٰنِ الرَّحِيمِ

أَلْهَاكُمُ التَّكَاثُرُ ١ حَتَّىٰ زُرْتُمُ الْمَقَابِرَ ٢ كَلَّا سَوْفَ
تَعْلَمُونَ ٣ ثُمَّ كَلَّا سَوْفَ تَعْلَمُونَ ٤ كَلَّا لَوْ تَعْلَمُونَ
عِلْمَ الْيَقِينِ ٥ لَتَرَوُنَّ الْجَحِيمَ ٦ ثُمَّ لَتَرَوُنَّهَا
عَيْنَ الْيَقِينِ ٧ ثُمَّ لَتُسْأَلُنَّ يَوْمَئِذٍ عَنِ النَّعِيمِ ٨

3 Ոչ, դուք պետք է իմանաք *(իրականությունը և որ Հանդերձյալ Կյանքը կլինի ավելի լավ ձեզ համար, եթե դուք երկրպագեք Ալլահին, ինչպես հարկն է, աշխարհիկ կյանքում:)*:

4 Կրկին ոչ, դուք պետք է իմանաք *(ձեր ավարտի արդյունքը, նյութական բաների ցանկության դեպքում, որը շեղում է ձեզ երկրպագելու Ալլահին,աշխարհիկ կյանքում:)*

5 Ոչ, եթե դուք իմանայիք հաստատուն գիտելիքներով *(կուտակելու ավարտի արդյունքը, դուք չէիք զբաղեցնի ձեզ, աշխարհիկ կյանքում, )*

6 Դուք, անկասկած կտեսնեք Դժոխքի Կրակը:

7 Եվ, կրկին դուք հաստատ կտեսնեք այն հաստատուն տեսողությամբ *(առանց որևէ կասկածի:)*

8 Այնուհետ այդ Օրը ձեզ անշուշտ կհարցնեն հաճույքների մասին *(որի մեջ դուք թաղված եք այս աշխարհում:)*



# Սուրա 103 Ալ-Ասր

**[Ժամանակը]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «*(Ես երդվում եմ)* Ալ-Ասրով *(Ժամանակով, կամ օրվա երրորդ աղոթքով, որը կոչվում է Ալ-Ասր:)* »

2 « Իրոք, մարդը մոլորված է, »

3 «Բացառությամբ նրանց, ովքեր հավատում են և առաքինի արարքներ են գործում և խորհուրդ են տալիս միմյանց ճշմարտությունը *(իրական հավատքը և բարի արարքներ գործելը)* և խորհուրդ են տալիս միմյանց համբերություն: »

# Սուրա 104 Ալ-Հումազահ

**[Զրպարտիչը Մեկի Մեջքի Ետևում]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Անեծք նրան, ով ծաղրում է ուրիշ մարդկանց իր գործողություններով *(ինչպես մեկը, ով տալիս է հասկացություն իր աչքով կամ ձեռքով մյուսին, անդրադառնալու մեկ ուրիշի սխալի)* կամ իր խոսքերով *(զրպարտիչ կամ բամբասանքով, ով ծաղրում կամ խոսում է ուրիշ մարդկանց սխալներից)*, »

2 « Ով կուտակել է հարստություն և հաշվել է այն *(վերաբերում է իր երանության սիրուն, որևէ գումարը և երբ նա ստանում է ավելի գումար, նա ակնկալում է կրկին:)* »

3 « Նա կարծում է, որ իր ունեցվածքը կդարձնի նրան հավերժ: »

4 « Ոչ, իրոք նրան կգցեն Ալ-Հութամա *(ջախջախիչ կրակ, որը ջախջախում է ամեն, ինչ մտնում է այնտեղ:)* »

5 « Եվ ինչպես դու կարող էիր իմանալ *(այսինքն, դու չես կարող պատկերացնել, Օվ Մուհամմեդ)* ինչ *(սարսափելի վայր է)* Ալ-Հութաման *(ջախջախիչ Կրակը.)* *(արտահայտություն, որը ցույց է տալիս, թե որքան սարսափելի է այն, )* »

6 «*(Այն)* Ալլահի Կրակն է, որը *(հավերժորեն)* բոնկվում է: »

7 «Որը թափանցում է *(մարմինները)* մինչ սրտերը *(այն վերաբերում է դրա հզորությանն ու այրման արագությանը, քանզի այն հասնում և այրում է սրտերը միևնույն ժամանակ, այն այրում է մարմինը ներսից:)* »

8 « Այն կողպված է, ներառելով նրանց *(անհավատներին)* ամուտեր: »

9 « Երկարեցված սյուներով, *(որպեսզի նրանք ի վիճակի չլինեն փախչել)*: »

# Սուրա 105 Ալ-Ֆիլ

**[Փիղը]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Արդյո՞ք դու *(Օվ Մուհամմեդ)* չես տեսել, թե ինչպես է քո տերը գործում մարդկանց *(բանակի)* հետ, ովքեր ունեյին Փիղ: *(Այն վերաբերում է Աբրահա Ալ-Աշրամի բանակին, որը եկավ Յեմենից, մտադրվելով գրավել Մեքքան և կործանել Ալ-Քաբբան, օգտագործելով հսկայական փիղ, )* »

2 « Մի՞թե Նա *(Ալլահը)* չի մոլորեցրել նրանց ծրագիրը: »

3 «Եվ Նա ուղարկեց նրանց դեմ թռչուններ, երամներով: »

4 «Այրելով նրանց թրծված կավի քարերով: »

5 «Եվ, Նա դարձրեց նրանց ինչպես կերած ծղոտ *(որը կերել են եղջերավոր անասունները, որ այնուհետ մաքրեն այն:)* »

# Սուրա 106 Քուրեյշ

**[Քուրեյշ Ցեղախումբը]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

سُورَةُ قُرَيۡشٍ
ترتيبها 106 — آياتها 4

بِسۡمِ ٱللَّهِ ٱلرَّحۡمَٰنِ ٱلرَّحِيمِ

لِإِيلَٰفِ قُرَيۡشٍ ١ إِۦلَٰفِهِمۡ رِحۡلَةَ ٱلشِّتَآءِ وَٱلصَّيۡفِ ٢ فَلۡيَعۡبُدُواْ رَبَّ هَٰذَا ٱلۡبَيۡتِ ٣ ٱلَّذِيٓ أَطۡعَمَهُم مِّن جُوعٖ وَءَامَنَهُم مِّنۡ خَوۡفِۭ ٤

سُورَةُ المَاعُونِ
ترتيبها 107 — آياتها 7

بِسۡمِ ٱللَّهِ ٱلرَّحۡمَٰنِ ٱلرَّحِيمِ

أَرَءَيۡتَ ٱلَّذِي يُكَذِّبُ بِٱلدِّينِ ١ فَذَٰلِكَ ٱلَّذِي يَدُعُّ ٱلۡيَتِيمَ ٢ وَلَا يَحُضُّ عَلَىٰ طَعَامِ ٱلۡمِسۡكِينِ ٣ فَوَيۡلٞ لِّلۡمُصَلِّينَ ٤ ٱلَّذِينَ هُمۡ عَن صَلَاتِهِمۡ سَاهُونَ ٥ ٱلَّذِينَ هُمۡ يُرَآءُونَ ٦ وَيَمۡنَعُونَ ٱلۡمَاعُونَ ٧

سُورَةُ الكَوۡثَرِ
ترتيبها 108 — آياتها 3

بِسۡمِ ٱللَّهِ ٱلرَّحۡمَٰنِ ٱلرَّحِيمِ

إِنَّآ أَعۡطَيۡنَٰكَ ٱلۡكَوۡثَرَ ١ فَصَلِّ لِرَبِّكَ وَٱنۡحَرۡ ٢ إِنَّ شَانِئَكَ هُوَ ٱلۡأَبۡتَرُ ٣

1 *(Տես, որքան շատ բարեհաճություններ է Ալլահը պարգևել Քուրեյշներին – Մաոաուէ Մուհամմեոի օէոաhիմըհին-)* Քանզի Քուոէւշնէոո սոմոո էին ւամաստէուանուտւան *(նաւուևուտւան. միաuևանևանուտւան. աաահոմուտւան. աաոուսաի միօռաճէոի. աաահոմ ճամհոոոուտւան. աւսհնօն. տէս. հնսաէս է Աււաhո նոանօ նաւուն ոաոձոէւ. միաuևանան և համահիմըմած տննէոում Սուոը Մանիտի ջուոօ. աւն ըանիa հէտո. էոը նոանօ ծոմած տննէոում էին. անաէս. ոո Աոաըանան օէոահիմըէոո սէին նաոոո հաոձանում ծոոծէւ նոանօ մոա. ոոոմհէտն նոանօ ընանմում էին Սուոը Քաոաօում. և տէս. թէ հնսաէս Նա նոոծանէօ փոհ ըանանո և ոոաէս աոոուևօ ոոա. նոանօ աահէօին հոէնօ միաuևանանուտուևո և հաոօէօին աոաըանան օէոահիմըէոի միօն էոած ոոուտուևո. և տէս. թէ հնսաէս Նա տմէօ նոանօ աաոուսաի միօռաճէո և նաւուևուտուն նաանօում. սնաւած աւն ըանի ոո նոանօ աաոում էին անմջան անաաաաոում. հոէնօ էոնու մշտանան աոևստոանան ճանաաաոհոոոուտւամը. և ոս ոօ աոաըանան օէոահիմըէոհa. սէո նաոոո հաոձանմէւ նոանօ օաոամաննէոհին. ոոոմհէտն նոանօ Սուոը Քաոաօի ընանիսնէոն էին և աոաըանան օէոահիմըէոո անում էին այնտեղ ուխտագնացության ամեն տարի:)*

2 Իրենց սովոր քաջատեղյակությամբ տանելու *(քարավանները)* ձմռանը *(ապահով Յեմեն)* և ամռանը *(ապահով, առանց որևէ վախի հին Միոհա:)*

3 Այսահսոմ, *(այս բոլոր բարեհաճություններից հետո)* թող նրանք երկրպագեն *(Ալլահին)*, այս Տան Տիրոջը, *(Մեքքայում Սուրբ Մզկիթի, )*

4 Ով սնել է նրանց ընդդեմ քաղցի և ապահովել է նրանց վախից:

# Սուրա 107 Ալ-Մաուն

[Կարիք Հարևան Հարաբէոուտուննէոի]

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 Արդյո՞ք ոու տեսեւ ես նրան, ով մերժում է Հատուցումը *(Հարությունը, Դարգևը և Պատիժը Ալլահից Իր ստրուկներին, ըստ իրենց արարքների և այսպիսով նա չի ենթարկվում Ալլահին Իր Պատվիրաններում և Արգելքներում:)*

2 Այդ նա է, ով վանում է որբին խստորեն,

3 Եվ կոչ չի անում սնելու կարիքավորի *(այսինքն, նա ոչ սնում է աղքատին, ոչ էլ խրախուսում է ուրիշներին անելու այդպես:)*

4 Այսպիսով, անեծք լինի նրանց, ովքեր աղոթում են *(փարիսեցիները)*,

5 Նրանց, ովքեր հետաձգում են իրենց աղոթքները *(իրենց հաստատուն, սահմանված ժամանակից, անտարբերության պատճառով:)*

6 Նրանց, ովքեր անում են բարի արարքներ միայն ցուցադրելու *(մարդկանց)*,

7 Եվ, պահել Ալ-Մաուն *(այսինքն, բարեգործությունը և նրանք հրաժարվում են պարտքով տալ իրենց կենցաղային պարագաները, որ հարևանը կարող է խնդրել, այն վերաբերում է իրենց ուժգին ագահությանը:)*

# Սուրա 108 Ալ-Կաութար

[Գետ Դրախտում]

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 Իրոք, Մենք պարգևել ենք քեզ *(Օվ, Մուհամմեդ)* Ալ-Կաութար *(գետ Դրախտում)*:

2 Հետևաբար, շրջվիր աղոթքով դեպի քո Տերը *(նվիրիր քո աղոթքները Միայն Նրան)* և զոհաբերիր *(աղքատներին, միայն Հանուն Ալլահի:)*

3 Իրոք, նա, ով ատում է քեզ, կլինի մեկը, ով




կզրկվի *(այս աշխարհում և Հետագայում ամեն բարիքից:Արաբները Իսլամից առաջ, օգտագործում էին այս արտահայտությունը.՝զրկված՝ տղամարդու համար, ով չուներ որդիներ, այսպիսով, նրա անունը զրկվում էր իր մահից հետո, սակայն այստեղ այն վերաբերում է Ալ- 'Ասի իբն Ուաելին, ով խոսեց Մարգարեյի մասին ծաղրելով, որ Մարգարեն չուներ որդիներ, այն բանից հետո, երբ նրա երեք փոքրիկ երեխաները մահացան միմյանց ետևից և նրա անունը չէր շարունակվի իր մահից հետո, և Ալլահը պատասխանեց, որ նա է մեկը, ով զրկվել է ամեն բարիքից և ոչ թե Մարգարեն, քանզի կարևոր չէ, արդյոք որևէ մեկի անունը կշարունակվի նրա մահից հետո, թե ոչ, սակայն կարևոր է, թե նա կզրկվի բարիքից և օրհնանքից)* հանդերձյալ կյանքում, թե ոչ]

## Սուրա 109 Ալ-Քաֆիրուն

**[Անհավատները]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Ասա *(Օվ Մուհամմեդ)*. "Օվ, Անհավատներ»
2 « Ես չեմ երկրպագում այն, ինչ դուք եք երկրպագում, »
3 « Ոչ էլ դու կերկրպագեք այն, ինչ ես եմ երկրպագում: »
4 « Եվ ես չեմ երկրպագի այն, ինչ դու եք երկրպագում, »
5 « Ոչ էլ դուք կերկրպագեք այն, ինչ ես եմ երկրպագում: »
6 «Ձեզ լինի ձեր կրոնը և ինձ, իմ կրոնը: »

## Սուրա 110 Ան-Նասր

**[Հաղթանակը]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Երբ գալիս է հաղթանակը Ալլահից և Ալ-Ֆատտեհ *(մուտք Մեքքա հաղթանակով առանց պատերազմի կամ մարտի, - Ֆատտեհ Մեքքա-, )* »
2 «Եվ դու տեսնում ես, որ մարդիկ մտնում են Ալլահի կրոն *(Իսլամ)* ամբոխներով, »
3 « Ապա, փառաբանիր և գովերգիր քո Տիրոջը ասելով Ալ-Համդու Լիլեհ *(Փառք լինի Ալլահին)* և խնդրիր Նրա Թողությունը:Իրոք, Նա ապաշխարության Հավերժ Ընդունողն է: »

## Սուրա 111 Ալ-Մասադ

**[Արմավենու Ձիղ]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Կորչեն և կործանվեն Աբու Լահաբի երկու ձեռքերը *(Արաբական արտահայտություն, որը նշանակում է "թող Աբու Լահաբը կործանվի և չարչարվի,")*, և *(իրոք)* նա կորավ և կործանվեց: *(Ղուրանում անցյալ ժամանակը հաճախ օգտագործվում է որևէ բանի համար, որը կկատարվի ապագայում, ցույց տալու, որ այն անշուշտ կկատարվի և ոչինչ չի կարող փոխել այն) (Աբու Լահաբը Մարգարեյի հորեղբայրներից մեկն էր և անողոք թշնամին: Երբ Մարգարեն կանչեց Քուրեյշների ղեկավարներին և կոչեց նրանց Իսլամի, Աբու Լահաբը ասաց նրան.՝Այս ոչ կարևոր բանի համար դու կանչեցի՞ր մեզ: Կործանվես դու:՝ Այսպիսով, այս Տարբերակում կա պատասխան այն բանի, ինչ ասաց Աբու Լահաբը:)* »
2 «Նրա ունեցվածքը և նրա երեխաները չեն օգնի նրան *(չեն պաշտպանի նրան պատժից, ոչ էլ կօգնեն նրան ընդդեմ Ալլահի:)* »
3 «Նա կմտնի Կրակ *(կատաղի)* բոցավառվող հրեր, այրվելու այնտեղ, »
4 « Եվ նրա կինը, նույնպես, ով փայտ է կրում *(այսինքն, փշերը, որոնք նա սովոր*

*էր կրել և դնել Մարգարեի ճանապարհին, որպեսզի վնասի նրան, կամ սովոր էր զրպարտել նրան, )* »

5 « Նրա պարանոցին Մասադ պարանն է *(ոլորված, շատ կոպիտ արմավենու ջիլ, որով նա կախված կլինի Դժոխքում և այնուհետ կընկնի ներքև:)* »

## Սուրա 112 Ալ-Իխլաս

**[Հավատարմությունը– Ազնվությունը]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Ասա, *(Ով Մուհամմեդ)*. Նա Ալլահն է, Աhադը *(Միակը և Եզակի Աստվածը, Ով չունի զուգընկեր կամ համահավասար և չկա ուրիշ աստված բացառությամբ Նրա: Ոչ ոք չի կիսում Նրա հետ Նրա Աստվածային Ածականները, ոչ ոք չի կարող ներկայացնել Նրա Աստվածային Գործողությունները և ոչ ոք չունի ինքնություն, ինչպիսին է Նրա Աստվածային Ինքնությունը: Նա Անբաժան է և ոչ թե երեքը մեկում, ինչպես Քրիստոնյաներն են ասում: Նա երբեք չի Ունեցել կին կամ որդիներ և Նա Միակն է, Ով կարող է ներել մեր մեղքերը և դատել մեզ Դատաստանի Օրը)*: »

2 « Ալլահը Աս- Սամադ *(Ինքնաբավը, Կատարյալը Իր Փառքի և Պատվի, Իր Ածականների, Իր գիտելիքի, Իր հզորության մեջ, Ով ոչինչի կարիք չունի Իր արարածներից, սակայն, Ում կարիքը ունեն բոլոր արարածները և Նա ոչ սնվում է, ոչ ըմպում, ոչ էլ մահանում)*: »

3 « Նա չի ծնում, ոչ էլ Նա ծնվել է: »

4 «Եվ ոչ ոք չկա Նրան համահավասար կամ համեմատելի: »

## Սուրա 113 Ալ-Ֆալաք

**[Արշալույս]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Ասա *(Ով Մուհամմեդ)*: “Ես փնտրում եմ ապաստանը *(Ալլահի)* արշալույսի Տիրոջ,»

2 « Չարիքից *(որը կարող է գալ ամեն ինչից)* ինչ Նա արարել է, »

3 « Եվ չարիքից *(այսինքն, որը կարող է գալ)* գիշերվա ընթացքում, քանի որ այն գալիս է թանձր խավարով *(և քողարկում է ամենը)*, »

4 «Եվ նրանց չարիքից *(վհուկների)*, ովքեր հարվածում են հանգույցներին, »

سُورَةُ الإِخْلَاصِ — آياتها 4 — ترتيبها 112

بِسْمِ ٱللَّهِ ٱلرَّحْمَٰنِ ٱلرَّحِيمِ

قُلْ هُوَ ٱللَّهُ أَحَدٌ ﴿١﴾ ٱللَّهُ ٱلصَّمَدُ ﴿٢﴾ لَمْ يَلِدْ وَلَمْ يُولَدْ ﴿٣﴾ وَلَمْ يَكُن لَّهُۥ كُفُوًا أَحَدٌۢ ﴿٤﴾

سُورَةُ الفَلَقِ — آياتها 5 — ترتيبها 113

بِسْمِ ٱللَّهِ ٱلرَّحْمَٰنِ ٱلرَّحِيمِ

قُلْ أَعُوذُ بِرَبِّ ٱلْفَلَقِ ﴿١﴾ مِن شَرِّ مَا خَلَقَ ﴿٢﴾ وَمِن شَرِّ غَاسِقٍ إِذَا وَقَبَ ﴿٣﴾ وَمِن شَرِّ ٱلنَّفَّٰثَٰتِ فِى ٱلْعُقَدِ ﴿٤﴾ وَمِن شَرِّ حَاسِدٍ إِذَا حَسَدَ ﴿٥﴾

سُورَةُ النَّاسِ — آياتها 6 — ترتيبها 114

بِسْمِ ٱللَّهِ ٱلرَّحْمَٰنِ ٱلرَّحِيمِ

قُلْ أَعُوذُ بِرَبِّ ٱلنَّاسِ ﴿١﴾ مَلِكِ ٱلنَّاسِ ﴿٢﴾ إِلَٰهِ ٱلنَّاسِ ﴿٣﴾ مِن شَرِّ ٱلْوَسْوَاسِ ٱلْخَنَّاسِ ﴿٤﴾ ٱلَّذِى يُوَسْوِسُ فِى صُدُورِ ٱلنَّاسِ ﴿٥﴾ مِنَ ٱلْجِنَّةِ وَٱلنَّاسِ ﴿٦﴾

5 « Եվ նախանձողի չարիքից, երբ նա նախանձում է:”»

## Սուրա 114 Ան-Նաս

**[Մարդկություն]**

Ալլահի Անունով Առ-Ռահման *(Ամենաբարեգութ)*,
Առ-Ռահիմ *(Ամենաողորմած)*

1 «Ասա *(Ով Մուհամմեդ)*.“Ես փնտրում եմ ապաստանը *(Ալլահի)* մարդկության Տիրոջ,»

2 « Մարդկության Արքայի, »

3 « Մարդկության Աստծո, »

4 «Շշնջացողի չարիքից *(սատանայի, ով շշնջում է չարիք մարդկանց սրտերում)*, ով հանում է *(իր շշնջոցով մարդու սրտից մեկ առ մեկ Ալլահին հիշատակելը)*, »

5 «Ով շշնջում է *(չարիք)* կրծքերի մեջ *(սրտերում)* մարդկության, »

6 « *(Այս շշնջացողը, ով կարող է լինել)* ջիներից կամ մարդկությունից *(շատ մարդիկ կարող են շշնջալ ուրիշ մարդկանց անել վատ արարքներ և համոզել նրանց, մինչ նրանք իրոք անում են:)* »

# ԿԱՐԵՎՈՐ ՀԱՐՑԵՐ ՄՈՒՍՈՒԼՄԱՆԻ ԿՅԱՆՔՈՒՄ

1. Որտեղի՞ց է մուսուլմանը վերցնում իր « ակիդան»: Նա վերցնում է այն Բարձրյալ Ալլահի Գրքից և Նրա Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ճշգրիտ Սուննայից, որը չի ելնում քմահաճույքից: «Այն, նրան ներշնչած հայտնություն է:» (Սուրա 53,«Աստղ» այաթ 4): Այն համաձայնեցված է նրա ուղեկցորդների և ուղղափառ հետևորդների հասկացությամբ:

2. Եթե մեզ մոտ տարաձայնություն է առաջանում, ապա ի՞նչ պետք է անել: Մենք պետք է դիմենք Շարիաթին և ցանկացած հարցի դիրքորոշումը վերցվում է Ալլահի Գրքից և Նրա Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) Սուննայից: Ամենաբարձրյալ Ալլահն ասում է. «Եթե դուք սկսեք վիճել ինչ որ բանի շուրջ, ապա դիմեք դրանով Ալլահին և Մարգարեյին:» (Սուրա 4 «Կանայք», այաթ 59)

Ալլահի Մարգարեն ասաց.« Ես թողել եմ ձեզ երկու բան, որ եթե դուք հետևեք դրանց, դուք երբեք մոլորության մեջ չեք ընկնի: Դրանք են Ալլահի Գիրքը և Նրա Մարգարեի Սուննան:» (Իմամ Մելիք « Ալ-Մուվատտա»)

3. Ո՞վ կլինի փրկված խումբը Դատաստանի Օրը. Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց.« Իմ համայնքը կբաժանվի յոթանասուն երեք խմբի: Նրանք բոլորը կմտնեն Կրակ, բացի մեկից:» Մարդիկ հարցրեցին, « Օ, Ալլահի Առաքյալ, իսկ ի՞նչ խումբ է դա:» Նա ասաց. « Դա նրանք են, ովքեր հետևում են իմ և ուղեկցորդների ուղղուն:» (Ահմեդ)

Իրականում ճշմարտությունը այն է, ինչին հետևում էր Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), և եթե դու ձգտում ես փրկության և քո արարքների ընդունման Ամենաբարձրյալից, ապա պետք է հետևես նրանց ուղղուն և խուսափես նորամուծություններից, (բիդա):

4. Որո՞նք են անհրաժեշտ պայմանները, որ բարի գործերը ընդունվեն Ալլահի կողմից: **Սրանք են այս պայմանները.**

1) Հավատքը Ալլահին և միաստվածության: Ալլահին զուգընկեր տվողից (շիրկ գործողից), գործեր չեն ընդունվում:[1] 2) Անկեղծությունը (իխլաս): Արարքը պիտի արվի Ալլահի գոհունակության ձգտումով, (այսինքն, հանուն Ալլահի): 3) Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հետևելը արարքի կատարման ժամանակ: Այսինքն արարքը պիտի համապատասխանի նրան, ինչով եկել է մեզ մոտ Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), քանզի պետք է երկրպագել Ալլահին այնպես, ինչպես Նա է կանխագրել: Եթե այս պայմաններից որևէ մեկը չի արվում, ապա հետևյալ արարքը կմերժվի: Ամենաբարձրյալը ասում է «Մենք կզբաղվենք արարքներով, որոնք նրանք են արել և կդրաձնենք դրանք տարածվող փոշու:» (Սուրա «Բաժանող » 25,Այաթ 23)

5. Քանի՞ աստիճան է պարունակում իսլամական կրոնը: Դրանք երեքն են. իսլամ, իման, իհսան:

6. Ի՞նչ է իսլամը և քանի՞ սյուն ունի այն: Իսլամը Ալլահին ենթարկվելն է,

---

[1] Ամենաբարձրյալ Ալլահն ասում է.«Ճշմարիտ,Ալլահը չի ներում, երբ Նրան զուգընկեր են վերագրում, բայց ներում է մնացածը, (կամ ավելի փոքր մեղքերը), ում ցանկանում է » : (Սուրա 4 Կանայք այաթ 48)

միաստվածության սկզբունքով (տաուհիդ) և կատարելով որոշակի պարտականություններ և հրաժարվելով բազմաստվածությունից (շիրկից) և նրանցից, ովքեր կատարում են այդ: Այն ունի հինգ սյուն: Նրանց մասին հիշատակել է Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հադիթում. «Իսլամը բաժանվում է հինգ սյուների. Վկայություն այն մասին, որ չկա աստվածություն բացի Ալլահից, որ Մուհամմեդը Ալլահի Առաքյալն է, աղոթելը, զաքյաթ տալը, Հաջ կատարելը և Ռամադան ամսում պահք պահելը:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)

7. Ի՞նչ է Իմանը և քանի սյուն ունի այն: Իմանը( հավատքը), դա սրտով համոզմունք է, որը արտահայտվում է լեզվով և կատարվում է արարքներ համապատասխան դրան: Այն մեծանում է ըստ Ալլահին լսելով և փոքրանում է Նրան չլսելով: Ամենաբարձրյալ Ալլահն ասում է. «.......որպեսզի նրանց հավատքը մեծանա:» (Սուրա 48 «Հաղթանակ», այաթ 4): Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Հավատքը,( Իմանը) ներառում է ավելի քան յոթանասուն ճյուղեր: Ամենաբարձրը դրանցից վկայությունն է « Լե իլեհե իլլԱլլահ », իսկ ամենափոքրը փողոցից հեռացնելն է այն, ինչ խանգարում է մարդկանց անցնել: Եվ ամոթխածությունը նույնպես հավատքի ճյուղերից մեկն է:» (Մուսլիմ) Այն հավաստիացնում է մուսուլմանի մոտ առաջացող ջանքը երկրպագելու և հետևելու օրհնված ժամանակները (ռամադան, Հաջի կատարման օրերը և այլն): Այն հավաստիացվում է և անպատասխանատու վերաբերմունքը երկրպագման, մեղք գործողի կողմից: Ամենաբարձրյալ Ալլահն ասում է, « Ճշմարիտ, բարի արարքները ջնջում են չարիքը:» (Սուրա 11, «Հուդ » այաթ 114): Գոյություն ունի Իմանի վեց սյուն: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հիշատակել է դրանք հադիթում. « Այն է,երբ դու հավատում ես Ալլահին, Նրա հրեշտակներին, Նրա գրերին, Նրա առաքյալներին, Վերջին Օրվան և հավատում ես բարի և չարի կանորոշմանը:» (Ալ-Բուխարի)

8. Ինչ են նշանակում «Լե իլեհե իլա Ալլահ» խոսքերը: Մերժում է այն բանի, որ որևէ մեկը բացի Ալլահից, արժանի է երկրպագման և հաստատում է այն բանի, որ միայն Ալլահն է արժանի երկրպագման:

9. Մեզ հետ է արդյո՞ք Ալլահը: Այո, Ամենաբարձրյալ Ալլահը մեզ հետ է Իր գիտելիքներով, տեսողությամբ և լսողությամբ, ինչպես նաև Իր պաշտպանությամբ, հոգատարությամբ, հզորությամբ և կամքով: Ինչ վերաբերվում է Նրան, ապա Ամենաբարձրյալը չի խառնվում արարածների հետ, ինչպես նաև ոչինչ արարածներից չի կարող ներառել [1] Նրան:

10. Կարելի է արդյոք տեսնել Ալլահին մեր աչքերով: Մուսուլմանները միահամուռ են այն բանում, որ հնարավոր չէ տեսնել Ալլահին այս աշխարհում, բայց հավատացյալները կտեսնեն Նրան, երբ կհավաքվեն Դատաստանի Օրը, ինչպես նաև Դրախտում:Ամենաբարձրյալ Ալլահը

[1] Այստեղ պիտի հասկանալ, որ ոչ ոք չի կարող ըմբռնել Ալլահին իր մտքով:

ասել է. «Այդ օրը որոշների դեմքերը կփայլեն և կնայեն իրենց Տիրոջը:» (սուրա 75 «Հարություն», այաթներ 22-23)

11. Ի՞նչ օգուտ է թաքնված Ալլահի Անունների և Նրա Ածականների գիտության մեջ: Առաջին պարտականությունը, որ Ալլահը դրել է մեր վրա, Ամենաբարձրյալ Ալլահի գիտակցությունն է: Եվ, եթե մարդիկ գիտեն Իրեն, նրանք անպայման կերկրպագեն նրան արժանավույն ձևով: Ամենաբարձրյալ Ալլահն ասում է, «Իմացիր, որ չկա աստված բացի Ալլահից:» ( սուրա 47 «Մուհամմեդ», այաթ 19)

Հիշողությունը այն մասին, որ Ալլահին բնորոշ է անսահման գթասրտությունը, հույս է տալիս: Հիշողությունը այն մասին, որ Նրա պատիժը դաժան է, հիմք հանդիսանում վախի: Իսկ ճանաչումը նրա, որ Նա միակն է պարգևում բարիք, հանդիսանում է հիմք երախտապարտության: Ալլահի Անունների և Ածականներին երկրպագելը, ներառում է համընդհանուր հասկացություն դրանց իմաստի և արարքներ համապատասխան դրանց: Ալլահի Անունների և Ածականների մեջ կան այնպիսիններ, որոնց ունենալը մարդու համար գովելի է, ինչպիսիք են գիտելիքը, գթասրտությունը և արդարությունը, կան նաև այնպիսիններ, որոնք վերաբերվելով մարդուն, բերում են նրան պարսավանք, ինչպիսիք են աստվածայնություն, մեծամտություն և գոռոզություն: Մարդ կարող է ունենալ հատկություններ, որոնք գովելի են նրա համար և որոնք վերագրված են նրան ունենալ,բայց նրանք չեն կարող վերաբերվել Ամենաբարձրյալ Աստծոն, այնպիսիք են, ինչպես ստրկական հանդուրժողականությունը և հնազանդությունը, (**Ալլահին**), անհրաժեշտությունը (**Ալլահի**), Ալլահին դիմելը խնդրանքներով և այլն: Ճշմարիտ, Ալլահին ամենասիրելին Նրա արարածներից նրանք են, ովքեր ունեն գծեր, որորնք Նա է սիրում, իսկ ամենաատելին նրանք են, ում բնորոշ են հատկություններ, որոնք Նա չի սիրում:

12. Ի՞նչ հիասքանչ Անուններ կան Ալլահին: Ամենաբարձրյալ Ալլահը ասում է. «Ալլահն ունի ամենահիանալի Անունները: Այսպիսով կոչեք Նրան դրանց միջոցով.....»: (սուրա 7 «Բարձրություն» այաթ 180)

Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «Ճշմարիտ, Ալլահն ունի իննսունինը անուն, հարյուր առանց մեկի: Ով կհաշվի դրանք, կմտնի Դրախտ:» (Ալ-Բուխարի) «Հաշվել»

բառը հադիթում ունի իր իմաստով մի քանի աստիճան:

1) Կարողություն հաշվել այս անունները:

2) Նրանց իմաստի հասկանալը: Օրինակ, ասելով «Ալ –Հակիմ» (Իմաստուն), մարդ պետք է ենթարկվի Ալլահի պատվիրաններին, համոզված լինելով, որ բոլոր դրանք համապատասխանում են Նրա իմաստությանը: Իսկ ասելով «Ալ-Կուդդուս» (Մաքուր, զուրկ թերություններից), մարդ պիտի հիշի, որ Ալլահը հեռու է ամեն թերությունից:

3) Դիմումը Ալլահին դրանց հիշելով, այս դիմումը բաժանվում է երկու աստիճանի, Ա) խնդրանք երկրպագում և գովաբանում, Բ) խնդրանք – դիմում:

Եթե հետևել Ղուրանի այաթներին և հավաստի սուննայի տեքստերին, ապա դրանց կարելի է հավաքել, ահա դրանք. «Դրանք են.

| Անուն | Իմաստը |
|---|---|
| Ալլահ | Նա, ով ունի աստվածայնություն և և Նա, ով ունի իրավունք, որ Իրեն երկրպագեն բոլորը, Նա Աստված է, ով արժանի է հնազանդության և հանդուրժողականության մեր կողմից: Բոլոր տեսակի երկրպագումները կարող են ուղղվել միայն Նրան: |
| Ալ-Ռահմեն[1] الرحمن | Գթառատ,հետևյալ էպիտետը Ալլահի, նշում է Ամենաբարձրյալի գութի առատությունը և ընդարձակությունը դեպի բոլոր արարածները: Բացի դրանից այս անունը պատկանում է միայն Ալլահին և չի կարելի մեկ ուրիշին կոչել այդպես: |
| Ալ-Ռահիմ الرحيم | Գթասիրտ, Նա, ով նվիրում է հավատացյալներին գթասրտություն և ներում այս և Հավիտենական կյանքում, որոնց Նա ուղղորդել է երկրպագել Իրեն: Իր գթությամբ, Նա առատորեն կպարգևատրի նրանց Դատաստանի Օրը Դրախտով: |
| Առ-Ռաուֆ الرؤوف | Մեղմ, կարեկցող; Ալլահի այս էպիտետը մատնանշում է կարեկցանք և խղճահարություն բոլոր արարածներին այս կյանքում և ոմանց հավերժ կյանքում, Նրան մոտ հավատացյալներին: |
| Ալ- Ղանի الغني | Հարուստ, Ինքնաբավարարված ամեն ինչում; Նա, ով ունի բացարձակ կատարելություն և իր էպիտետների բացարձակ իդեալ, ոչ ոքի կարիքը չունի իր արարածներից, բայց Նրա արարածները կարիք ունեն նրա և կախում ունեն նրա բարիքների և օգնության: |
| Ալ-Քարիմ الكريم | Առատաձեռն, Ալլահի հետևյալ էպիտետը մատնանշում է, որ Ամենաբարձրյալը ունի շատ բարիք, և որ նա անսահման առատաձեռն է: Անկախ նրանից, թե Նրան խնդրել են թե ոչ, Նա պարգևատրում է ում ցանկանում է և ինչ ցանկանում է: Նա նույնպես ներում է մեղքերը և քողարկում է իր ստրուկների թերությունները: |
| Ալ-Աքրամ الأكرم | Ամենաառատաձեռն; Ալլահի հետևյալ էպիտետր մատնանշում է, որ Նա չափազանց առատաձեռն է, չկա Նրան հավասար, ամեն բարիք գալիս է Նրանից, կպարգևատրի Նա հավատացյալին Իր գթությամբ, իսկ անհավատին կդատի արդարացիորեն: |
| Ալ-Վահաբ الوهاب | Նվիրող առատորեն; Ալլահի այս էպիտետը մատնանշում է Ամենաբարձրյալի անսահման նվերների մասին, որոնք ունենում են Նրա արարածները: |
| Ալ- Ջավադ الجواد | Մեծահոգի Առատաձեռն; Ալլահի հետևյալ էպիտետը մատնանշում է, Ամենաբարձրյալի անսահման նվիրատվությունների և գթության մասին, և որ հավատացյալները ստանում են այդ գութի և նվիրատվությունների մեծամասնությունը: |
| Ալ-Վասի الواسع | Ամենաընդգրկուն; Նա, ում ատրիբուտը ընդարձակ է և ոչ ոք ի վիճակի չէ, գովերգել նրան պատիճ ձևով: Նա, ում մեծությունը և իշխանությունը հզոր է, Նա, ում գութը մեծ է ամեն արարածի համար: |

[1].Առ-Ռահմեն, այն մեկն է, ով ունի գութ բոլոր արարածների հանդեպ: Բացի դրանից, այս անունը պատկանում է միայն Ալլահին և չի կարելի կոչել մեկ ուրիշին այդպես:

| | |
|---|---|
| Ալ-Մելք<br>الملك | Թագավոր; Նա, ով ունի կատարյալ իշխանություն: Նա տնօրինում է ամեն ինչ, և Նա պարտավորված չէ հաշվետու լինել ոչ ոքի դեմ այն բանի համար, ինչ անում է Իր իշխանությամբ: |
| Ալ-Մալիք<br>المالك | Տիրակալ, Ամենաիշխող; Ալլահի հետևյալ էպիտետը նշում է այն, որ ամբողջ իշխանությունը օրինական ձևով պատկանում է միայն նրան: Իշխանությունը պատկանում էր Նրան, երբ Նա արարում էր կյանք և կպատկանի կյանքից հետո: |
| Ալ-Մելիք<br>المليك | Միապետ; Ալլահը կատարյալ Միապետ է, ով չունի զուգընկեր: Նա ոչ ոքից չի փնտրում օգնություն: Նա նվիրում է իր տիրույթներից ում ցանկանում է և ինչ ցանկանում է: |
| Ալ-Կուդդուս<br>القدوس | Սուրբ, Կատարյալ; Մաքուր թերություններից, ամեն անարժան բանից, որովհետև Նա լիարժեք կատարելություն է: |
| Աս-Սալամ<br>السلام | Անթերի; Նա, ով զուրկ է ամեն արատից, ամեն թերությունից Իր էությամբ, ատրիբուտներով, անուններով և արարքներով: Ամբողջ բարեկեցություն, որ ստանում է ստրուկը և մնացյալ արարածները, գալիս է Նրանից: |
| Ալ- Մումին<br>المؤمن | Անվտանգություն նվիրող, Հավատարիմ; Նա, ով հավատում է Իր առաքյալներին և նրանց ուղեկցորդներին և վկայում է նրանց, իրենց հավատարմությունը: Ավելին, Նա կբերի ապացույցներ նրանց հավատարմության: Ամեն անվտանգություն լինի դա այս կյանքում, թե ապագա, գալիս է Ալլահից: Ամենաբարձրյալը խոստացել է Իրեն հավատացողներին, որ Իր արարածներից ոչ ոք չի պատժվի անարդարացիորեն և նրանց չի պատի դատաստանի Օրվա ահը: |
| Ալ-Մուհեյմին<br>المهيمن | Հոգաբարձու, Կառավարող, Հոգ տանող, հովանավորող; Ալլահը պահում է բոլոր արարածներին Իր իշխանության տակ, Նա կառավարում է ամեն ինչ, ինչ կատարվում է, հոգ է տանում արարածներին և հովանավորում է նրանց: |
| Ալ-Ազիզ<br>العزيز | Ամենահզոր; Ալլահը ունի հզորություն բոլոր առումներով: Եվ ուժի իմաստով, չկա Նրանից ուժեղ, և միակության առումով, չկա ոչինչ Նրա նման, և հայտնիության և հռչակի առումով: |
| Ալ-Ջաբար<br>الجبار | Հզոր; Ում կամքով տեղի է ունենում ամեն ինչ, ում կամքը չի մնում անկատար: Նա, ում կամքին և իմաստությանը ենթարկվում են բոլոր արարածները: Նա մխիթարում է նեղվածին, հարստացնում է աղքատին, հեշտացնում է դժվարությունները, և ապաքինում է հիվանդին: |
| Ալ-Մուտակաբիր<br>المتكبر | Գերիշխող, Հպարտ; Ալլահին վերաբերվող հպարտությունը դա բարիք է, այն նշում է, որ Ալլահը կգերիշխի իր արարածների վրա, ոչ միայն իր էությամբ, այլև Նա վեր է ամեն չարիքից, որոնք նրանք կատարում են, այնպես որ Նա չի ընդունում ոչինչ բացի բարիքից: Հադիթում ասվում է. «**Ալլահն ասում է. « Ես վեր եմ այն բանից, որ կիսեմ ձեր երկրպագությունը զուգընկերոջ հետ...:»»** |
| Ալ-Քաբիր<br>الكبير | Հսկա, Մեծ; Նա, Ում մոտ որակներում և գործողություններում գերիշխում է իրական մեծությունը, ոչինչ չի հանդիսանում հզոր Նրանից, հակառակը ամեն ինչ բացի Նրանից չնչին են: |
| Ալ-Մուտաալ<br>المتعال | Բարձրյալ; Նա,Ում էությունը ամենից բարձր է, ամեն ինչ իր բարձրության դեմ արհամարելի է: Ոչինչ չի գերազանցում Նրա |

| | |
|---|---|
| | մեծության, ամբողջ իշխանություն Նրա մեծության մեջ է: |
| Առ-Ռաբ<br>الرب | Աստված; Նա, ով օգնում է իր արարածներին բերեկեցությամբ, ինչպես նաև նա օգնում է Իր հավատացյալներին լավացնելով նրանց սրտերը: Նա է Արարիչը, Թագավորը և տիրակալը: |
| Ալ-Ազիմ<br>العظيم | Ամենահզորագույն; Նա,ում պատկանում է բացարձակ մեծություն իր էությամբ, անուններով, և ատրիբուտներով: Հետևաբար, Նրա արարածները պետք է պատվեն Նրան և մեծարեն, ինչպես նաև վերաբերվեն լրջությամբ նրա հրամաններին և արգելքներին: |
| Ալ-Կադիր<br>القدير | Ընդունակ, Հզորության Տիրակալ; Նա, Ով կարող է ամեն ինչ: Նրան չի կարող հաղթել ոչ երկրի վրա, ոչ երկնքում: Նա Մեկն է, ով ամեն ինչ կանխորոշել է: |
| Ալ-Կադեր<br>القادر | Ամենահզոր; Նա, Ով կարող է ստեղծել կյանք, ոչինչից և կարող է դարձնել ոչինչ: Անող ամեն ինչ իմաստուն: |
| Ալ-Մուկտադիր<br>المقتدر | Ամենահզոր; Ալլահի հետևյալ էպիտետը նշում է Ամենաբարձրյալի ուժերի գերիշխանությունը ծավալների հետ կապված, ըստ Իր նախորդող գիտելիքների: |
| Ալ-Խալակ<br>الخلاق | Արարիչ; Ալլահի հետևյալ էպիտետը տարբերվում է նախորդներից նրանով, որ լինելով կազմված բայի գերադրական աստիճանից, այն ցույց է տալիս Ալլահի արարածների բազմակիությունը, համախականությունը և վերարտադրությունը արարման գործընթացների, այնքան որքան ցանկայի կլինի Ամենաբարձրյալին: |
| Ալ-Խալիկ<br>الخالق | Ստեղծող;Հետևյալ էպիտետր պատկանում է Նրան, ով ոչինչից ծնում է կյանք և ոչինչից կարող է ստեղծել արարած: |
| Ալ-Բարի<br>البارئ | Կերտող; Այս անունը մատնանշում է այն բանը, որ Ալլահը նվիրում է կյանք այն արարածներին, որոնց նա կանխորոշել է լինել կենդանի: Նա, նույնպես բաժանել է բոլոր կենդանի էակները տեսակների, ամեն մեկին տվել է իր յուրահատուկ կերպարը և տվել է իր նպատակը գոյատևման: |
| Ալ-Մուսավիր<br>المصور | Կերպարանք տվող; Նա, ով տվել է Իր արարածներին այն կերպարանքը, որը Նա ընտրել է ըստ Իր իմաստության, գթության և գիտելիքների: |
| Ալ-Ավվալ<br>الأول | Առաջին, Սկիզբ; Նա, Ով Նախորդել է Ամենին: Բոլոր արարածները ստեղծվել են Նրա կողմից: Նա Առաջինն է, Անսկիզբ և Անվերջ: |
| Ալ-Ախիր<br>الأخر | Վերջին, Ով չունի վերջ; Նա, Ումից հետո չի լինի ոչինչ, բացի Նրանից: Նա, Ով կմնա ստեղծվածների ոչնչացումից հետո, և բոլոր արարածները կվերադառնան նրան: Նա, Ում չկա վերջ, հավերժ մնացող: |
| Ազ-Զահիր<br>الظاهر | Ակնհայտ; Արտահայտվող բազմակի փաստերում, որոնք վկայում են Նրա գոյությունը: |
| Ալ-Բատին<br>الباطن | Թաքուն; Արտացոլվող տարբեր փաստերում, որոնք վկայում են Նրա գոյությունը: |
| Աս-Սամինա<br>السميع | Ամենալսող; Նա, Ով ընկալում է Իր լսողությամբ բոլոր ձայնիքները, նույնիսկ ամենացածր ձայները, նաև Նա ընդգրկում է ակնհայտն ու բացահայտը: Նա, Մեկն է, Ով պատասխանում է խնդրանքին: |
| Ալ-Բասիր | Ամենատես; Նա, Ով ընդգրկում է Իր տեսողությամբ ամեն ինչ |

| | |
|---|---|
| البصير | աշխարհում, բացահայտ և գաղտնին: Նա, Ով ընդգրկում է Իր տեսողությամբ նույնիսկ ամենաչնչինը: |
| Ալ-Աֆֆու العفو | Ներողամիտ; Ալլահի հետևյալ էպիտետը նշում է այն, որ Ամենաբարձրյալը մաքրում է մեղքերը և ներում է նրան և չի պատժում դրանց համար,չնայած որ ստրուկը արժանի է պատժի: |
| Ալ-Ղաֆուր الغفور | Ամենաներող; Նա, ով քողարկում է մեղսագործին չցուցադրելով նրա մեղքերը և չի պատժում նրան արարքների համար: |
| Ալ-Ղաֆֆար الغفّار | Ներող (մեղքերը և սխալ արարքները), Ալլահի հետևյալ էպիտետը մատնանշում է Ամենաբարձրյալի ներման մեծությունը, ներում խնդրող ստրուկին,մեղք գործելուց հետո: |
| Աս-Սիտտիր الستير | Քողարկող; Նա, ով քողարկում է իր ստրուկին, չի բացահայտում նրան, նաև Աստծոն պետք է, որ ստրուկը քողարկի իրեն և մյուսներին, չցուցադրելով իր և ուրիշների թերությունները: |
| Ալ-Հալիմ الحليم | Զուսպ[1]; Նա, ով չի շտապում պատժել Իր ստրուկին, չնայած Իր կարողության, այլ հակառակը, ներում է նրան, եթե նա դիմում է թողությամբ: |
| Ալ-Լատիֆ اللطيف | Մեղմ, Քնքուշ,Լավ; Նա, ով գիտի ցանկացած բանի փոքրագույն կողմերը, ոչինչ թաքցրած չէ նրանից: Նա, ով հասցնում է մարդկանց Իր բարիքը առանց նրանց իմացության: |
| Ալ-Վիտր الوتر | Միակ, զույգ չունեցող; Նա, ով չունի զուգընկեր և հակառակորդ: |
| Ալ-Ջամիլ الجميل | Գեղեցիկ; Նա գեղեցիկ է Իր էությամբ, Գեղեցիկ է Իր անուններով և ատրիբուտներով և կատարյալ գեղեցիկ է իր արարքներով: Ամբողջ գեղեցկությունը, որը արտացոլվում է Նրա արարածների մեջ, առաջանում է Նրանից: |
| Ալ-Աելի العلي | Ամենաբարձրյալ; Այն բարձրյալը, Ով անգնահատելի բարձր է: Նա, ում էությունը, հզորությունը և ուժը ամենաբարձրն է, ամեն բան գտնվում է Նրա իշխանության տակ: |
| Ալ-Ալյա الأعلى | Գերագույն Բարձրյալ; Նա, Ում բարձրությունը անգնահատելի է: Նա, Ով բարձր է ամեն ինչից: Նա, Ում էությունը, հզորությունը և ուժը գերագույն բարձր են: Նա, ով չունի Իրեն հավասար, մրցակից, զուգընկեր: |
| Ալ-Վահիդ الواحد | Միակ; Ալլահի հետևյալ էպիտետը նշում է այն, որ Ալլահը եղել է Միակը հավերժ և կլինի Միակը միշտ, այնպես որ Նա կարիք չունի ոչ ոքի: Չկա ոչ ոք բացի Նրանից և ոչ ոք հավասար չէ Նրան: |
| Ալ-Ահադ الأحد | Միակ; Նա, Միակն է, ով ունի լիարժեք կատարելություն ամեն ինչում և ոչ ո ք չի հանդիսանում Նրան զուգակից այս ոլորտներում: Չկա ոչինչ Նրա նման: Հենց այս էլ պարտավորում է մեզ երկրպագել Նրան առանց զուգընկեր տալու: |
| Աս-Սամադ الصمد | Հավերժ, Ինքնաբավարար; Նա, ով լիարժեք կատարյալ է Իր տիրակալությամբ: Նա, ում դիմում են Նրա արարածները |

[1] Այստեղ նկատի է առնվում այնպիսի համբերություն, որի ժամանակ նրա տերը ունի հնարավորություններ և ուժ պառժելու մեղավորին, բայց չի անում այդ :

| | |
|---|---|
| | օգնության համար: Նա, ում կարիքը ունեն բոլորը ամեն ինչում, իսկ Նա կարիք չունի ոչինչի և ոչ ոքի: |
| Ալ-Կահիր<br>القاهر | Հաղթանակող; Նա, ով հաղթում է իր ստրուկներին և հնազանդեցնում է նրանց: Նա գերիշխում է նրանց: Նրան են ենթարկվում բոլորը: |
| Ալ- Կահար<br>القهار | Ամենայն հաղթանակող; Նա, Ով Իր վեհությամբ և հզորությամբ հնազանդեցնում է արարածներին: Նա, Ում վեհությանը հնազանդ են արարածները: |
| Ալ-Հակ<br>الحق | Իրական; Նա, Ում մասին չկա կասկած, նույնպես չկա կասկած Նրա անուններում, ատրիբուտներում, չկա կասկած նաև նրանում, որ Նա հանդիսանում է Միակը, ով արժանի է երկրպագման: |
| Ալ-Մուբին<br>المبين | Պարզաբանող; Նա, Ում էությունը հասկանալի է Իր Միակությամբ, իմաստությամբ և գթասրտությամբ:Եվ Նա, Մեկն է, ով դնում է Իր ստրուկներին ճշտի ուղղու, որպեսզի նրանք քայլեն դրանով, նույնպես Նա ցույց է տալիս սուտ ճանապարհները, որ նրանք խուսափեն դրանցից: |
| Ալ-Կավի<br>القوي | Ամենահզոր; Կատարյալ, լիարժեք հզորության և կատարյալ կամքի տիրապետող: |
| Ալ-Մատին<br>المتين | Ամուր, Անսասան; Ամուր Իր ուժով և հզորությամբ, Նրան չի հասնում իր արարքներում ոչ հոգնածություն, ոչ հյուծվածություն, ոչ դժվարություն: |
| Ալ-Հայիյի<br>الحيي | Ամոթխած, ամաչկոտ; Նա, Ում մոտ գոյություն ունի ամոթխածության և ամաչկոտության որակները, որոնք բնորոշ են նրա վեհության, հզորության կերպարում: Ամենաբարձրյալի այս որակում արտացոլվում է Նրա առատաձեռնությունը, բարությունը, մեծահոգությունը: |
| Ալ-Հայ<br>الحي | Հավերժ կենդանի; ՆԱ, Ով ունի բացարձակ հավերժ կյանք: Նա, Ում կյանքը չունի սկիզբ և վերջ և ամբաղջ կյանքը երկրի վրա գալիս է Նրանից: |
| Ալ-Կայում<br>القيوم | Ինքնուրույն; Գոյություն ունեցող առանց կարիքների ինչ որ մեկի: Նա կարիք չունի որևէ մեկի կամ բանի: Նա, Ով հոգ է տանում ամեն ինչի մասին երկնքում և երկրում, բոլորը ունեն Նրա կարիքը: |
| Աշ-Շակիր<br>الشاكر | Պարգևատրող, Երախտապարտ; Նա, ով գովում և ենթարկում է նրան, ով ենթարկվել է Նրան և տալիս է մեծ պարգև իր ստրուկին և նրա չնչինը հասցնում է աստվածահաճո ծառայության մինչ կատարելություն, իսկ շնորհակալության համար պարգևատրում է այս կյանքում և պարգևատրում է ապագայում: |
| Աշ-Շակուր<br>الشكور | Երախտապարտ; Նա, ով բազմապատկում է ստրուկների լավ արարքները և բազմապատկում է նրանց պարգևը, շնորհակալություն արտահայտելով ստրուկը ստանում է Ալլահից, ընդունում է հնազանդություն, և ստանում է պարգև: |
| Ալ-Ֆատահ<br>الفتاح | Բացահայտող, Բարիք Տվող; Նա, ով բացահայտում է Իր հարստությունը, գութը և գոյության միջոցները այնքան, որքան պահանջում է նրա իմաստությունը և գիտելիքները: |
| Ալ-Ալիմ | Ամենաիմացողը; Նա,Ով գիտի ամեն ինչ, բացահայտ և գաղտնին, |

| | |
|---|---|
| العليم | թաքցրածը և անկեղծը, անցյալը, ներկան և ապագան, Նրանից ոչինչ թաքցված չէ: |
| Ալ –Հակիմ<br>الحكيم | Իմաստուն; Նա, ով սահմանել է նշանակում այն ամենի, ինչ Նա արարել է և Նրա կառավարման մեջ չի կարող լինել թերիություն, սխալ: |
| Ալ-Խաբիր<br>الخبير | Իմացող; Նա, ով գիտի ամեն գաղտնին և բացահայտը ամեն բանում և նրանց ներքին էությունը: |
| Աթ-Թավվաբ<br>التواب | Ընդունող թողությունը; Նա, ով տալիս է հնարավորություն թողության նրան, իր ստրուկներից, ում թողությունը ցանկանում է ընդունել: |
| Ալ- Կարիբ<br>القريب | Մոտիկ; Նա, ով մոտ է Իր գիտելիքներով և ուժով Իր արարածներին: Նա առավել մոտ է Իր ստրուկներին, հավատացյալներին և չնայած ամեն ինչի, Նա գահի վրա է: |
| Ալ-Մուդջիբ<br>المجيب | Խնդրանքին պատասխանող; Նա, ով ընկալում է աղոթողների խնդրանքները, ինչպես այդ պահանջում է Իր գիտելիքը և իմաստությունը: |
| Ալ-Վադուդ<br>الودود | Իր արարածներին սիրող; Այլահի հետևյալ էպիտետը մատնանշում է այն, որ Ամենաբարձրյալը արտահայտում է Իր սերը Իրեն մոտիկ ստրուկներին, նվիրելով նրանց Իր ներումը և գոհանում է նրանցով, ընդունելով նրանց արարքները: |
| Ալ-Վալի[1]<br>الولي | Մոտիկ Ընկեր, Իրեն հնազանդվողներին օգնող; Նա, ով կառավարում է իր տիրույթները և Իր արարածների արարքները, ինչպես նաև Նա հանդիսանում է պաշտպան և Օգնական Իրեն գոհացնողներին: |
| Ալ-Համիդ<br>الحميد | Գովասանքին արժանի; Արժանի բոլոր գովքերին Իր կատարյալ անունների, ատրիբուտների և արարքների պատճառով: Նա, ով արժանի է գովքի տխրության և ուրախության մեջ: Միայն Նա է արժանի գովքի, որովհետև Նրան է պատկանում լիակատար կատարելությունը: |
| Ալ-Մաուլյա<br>المولى | Հովանավորող; Նա հանդիսանում է տեր, թագավոր, արքա, պաշտպան, օգնական մոտիկներին: |
| Ան-Նասիր<br>النصير | Օգնական; Նա, Ով պաշտպանում է, ում ցանկանում է և ում նա պաշտպանի, նրան ոչ ոք չի հաղթի, իսկ նրան, ում Նա զրկի աջակցությունից, ապա նրան ոչ ոք չի օգնի: |
| Ալ-Հաֆիզ<br>الحفيظ | Պահապան; Նա, ով Իր գութով պահպանում է իր հավատացյալ ստրուկներին և նրանց արարքները, նաև Նա ապահովում է և պահպանում է Իր հզորությամբ Իր բոլոր արարածներին: |
| Ալ-Մաջիդ<br>المجيد | Փառավոր; Նա, Ով ունի պատիվ, հզորություն, առատաձեռնություն, գերիշխանություն երկնքում և երկրում: |
| Աշ-Շահիդ<br>الشهيد | Վկա ամեն ինչի; Նա, ով հետևում է իր արարածներին, նա վկայել է իր միակությունը և արդարությունը: Նա, նույնպես կվկայի հավատացյալներին նրանց միաստվածությունը, նաև կվկայի Իր առաքյալներով և հրեշտակներով: |
| Ալ- | Առաջ գնացող, առաջադեմ; Նա, Ով առաջ է մղում ամեն ինչ, |

[1] Շեշտը վերջին վանկին:

| | |
|---|---|
| Մուկադդիմ<br>المقدم | այնպես ինչպես պահանջում է Նրա կամքը և իմաստությունը: Նա, նույնպես Իր գթությամբ և գիտելիքներով առաջ է մղում Իր արարածներից ոմանց, առաջ անցնելով մյուսներից: |
| Ալ-Մուախիր<br>المؤخر | Ետ հրող; Նա, Ով սահմանում է ամեն ինչին իր դերը: Նա, Ով Իր հայեցողությամբ ետ է մղում ամեն ինչ ետ, նույնպես Նա հետաձգում է պատիժը: Պատիժը Իր ստրուկների, հույսով որ նրանք կմեղանչեն: |
| Ալ-Մուսաիր<br>المسعر | Գինը նշանակողը; Նա, ով բարձրացնում է կշիռը, արժեքը առարկաների և ազդեցությունը այդ առարկաների, կամ հակառակը, այնպես, որ այս առարկաները կամ կթանկանան, կամ կէժանանան: Այս ամենը կատարվում է Իր իմաստությամբ և գիտությամբ: |
| Ալ-Կաբիդ<br>القابض | Բարիք պահողը Իր մոտ; Նա, ով պահում է հոգիները Իր իշխանության տակ: Նա, ով Իր ուժով և իմաստությամբ պակասեցնում է բարիքը ում ցանկանում է, որպեսզի փորձի Իր ստրուկներին: |
| Ալ-Բասիտ<br>الباسط | Տարածող, Առատությամբ տվող; Նա, ով Իր գթությամբ և առատաձեռնությամբ առաքում է ճակատագիր որպես փորձություն Իր ստրուկների, ինչպես պահանջում է Իր իմաստությունը: Նաև պարգևատրում է Իր թողությամբ նրան, ով մեղք է գործել: |
| Ալ-Մուտտի<br>المعطي | Տվող, Առատաձեռն; Նա, ով տալիս է իր անսահման հարստությունից ում ցանկանում է, բայց Նրան արժանիները արժանանում են Նրա պարգևների մեծամասնությանը: Նա մեկն է, ով կյանք է պարգևել բոլորին և նվիրել է նրանց կատարյալ արտաքին: |
| Ադ-Դայան<br>الديان | Դատավոր,Հարգանք տվող; Նա, Ում ենթարկվել են Նրա բոլոր արարածները: Նա տալիս է Իր ստրուկներին իրենց արարքների համար, եթե նրանք բարիք են գործել, ապա այն կբազմապատկի, իսկ եթե նրանք վատ արարք են կատարել, կպատժի նրանց, կամ կների: |
| Ալ-Մաննան<br>المنان | Ամենագթասիրտ; Ալլահի հետևյալ էպիտետը մատնանշում է այն, որ Ամենաբարձրյալի նվերները, բարիքը, գթասրտությունը անսահման է: |
| Առ-Ռազիկ<br>الرازق | Սնունդ տվող, Նա ով տալիս է սնունդ Իր բոլոր արարածներին, Նա սահմանել է եզրեր Իր արարածներին, մինչ արարել է նրանց: |
| Առ-Ռազակ<br>الرزّاق | Սնունդ նվիրող; Ալլահի այս էպիտետը մատնանշում է հարստության առատությունը, որոնք նա նվիրում է Իր արարածներին, Նա Նվիրում է սնունդ, նույնիսկ եթե չեն դիմել նրան դրա համար: Նա նույնիսկ տալիս է նրանց սնունդ, ի հեճուկս նրանց մեղքերի: |
| Ալ-Վաքիլ<br>الوكيل | Հովանավոր, խնամակալ; Նա, ում հովանավորության տակ են գտնվում արարածները և աշխարհների կառավարումը: Նա ի սկզբանե ստեղծել և շարունակել է իր արարածները: Նա հովանավորում է հավատացյալներին, ովքեր վստահել են նրան և ովքեր խնդրել են օգնություն Նրանից, և ովքեր շնորհակալ են եղել նրան հաջողությունից հետո, և ովքեր գոհ են եղել այն բանով, ինչ Ալլահն է ուղարկել նրանց: |
| Առ-Ռակիբ<br>الرقيب | Դիտող; Նա, ով Հետևում է իր արարածների վիճակին: Գիտի և Ֆիքսում է նրանց բոլոր արարքները, Նրա վերահսկումից ոչինչ և |

| | |
|---|---|
| | ոչ ոք չի գնում: |
| Ալ- Մուհսին<br>المحسن | Բարերար; Նա, ում պատկանում է կատարելություն Իր գործում, ինչպես նաև Իր անուններում, ատրիբուտներում և գործողություններում, նա արարել է ամեն կենդանի կատարյալ ձևով և ցուցաբերել է Իր արարածներին գթասրտություն: |
| Ալ-Հասիբ<br>الحسيب | Հաշվի առնող, Ամեն ինչ ուշադրության և հաշվի առնող; Նա ապահովում է Իր ստրուկներին այն, ինչի կարիք ունեն իրենց հավատքում և կյանքում, իսկ հավատացյալներին կհասնի յուրահատուկ ապահովություն: Նա նույնպես կհարցնի Իր ստրուկներին այն արարքների համար, ինչ նրանք արել են կյանքում: |
| Աշ-Շաֆի<br>الشافي | Բուժող; Նա, ով բուժում է սրտեր և մարմիններ հիվանդություններից, քանի որ ստրուկների մոտ չկա բացի այն դեղերից, որոնք Ալլահն է տվել, իսկ ապաքինումը նվիրում է միայն Ալլահը: |
| Առ-Ռաֆիկ<br>الرفيق | Ուղեկցող, Բարի, Քնքուշ, Մեղմ; Նա, ով մեղմ է Իր արարքներում: Նա, Ամենաբարձրյալը համբերատար է և չի շտապում իր արարքներում և վերաբերվում է Իր ստրուկներին մեղմ և չի պարտադրում նրանց ոչ մի դժվար բան: Նա, նույնպես սիրում է, որ իր ստրուկը լինի քնքուշ: |
| Ալ-Մուկիտ<br>المقيت | Սնունդ տվող; Նա մեկն է, ով ստեղծել է հանապազորյա հաց և միջոցներ գոյատևելու և պարտավորվել է Իր արարածներից յուրաքանչյուրին ապահովել իր ճակատագրով: Նա պահպանում է նրանց ճակատագիրը և արարքները միասնական ձևով: |
| Ատ-Տայեբ<br>الطيب | Բարի, Լավ; Նա անբիծ է ամեն թերությունից և արատից, Միայն նրան է պատկանում գեղեցկության մեջ լիակատար կատարելությունը: Նրա բարությունը Իր արարածների նկատմամբ անսահման է: Ամենաբարձրյալը ընդունում է արարքներից բարեգործություն միայն այն, ինչ նվիրաբերվել է Հանուն Իրեն և ինչ նվիրաբերվել է թույլատրվածից: |
| Ալ-Հակամ<br>الحكم | Գերագույն Դատավոր; Նա, ով կառավարում է իր արարածներին արդարորեն և չի նեղացնում նրանցից որևէ մեկին: Նա, ով ուղարկել է իր գիրքը, Ղուրանը որպես դատավոր մարդկանց: |
| Ալ-Բառր<br>البر | Առաքինի; Նա, Ով անում է բարիք Իր ստրուկներին և ոչ ոք ի վիճակի չէ հաշվել Նրա բարիքը, Հավատարիմ պայմանագրին, խոստմանը: Նա, նույնպես ներում է Իր ստրուկին և պաշտպանում է նրան և ընդունում է նրանից ամենաչնչինն բարիքներից և բազմապատկում է այն: |
| Աս-Սուբուհ<br>السبوح | Արատներից զուրկ; Նա, ով զուրկ է արատներից և թերություններից, որովհետև Նրա մոտ լիարժեք կատարելություն է: |
| Ալ –Վարիս<br>الوارث | Ժառանգորդ; Նա, Ով մնում է հավերժ: Ում մնում է ժառանգություն Իր բոլոր արարածներից: Նա, Ում մնում է ամբողջ իշխանությունը Իր արարածների վերացումից հետո: Նա, Ով կվերադառնա նրա մոտ այս աշխարհից: |
| Ալ-Իլեհ<br>الإله | Աստված; Միակ աստվածը, ով արժանի է երկրպագման: |

**13. Ինչո՞վ են տարբերվում Ալլահի անունները Նրա Վերագրումներից**: Եվ Անունները և Վերագրումները Ալլահի, թույլատրվում են օգտագործել պաշտպանություն խնդրելուց [1] և երդում տալուց[2]: Բայց նրանց միջև կա տարբերություն: Կարևորագույնն են նրանցից.1.Անձնական անվան կազմելու ժամանակ, որը նշանակում է «Ռաբ...», իսկ աղերսանքի (դուայի) ժամանակ, որոնք դիմվում են Ալլահին, թույլատրելի է օգտագործել Ալլահի Անունները, բայց ոչ Նրան վերագիրները: Կարելի է տալ «Աբդուլ- Քարիմ» (Առատաձեռնի ստրուկ), որտեղ օգտագործվում է Ալլահի անուններից մեկը - «ալ-Քարիմ», բայց չի կարելի ասել «Աբդու –ալ-Քասիմ» (առատաձեռնության ստրուկ), որտեղ արդեն օգտագործվում է Ալլահի որակը «ալ-Քարամ»: Նույնպես դուայում կարելի է ասել «Յա Քարիմ» (Օ, Առատաձեռն), բայց չի կարելի ասել «Յա Քարամա-Լյահ», (Օ, Ալլահի առատաձեռնություն):

- Ալլահի անունից առաջանում է որակ: Օրինակ, «Առ-Ռահմեն» (Գթասիրտ) -ից առաջանում է որակ «առ-Ռահմա» (գթասրտություն): Իսկ Ալլահի վերագրումներից նոր Անուններ չեն առաջանում: Այսպես «իստիվա», որակից, որը նշանակում է (բարձրանալ Գահին), չի առաջանում անուն «ալ-Մուստավի», (Բարձրացող):
- Ալլահի զարծողություններից նույնպես չեն առաջանում նոր Անուններ: Օրինակ Ալլահի գործողություններից են բարկությունը, բայց չնայած դրան չի կարելի ասել, որ Ալլահի անուններից մեկն է «Բարկացող»: Ինչ վերաբերվում է Նրա վերագիրներին, ապապ նրանք առաջանում են Նրա գործողություններից: Այսպես, մենք հաստատում ենք, որ Ալլահի Վերագիրներից մեկը հանդիսանում է բարկությունը, որովհետր բարկությունը վերաբերվում է Նրա գործողություններին:

**14. Ի՞նչ է նշանակում հավատք հրեշտակներին**: Այն հաստատուն համոզմունք է իրենց գոյությանը, ինչպես նաև նրան, որ Ամենաբարձրյալ Ալլահը ստեղծել է նրանց, որպեսզի երկրպագեն Իրեն և կատարեն Նրա հրամանները. «Նրանք հարգելի ստրուկներ են: Նրանք չեն առաջ անցնում Նրան իրենց ճառերով և գործում են համաձայն Նրա հրամանների:» **(սուրա 21 «Մարգարեներ»,այաթ 26-27):**

**Հավատքը նրանց նկատմամբ, իր մեջ ներառում է հետևյալը.**

✸ Հավատք նրանց գոյությանը; ✸ Հավատք նրանց նկատմամբ, ում անունները մեզ հայտնի են, ինչպես Գաբրիելը: ✸Հավատք նրանց հատկություններին, որոնց մասին մեզ հայտնի են, ինչպես նրանց կառուցվածքի մեծությունը: ✸ Հավատք նրանց ֆունկցիաներին, որոնց մասին մեզ հայտնի է, ինչպես Մահվան Հրեշտակը:

---

[1] Օրինակ անունով. «Աուզու բիլեհի մին...», (դիմում եմ Ալլահի օգնությանը ...), կամ «Աուզու բի-ռ-Ռահմանի մին...», (Փնտրում եմ պաշտպանություն Ալլահի հզորությունից...,):

[2] Այսինքն մենք կարող ենք ասել. «Օկսիմու բիլեհ », (Երդվում եմ Ալլահով), կամ կարող ենք ասել. «Օկսիմու բի կուդրատի լեհի », (Երդվում եմ Ալլահի հզորությամբ) և այլն :

**15. Ի՞նչ է Ղուրանը:** Ղուրանը Ամենաբարձրյալ Ալլահի Խոսքն է, որի ընթերցումը հանդիսանում է երկրպագություն: Նա իջել է Նրանից, և Նրան է վերադառնում: Նա արտաբերում է դրանք իրականում, տառ և ձայն, իսկ Գաբրիելը, (խաղաղություն նրան), լսում էր դրանք Նրանից, և հետո հասցնում Մուհամեդ Մարգարեին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ): Եվ բոլոր երկնային Գրերը հանդիսանում են Ալլահի Խոսք:

**16. Կարո՞ղ ենք մենք անել միայն Ղուրանով, չընդունելով Մարգարեի(Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) Սուննային:** Այդպես չի կարելի անել, քանզի Ալլահը մեզ հրամայել է հետևել Սուննային, ասելով. «Վերցրեք այն, ինչ տվել է ձեզ Առաքյալը և խուսափեք այնից, ինչ նա արգելել է ձեզ:» (սուրա 59 «Հավաք», այաթ 7):

Բացի այդ Սուննան մեզ տրված է բացատրելու Ղուրանը, և այդ իսկ պատճառով շատ մանրամասներ կապված կրոնի հետ, ինչպես ճիշտ աղոթքը, կարելի է իմանալ միայն նրանից: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասել է. «Ճշմարիտ, ինձ տրված է Գիրք և նրա նմանը [1] նրա հետ: Կգա ժամանակ, երբ կուշտ մարդը իր անկողնում կխոսի մերժելով Սուննան,» Դուք պետք է հետևեք այդ Ղուրանին, և ինչ գտնեք այնտեղ թույլատրելի, ապա հաշվեք թույլատրելի, իսկ ինչ գտնեք այնտեղ արգելված, ապա հաշվեք արգելված:» (Ահմեդ, Աբու Դաուդ):

**17. Ի՞նչ է նշանակում հավատք առաքյալներին**: Այն հաստատուն համոզմունք է այն բանում, որ Ալլահը ուղարկել է ամեն համայնքի առաքյալ իրենցից, որպեսզի նրանք կոչեն նրանց միայն Ալլահին երկրպագելու և մերժեն ամեն հավատք, ինչ երկրպագում է Նրանից բացի ուրիշին: Եվ, որ նրանք բոլորը ճիշտ են, հաստատում է իսկությունը Ուղերձի և առաքյալների ճշմարտությունը, որոնք եղել են նրանցից առաջ, ողջախոհ, առաքինի, աստվածավախ, և վստահության արժանի: Նրանք շարժվում են ճիշտ ուղղով և ուղղորդում են դրան մարդկանց: Նրանք արարածներից լավագույնն են, և նրանք հեռու են, որ Ալլահին տան զուգընկեր, սկսած իրենց ծննդյան պահից մինչև մահը:

**18. Ի՞նչ տեսակի բարեխոսություններ (շաֆաա) կլինեն Դատաստանի Օրը:** Այն կլինի մի քանի տեսակ:

- Մեծ բարեխոսություն: Այդ կլինի սպասման ժամանակ, երբ մարդիկ կանգնած կլինեն հինգ հարյուր հազար տարի, սպասելով, թե երբ են նրանց դատելու, իսկ Մարգարե Մուհամեդը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) կբարեխոսի իր Տիրոջը և կխնդրի Նրան դատել նրանց: Այս բարեխոսությունը կտրվի միայն մեր Մարգարե Մուհամեդին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) և սա է «մեծ գովասանքի վիճակը», որը խոստացվել է նրան:
- Բարեխոսություն Դրախտի դարպասների բացմանը: Առաջինը, ով կխնդրի նրանց բացումը, կլինի մեր Մարգարե Մուհամեդը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), և առաջինը, ով կմտնի այնտեղ, կլինի նրա համայնքը:

---

[1] Այսինքն Սուննա

- Բարեխոսություն մարդկանց համար, որոնց հրամայված է մտնել Կրակ, որպեսզի նրանք չմտնեն այնտեղ:
- Բարեխոսություն Կրակ մտած այն մեղսագործների համար, որոնք Միաստվածության (տահուդի) հետևորդներ են, որպեսզի նրանք դուրս գան այնտեղից:
- Բարեխոսություն Դրախտի բնակիչների աստիճանների բարձրացման համար: Երեք տեսակի վերջին բարեխոսությունները կլինեն ոչ միայն մեր Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) կողմից, բայց այնտեղ նա ունի առավելություն: Նրան հետևում են մյուս մարգարեները, հրեշտակները, երեցները և Ալլահի ճանապարհին զոհվածները (շահիդները):
- Բարեխոսություն որոշակի մարդկանց համար, որ նրանք մտնեն Դրախտ առանց հաշվի:
- Բարեխոսություն, որոշ անհավատների պատիժների մեղմացման համար: Այս տեսակի բարեխոսությունը վերաբերվում է անմիջականորեն մեր Մարգարեին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ), որը նա կօգտագործի իր հորեղբոր Աբու Թալիբի համար, որպեսզի թեթևացնի նրա պատիժը:

Հետո, Ալլահը Իր գթասրտությամբ, դուրս կբերի Կրակից մարդկանց, ովքեր մահացել են լինելով Միաստվածության հետևորդներ, առանց որևէ մեկի բարեխոսության: Նրանց քանակը ոչ ոք չգիտի բացի Ալլահից, և նրանք բոլորը կմտնեն Դրախտ Նրա գթասրտությամբ:

**19.** Կարելի՞ է խնդրել օգնություն կամ բարեխոսություն (շաֆաա) կենդանի մարդկանցից: Այո, կարելի է: Շարիաթը դրդում է մեզ օգնել ուրիշներին: Ամենաբարձրյալ Ալլահը ասում է. «Օգնեք միմյանց աստվածավախության և բարեպաշտության մեջ:» (սուրա 5 «Ընթրիք», այաթ 2)

Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ալլահը օգնում է Իր ստրուկին այնքան ժամանակ, մինչ նա օգնում է իր հավատքով եղբորը:» (Մուսլիմ)

Ինչ վերաբերվում է բարեխոսությանը (շաֆաա), ապա նրա արժանիքը մեծ է և նրա տակ նկատի է ունենում միջամտություն: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Ով կբարեխոսի լավ միջամտությամբ, նրան կհասնի այդ բանից բաժին:» (սուրա 4 «Կանայք», այաթ 85)

Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Բարեխոսեք և դուք կպարգևատրվեք:» (Ալ-Բուխարի)

Բայց պետք է հետևել հետևյալ պայմաններին:

- Խնդրանքը կամ բարեխոսությունը պետք է ուղղվի կենդանի մարդուն: Մահացածը չի կարող օգուտ բերել նույնիսկ ինքն իրեն, ինչպե՞ս նա կբերի ուրիշին:
- Նա պիտի հասկանա իրեն դիմած խոսքերը, (խնդրանքը):
- Նա, ում դիմում են պիտի ներկա լինի:
- Խնդրանքը պիտի համապատասխան լինի նրան, ում դիմում են:
- Բարեխոսությունը պիտի վերաբերվի աշխարհիկ հարցերին:
- Այն պետք է վերաբերվի թույլատրելի հարցին, որում չկա վնաս:

Ի՞նչպիսին է Շարիաթի որոշումը կապված դուայի հետ, որը ուղղված է մեռած և բացակա մարդուն: Խնդրանքը, դիմումը մեռածին և բացակային, համարվում է շիրկ, որովհետև դուան հանդիսանում է երկրպագում և նրան արժանի է միայն Ամենաբարձրյալ Ալլահը: Նա ասում է. «...իսկ նրանց, ում դուք կանչում եք բացի Նրանից, չունեն նույնիսկ չնչինը, (որը բաժանում է արմավի կորիզը փափուկ մասից): Երբ դուք կոչում եք նրանց, նրանք չեն լսում ձեր խնդրանքները, և եթե նույնիսկ լսեյին ապա չեին պատասխանի ձեզ: Հարության Օրը նրան կմերժեն ձեր երկրպագումը: »

**(սուրա 35 «Արարիչ», այաթ 13-14):**

Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ով մահացել է կոչելով ինչ որ մեկին բացի Ալլահից, նա կմտնի Կրակ:» (Ալ-Բուխարի)

Եվ ինչպե՞ս կարելի է պահանջել ինչ որ բան մահացածից, եթե նա ինքն կարիք ունի, որ դուք, կենդանիները, նրա համար դուա անեք: Նրա բոլոր արարքները ավարտվել են մահվանից հետո, բացի պարգևներից, որոնք հասնում են նրան դուայի և այլնի շնորհիվ: Եվ մահացածը ուրախանում է, երբ նրա համար դուա են կարդում, այսպես որ, ինչպե՞ս կարելի է կոչել նրան, եթե նա կարիք ունի: Ինչ վերաբերվում է բացակային, ապա նա չի լսում այն, ինչ հեռու է նրանից, այսպիսով ինչպե՞ս նա կարող է պատասխանել:

**20.** Քանի՞ տեսակի մոտեցում (տավասուլ) Ալլահին կա: Երկու տեսակի.

**1- Թույլատրելի, այն բաժանվում է երեք տեսակի**

- Ամենաբարձրյալ Ալլահին մոտենալ Իր Անուններով և Վերագիրներով:
- Ալլահին մոտենալը որոշ բարի գործերի շնորհիվ, ինչպես քարանձավի երեք մարդիկ[1]:

---

[1] Ահա այն պատմությունը, ինչպես այն հիշատակվում է «Ուղղափառների Այգիներ» գրքում: Աբու Աբդուռ-Ռահմեն Աբդոուլլահ իբն ոՈւմար իբն ալ-Խատաբը, թող Ալլահը օրհնի նրանց ասաց, որ լսել է, թե ինչպես Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց, որ մի անգամ երեք մարդ նրանցից, ովքեր ապրում էին ձեզանից առաջ և ճանապարհորդում էին: Մի ահգամ նրանք գնացին ճամփորդելու և մինչ կանգ առան գիշերելու ինչ որ քարանձավում: Երբ նրանք մտան այնտեղ, ժայռից պոկվեց մի մեծ քար և ամբողջովին փակեց նրանց մուտքը այնտեղից: Այդ ժամանակ նրանք ասեցին, «Ճշմարիտ, այս քարից մեզ կարող է փրկել միայն խնդրանքով դիմումը Ամենաբարձրյալ Ալլահին, որ Նա ազատի մեզ դրանից մեր բարի գործերի համար ;» ԴՐանից հետո նրանցից մեկը ասաց, «Օ, Ալլահ, ես ունեյի ծեր ծնողներ և երեկոները ես երբեմն չէի կերակրում կաթով ոչ տնեցիներին, ոչ ստրուկներին մինչ չէի բերում կաթ նրանց: Մի անգամ փայտի փնտրտուքը ինձ հեռացրեց տանից, և երբ ես վերադարձա, նրանք արդեն քնել էին : Ես կթեցի կովին, և իմանալով որ նրանք քնել են չցանկացա ոչ արթնացնել նրանց, ոչ խմեցնել տնեցիներին և ստրուկներին նրանցից առաջ : Մինչ առավոտ ես սպասում էի թասը ձեռքիս, և այդ ամբողջ ժամանակ երեխաները սովից բղավում էին ոտքերիս տակ : Հետո իմ ծնողները արթնացան և ըմպեցին իրենց երեկոյան ըմպելիքը : Օ, Ալլահը, եթե ես այդ արել եմ Հանուն Քեզ,ապա փրկիր մեզ այս իրավիճակից, որում մենք հայտնվել ենք այս քարի պատճառով:» Եվ դրանից հետո քարը շարժվեց բացելով տեղ, բայց ոչ այնքան, որ հնարավոր լիներ դուրս գալ այնտեղից : Մյուսը ասաց. «Օ, Ալլահ, ճշմարիտ, ես ունեյի զարմուհի, որին ես սիրում էի բոլոր մարդկանցից շատ ...»: Մեկ այլ տարբերակում այս հադիթի ասվում է, որ նա ասաց. «... և ես սիրեցի նարն այնքան ուժգին, որքան կարող է տղամարդը սիրել կնոջը, և ցանկանում էի նրան, բայց նա մերժում էր ինձ : Այսպես շարունակվեց այնքան ժամանակ, երբ հասավ երաշտ : Եվ այդ ժամանակ նա եկավ ինձ մոտ, ես տվեցի նարան հարյուր քսան դինար, որ նա թույլ տար

- Ալլահին մոտեցումը դուայի միջոցով, որը կատարվում է բարեպաշտ մուսուլմանի կողմից, որին կարելի է հավատալ և վստահել որ նրա դուան Ամենաբարձրյալ Ալլահը կպատասխանի:

2- Արգելված. Այն բաժանվում է երկու խմբի. (1) Երբ մարդ խնդրում է Ամենաբարձրյալ Ալլահին Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) կամ սուրբի (վալի) տեսանկյունից: Օրինակ, նա ասում է. «Օ, **Ալլահ, Ճշմարիտ ես խնդրում եմ Քեզ Քո Մարգարեի (կամ ալ- Հուսեյնի) դիրքից: Ճիշտ է, որ Ալլահի մոտ Մարգարեի դիրքը բարձր է, ինչպես նաև սրբերի դիրքերը:»** Բայց, հետևորդները, ովքեր մարդկանցից ամենից շատ ձգտում էին բարիքի, երբ սկսեց երաշտը, չէին փորձում խնդրել Ալլահին Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) դիրքից, նույնիսկ այն պարագայում, որ Նրա գերեզմանը նրանց կողքին էր, այլ օգտագործում էին Ալլահին մոտենալու համար նրա հորեղբոր ալ-Աբբասի դուան, որը այդ ժամանակ դեռ կենդանի էր:

(2) Երբ ստրուկը խնդրում է Ալլահից այն, ինչի կարիքը ունի, օգտագործելով երդումը Նրա Մարգարեի կամ որևէ մերձավորի (վալի) անունից: Օրինակ, նա ասում է. «Օ, **Ալլահ, աղաչում ենք Քեզ Քո վալի այսինչով, տուր մեզ այս կամ այն « կամ » Աղաչում եմ Քեզ Քո Մարգարե այսինչի իրավունքով**,» քանի որ արարվածին աղաչելը արարվածից արգելված է, աղաչել այս ձևով Ալլահին, ավելի խիստ է արգելված: Բացի այդ, ստրուկը ոչ մի իրավունք չունի պահանջել Ալլահից ինչ որ բան, համարելով, որ Նա պարտավոր է լսել նրա խնդրանքը, միայն Նրան հնազանդվելու համար:

**21.** **Ի՞նչ է նշանակում հավատք Դատաստանի օրվան**: Այդ, հաստատուն համոզմունք է այն բանում, որ այն կլինի: Այստեղ ներառվում է հավատք մահվան և հաջորդող փորձության գերեզմանում, պատիժը և հաճույքը այնտեղ, շեփորի փչելը (սուր), մարդկանց կանգնելը իրենց Տիրոջ առջև և գրքերի բաժանումը, արարքների գրառումները, ինչպես նաև Կշեռքի հաստատումը, Դրախտի և Դժոխքի միջև կամուրջը (սիրատ), լճակը, բարեխոսությունը և այն բանին, որ այս ամենից հետո մարդ ընկնում է կամ Դրախտ, կամ Դժոխք:

---

ինձ տնօրինել նրան : Եվ նա գնաց դրան, և երբ ես ստացա հնարավորություն տիրել նրան ...» Այս հադիթի մեկ այլ տարբերակում ասվում է, «երբ ես հասա նրա ոտքեր միջև, նա ասաց, « Վախեցիր Ալլահից և մի կոտրիր այս դրոշմը եթե մաիյն օրինական : « Եվ ես թողեցի նրան, չնայած սիրում էի նրան բոլորից շատ, և թողեցի նրան տված ոսկին : Օ, Ալլահ, եթե ես արեցի այդ հանուն քեզ, ապա փրկիր մեզ այս իրավիճակից, որում ենք մենք : » Եվ դրանից հետո քարը նորից շարժվեց տեղից, բայց բացվածքը բավական չէր, որ նրանք կարողանան դուրս գալ այնտեղից: Երրորդն ասաց. «Օ, Ալլահ, իրոք, ես մի ամգամ վարձեցի աշխատողներ և վճարեցի նարանց բոլորին բացի մեկից, որը թողել էր այն ինչ ինչ նրան հասնում էր և գնացել էր, ես օգտագործեցի նրա գումարը և բազմապատկեցի այն: Որոշ ժամանակ անց նա հայտնվեց և ասաց. «Օ, Ալլահի ստրուկ, տուր ինձ իմ վարձը:» Ես ասացի նրան, «Քո վարձն է այս բոլոր ուղտերը, կովերը, ոչխարները և ստրուկները, որոնք դու տեսնում ես :» Նա ասաց, « Օ, Ալլահի ստրուկ, մի ծաղրիր ինձ :» Ես ասացի . « Ես չեմ ծաղրում քեզ,» և նա վերցրեց այդ ամենը և տարավ, ոչինչ չթողնելով : Օ, Ալլահ, եթե ես արել եմ այդ հանուն քեզ, ապա փրկիր մեզ այս իրավիճակից, որտեղ որ մենք հայտնվել ենք ;»Եվ դրանից հետո քարը շաժվեց այնքան, որ նրանք կարողացան դուրս գալ և հեռանալ:» (Ալ Բուխարի)

**22.** Որո՞նք են Դատաստանի Օրվա մեծ նշանները: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Ժամը չի գա, մինչ չտեսնեք դուք դրանից առաջ տաս նշան:» Նա հիշատակեց ծուխ, Դաջջալին, կենդանու (դաբա), արևի ելքը արևմուտքից, Հիսուսի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), Մարիամի որդու գալը, Ջուջն ու Մաջուջը, երկրի երեք անհաջողությունները, արևելքում, արևմուտքում և Արաբական թերակղզում... Այդ նշաններից վերջինը հանդիսանում է կրակը, որը դուրս կգա Եմենից և կքշի մարդկանց հավաքի վայր:» (Մուսլիմ)

**23.** Ո՞րն է ամենամեծ գայթակղությունը, որը կհասնի մարդկանց: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Չկա Ադամի արարումի և Վերջին Ժամվա գալստյան միջև ավելի սարսափելի իրադարձություն քան Դաջջալի հայտնվելը:» (Մուսլիմ)

Դա Ադամի ժառանգներից մի մարդ է, որը կհայտվի ժամանակների վերջում: Նրա աչքերի միջև գրված կլին ի «կ-ֆ-ր», (կաֆիր),( անհավատ), և այս բառը կկարդա ամեն հավատացյալ: Նրա աջ աչքը շեղ կլինի, որը կհիշեցնի լցված խաղողի հատիկ: Նոր հայտնված, նա կսկսի ցուցադրել արդարություն և աստվածայնություն, իսկ ավելի ուշ կպնդի, որ նա մարգարե է, իսկ հետո կհայտարարի իր աստվածայնության մասին: Կգա նա մի մարդկանց մոտ և կկոչի նրանց, բայց նրանք չեն հավատա նրան և կմերժեն նրա խոսքը: Եվ նա կհեռանա նրանցից, և նրանց ունեցվածքը կգնա նրա ետևից, այնպես որ նրանց մոտ ոչինչ չի մնա: Հետո նա կգնա ուրիշ մարդկանց մոտ և կկանչի նրանց և նրանք կլսեն և կհավատան նրան: Եվ կհրամայի նա երկինքներին անձրև հեղել և նրանք կհեղեն և նա կհրամայի երկրի վրա բույսեր ա-են, և նա կաճեցնի: Եվ կգա նա մարդկանց մոտ ջրով և կրակով: Կրակը նրա իրականում սառեցրած ջուր է, իսկ ջուրը նրա, կրակ...: Հավատացյալին պետք է խնդրել Ալլահից պաշտպանություն նրանից, «Քարանձավ» սուրայի սկզբնական այաթներով, եթե նա տեսնի նրա հայտնվելը և փորձել ամեն կերպ խուսափել հանդիպելու նրան, վախից չենթարկվելու նրա գայթակղությանը: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ով լսել է Դաջջալի մոտենալու լուրը, թող փախչի նրանից, համարելով իրեն հավատացյալ և հետո կհետևեի նրան կասկածի զգացումից ելնելով:» (Աբու Դաուդ) Կմնա նա երկրի վրա քառասուն օր, օր ինչպես տարի, օր ինչպես ամիս, օր ինչպես շաբաթ և մյուս օրերը ինչպես մեր օրերը: Եվ չի մնա ոչ մի տեղանք կամ քաղաք, որտեղ որ նա չի մտնի, բացի Մեքքայից և Մեդինայից, իսկ հետո կիջնի Հիսուսը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) և կսպանի նրան:

**24.** Գոյություն ունի՞ հիմա Դրախտ և Դժոխք: Այո, Ալլահը ստեղծել է դրանք մինչ մարդկանց ստեղծելը և դրանք երբեք չեն անհետանա: Ալլահից ստեղծված բնակիչների Դրախտի համար, կհամաձայնվեն Նրա գթությամբ իսկ Նրանով ստեղծված Դժոխքի բնակիչները կհամաձայնվեն Նրա արդարությամբ: եվ յուրաքանչյուրին կհեշտացվի այն, ինչի համար նրանք ստեղծվել են:

**25.** **Ի՞նչ է նշանակում հավատք ճակատագրին**: Այդ հաստատուն համոզմունք է այն բանին, որ ամեն լավը և վատը կատարվում է Ալլահի գրվածով և տրված ճակատագրով: Եվ Նա անում է այն, ինչ ցանկանում է: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Եթե Ալլահը պատժեր Իր երկնքի բնակիչներին և Իր երկրի բնակիչներին, նա չէր վերաբերվի նրանց անարդար, պատժելով նրանց: Եվ եթե Նա ներեր նրանց, Նրա գութը կլիներ ավելի լավ նրանց համար, քան նրանց գործերը: Եվ եթե դու վատնես քանակությամբ ոսկի, նման Ուհուդ սարի, Ալլահի ճանապարհին, Նա չէր ընդունի այն քեզանից այնքան ժամանակ, մինչ դու չես հավատա ճակատագրին և չես համոզվի, որ այն ինչ եկել է քեզ, չէր կարող շրջանցել քեզ իսկ այն, ինչ շրջանցել է քեզ, չէր կարող հասնել քեզ: Եվ եթե դու մահանայիր, ուրիշ այլ բանի կողմնակից, դու անպատճառ կմտնեյիր Կրակ:» (Ահմեդ)
Ճակատագրին հավատքը ներառում է իր մեջ հետևյալը.

- Հավատք նրան, որ Ալլահը գիտեր և գիտի բացարձակապես ամեն ինչ ընդհանուր և մանրամասն:
- Հավատք նրան, որ Նա գրառել է այդ ամենը Պահապան Հաբում: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ալլահը գրառել է արարածների ճակատագիրը հիսուն հազար տարի առաջ, երկրի և երկնքի արարումից:» (Մուսլիմ)
- Հավատք Ալլահի Կամքին, որը միշտ կատարվում է և որը ոչինչ ի վիճակի չէ փոխել, և Նրա հզորությանը, որի համար անհնար ոչինչ չկա: Այն, ինչ Նա ցանկանում է կատարվում է, իսկ ինչ Նա չի ցանկանում, այդ երբեք տեղի չի ունենում:
- Հավատք նրան, որ Ալլահը հանդիսանում է Արարիչ ամենայնի և ամեն ինչ բացի նրանից, համարվում են Նրա արարածներ:

**26.** **Արդյո՞ք մարդն ունի իրական ուժ և կամք**: Այո, Մարդն ունի կամք և ընտրություն, բայց նա չի կարող դեմ գնալ Ամենաբարձրյալ Ալլահի կամքին: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց, «Բայց դուք չեք ցանկանա այդ, եթե այդ չցանկանա Ալլահը:» (սուրա 81, «Շրջում» այաթ 29):
Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ջանացեք, քանզի յուրաքանչյուրին կհեշտացվի այն, ինչի համար նա ստեղծվել է:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)
Ալլահը տվել է մեզ բանականություն, լսողություն և տեսողություն, որ մենք տարբերենք լավը վատից: Կա՞ արդյոք աշխարհում բանական մարդ, ով գողանում է և հետո ասում է « Դա Ալլա՞հն է կանխորոշել ինձ համար:» Նույնիսկ եթե նա ասեր այդպիսի բան, մարդիկ չէին ընդունի նրա արդարացումը, այլ կպատժեին և կասեին նրան. « Ալլահը կանխորոշել է քեզ այս պատիժը նույնպես:» Այդ պատճառով, բերել Կանխորոշումը որպես պատճառ և արդարացում չի կարելի, քանի որ այն սուտ է: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Բազմաստվածները կասեն. «Եթե Ալլահը ցանկանար, ապա ոչ մենք, ոչ մեր հայրերը չէինք տա Նրան զուգընկեր և չէինք արգելի ոչինչ թույլատրելիից:» Այդ ձևով կհամարեյին մարգարեներին խաբեբաներ, ովքեր նրանցից առաջ էին:» (սուրա 6 «Կենդանիներ», այաթ 148)

**27.** **Ի՞նչ է Իհսանը;** Ասաց Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), իհսանի մասին հարցնողին.« **Այդ, երբ դու երկրպագում ես Ալլահին այնպես, կարծես դու տեսնում ես Նրան: Իսկ եթե դու Նրան չես էլ տեսնում, ապա հիշիր, որ Նա տեսնում է քեզ:»** (Մուսլիմ) Եվ սա ամենաբարձրն է երեք աստիճաններից կրոնի:

**28.** **Քանի՞ ենթաբաժին է ներառում Միաստվածությունը (տաուհիդ): Երեք ենթաբաժին:**

- Տիրակալման Միաստվածություն (տաուհիդ առ-ռուբուբիյա) - հավատք նրան, որ արարելը, բարիքի (ռըզըք) նվիրելը, մեռածների կենդանացնելը և ուրիշ այսպիսի գործողություններ, կարող է անել միայն Ալլահը: Տաուհիդի այս մասը ընդունում էին անհավատները մինչ մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) առաքելությանը գալը:
- Միաստվածություն երկրպագման մեջ (տաուհիդ ալ-ուլուհիյա),- սա երկրպագման դիմում է (աղոթք, ուխտ, բարեգործություն և այլն), միայն Ալլահին (և հավատք այնին, որ ոչ ոք արժանի չէ երկրպագման բացի Ամենաբարձրյալ Ալլահից): Եվ որպեսզի մարդիկ երկրպագեն միայն Ալլահին, ուղարկվել են առաքյալները և Գրերը:
- Միաստվածություն Անուններում և Վերագիրներում տաուհիդ ալ-ասմա վա աս- սիֆետ, ընդունում Ամենաբարձրյալ Ալլահի այն հիանալի Անունները և հոյակապ Վերոգիրները, որոնք հաստատել է իր համար Ալլահը և որոնց մասին հաղորդել է մեզ Նրա Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) առանց շեղելու[1], մերժելու[2], փորձերի ներթափանցելու Ալլահի վերագիրների էությանը[3] և նմանեցնելու Նրա վերագիրները արարածների հատկություններին:

**29.** **Ո՞վ է Ալլահի մերձավորը, (վալի)[4]:** Դա ուղղափառ և աստվածավախ հավատացյալ է: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «**Ճշմարիտ, Ալլահի մերձավորները (վալի), չունեն վախ և չեն լինի տխուր: Նրանք հավատացել են և եղել են աստվածավախ:**» (Սուրա «Յունուս», այաթ 62-63):

Իսկ Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ճշմարիտ, իմ **հովանավորը (վալին) Ալլահն ու ուղղափառ հավատացյալներն են:**» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)

**30.** **Ի՞նչպես մենք պիտի վերաբերվենք Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հետևորդներին:** Մենք պետք է սիրենք նրանց և ասենք.« Թող Ալլահը

---

1 Շեղման տակ նկատի է առնվում սկզբնական իմաստի փոփոխումը, որը դրված է Ամենաբարձրյալի Անվան կամ Որակի մեջ: Օրինակ, սխալ է շեղել այնպիսի որակ, ինչպիսին է «Ալլահի ձեռքը » և փոխարինել այն « ուժ, հզորություն» բառերով :

2 Մերժման տակ նկատի է առնվում Ալլահի Անունների և Որակների բացարձակ չընդունելը, ինչպես այդ անում են որորշ աղանդներ :

3 Նկատի է առնվում,որ մենք պետք է հավատանք Ալլահի Անունների և Նրա հատկություններին, հասկանալով նրանց ակնհայտ իմաստը և մեկնաբանել համապատասխան նրա, ինչպես արել են Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) և հետևորդները և չհարցնել «ի՞նչու», որը մնում է այդ մակարդակից հետո : Այսպես, հավաստի հադիթից հայտնի է Ալլահի ծագման մասին մոտակա երկինք : Մենք ընդունում ենք այդ, քանի որ այդ մասին ասվել է հավաստի հադիթում, բայց չենք փորձում «ի՞նչու» հարցով իմանալ, ինչպես է լինում այդ ծագումը, քանի որ դրա բացատրությունը չկա հադիթում և հետևորդների արտահայտություններում :

4 Վալի նշանակում է մերձավոր, հովանավոր, շատ մոտիկ մեկը :

գոհանա նրանցով», երբ հիշում ենք նրանց, ինչպես նաև անկեղծ և մաքուր սրտով վերաբերվենք նրանց, պետք է խուսափենք վատ խոսքեր ասելուց նրանց հասցեյին, չքննարկենք այն, ինչ տեղի է ունեցել նրանց միջև, և պետք է բացատրենք մարդկանց իրենց արժանիքները: Միևնույն ժամանակ, նրանք պաշտպանված չեն սխալներից, բայց նրանք մուհաջիրին են, և ճիշտ որոշում գտնողին կա երկու պարգև, իսկ նրան, ով կսխալվի, մեկը: Այդ այն պատճառով, որ նա անկեղծ փորձել է գտնել ճիշտ որոշում, իսկ սխալը նրա ներվում է: Իսկ արժանապատվությունը, որը նրանք ունեն, հնարավորություն է տալիս ծածկել այն բոլոր սխալները, որոնք նրանք կարող էին կատարել:Արժանապատվությամբ նրանք անցնում էին մեկը մյուսից: Հետևորդները, նրանց թվում կյանքի ընթացքում Դրախտի մասին ավետիսի տաս կրողները, Ալլահի դիմաց նույն հարթության վրա չեն գտնվում: Նրանցից լավագույնը Աբու Բեքրն է, հետո Օմարը, հետո Օսմանը, հետո Ալին, հետո Տալհան, ազ-Զուբեյրը, Աբդուռռահմեն իբն Աուֆը, Սաադ իբն աբու Վակկասը, Սաիդ իբն Զեյդը և աբու Ուբայդա իբն ալ-Ջարախը: Նրանց հետևում են մնացած մուհաջիրները: Հետո գալիս են Բադր ճակատամարտի մասնակիցները մուհաջիրիններից և անսարներից, հետո մնացած անսարները և հետո մնացած հետևորդները: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Մի չարաշահեք իմ հետևորդներին: Երդվում եմ Նրանով, Ում ձեռքերում է իմ հոգին, նույնիսկ եթե ձեզանից մեկը ծախսի Ուհուդ սարի չափ ոսկի, այն չի հավասարվի նրանցից մեկի ծախսված տրամադրությանը, նույնիսկ ինչ ավելի քիչ է դրանից:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ); Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ով չարաշահում է իմ հետևորդներին, նրա վրա կընկնի Ալլահի, հրեշտակների և բոլոր մարդկանց անեծքը:» (Ալ Տաբարանի)

31. Կարո՞ղ ենք մենք չափազանցնել գովերգումը մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), բարձրացնելով նրան ավելի բարձր դիրքի,նվիրված նրան Ալլահից:
Կասկած չկա, որ մեր տեր Մուհամեդը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) մարդկանցից ամենաառաքինին է և Ալլահի արարածներից լավագույնը: Սակայն, մենք չենք կարող նրան չափից դուրս մեծարել, ինչպես դա եղավ Հիսուսի, Մարիամի որդու հետ, որովհետև Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) արգելեց մեզ անել դա ասելով. «Մի անցեք թույլատրելիի սահմանները և մի մեծարեք ինձ այնպես, ինչպես մեծարում են քրիստոնյաները Մարիամի որդուն: Ճշմարիտ, ես ստրուկ եմ, ապա ասեք. Ալլահի ստրուկը և Նրա Առաքյալը:» (Ալ- Բուխարի)

32. Հանդիսանու՞մ են արդյոք Գրերի Մարդիկ հավատացյալներ:
Հրեաները, քրիստոնյաները և մյուս կրոնների հետևորդները ըստ իսլամի անհավատ են, նույնիսկ եթե նրանք հետևում են կրոնի, որի հիմքը ճիշտ է: Որովհետև նա, ով չի թողել իր կրոնը Մարգարե Մուհամեդի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) առաքելությունից հետո և չի ընդունել իսլամ, « այդ երբեք չի ընդունվի և Վերջին Կյանքում չի հայտնվի վնաս կրողների մեջ:» (Սուրա «Իմրան

Ընտանիք», այաթ 95): Եվ եթե մուսուլմանը չի համարում նրանց անհավատ, կամ կասկածում է նրանց կրոնի սուտ լինելուն, ապա նա ինքն է դառնում անհավատ, որովհետև նա հակասում է Ալլահի և Նրա Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հաստատմանը նրանց անհավատության վերաբերյալ: Ամենաբարձրյալ Ալլահը ասում է. «Իսկ համայնքներին, որոնք չեն հավատացել նրան, ընդհանուր Կրակ:» (Սուրա «Հուդ», այաթ 17), (այսինքն, զանազան հավատքների հետևորդներին): Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Երդվում եմ Նրանով, Ում Ձեռքերում է Մուհամմեդին հոգին, եթե լսի իմ մասին այդ համայնքից որևէ մեկը, հրեա կամ քրիստոնյա, և դրանից հետո չի հավատա ինձ, նա անպատճառ կմտնի Կրակ:» (Մուսլիմ)

**33. Կարելի՞ է վերաբերվել անարդար անհավատի հետ:** Ցանկացած տեսակի անարդարության արտահայտում արգելված է, քանի որ Մարգարեյից փոխանցված է, որ Ամենաբարձրյալը ասաց. «Օ, Իմ ստրուկներ: Ճշմարիտ, Ես արգելել եմ անարդարություն Ինձ և արել եմ այդ արգելված ձեզ, մի վարվեք անարդար իրար մեջ:» (Մուսլիմ)

Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հարցրեց մարդկանց, «Գիտե՞ք դուք, ով է հանդիսանում սննկացած:» Նրանք պատասխանեցին. «Մեր մեջ սնանկ համարվում է նա, ով չունի ոչ գումար, ոչ ունեցվածք:» Այդ ժամանակ Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ճշմարիտ, իմ համայքի անդամներից սնանկ կհամարվի նա, ով Հարության Օրը կբերի իր հետ աղոթքներ, պահքեր և բարեգործություններ, բայց կբացահայտվի, որ նա վիրավորել է սրան, չարախոսել է նրան, գողացել է այս մեկի ունեցվածքը, մեկի ուրիշի արյունն է թափել և հարվածել է այս մեկին: Եվ այդ ժամանակ որևէ բան նրա բարի արարքներից կտրվի մեկին, իսկ ինչ որ բան մյուսին: Եվ եթե նրա բարի արարքների պաշարը ավարտվի ավելի շուտ, քան նա կկարողանա վճարել բոլորին, նրա կողմից վիրավորվածների մեղքերից կվերցվի այս կամ այն և կդրվի նրա վրա, իսկ հետո նրան կգցեն Դժոխք:» (Մուսլիմ)

Հարցերի այսպիսի լուծում կլինի նույնիսկ կենդանիների միջև:

**34. Ի՞նչ է նորարարությունը ( բիդաա):** Իբն Ռաջաբը, թող Ալլահը օրհնի նրան ասաց. «Նորարարությունը նոր ստեղծված բան է, որը հիմք չունի Շարիաթում, որը ցույց տրվեր այնտեղ: Ինչ վերաբերվում է նրան, թե ինչի համար Շարիաթում կա հիմք, մատնացուցելով այդ, ապա այդ չի հանդիսանում նորարարություն հատուկ, շարիաթական նշանակությամբ այդ բառի, չնայած հանդիսանում է այդպիսին իր բառագիտական իմաստով:»[1]

**35. Արդյո՞ք կրոնում գոյություն ունի լավ և վատ նորարարություն:** Գոյություն ունեն այաթներ և հադիթներ, դատապարտելով նորարարությունները իր շարիաթի հասկացությամբ, ավելի ստույգ, ամեն նոր ստեղծվածը, որը հիմք չունի Շարիաթում: Ալլահի Մարգարեն

---

[1] Այլ խոսքերով, այդ նորարարությունը, ինչ որ նոր բան է, բայց ոչ թե նորարարություն ըստ Շարիաթի տեսանկյունի, այսինքն այն չի հանդիսանում դատապարտելի :

(Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Ով արել է որևէ բան, որը չի համապատասխանում մեր գործին, գործը նրա կմերժվի:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ:) Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես ասաց. «Ճշմարիտ, ամեն նորարարություն, հանդիսանում է նորամուծություն, իսկ ամեն նորամուծություն, մոլորություն է:» (Աբու Դաուդ): Իմամ Մելիքը, (թող Ալլահը թողություն տա նրան), ասաց, բացատրելով շարիաթի հասկացությունը նորամուծության վերաբերյալ.« Ով բերել է իսլամ նորամուծություն, համարելով այն լավ, նա պնդում է, որ Մուհամեդը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) վարվել է ուխտադրուժ Առաքելության նկատմամբ, այսինքն չի մատուցել այն ճիշտ ձևով, որովհետև Ամենաբարձրյալ Ալլահն ասում է.» Այսօր, Ես ավարտեցի ձեզ համար ձեր կրոնը և ավարտին հասցրեցի Իմ գթասրտությունը ձեր նկատմամբ:»

Գոյություն ունեն նաև հադիթներ, դրական նկարագրելով նորամուծությունները իր բառագիտական իմաստով, այսինքն, այն, ինչ բերվել է Շարիաթի միջոցով, բայց հետագայում մոռացվել է և Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) դրդել է հիշեցնել մարդկանց այդ մասին: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Այն բանից, ով հիմք կդնի լավ սովորույթի իսլամում, որին նրանից հետո կհետևեն ուրիշները, կգրվի պարգև, նման պարգև բոլորին, ովքեր կհետևեն այդ սովորույթին, որը բոլորովին չի նվազեցնի նրանց իսկ պարգևը:» (Մուսլիմ)

Հենց այսպիսի իմաստ ունի «Ումրա» բառը: «Այդ հիանալի նորամուծություն է: «Նա ի նկատի ուներ տառավիհ աղոթքը: Այն օրինականացվել է Շարիաթի կողմից և Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) դրդում էր նրա կատարմանը և ինքն էր կատարում այն երեք գիշերվա ընթացքում, որից հետո թողեց այդ, վախենալով, որ մարդիկ կգնահատեն իր արարքը որպես պարտադիր աղոթք: Եվ այդ ժամանակ «Ումրան» Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) մահից հետո, վերսկսեցին կատարել բոլոր մարդկանց հետ:

**36.** Քանի՞ տեսակի փարիսեթյուն( նիֆակ) կա: **Երկու տեսակի:**

- Փարիսեթյուն համոզմունքում (մեծ փարիսեթյուն), այդ այն է, երբ մարդ ցուցադրում է հավատք, իսկ հոգում հանդիսանում է անհավատ: Այսպիսի մարդը համարվում է կրոնից դուրս եկած և եթե նա մահանա հակված լինելով իր փարիսեթյանը, նա կմահանա անհավատ: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Ճշմարիտ, փարիսեցիները կհայտնվեն Կրակի ամենաստորին աստիճանում:» (Սուրա 4 «Կանայք» այաթ 145)

Որակ բնորոշ փարիսիցիներին. նրանք ջանում են խաբել Ալլահին և նրանց, ովքեր հավատացել են, ծաղրում են հավատացյալներին, օգնում են անհավատներին հաղթել մուսուլմաններին և նրանց բոլոր լավ արարքների տակ թաքնված է միայն աշխարհիկ, շահեկան ձգտումներ:

- Փարիսեթյուն արարքներում (փոքր փարիսեթյուն), նա ում այդ բնորոշ է,չի դուրս գալիս իսլամից, բայց գոյություն ունի վտանգ, որ այդ փարիսեթյունը կբերի նրան մեծ փարիսության, եթե նա ժամանակին չի մեղանչի, ( և չի թողի փոքր փարիսեթյունը):

Ահա, որակներ նրանց, ում մոտ կա փարիսության այս տեսակը, խոսելով, նա ստում է, խաստանալով, խախտում է խոստումը, մրցակցության մեջ, վարվում է խորամանկ և անարժան, պայմանագիր կնքելուց, խախտում է այն, իսկ երբ նրան վստահում են, նա դավաճանում է: Զգուշացիր, սիրելի եղբայր, գտնել քո մեջ այս որակներից որևէ մեկը և ուշադիր հետևիր քեզ: Մուսուլմանը պիտի վախենա փարիսությունից: Հետևորդները վախենում էին փարիսությունից արարքներում: Իբն Աբու Մուլեյքան, (թող Ալլահը ների նրան), ասաց. «Ես գտա երեսուն հետևորդ Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) և նրանցից յուրաքանչյուրը վախենում էր ընկնել փարիսության մեջ:»
Իբրահիմ, ատ-Տեյմին, (թող Ալլահը գոհանա նրանով), ասաց. «Համեմատելով ձեր խոսքերը ձեր գործերով, ես միշտ վախենում եմ բռնել ինձ ստի մեջ:»
Ալ-Հասան ալ Բասրին, (թող Ալլահը գթա նրան) ասաց. «Վախենում է նրանից միայն հավատացյալը, և զգում է իրեն ապահովության մեջ նրանից, միայն փարիսեցին:»
Ումարն ասաց Հուզեյֆին, (թող Ալլահը գոհանա նրանով),« Աղաչում եմ քեզ Ալլահի անունով, ասե՞լ է իմ մասին Ալլահի Մարգարեն նրանց մեջ (փարիսեցիների):» Նա պատասխանեց.«Ոչ, և այլևս ես չեմ պատասխանի այսպիսի հարցերի:»

**37.** **Ո՞ր մեղքն է Ալլահի առջև համարվում ամենամեծը:** Դա Ալլահին զուգընկեր տալն է (շըրկ): Ամենաբարձրյալ Ալլահն ասում է. «... քանզի բազմաստվածությունը հանդիսանում է մեծ անարդարություն » (**Սուրա 31 «Լուկման», այաթ 13**): Եվ երբ հարցրեցին Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) այն մասին, թե որ մեղքն է ամենամեծը, նա պատասխանեց. «Երբ դրվում է Ալլահին հավասար, իսկ Նա է արարել քեզ:» (**Ալ-Բուխարի, Մուսլիմ**)

**38.** **Քանի՞ տեսակի շըրկ գոյություն ունի: Երկու տեսակի**: **Մեծ շըրկ** [1], այն դուրս է տանում մարդուն իսլամից, և Ալլահը չի ներում այդ անողին, եթե մարդ մահանա չզղջալով: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Ճշմարիտ, Ալլահը չի ներում, երբ Նրան զուգընկեր են դնում, բայց ներում է մնացյալը (ավելի փոքր մեղքեր), ում ցանկանում է:» (**Սուրա 4 «Կանայք», այաթ 48**):

Այն բաժանվում է չորս տեսակի. 1. Շըրկ դուայում և խնդրանքում: 2. Շըրկ մտադրության և ձգտման մեջ: 3. Շըրկ հնազանդության մեջ, այդ

---

[1] Այն դնում է մարդուն դուրս մուսուլմանական համայնքից և ամեն ոք, ով չի մեղանչի մինչ մահ, հավերժ կմնա Դժոխքում: Այսպիսի բազմաստվածություն նկատի ունի երկրպագում ինչ որ մեկին բացի Ալլահից, օրինակ, խնդրանքի դիմումով ինչ որ մեկին Նրան հավասար, կամ զոհաբերություն և ուխտի խոստում սրբերի գերեզմաններին, ջիներին, շեյթաններին, կամ վախ մեռածների, ջիների և շեյթանների նկատմամբ, որոնք, իբր կարող են վնասել մարդուն, կամ ուղարկել նրան հիվանդություն : Կամ դիմում, որևէ մեկին, բացի Ամենաբարձրյալից, կարիքների բավարարում, ցավի մեղմացում և այլն, որին ընդունակ է միայն Ալլահը: Այսպիսի չարիք այժմ կատարվում է սրբերի դամբարանների ու գերեզմանների մոտ : Ամենաբարձրյալը ասաց. «**Եվ երկրպագում են նրանք բացի Ալլահից նրան, ինչ չի բերում նրանց ոչ վնաս և ոչ օգուտ և ասում են**.» Սրանք մեր բարեխոսներն են Ալլահի մոտ:» (Սալիհ իբն Ֆաուզան ալ-Ֆաուզանի; «Միաստվածության Գիրք» գրքից) :

հնազանդություն է գիտնականին այն բանի արգելման, որը թույլատրել է Ալլահը և թույլտվություն այնին, ինչ նա արգելել է: 4. Շըրկ սիրո մեջ, երբ մարդ սիրում է ինչ որ մեկին այնպես, ինչպես Ալլահին:

Փոքր շըրկ:[1] Այն չի դուրս բերում կատարողին իսլամից: Այն բաժանվում է երկու տեսակի. 1. Բացահայտ, որը երևում է բառերում, ինչպիսիք են երդումները Ալլահով, կամ այնպիսի արտահայտություններում, ինչպիսիք են ինչպես հարմար է քեզ և Ալլահին, կամ եթե ոչ Ալլահը և ոչ որևէ մեկը: Նույնպես այն կարող է արտահայտվել գործողություններում, ինչպիսիք են թելերի կամ մատանիների կրելը,ետ պահելու դժբախտությունը: Ինչպես նաև չար աչքից ամուլետների կրելը, կամ վատ նշան տեսնելը ինչ որ բանում, օրինակ անուններում, խոսքերում, վայրերում, թռչնի թռիչքում:

2. Թաքնված. Այս շըրկ է մտադրություններում և ձգտումներում, (գործողություններ, որոնք ցուցադրաբար են կատարվում):

**39. Ի՞նչ տարբերություն մեծ և փոքր շըրկերի միջև**: Տարբերությունները հետևյալն են. մեծ շըրկը դուրս է հանում մարդուն իսլամից այս աշխարհում և դատապարտում է նրան Կրակում հավերժ բնակության, հավերժ կյանքում: Ինչ վերաբերվում է փոքր շըրկին, ապա այն չի դարձնում մարդուն անհավատ այս աշխարհում և չի դատապարտում հավերժ կյանքում Կրակի մեջ բնակվելուն: Նույնպես, մեծ շըրկը մարդու արարքները անվավեր է համարում, մինչ դեռ փոքր շըրկը անվավեր է համարում միայն այն գործերը, որի հետ այն կապված է: Մնում է մի վիճելի հարց. ներվու՞մ է արդյոք փոքր շըրկը միայն զղջմամբ, ինչպես մեծ շըրկը, թե այն, ինչպես մեծ մեղք, եթե չզղջաս, կմնա Դատաստանի Օրը Ալլահի հայեցողությանը:

**40. Ի՞նչպես կարելի է պաշտպանվել փոքր շըրկից և ո՞րն է զղջումը, եթե այն այնուամենայնիվ կատարվել է:** Կարելի է պաշտպանվել ցուցամոլությունից, փորձելով ձգտել անել ամեն ինչ հանուն Ալլահի, և

---

[1] Փոքր շըրկը երևում է ձգտումներում և ցանկություններում: Այս տեսակի են ցուցամոլությունը և փառասիրությունը: Օրինակ, երբ մարդ անում է մի բան, որը մոտեցնում է նրան Ալլահին, բայց ցանկանում է միևնույն ժամանակ, լսել գովասանքի խոսքեր մարդկանցից, օրինակ աղոթում կամ բարեգործություն է անում հանուն գովասանքի, կամ հիշատակում է Ալլահին և կարդում է Ղուրան գեղեցիկ ձայնով, որ մարդիկ լսեն և գովեն նրան : Եթե այսպիսի ցուցամոլությունը միախառնվում է որևէ արարքի հետ, ապա այն դառնում է հաշվելի, քանզի Ամենաբարձրյալ Ալլահն ասում է . « Իսկ ով հուսով է հանդիպել իր Տիրոջը, թող անի բարիք և Տիրոջ հետ չանի ոչ ոքի հավասար:» Դիմելով իր հետևորդներին, մի անգամ Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «**Ամենաասարսափելին, որից ես վախենում եմ ձեր համար, դա փոքր բազմաստվածությունն է**:» Նրանք հարցրեցին նրան, «Իսկ Ի՞նչ է փոքր բազմաստվածությունը:» Նա պատասխանեց .«97Ցուցամոլությունը:» Սրան են վերաբեվում երկրպագության ծեսերը, որոնք կատարվում են հանուն աշխարհիկ բարիքների: Օրինակ, եթե մարդ հանուն առևտրի կատարում է Հաջ, գումարի համար մզկիթում աշխատում է իմամ կամ աղոթքի կանչող, (մուազին), ուսումնասիրում է շարիաթի գիտություններ կամ մեկնում է պատերազմի : Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «**Դժբախտ է դինարի ստրուկը, դժբախտ է դիրհեմի ստրուկը և դժբախտ է հագուստի ստրուկը : Նա գոհ է, երբ նրան բարիք է տրվում և եթե ոչինչ չի ստանում, ապա տխրում է** :» (Սալիհ իբն Ֆաուզանա ալ-Ֆաուզանա «Միաստվածության Գիրք » գրքից):

փոքր ցուցամոլությունից դուայի օգնությամբ: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Օ, Մարդիկ, Զգուշացեք այդ շըրկից, ճշմարիտ, այն ավելի քիչ տեսանելի է, քան սողացող մրջյունը:» Մարդիկ հարցրեցին նրան. « Ի՞նչպես խուսափել նրանից, եթե այն քիչ տեսանելի է, քան սողացող մրջյունը, Օ, Ալլահի Մարգարե:» Նա ասաց. «Ասացեք. «Օ, Ալլահ, Մենք թաքնվում ենք քեզ մոտ այն բանից, տանք Քեզ ինչ որ մեկին զուգընկեր, իմանալով այդ մասին, և խնդրում ենք Քեզանից ներողություն, որ մենք անում ենք չիմանալով:»»[1] (Ահմեդ)

Ինչ վերաբերվում է ոչ Ալլահով երդվելու քավությանը, ապա Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ով երդվել է ալ-Լյաթ և Ուզզա, թող ասի.« Լե Իլեհե իլա Ալլահ:»» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)

Ինչ վերաբերվում է սնոտիապաշտությանը, ապա Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Ում, սխալ նախանշանը ետ է պահում անելու, ինչ մտածել է անել, ապա նա ընկել է շըրկի մեջ:» Մարդիկ հարցրեցին. « Իսկ ո՞րն է քավությունը դրա:» Նա պատասխանեց. «Պետք է ասվի. «Օ, Ալլահ, չկա բարիք, բացի Քո բարիքից և չկա թռչուն, բացի Քո թռչուններից [2], և չկա աստվածություն, բացի Քեզանից[3]:»» (Ահմեդ)

**41.** Քանի՞ տեսակի անհավատություն (քուֆր) գոյություն ունի: Երկու տեսակի:

- Մեծ քուֆր, այն հանում է մարդուն իսլամից, և այն էլ լինում է հինգ տեսակ. 1. Մերժման քուֆր:[4] 2. Մեծամտության քուֆր,խոնարհված ճշտի ճանաչմամբ:[5] 3. Կասկածի քուֆր:[6] 4. Շեղման քուֆր:[7] 5. Փարիսության քուֆր:[8]

---

[1] « Ալլահումա իննա նաուզու բիկա մին ան նուշրիկա բիկա շեյտան նալյամուհու, ուա նաստախֆիրուկի: »

[2] Այսինքն թռչունները, ինչպես մյուս արարածները, ենթարկվում են Քեզ և չեն անում ոչինչ ընդդեմ Քո կամքի և չեն կարող ծառայել վատ, կամ լավ նախանշանների :

[3] Ալլահումա լե հայրա իլլա հայրուկ, ուա լե տայրա իլլա թայրուկ, ուա լեիլեհա հայրուկ :

[4] Նրա մասին Ամենաբարձրյալը ասում է. «Ո՞վ է ավելի անարդար, քան նա, ով մտադրվել է Ալլահի դեմ սուտ, կամ մերժել է ճիշտը, երբ այն եկել է նրա մոտ : Մի՞թե գեհեննում չի անհավատը :»

[5] Այն մեծամտության անհավատություն է, որը մարդ արտահայտում է կապված կրոնի հետ, լինելով համոզված նրա ճշմարտությամբ: Այդ մասին Ամենաբարձրյալը ասում է. «Այդ ժամանակ մենք հրամայեցինք հրեշտակներին,» Խոնարհվեք Ադամին: «Եվ խոնարհվեցին նրանք, բացի Իբլիսից, ով մերժեց, մեծամտեց և հայտնվեց անհավատների մեջ :»

[6] Այդ մասին Ամենաբարձրյալը ասաց. «Եվ մտավ նա իր այգին, պատճառելով անարդարություն ինքն իրեն և ասաց. «Ես չեմ կարծում, որ այս երբևէ կանհայտանա: Եվ չեմ կարծում, որ կհասնի Ժամը: Եվ եթե նույնիսկ ես վերադառնամ իմ Տիրոջը ապա կունենամ ավելի լավ բան, քան այս:» Ի պատասխան դրա, նրա ընկերը ասաց. «Մի՞թե դու չես հավատացել նրան, ով ստեղծել է քեզ փոշուց, հետո կաթիլից, հետո դարձրել է քեզ մարդ : Ինչ վերաբերվում է ինձ, ապա ես ասում եմ, որ իմ Աստվածը Ալլահն է, եվ ես ոչ ոքի չեմ տալիս Տիրոջը զուգընկեր :»»

[7] Այդ մասին Ամենաբարձրյալը ասաց. « Իսկ նրանք, ովքեր չեն հավատում, շեղվում են այն բանից, ինչ նրանց տեղեկացնում են :»

[8] Այդ մասին Ամենաբարձրյալը ասաց. « Այդ այն բանի համար է, որ նրանք հավատացել են, իսկ հետո դարձել են անհավատ և դրված է դրոշմ նրանց սրտերում և նրանք չեն խելոքանում :»

• Փոքր քուֆր:[1] սա Ալլահին չլսելն է: Այն չի հեռացնում մարդուն իսլամից, օրինակ մուսուլմանի սպանությունը:

**42.** Ի՞նչ է իսլամի որոշումը կապված խոստման հետ: Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) համարում էր խոստումը անցանկալի,(մաքրուհ), քանզի Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Զգուշացիր, այն չի բերում ոչ մի բարիք:» (Ալ-Բուխարի) Խաստումը կլինի անցանկալի, եթե այն տրվում է բացառապես Ալլահին: Եթե այդ խոստումը տրված չէ Ալլահին, ինչպես այն դեպքում, երբ այն տրվում է գերեզմանին, կամ «սրբին», ապա այսպիսի երդումը ընդհանրապես արգելված է և այն ոչ մի դեպքում չպիտի իրականացվի:

**43.** Ի՞նչպիսին է իսլամի որոշումը կապված պայծառատեսներին և բախտագուշակներին այցելելուն: Այդ արգելված է (հարամ), եվ եթե մարդ գնացել է նրանց մոտ, ցանկանալով իր համար օգուտ բերել, ապա եթե նույնիսկ չի հավատացել նրանց համոզմունքներին անհայտի գիտությանը, նրա աղոթքը չի ընդունվում քառասուն օր: Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ով գնացել է բախտագուշակի մոտ և հարցրել է նրան որևէ բան, նրա աղոթքը չի ընդունվի քառասուն օր:» (Մուսլիմ) Իսկ ով գնացել է նրանց մոտ և հավատացել է նրանց համոզմունքներն, որ նրանք գիտեն Գաղտնին, ապա նա մերժում է Մուհամմեդի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) կրոնը: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ով եկել է պայծառատեսի կամ բախտագուշակի մոտ և հավատացել է նրան, ինչ նա ասում է, մերժել է այն, ինչ ուղարկվել է Մուհամմեդին:» (Աբու Դաուդ)

**44.** Ո՞ր դեպքերում է անձրևի խնդրանքը աստղերին համարվում մեծ շըրկ և որ դեպքերում փոքր: Ով հավատում է, որ աստղերը և մոլորակները

[1] Այն չի հանում մարդուն մուսուլմանական համայնքից և արտահայտվում է արարքներում: Խոսքը գնում է մեղքերի մասին, որոնց կատարումը Ղուրանում և Սուննայում համարվում են անհավատություն, բայց որոնք չեն հասնում Նրա ղձգոհությանը, որը արաբերեն նույնպես հնչում է, ինչպես «քուֆր»: Այդ մասին հիշեցվում է Ամենաբարձրյալի հետևյալ խոսքերում. «Ալլահը, բերում է որպես օրինակ ավանի բնակիչներին,, որոնք ապրում էին հանգստության և խաղաղության մեջ: Նրանք ձեռք էին բերում բարիք բավարար քանակով ամեն տեղից, բայց չէին գոհանում Ալլհից այդ բարիքների համար ...:» Դրանց վերաբերվում են մուսուլմանի հետ մարտը, որի մասին Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Մուսուլմանին վիրավորելը, վատ արարք է, իսկ նրա հետ մարտնչելը անհավատություն:» Նա նույնպես ասաց. «Մի դարձեք իմ մահից հետո կրկին անհավատներ, ովքեր կտրում են միմյանց գլուխները:» Նրանց նույնպես վերաբերվում են երդումները, երբ մարդ չի երդվում Ալլահով, քանզի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. Ալլահով չերդվողը ընկավ անհավատություն կամ բազմաստվածություն:» Սակայն հավատացյալը, նույիսկ եթե մեծ մեղք է գործել, չի դառնում անհավատ, քանզի Ամենաբարձրյալը ասաց. «Օ, Նրանք, ովքեր հավատացել են, կանխագրված է ձեզ վրեժ սպանվածների համար...:» Նկատեք, տվյալ պարագայում, նա չի բացառում մարդասպանին հավատացյալների միջից, կոչելով նրան եղբայր այն մեկին, ով իրավունք ունի վրեժի: Ամենաբարձրյալը ասաց. « Իսկ եթե նրա եղբայրը կների, ապա վերցրեք գումար նրանից արդար ձևով, և նա պիտի վճարի բարի կամքով:» Տվյալ դեպքում, անկասկած, նկատի է առնվում եղբայրությունը կրոնում: Ամենաբարձրյալը նույնպես ասաց. «Եթե երկու ջոկատ, բաղկացած հավատացյալներից մարտնչեն միմյանց դեմ, ապա հաշտեցրեք նրանց;» Եվ հետո .« Չէ որ հավատացյալները եղբայրներ են : Հաշտեցրեք ապա ձեր երկու եղբայրներին ...» (Սալեհ իբն Ֆաուզի ալ-Ֆաուզի «Միաստվածության Գիրք» գրքից) :

կարող են ազդեցություն տալ իրենք իրենց, առանց Ալլահի Կամքի և համոզված է, որ նրանք ինքնուրույն նվիրում և կոչում են անձրև, ապա նա կատարում է մեծ շիրկ: Ով վստահ է, որ աստղերը ունեն ցանկացած ազդեցություն Ալլահի Կամքով և որ Ալլահը նրանց պատճառ է դարձրել անձրևի և հաստատել է այնպիսի սովորույթ, որ անձրևը գալիս է հենց հետևյալ աստղի հայտնվելուց հետո, ապա այդ արգելված է և ներկայացնում է փոքր շիրկ, որովհետև նա պատճառ է դարձրել աստղին անձրևի գալու, առանց ապացույցների: Ինչ վերաբերվում է աստղերը օգտագործելուն սեզոնի կողմնորոշման և անձրի գալու մոտավոր ժամանակի համար, ապա այս թույլատրելի է:

**45.** **Ո՞րոնք են մուսուլմանի պարտավորությունները իշխանություն ունեցողի հետ վերաբերմունքում:** Պարտադիր է լսել նրանց այն բանում ինչ մենք ցանկանում ենք և այն բանում, ինչ մենք չենք ուզում և չի կարելի ընդվզել նրանց դեմ, նույնիսկ, եթե նրանք անարդար են: Մենք չպետք է Ալլահին կոչենք ընդդեմ նրանց, (այսինքն կոչենք Ալլահի բարկությունը, դժբախտություն, հիվանդություն նրանց համար), և դադարենք ենթարկվել նրանց: Դրա փոխարեն, մենք պիտի խնդրենք նրանց համար արդարություն, բարեկեցություն և ողջախոհություն խոսքերում և արարքներում: Եվ մենք կարծում ենք, որ նրանց հնազանդվելը համարվում է Ամենաբարձրյալ Ալլահին հնազանդվելու մի մաս, եթե միայն նրանք չեն հրամայում անել այն, որը նշանակում է անհնազանդություն Ալլահին: Այսինքն, եթե մուսուլմանին հրամայում են անել այն, ինչ անհնազանդություն է Ալլահին, ապա նա չպիտի ենթարկվի, բայց միևնույն ժամանակ, նա պիտի կատարի մնացած բոլոր հրամանները, որոնք չեն պարունակում իրենց մեջ ոչինչ արգելված: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*). «Դու պիտի լսես և ենթարկվես առաջնորդին, նույնիսկ եթե ծեծված կլինի քո մեջքը և վերցված կլինի քո ունեցվածքը: Լսիր և ենթարկվիր:» (Մուսլիմ)

**46.** **Կարելի՞ է հարցնել Ալլահի կողմից դրված հրամանների և արգելքների իմաստը կամ իմաստությունը:** Այո, պայմանով, որ հավատքը կամ արարքը կախում չի ունենա իմաստի հասկացության հետ,կամ նրա գոհությամբ: Իմաստի գիտելիքը պիտի ավելացնի մուսուլմանի դիմացկունությունը և հաստատակամությունը Ճշմարիտի ուղղում: Սակայն, բացարձակ հնազանդությունը և հարցերից խուսափելը հանդիսանում է կատարելության նշան Ալլահին ենթարկվելու մեջ, ինչպես նաև հավատք Նրան և Նրա բացարձակ իմաստության: Հենց այսպիսին են եղել հետևորդները:

**47.** **Ի՞նչ են նշանակում Ամենաբարձրյալի «Ամեն լավը, ինչ հասնում է քեզ, գալիս է Ալլահից: Իսկ ամեն վատը, ինչ հասնում է քեզ, գալիս է հենց քեզանից» խոսքերը:** Տվյալ իրավիճակում լավը նշանակում է Ալլահի գթասրտությունը, իսկ վատը, փորձությունը նրա կողմից: Իսկ այս բոլորը կանխորոշված է Ամենաբարձրյալ Ալլահի կողմից: Լավը վերաբերվում է

Ալլահին, որովհետև այդ Նա է ստեղծել այդ: Ինչ վերաբերվում է վատին, ապա, Նա ստեղծել է այդ որոշակի մտադրությամբ: Եվ եթե հաշվի առնենք այդ մտադրությունը, ապա այն վերաբերվում է Նրա բարիքներին և, ճշմարիտ Նա երբեք վատ բան չի անում: Նրա ցանկացած արարք բարիք է: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ամեն բարիք Քո ձեռքերում է, իսկ չարիքը Քեզ չի վերաբերվում:» (Մուսլիմ)
Ալլահի ստրուկների գործողությունները հանդիսանում են Ալլահի արարքները, և միևնույն ժամանակ, նրանք Ալլահի ստրուկների ձեռքբերումներն են: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Նրան, ով զոհաբերություններ էր արել և եղել էր աստվածավախ, ով ընդունում էր ամենալավագույնը, Մենք կհեշտացնենք ճանապարհը ամենահեշտին: Իսկ նրան, ով գծուծ էր և ենթադրում էր, որ ոչ մի բանի կարիք չունի, ով համարում էր լավագույնը սուտ, Մենք կհեշտացնենք ճանապարհը դեպի ամենադժվարը:» (Սուրա 92 «Գիշեր» այաթներ 5-10)

**48.** Կարելի՞ է ասել, «Այս շահիդը»: Ինչ որ մեկի մասին կոնկրետ ասել, որ նա շահիդ է, այդ նույնն է, որ ասեն, թե նա անպատճառ կմտնի Դրախտ: Իսկ սուննայի հետևորդների համոզմունքները հետևյալն են, մենք չենք ասում որևէ կոնկրետ մուսուլմանի մասին, որ նա պատկանում է Դրախտի բնակիչների թվին, կամ Դժոխքի (բացառությամբ նրանց, ում բնակության մասին հաղորդել է Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ)), որովհետև այն հասանելի չէ մեր գիտելիքներին, և նաև մեզանից թաքնված է մահվան ժամանակ մարդու ներքին վիճակը: Արարքները գնահատվում են իրենց ավարտով, իսկ մտադրությունները, որոնցով կատարվել են այս գործերը, հայտնի են միայն Ալլահին: Այնուամենայնիվ, մենք հույս ունենք պարգևի բարիք անողների համար և վախենում ենք պատիժներից, վատ արարք անողների համար:

**49.** Կարելի՞ է ասել որևէ կոնկրետ մուսուլմանի մասին, որ նա անհավատ է: Չի կարելի մեղադրել կոնկրետ մուսուլմանի անհավատության, շրկի կամ փարիսության մեջ, եթե ոչինչ նրա խոսքերում կամ արարքներում չի ցույց տալիս այդ: Իսկ ինչ նրա սրտում է, մենք չգիտենք և այդ իսկ պատճառով թույլ ենք տալիս գաղտնին միայն Ամենաբարձրյալ Ալլահին:

**50.** Կարելի՞ է կատարել շրջանց (տաուաֆ) ինչ որ բանի շուրջ բացի Քաաբայից: Չկա այնպիսի վայր աշխարհում, որի շուրջ կարելի է շրջանցել բացի օրհնված Քաաբայից և չի կարելի նրան նմանեցնել որևէ վայր, որքան էլ որ հարգալի այն լինի: Եվ նա, ով կատարում է շրջանց մեկ ուրիշ վայրի շուրջ, փառաբանելով այդ, ապա դառնում է անհնազանդ Ալլահին:

# ՍՐՏԻ ԱՐԱՐՔՆԵՐԸ

Ամենաբարձրյալ Ալլահը ստեղծել է սիրտը և արել է այն միապետ, իսկ մարմնի մյուս օրգանները նրա ենթականերն են: Իսկ ինչպես հայտնի է, ինչպիսին է միապետը, այնպիսին են ենթակաները: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «Եվ, ճշմարիտ, մարմնում կա մի փոքր մաս, որը լավ լինելով, լավն է դարձնում ամբողջ մարմինը, իսկ լինելով վատ, դարձնում է վատ և ամբողջ մարմինը: Դա սիրտն է:» (ԱԼ-Բուխարի, Մուսլիմ)

➢ Այն հավատքի կամ անհավատության, փարիսության և շըրկի տարրա է: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «Աստվածավախությունը աhա այստեղ է:» Այս խոսքերով նա երեք անգամ ցույց տվեց իր կուրծքը: Այս հադիթը փոխանցված է (Մուսլիմ)-ից:

➢ **Հավատք.** Այն համոզմունք է, խոսք և արարք, իսկ կոնկրետ, համոզմունք սրտում, լեզվով արված վկայություն և սրտի ու մյուս օրգանների արարքներ: Սիրտը հավատում և հաստատում է, որի արդյունք է դառնում լեզվով արված վկայությունը: Հետո սիրտը սկսում է գործել, սիրել, վախենալ, հուսալ և լեզուն սկսում է հիշատակել Ալլահին, կարդալ Ղուրան, իսկ մարմնի մյուս մասերը, կատարել երկրային խոնարհումներ, ինչպես նաև բարի գործեր, որոնք մոտեցնում են մարդուն Ալլահին: Մարմինը հնազանդորեն հետևում է սրտին: Այն, ինչ հաստատվել է սրտում, անպատճառ արտահայտվում է մարմնի վրա, չնայած դրա արտահայտությունները կարող են տարբեր լինել:

➢ Սրտի արարքների տակ հասկացվում են գործեր, որոնք բխում են սրտից և կապված են նրա հետ: Այդ արարքներից ամենահզորը Ամենաբարձրյալ Ալլահին հավատալն է, որը սրտում է: Սրտի արարքներին են վերաբերվում ինչ որ բանի իսկության գիտակցությունը, որը ծնում է հնազանդություն և հաստատում: Սրան են վերաբերվում ստրուկի սրտում ծնվածը Տիրոջ նկատմամբ, այսինքն, սեր, վախ, հույս, հնազանդություն, վստահություն, համբերություն և այլն:

➢ **Սրտի ամեն արարք ունի իր հակասությունը, սրտի համապատասխան արատը:** Անկեղծությանը հակասում է ցուցադրաբար արված արարքները, հաստատուն համոզվածությամբ այսինքն կասկած, սիրուն ատելություն և այլն: Եվ եթե մենք բավարար ուշադրություն չդարձնենք մեր սրտերին և նրանց ուղղմանը, այդ հակասությունները կհաղթահարեն նրանց և կկործանեն: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «« Ճշմարիտ, երբ մարդ մեղք է գործում, նրա սրտում հայտնվում է սև կետ: Եթե նա դադարի և խնդրի Ալլահից թողություն և մեղանչի, այն ջնջվում է: Եթե նա վերադառնում է մեղքին, ապա կետը մեծանում է և այդպես շարունակվում է այնքան ժամանակ, մինչ սևությունը չի պատում նրա ամբողջ սիրտը:Այս է պարուրումը, որը հիշատակվում է Ամենաբարձրյալի Խոսքերում: «Բայց ոչ, նրանց սրտերը պարուրված են նրանցով, ինչ նրանք ձեռք են բերել:» (Ատ-Տիրմիզի):

Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) նույնպես ասաց. «Գայթակղությունները հանդիսանում են սրտերին ինչպես խսիր, թել առ թել և և սրտում, որը

ներծծում է դրանք, հայտնվում է սև կետ: Իսկ սրտում, որը մերժում է դրանք, հայտնվում է սպիտակ կետ: Վերջիվերջո, մարդու սիրտը դառնում է կամ սպիտակ, ինչպես մաքուր երկինք, և նրան չեն վնասի գայթակղությունները, քանի դեռ գոյություն ունեն երկինքները և երկիրը, կամ սև և փոփոխված և չի դրդի հաստատման և խուսափման կշտամբանքից, այլ կհետևի միայն իր կրքերին:» ( Մուսլիմ)

➢ **Ավելի կարևոր է և պարտադիր իմանալ սրտի երկրպագման տեսակները,** քան իմանալ գործեր, որոնք պիտի կատարվեն մարմնի մյուս մասերով, որովհետև նրանք հիմք են, իսկ մարմնի մասերի գործերը ճյուղավորումներ, լրացումներ և սրտի գործերի պտուղներ: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «Ճշմարիտ, Ալլահը չի նայում ոչ ձեր տեսքին, ոչ ձեր հարստությանը, այլ նայում է Նա ձեր սրտերին և ձեր արարքներին:» (Մուսլիմ)

Սիրտը, գիտելիքների, մտածմունքների և մտորումների տարրա է, այդ իսկ պատճառով մարդկանց դիրքերը Ալլահի առջև սահմանվում են հավատքով, հաստատակամությամբ, անկեղծությամբ, որոնք սրտում են: Ալ-Հասան ալ-Բասրին ասում էր. «Ճշմարիտ, Աբու Բաքրը առաջ անցավ մյուս հետևորդներից ոչ թե ի շնորհիվ իր աղոթքների և պահքի, այլ շնորհիվ հավատքի, որը հաստատվել էր նրա սրտում: »

➢ **Սրտի արարքները գերազանցում են մարմնի մյուս օրգանների արարքներից:** 1. Սրտով երկրպագման խախտումը, կարող է խախտել երկրպագմանը, որը կատարվում է մարմնի մյուս մասերով:Օրինակ, բարի գործը չեղյալ է համարվում, եթե կատարվում է ի ցույց մարդկանց: 2. Սրտով արված արարքները հիմք են, իսկ առանց մտադրության արված խոսքը կամ արարքը չի դատապարտվում: 3. Սրտով արված գործերը պատճառ են հանդիսանում գտնվել Դրախտի բարձր աստիճանում, օրինակ աշխարհիկ բարիքներից օգտվելու զսպվածություն (զուհդ): 4. Սրտով արված արարքները ավելի դժվար են, քան մարմնի մյուս մասերով արված արարքները: Իբն ալ-Մունկադիրը նույնիսկ ասաց. «Ես պայքարեցի ինձ հետ քառասուն տարի, և միայն հետո նրանք սկսեցին ստացվել համապատասխան ձևով:» 5. Սրտով արված արարքների արդյունքները ավելի գեղեցիկ են, քան մյուս օրգաններով արված արաքները: Որպես օրինակ, կարելի է բերել Ալլահի նկատմամբ սերը: 6. Սրտով արված արարքների պարգևը ավելին է, քան մարմնի մասերի արարքների համար: Աբու – ադ-Դարդան ասում է. «Մեկ ժամ մտորումը ավելի լավ է, քան ամբողջ գիշեր աղոթելը:» 7. Սրտով արված արարքները հանդիսանում են շարժիչ մարմնի մյուս մասերի համար, և ստիպում են նույնպես կատարել որոշակի արարքներ: 8. Սրտով արված արարքները կարող են մեծացնել պարգևը մարմնի մյուս մասերով արված արարքների համար, կարող են պակասեցնել, ավելացնել և ոչնչացնել այն ընդհանրապես: Որպես օրինակ կարելի է բերել աղոթքի հնազանդությունը: 9. Որոշ դեպքերում, սրտով արված արարքները կարող են լրացնել մյուս մասերի արարքների

բացակայությունը: Որպես օրինակ կարելի է բերել ողորմություն տալու մտադրությունը գումարի բացակայության պարագայում: 10. Սրտով արված արարքների պարգևը սահման չունի: Որպես օրինակ կարելի է բերել համբերությունը: 11. Սրտով արված արարքների պարգևը շարունակվում է գրվել մարդուն նույնիսկ երբ մյուս մասերը մարմնի դադարել են համապատասխան արարքը, կամ կորցրել են ունակությունը կատարելու այն: 12. Սրտով արված արարքները կարող են նախորդել մարմնի մյուս մասերով արված արարքներին, կարող են կատարվել միևնույն ժամանակ:

➢ **Մինչ մարմնի մասերը կկատարեն ինչ որ արարք, սիրտը անցնում է մի քանի փուլեր:**

1. ՊԱՏԱՀԱԿԱՆ ՄԻՏՔ, դա առաջին միտքն է արարքի, որը առաջացել է սրտում:
2. ԱՐՄԱՏԱՑԱԾ ՄԻՏՔ, այսինքն հաստատված սրտում:
3. ՀՈԳՈՒ ՄՈՏԻՎԱՑԻԱ, մարդը կասկածում է, անել հետևյալ արարքը, թե ոչ:
4. ՄՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ, մարդը հակվում է նրան, որ ավելի լավ է կատարել այդ արարքը:
5. ՀԱՍՏԱՏԱԿԱՄՈՒԹՅՈՒՆ, մարդը հաստատակամորեն մտադրվել է կատարել այդ արարքը: այլ կերպ ասած. Նա որոշում է ինքն իր համար, որ կկատարի հետևյալ արարքը:

Ինչ վերաբերվում է առաջին երեք փուլերին, ապա նրանց համար մարդ չի ստանում պարգև,(եթե խոսքը գնում է բարի գործերի մասին), և նրան չի վերագրվում մեղք, (եթե խոսքը վերաբերվում է վատ արարքի մասին): Եթե կա մտադրություն, մարդուն վերագրվում է պարգև բարի արարքի կատարման մտադրության համար, բայց չի վերագրվում մեղք, վատ արարքի կատարման համար: Եթե արդեն կա հաստատակամություն, մարդուն վերագրվում է պարգև բարիք գործելու համար և վերագրվում է մեղք, վատ արարք գործելու հաստատակամության համար: Որովհետև, հաստատակամությունը ենթադրում է, որ եթե մարդուն ոչինչ չխանգարի, նա անպատճառ կկատարի մտադրվածը: Ամենաբարձրյալ Ալլահը ասում է. **« Ճշմարիտ, նրանց, ովքեր ցանկանում են, որ հավատացյալների մեջ տարածվի վատը, պատրաստված է տանջալի պատիժ:»** Իսկ Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասում է. «**Եթե երկու մուսուլման խաչել են սրերը, ապա և մարդասպանը և սպանվողը կընկնեն կրակ:»** Մարդիկ հարցրեցին. **«Օ, Ալլահի Մարգարե, մարդասպանի հետ ամեն ինչ պարզ է, իսկ ինչու՞ նաև սպանվածը:» Նա պատասխանեց.« Նա էլ էր ցանկանում սպանել իր ընկերոջը**:» (Ալ- Բուխարի)

➢ ԵԹԵ ՄԱՐԴԸ ՄԵՂՔ ԳՈՐԾԵԼՈՒ ՀԱՍՏԱՏԱԿԱՄՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿ ՉԳՈՐԾԻ ԱՅՆ, ԱՊԱ ԱՅՍՊԻՍԻ ԴԵՊՔԵՐԸ ԿԱՐԵԼԻ Է ԲԱԺԱՆԵԼ ՉՈՐՍ ՏԵՍԱԿՆԵՐԻ.

1) Մարդը մերժում է գործել այդ մեղքը վախենալով Ալլահից, այսպիսի մարդը ստանում է պարգև: 2) Մարդը մերժում է գործել այդ մեղքը վախենալով մարդկանցից, ապա այդ մարդուն վերագրվում է մեղք, քանի որ մեղքերի մերժումը երկրպագություն է, իսկ երկրպագությունը կարող է

լինել միայն առ Ալլահ: 3) Մարդը չի կարողացել կատարել տվյալ արարքը և միևնույն ժամանակ նա չի արել այն, ինչ անհրաժեշտ է նպատակին հասնելու համար, այդպիսի մարդուն նույնպես վերագրվում է մեղք, այն կատարելու հաստատակամության համար: 4) Մարդ չի կարողացել կատարել տվյալ արարքը և միևնույն ժամանակ, նա արել է այն, ինչ անհրաժեշտ է նպատակի իրականացման համար, բայց նրան չի հաջողվել կատարել տվյալ արարքը, որովհետև խանգարել են նրանից չկախված հանգամանքներ, այդպիսի մարդուն վերագրվում է մեղքը, որովհետև եթե չլինեյին հանգամանքները, նա կիրականցներ մտադրվածը: Եթե մեղք գործելուն ուղեկցում է մտադրությունը, ապա նրան սպասվում է պատիժ, անկախ նրանից անմիջապես է նա կատարել արարքը, թե ավելի ուշ: Ով կատարել է որևէ արգելված բան մեկ անգամ և միևնույն ժամանակ ունի մտադրություն կատարել այն կրկին առաջին իսկ հնարավորության դեպքում, նա պնդում է մեղքում և արժանի է պատժի մտադրության համար, նույնիսկ եթե այն չի իրագործվել:

## ՄՐՏԻ ՈՐՈՇ ԱՐԱՐՔՆԵՐ

➢ ՄՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ. ԱՅՍ որոշակի արարքի կատարման տրամադրվածություն է և ցանկություն է կատարել այն: Առանց մտադրության արարքը չի ընդունվում Ամենաբարձրյալից և համարվում է անվավեր: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ճշմարիտ արարքները գնահատվում են մտադրությամբ և իրոք, յուրաքանչյուրին կհասնի միայն այն, ինչ նա մտադրված էր ձեռք բերել:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)

Իբն Ալ-ՄՈւբարակն ասաց. «Բարիքները, որոնք դու կատարում ես, կարող է քիչ է, բայց պարգևը նրանց համար բազմապատկում է մտադրությունը: Եվ երբեմն արարքները շատ են, բայց մտադրությունը քչացնում է դրանք:»

Ալ-ՖՈւդեյլն ասաց. «Ամենաբարձրյալ Ալլահը նայում է քո մտադրությանը և եթե, քո արարքները հանուն Ալլահի են, այն կոչվում է անկեղծություն: Այդ, երբ արարքը կատարվում է միայն հանուն Ալլահի և չկա այնտեղ տեղ ուրիշ որևէ մեկի համար: Եթե արարքը կատարվում է ոչ հանուն Ալլահի, այդ ցուցամոլություն, փարիսեցիություն և նման բան է:»

➢ ԵՋՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆ, բոլոր մարդիկ կորուսյալներ են, բացի նրանցից, ովքեր ձեռք են բերել գիտելիք: Եվ բոլորը, ովքեր գիտեն, կորուսյալ են, բացի նրանցից, ովքեր աշխատում են: Եվ բոլոր նրանք, ովքեր աշխատում են կորուսյալ են, բացի անկեղծներից: Ով ցանկանում է հնազանդ լինել Ալլահին, ապա նրա առաջնահերթ խնդիրն է ուշադրություն դարձնել իր մտադրության վրա: Հասկանալով անկեղծության իրական էությունը, նա պիտի ապացուցի այդ գործնականորեն: Առանց մտադրության արարքը անօգուտ աշխատանք է: Իսկ մտադրությունը առանց անկեղծության ցուցամոլություն է, իսկ անկեղծությունը առանց կյանքի հավատքի, ոչինչ է:

Արարքները բաժանվում են երեք խմբի.

1. ԱԼԼԱՀԻՆ ՉԼՍԵԼԸ. Գործում բարի մտադրությունը, որը հանդիսանում

է Ալլահին չլսելը, չի ընդունվում: Իսկ եթե այն ընթանում է վատ մտադրությամբ, մեղքը նրա կատարման համար մեծանում է:

2. ԹՈՒՅԼԱՏՐՎԱԾԸ. Այս տեսակի արարքները նույնպես համընթանում են որոշակի մտադրություններով: Եվ, եթե մարդ ունի ճիշտ մտադրություն, այսպիսի արարքը կարող է լինել Ալլահին մոտեցման առիթ:

3. ԲԱՐԻ ԳՈՐԾԵՐԸ, (Ալլահին հնազանդելը): Նրանց ճշտությունը կախված է մտադրությունից[1], որը կարող է բազմապատկել պարգևը կատարվածի համար: Եթե մարդ մտադրվել էր կատարել տվյալ արարքը ի ցույց մարդկանց, ապա այն դառնում է Ալլահին չլսել և փոքր շըրկ, որը կարող է վերածվել մեծի: Այս տեսակը կարելի է բաժանել երեք տեսակի.

1. Մարդը երկրպագում է ի ցույց մարդկանց և միայն սա է դրդում նրան երկրպագել: Սա շըրկ է, իսկ այսպիսի երկրպագությունը համարվում է սուտ:

2. Սկզբում արարքը արվել է հանուն Ալլահի, բայց հետո, նրան խառնվել է մտադրությունը անել այդ ի ցույց մարդկանց: Եթե գործը վերաբերվում է օրինակ ողորմությանը, այսինքն նրա սկիզբն ու վերջը կախված չեն միմյանցից, ապա սկիզբը կլինի վավեր, իսկ վերջը անվավեր: Եթե սկիզբն

---

[1] Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ով մտադրվել է բարի գործ և չի արել այն, Ալլահը կգրի այդ Իր մոտ նրա համար, որպես ամբողջական բարիք: Իսկ եթե նա մտադրվել է ը կատարել է այդ, ապա Ալլահը կգրի այդ Իր մոտ ինչպես տաս բարիք, մինչ յոթհարյուր անգամ և այսպես մինչ շատ անգամներ : Իսկ ով մտադրվել է վատ արարք և չի իրականացրել այն, Ալլահը կգրի Իր մոտ, ինչպես ամբողջական բարիք: Իսկ եթե նա մտադրվել է և արել է այդ, Ալլհը կգրի այդ, ինչպես մեկ վատ արարք:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)

Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ճշմարիտ, այս աշխարհում կա ձորս տեսակի մարդ: Առաջինին պատկանում է այնպիսի ստրուկը, ում Ալլահը նվիրել է հարստություն և գիտելիք և ունենալով այդ, նա վախենում է Իր Տիրոջից, պահպանում է բարեկամական կապերը և գիտի այն մասին, թե ինչ պիտի անի պատկանելիքով հանուն Ալլահի, ապա այսպիսի մարդը կհայտնվի լավագույն դրության մեջ : Երկրորդին պատկանում է այն ստրուկը, ում Ալլահը տվել է գիտելիո և չի տվել ունեցվածք, և ով ասում է, «Եթե ես ունենայի հարստություն, ապա կանեյի նույնը, ինչ այս մեկը», լինելով անկեղծ իր մտադրություններում և հետևելով նույն մտադրություններին ինչպես առաջինը, ապա կստանա նույն պարգևը, ինչպես նա : Երրորդին պատկանում է այն ստրուկը, որին Ալլահը տվել է հարստություն, բայց չի տվել գիտելիք և նա օգտագործում է այդ առանց մտածելու, չի վախենում Ալլահից ունենալով այդ, չի պահպանում բարեկամական կապերը և չգիտի այն մասին, ինչ նա պարտավոր է անել իր ունեցվածքից հանուն Ալլահի, այսպիսինը Հավերժ Աշխարհում կհայտնվի ամենավատ իրավիճակում: Չորրորդ խմբին է պատկանում այն ստրուկը, որին Ալլհը չի տվել ոչ հարստություն, ոչ գիտելիք և ով ասում է. «Եթե ես ունենայի հարստություն, ապա կանեյի նույնը ինչ այսինչը,» ունենալով հետևյալ մտադրությունները, ինչպես երրորդը, որի համար էլ կունենա նույնը, ինչ երրորդը:»» (Աթ-Թիրմիզի)

Երրորդի և չորրորդի խոսքերը տվյալ հադիթում, կատարվում է ըստ հնարավորության, և նկատի է առնվում մտադրություն ցանկության հետ և սա արտահայտվում է նրանց խոսքերում, «Եթե ես ունենայի այս, ես կանեյի այնքան, որքան նա կաներ, ուրեմն նրանցից յուրաքանչյուրը վերագրվում է երկրորդին պարգևով: Իբն Ռաջաբը ասաց, բացատրելով հետևյալ հադիթը.» Նրանք հավասար են պարգևով, «այդ ցույց է տալիս այն, որ նրանք հավասար են պարգևի հիմքում, որը տրվում է առանց բազմապատկման, իսկ բազմապատկված պարգևը տրվում է նրանց, ով կատարել է արարքը, այլ, ոչ նրանց ով սահմանափակվել է միայն մտադրությամբ առանց արարքի: Եթե նրանք հավասար լինեյին բոլոր պարագաներում, ապա կստացվեր, որ նրանցից յուրաքանչյուրը ստանում է պարգև տասնապատիկ, իսկ այսպիսի պատկերացումը հակասում է բոլոր տեքստերին :

ու ավարտը արարքի կախված են միմյանցից, օրինակ աղոթքի դեպքում, ապա հնարավոր է երեք տարբերակ:
Առաջին տարբերակ. մարդը ճնշում է ցանկությունը կատարել արարքը ի ցույց մարդկանց: Այդ դեպքում նրա մտադրությունը չի ազդի արարքի վրա:
Երկրորդ տարբերակ. մարդը գայթակղվում է կատարել արարքը ի ցույց մարդկանց և այդպես էլ անում է: Այս դեպքում արարքը դառնում է անվավեր:
Երրորդ տարբերակ. մտադրությունը կատարել արարքը ի ցույց մարդկանց գալիս է այն բանից հետո, երբ այն արվել է: Սա Սատանայի ներշնչանքն է, որը չի ազդում ոչ արարքի, ոչ մարդու վրա:
3. Գոյություն ունեն գաղտնի մուտքեր, որոնց միջոցով ցանկությունը կատարել որևէ բան ի ցույց, մտնում է մարդու գիտակցության մեջ: Դրանք պիտի իմանալ և խուսափել:

**Եթե մարդ կատարում է բարի արարք հասնելու աշխարհիկ նպատակների, ապա պարգևը կամ մեղքը կախված է մտադրությունից: Հնարավոր են երեք տարբերակներ:**

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԲԵՐԱԿ. մարդը կատարում է բարի արարք, միայն աշխարհիկ նպատակին հասնելու համար: Օրինակ, մարդ ղեկավարում է աղոթքը, որպեսզի ստանա գումար: Այսպիսի մարդուն գրվում է մեղք: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «Նա, ով ձեռք է բերում գիտելիք, որոնք սովորաբար ձեռք են բերում հանուն Ալլահի, բացառապես աշխարհիկ նպատակներին հասնելու համար, չեն զգա Դրախտի անուշաբույրը Դատաստանի Օրը:» (Աբու Դաուդ)
ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԲԵՐԱԿ. Մարդ կատարում է որևէ արարք և հանուն Ալլահի և հանուն այս աշխարհի: Այսպիսի մարդու մոտ հավատքը լիակատար չէ, ուստի պարգևը կլինի այդպիսի: Որպես օրինակ կարելի է բերել մարդու, որը կատարում է հաջ և հանուն հաջի և հանուն առևտրի: Այսպիսի մարդու պարգևը կախված է անկեղծության աստիճանից:
ԵՐՐՈՐԴ ՏԱՐԲԵՐԱԿ. Արարքը կատարվում է հանուն Ալլահի, սակայն մարդը վերցնում է գումար կամ նվեր, որոնք օգնում են նրան շարունակել ջանալ և ավելի լավ կատարել գործը: Նրա պարգևը մնում է լիակատար: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «Ճշմարիտ, Ալլահի Գիրքը ամենից շատ արժանի է նրան, որ ծախսվի նրա վրա արժեք:» (Ալ- Բուխարի)
ՊԵՏՔ Է ՆԱև ՆՇԵԼ, ՈՐ ԱՆԿԵՂԾՆԵՐԻ ԱՍՏԻՃԱՆՆԵՐԸ ՄԻՆՆՈՒՅՆԸ ՉԵՆ.
1. ԱՄԵՆԱՑԱԾՐ ԱՍՏԻՃԱՆԸ այն է, որ մարդը հնազանդ է Ալլահին և անում է բարի արարքներ հուսով, որ կպարգևատրվի, և վախենում է պատժից:
2. ՄԻՋԻՆ ԱՍՏԻՃԱՆԸ այն է, որ մարդ հնազանդ է Ալլահին և անում է բարի արարքներ որպես շնորհակալություն Ալլահին և որպես Նրա հրամանների իրականացում:
3. ԳԵՐԱԳՈՒՅՆ ԱՍՏԻՃԱՆԸ այն է, որ մարդ հնազանդ է Ալլահին և անում է բարի արարքներ սիրելով Ալլահին և մեծարելով նրան և տածում է ակնածալի վախ Նրա նկատմամբ: Այս աստիճանը անկեղծ հավատացյալներինն է,

կամ արդարների (սիդդիկուն):[1]

➢ **ԶՂՋՈՒՄ.** Այն հանդիսանում անպատճառ հանգամանք միշտ, քանի որ մարդուն բնորոշ է մեղք գործել: Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասաց. «Ադամի յուրաքանչյուր որդին սխալվում է, և սխալվողներից լավագույնները անընդհատ մեղանչողներն են:» (Ատ-Տիրմիզի)

Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) նույնպես ասաց. «Եթե դուք մեղք չգործեք, Ալլահը ձեր փոխարեն կբերեր մարդկանց, ովքեր մեղք են գործում և Ալլահից թողություն են խնդրում և Ալլահը ներում է նրանց:» (Մուսլիմ)

Զղջման հետաձգումը և մեղքի պնդումը Ալլահին չհնազանդվել է և անբանական որոշում է: Սատանան օգտագործում է յոթ մոտեցում, որպեսզի մոտենա մարդուն: Եթե նրան չի հաջողվում մեկը, ապա նա անցնում է մյուսին.

1. Շըրկ և անհավատություն (քուֆր):

2. Նորամուծություններ ակիդայի, կամ Ալլահի Մարգարեյի (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) և նրա հետևորդների օրինակներում:

3.Մեծ մեղքեր (քաբաեր):

4. Փոքր մեղքեր (սաղաեր):

5. Թույլատրելիի չարաշահում և թույլատրելի բարիքների օգտագործման չափազանցություն:

6. Բարի գործեր, որոնք ավելի քիչ նշանակալից են և բերում են ավելի քիչ պարգև, քան մյուսները:

7. Սատանաների օգտագործում մարդկանց և ջինների միջից, որոնք սկսում են հաղթահարել մարդուն:

ԱԼԼԱՀԻՆ ՉՀՆԱԶԱՆԴՎԵԼԸ ՆՈՒՅՆՊԵՍ ԿԱՐԵԼԻ Է ԲԱԺԱՆԵԼ ՄԻ ՔԱՆԻ ՏԵՍԱԿՆԵՐԻ.

1. ԾԱՆՐ ՄԵՂՔԵՐ (քաբաեր), սրանք մեղքեր են, որոնց համար մարդը ենթարկվում է Շարիաթով սահմանված պատժի այս աշխարհում, կամ որի համար պատիժ և Ալլահի զայրույթն, կամ անեծքն է խոստացված հավերժ կյանքում, ինչպես նաև այն մեղքերը, որոնց իրականացումը, համաձայն կրոնական տեքստերի, վկայում են հավատքի բացակայությունը:

2. ՓՈՔՐ ՄԵՂՔԵՐ (ՍԱՂԱՐ), սրանք մնացած մեղքերն են: Սակայն փոքր շատ մեղքեր կարող են վերածվել մեծ մեղքերի, օրինակ, եթե մարդ հաստատակամ է նրանց կատարմանը, կրկնում է դրանք անգամներ,

---

[1] Ամենաբարձրյալ Ալլահն ասաց. ՛Ես շտապեցի դեպի քեզ իմ տեր, որպեսզի դու գոհանաս ինձանով: Այսպիսով, Մովսեսը համոզված էր, որ Ալլահին հանդիպելու նախաձեռնության մեջ մտնում է, ոչ միայն պատվիրանը կատարելը , այլ բարի արարքը: Դրա օրինակն է, ծնողների և մարդու փոխհարաբերությունները, նրանց պատվելը, որը ունի երեք աստիճան: Ստորին աստիճանը այն, է, որ պատվել նրանց լավ, միայն այն պատճառով , որ դու վախենում ես ալ-ակուկ պատժից, (ծնողների նկատմամբ վատ վերաբերմունքի պատժից): Միջին աստիճանն է, պատվել ծնողներին, որովհետև դու հետևում ես Ալլահի պատվիրաններին և այն պատասխանն է այն բանի, որ նրանք քեզ փոքր ժամանակ լավ են վերաբերվել և նրանց շնորհիվ դուք եկել եք այս աշխարհ: Ամենաբարձր աստիճանն է, պատվել ծնողներին, փառաբանելով Ալլահի պատվիրանը , սիրելով, փառաբանելով և պատվելով Ալլահին :

չարաշահելով դրանք, (այսինքն համարում է, որ դրանք աննշան են), հպարտանում է դրանցով և բացահայտ է կատարում դրանք:
Ինչպիսին էլ, որ լինեն մեղքերը պիտի մեղանչել: Մեղանչելը ընդունվում է մինչ այն ժամը, երբ արևը դուրս չի գա արևմուտքից կամ երբ մարդը չի սկսի հնչեցնել մահվանից առաջ եկող խռխռոցը: Եթե մարդ մեղանչի անկեղծ, նրա վատ արարքները կփոխարինվեն նրա համար լավ արարքների, նույնիսկ եթե դրանք շատ են:

## ՄԵՂԱՆՉԱՆՔԻ ԸՆԴՈՒՆՄԱՆ ՊԱՅՄԱՆԸ.

1. Մեղքի կատարման դադարումը: 2. Արդեն արվածի զղջում: 3. Որոշված մտադրություն չվերադառնալ այդ մեղքին ապագայում, մեղքի առաջացրած հետևանքների վերացումը (վիրավորանքի հարթեցում, ոտնահարված իրավունքների վերականգնում, վնասների փոխհատուցում): [1]

## ՄԵՂԱՆՉԵԼՈՒ ՏԵՍԱՆԿՅՈՒՆԻՑ, ՄԱՐԴԿԱՆՑ ԿԱՐԵԼԻ Է ԲԱԺԱՆԵԼ ՉՈՐՍ ՏԵՍԱԿԻ.

1.Մարդ, ով հավատարիմ է իր մեղանչանքին և չի վերադառնում մեղքին, եթե հաշվի չառնենք մարդկային փոքր թուլությունները, որոնք բնորոշ են բոլոր մարդկանց: Այսպիսի մարդու մեղանչանքը անկեղծ է, իսկ նա առաջխաղացում է ապրում դեպի բարիք: ԱՅՍ ՀԱՆԳՍՏԱՑԱԾ ՀՈԳԻ Է:
2. Մարդ, ով ընդհանուր առմամբ հավատարիմ է իր մեղանչանքին և հնազանդ է Ալլահին: Սակայն երբեմն նա մեղքեր է գործում, չձգտելով դրան, և ամեն անգամ խղճի խայթ է զգում, ափսոսում է արարքի համար և հաստատակամորեն մտադրվում է չվերադառնալ նրան, ինչը նրան դրդել է մեղքի: ՍԱ ՆԱԽԱՏԻՆՔՈՎ ՀՈԳԻՆ Է:
3. Մարդը մեղանչում է և որոշ ժամանակ իրոք ձեռնպահ է մնում մեղքից, իսկ հետո կրքերը հաղթանակում են և նա գործում է որոշակի մեղքեր:Սակայն, միևնույն ժամանակ, նա անընդհատ կատարում է իր կրոնական պարտավորվածությունները և բարի գործեր է անում: Նա հրաժարվում է մեղքերից ընդհանուր առմամբ, ունենալով հնարավորություն և ձգտում գործելու դրանք: Երբեմն կրքերից մեկը հաղթահարում է նրան և նա մեղք է գործում, բայց երբ ալիքը անցնում է, նա ափսոսում է կատարվածի համար և ինքն իրեն խոստանում է մեղանչել: Այս հոգի է, որից կհարցնեն և նրա դրությունը վտանգավոր է նրանով, որ այն հետաձգում է մեղանչելը: Չէ, որ

[1] Պատմում են, որ Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց, որ «Ամենաբարձրյալ Ալլահը ունի երեք աղյուսակ գրանցման համար. մեկը, որտեղ ոչինչ չի գրում, մյուսը, որը չի թողնում առանց գրառման և երրորդը, որում գրառում է այն, որը աններելի է : Այդտեղ նկատի է առնվում Ամենաբարձրյալին զուգընկեր տալը: Ալլահն ասում է. «Ճշմարիտ, ով Ալլահին զուգընկեր է տալիս, նրան Նա արգելել է Դրախտը: Նրա բնակավայրը կլինի Գեհենը և անօրեններին չի լինի օգնականներ:» Երկրորդ աղյուսակում Ամենաբարձրյալը չի գրառում անարդարությունը, որը ստրուկը անում է ինքն իրեն: Ամենաբարձրյալը թողնում է այդ Իր և Իր ստրուկի միջև և ներում է այդ մեղքը Իր ցանկությամբ: Իսկ այն աղյուսակը, որը չի մնում առանց գրառման, այն, որում Ալլահը գրառում է անարդարությունը, որոնք ստրուկները պատճառում են միմյանց, և որի համար անպատճառ կպատժվեն:

մարդ կարող է մահանալ, մինչ մեղանչելը, իսկ արարքները, ինչպես հայտնի է, գնահատվում են ավարտով:
**4.** Մարդը զղջում է և որոշ ժամանակ ձեռնպահ է մնում մեղքերից, հետո կրկին ընկղմվում է նրանց մեջ, չմտածելով մեղանչելու մասին և չզղջալով արարքների համար: Այս հոգի է, որը դրդում է վատ արարքի և այսպիսի մարդը պիտի վախենա վատ ավարտից:

## ➢ ՃՇՄԱՐՏԱՑԻՈՒԹՅՈՒՆ.

**Սա սրտով արված արարքների հիմքն է: «Ճշմարտացիություն բառը օգտագործվում է վեց իմաստներով.**
1.Ճշմարտացիություն խոսքերում:
2. Ճշմարտացիություն մտադրություններում, անկեղծություն:
3. Ճշմարտացիություն հաստատակամության մեջ:
4.Ճշմորտացիություն հաստատակամությունը կյանքի կոչելու մեջ:
5.Ճշմարտացիություն արարքներում, այսինքն, արարքների էությունը համապատասխանում է նրանց ակնհայտ ձևին:
6. Ճշմարտացիություն կրոնի մեջ ընդհանրապես: Սա ճշմարտացիության գերագույն աստիճանն է:

Սա ճշմարտացիություն է վախի, հույսի, մեծարման մեջ, ինչպես նաև աշխարհիկ բաների չափավորում, վստահույուն Ալլահին, և սեր Նրա նկատմամբ, և սեր սրտով արված արարքների ժամանակ: Ում այս բնորոշ է, նա հանդիսանում է անկեղծ հավատացյալ կամ սուրբ (սադիկ): Ալլահի Մարգարեն (*Սալլալահու ալեյհի ուա սալամ*) ասաց. «Պահպանեք ճշմարտացիություն, քանզի ճշմարտացիությունը բերում է բարեպաշտություն, իսկ բարեպաշտությունը տանում է Դրախտ: Մարդը չի դադարի ասել ճշմարտություն և ջանալ լինել ճշմարիտ այնքան ժամանակ, մինչ չի գրանցվի Ալլահի մոտ, որպես ամենաճշմարտացի:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)

Նրան, ով ձգտում է գտնել ճշմարտությունը և անկեղծորեն հավատում է, որ Ալլահը կօգնի նրան այդ հարցում և չի հետևի իր կրքերին, Ամենաբարձրյալը կօգնի: Իսկ եթե նա այնուամենայնիվ չգտնի այն, ապա նա կունենա արդարացում Ալլահի մոտ:

Ճշմարտացիության հակադիրը հանդիսանում է սուտը: Ամենից առաջ սուտը հասնում է լեզվին և փչացնում է այն: Հետո, այն հասնում է մարմնի մյուս մասերին և փչացնում է նրանց արարքները այնպես, ինչպես փչացնում է խոսքը, արված լեզվով: Դրանից հետո սուտը պարուրում է խոսքը, արարքը, մարդու վարքը և փչացնում է դրանք:

**➢ ՍԵՐ.** Ալլահի, Մարգարեյի և հավատացյալների նկատմամբ սերը թույլ է տալիս մարդուն զգալ հավատքի քաղցրությունը: Ալլահի Մարգարեն (*Սալլալահու ալեյհի ուա սալամ*) ասաց.« Հավատքի քաղցրությունը կզգա նա, ում մեջ կհյուսվեն երեք հատկանիշ: Նա պիտի սիրի Ալլահին և Նրա Մարգարեյին ամեն ինչից շատ, սիրի այս կամ այն մարդուն միայն հանուն Ալլահի և չցանկանա

վերադառնալ անհավատության այն բանից հետո, երբ Ալլահը փրկել է նրան դրանից, այնպես, ինչպես չի ցանկանում ընկնել Կրակ:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)

Եթե սրտում տնկվում է սիրո ծառը, որը ջրվում է անկեղծությամբ և Սուննային հետևելով, այն տալիս է շատ պտուղներ, որոնք հավատացյալները կարող են վայելել անընդհատ:

ԴՐԱՆՔ ԼԻՆՈՒՄ ԵՆ ՉՈՐՍ ՏԵՍԱԿ.

1.Սեր առ Ալլահը: Սա հավատքի հիմքն է:

2.Սեր հանուն Ալլահի և ատելություն հանուն Ալլահի: Նրանք պարտադիր են:[1]

3.Սեր ինչ որ մեկին, հավասար Ալլահի: Սա Ալլահին զուգընկեր տալն է պարտադիր սիրով: Որպես օրինակ կարելի է բերել բազմաստվածների սերը իրենց աստվածների նկատմամբ: Սա շըրկի հիմքն է:

4.Բնական սեր. Դա, օրինակ սեր է ծնողների, երեխաների, հարազատների նկատմամբ, ինչպես նաև սեր ուտելիքի և այլնի նկատմամբ: Այս սերը թույլատրելի է: Իսկ որպեսզի Ալլահը սիրի մեզ, մենք պիտի չափավոր լինենք աշխարհիկ բարիքների օգտագործման մեջ: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Եղիր չափավոր աշխարհիկ բարիքների օգտագործման մեջ և Ալլահը կսիրի քեզ:» (Իբն Մաջա)

➢ ԱՊԱՎԻՆՈՒԹՅՈՒՆ. Սա, երբ մարդ ապավինում է Ամենաբարձրյալին և հույսը դնում է Նրա վրա, ցանկալիին հասնելու, անհաջողությունից խուսափելու համար և միևնույն ժամանակ ջանք է գործադրում ցանկալիին հասնելու համար: Ալլահին ապավինելու մերժումը, հանդիսանում է միաստվածության (տաուհիդ) խախտում, իսկ մերժում թափված ջանքերի համար, հանդիսանում է խելքի պակաս: Ապավինելը առաջին հերթին

---

[1] Մարդիկ սիրո կամ արհամարհանքի տեսանկյունից (Ընկերություն և անմեղություն, հավատարմություն և մերժում) բաժանվում են երեք տեսակի. Ա. Նա, ով սիրում է մաքուր սիրով, առանց ատելության, այսպիսիք են իրական հավատացյալները, ինչպիսիք են մարգարեները և սրբերը, որոնց գլխավորում է Մարգարե Մուհամեդը և նրա կանայք, նրա դուստրերը և հետևորդները: Բ. Նա, ում ատելությունը կատարյալ է, այսպիսիք են անհավատները, բազմաստվածները և փարիսեցիները: Գ. Նրանք, ովքեր և սիրում և ատում են միևնույն ժամանակ, այսպիսիք են հավատացյալ մեղսագործները, նրանց սերը արտահայտվում է հավատքի շնորհիվ, ատելությունը մեղքերի:

Սերը անհավատների նկատմամբ և ընկերությունը բաժանվում է երկու տեսակի. 1. Այն, ինչ բերում է ուխտադրժության, օրինակ ընդունել ուրիշի կրոնը. 2. Այն, ինչ արգելվում է, բայց չի տանում մարդուն իսլամի սահմաններից դուրս,այսպիսի տեսակին են վերաբերվում անհավատների աջակցությունը իրենց աշխարհիկ հետաքրքրություններում: Երբեմն սխալմամբ շփոթում են այս տեսակը բարիի հետ անհավատների նկատմամբ և նրանցից հրաժարմամբ: Բայց պետք է տարբերել, արդարության դրսևորումը և լավ վերաբերմունքը և բարության դրսևորումը թույլին, առանց հոգևոր կապվածության, թույ;ատրելի է: Ալլահն ասում է «Ալլահը չի արգելել ձեզ լինել բարի և արդար նրանց հետ, ովքեր չեն մարտնչել ձեզ հետ կրոնի պատճառով և չեն վտարել ձեզ, ձեր բնակավայրերից: Ճշմարիտ, Ալլահը սիրում է անշահախնդիրներին:» Ատելության և թշնամության դրսևորումը անհավատների նկատմամբ արտահայտվում է այն կոնտեկստում, որը ասել է Ամենաբարձրյալ Ալլահը. «Օ, նրանք, ովքեր հավատացել են: Մի վերցրեք Իմ թշնամուն և ձեր թշնամուն որպես ձեր հովանավոր և օգնական...:» Արդարության արտահայտումը նրանց նկատմամբ առանց հոգևոր կապվածության հնարավոր է, ինչպես արել էր Մարգարե Մուհամեդը Մեդինայի հրեաների հետ :

գործողություն է: Ապավինելը համոզվածության և հավաստի գիտելիքների պտուղ է: Այն լինում է երեք տեսակ.

1. Պարտադիր, սա Ալլահին ապավինել է այն բանում, որին ընդունակ է միայն Ալլահը: Որպես օրինակ կարելի է բերել հիվանդի բուժումը:

2. Արգելված, այս ապավինելը լինում է երկու տեսակի.

Ա. ՄԵԾ ՇԻՐԿ, այն դեպքն է երբ մարդ ամբողջովին ապավինում է պատճառներին և համարում է, որ նրանք ինքները կարող են օգուտ բերել և հեռացնել վտանգը:[1]

Բ. ՓՈՔՐ ՇԻՐԿ, երբ մարդը ապավինում է և հույս է դնում ինչ որ մեկի վրա, սակայն չի համարում, որ նա ինքն կարող է բերել օգուտ կամ վնասել: Միևնույն ժամանակ, այդ մարդը ուղակի պատճառ է:

3. Թույլատրված, երբ մարդ մեկ ուրիշին անում է իր լիազորվածը և հույս է դնում նրա վրա գործերում, որոնք նա կարող է անել, օրինակ առք ու վաճառքի դեպքում: Սակայն այս դեպքում չի կարելի ասել, «Ես ապավինում եմ Ալլահին, հետո քեզ:» Կարելի է միայն ասել.« Ես լիազորում եմ քեզ: »

➢ ԵՐԱԽՏԱԳԻՏՈւԹՅՈՒՆ. Երախտագիտությունը Ալլահին արտահայտվում է սրտով, (հավատքով), լեզվով (մեծարման խոսքերով) և գործողություններով (երկրպագությամբ): Երախտապարտ լինել նշանակում է Ամենաբարձրյալից նվիրածը օգտագործել ի օգուտ բարու:

➢ ՀԱՄԲԵՐՈՒԹՅՈՒՆ. Բողոքների մերժում է Ալլահից ուղարկված փորձություններին: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Ճշմարիտ, համբերատարներին կնվիրվի իրենց պարգևը առանց հաշվի:» Իսկ Ալլահի

---

[1] Հակասու՞մ է արդյոք տվյալ արարքը Ալլահին ապավինելուն: Կան մի քանի տարբերակ.

1) Կորցրած բարիքին հասնելը, որը բաղկացած է երեք մասերից. Ա. Պարզ պատճառի ներկայություն, ինչպիսին է ամուսնությունը, տղա ունենալու համար, Ալլահին ապավինելը առանց գործողության տվյալ պահին, հանդիսանում է անհեթեթություն : Բ.Աներևույթ պատճառներ, մեծամասնությամբ ստացվում է, որ չի կարելի արդյունքի հասնել առանց նրանց: Եթե ճամփորդը գնում է անապատ առանց պատրաստության, ապա դա չի մտնում Ալլահին ապավինելու մեջ, հակառակը, նրան հրամայված է նախապատրաստվել, ինչպես արել էր մարգարե Մուհամեդը (Սալլալահու ալեյհի ուա սալամ) :Երբ նա գնում էր Մեդինա, վերցրեց իր հետ ուտելիք և վարձեց ուղեկցորդ : Գ. Պատճառներ, որոնք կարող են բերել արդյունքի, բայց առանց համոզվածության, նման է նրան, ով ուսումնասիրում է մեծերժեք մեթոդներ օգտագործման համար, որպեսզի ստանա հեշտ վարձ: Վերը նշվածը չի շեղվում ապավինելուց, բայց դադարել վաստակել կյանքի համար, որը բնական է, չի հանդիսանում ապավինություն: Օմարը, թող Ալլահը գոհանա նրանով, ասաց. «Ապավինողը նա է, ով տալիս է իր սերը հողին և ապավինում է Ալլահին :»

2) Ունեցածի պահպանումը, բավարար ուտելիքի, չի նշանակում չապավինել Ալլահին, մանավանդ եթե կա ընտանիք: Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) վաճառում էր արմավի պտուղներ Բենին Նադիրին, բայց թողնում էր իր ընտանիքին տարեկան պաշար: Հադիթը համաձայնեցված է :

3) Վնասի հեռացում, մինչ այդ տեղի կունենա, չի նշանակում չապավինել, ինչպես ուղտի պահպանումը սահմանափակել միայն հույսով :

4) Վնասի հեռացնելը, նրա լինելուց հետո: Այստեղ կա երերք մաս. Ա. Բացակա, ինչպես ջուրը. Բ. Հնարավոր լինել, ինչպես արյուն թողնելը: Մարգարեն Խ.Ա.Ո.Ն բուժվում էր արյուն թողնելով և հրամայում էր ուրիշներին էլ բուժվել: Գ. Լինել երևակայող, նման է մանրէազերծման, լինելով առողջ, խուսափելու հիվանդությունից, հետևյալ արարքը հակասում է ապավինման ամբողջականությանը:

Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Ով կփորձի համբերատար լինել, նրան Ալլահը կներշնչի համբերություն և ոչ ոքի չի նվիրի ավելի լավ և լայնարձակ բան, քան համբերությունը: » (Ալ _Բուխարի, Մուսլիմ)
Իսկ Ումար իբն ալ- Խատաբը ասաց. «Ինչ դժբախտություն, որ հասնի ինձ, ես ընդունում եմ Ամենաբարձրյալից չորս բարիք կապված դրա հետ, այն է որ այն կապ չունի իմ կրոնի հետ, որ այն չլինի ավելի մեծ և լուրջ, այն, որ Նա չի խանգարել ինձ ընդունել այն արժանապատիվ և այն, որ ես հուսով եմ, որ կպարգևատրվեմ համբերատար տանելու համար: »
ՀԱՄԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՈՒՆԻ ԱՍՏԻՃԱՆՆԵՐ. 1) ԱՄԵՆԱՑԱԾՐ ԱՍՏԻՃԱՆԸ, երբ մարդ նողկանք է ապրում իրեն հասածին, բայց խուսափում է բողոքելուց: 2) ՄԻՋԻՆ ԱՍՏԻՃԱՆ, երբ մարդ խուսափում է բողոքելուց և արտահայտում է գոհունակություն: 3) ԳԵՐԱԳՈՒՅՆ ԱՍՏԻՃԱՆ, երբ մարդ մեծարում է Ալլահին, երբ նրան են հասնում փորձություններ:

Իսկ մարդը, ում անարդար են վերաբերվել և նա դիմել է Ալլահին աղերսով պատժել մեղավորին, օգնում է ինքն իրեն և հաստատում է իր իրավունքը, նա չի ցուցաբերում համբերություն:
ՀԱՄԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԼԻՆՈՒՄ Է ԵՐԿՈՒ ՏԵՍԱԿԻ.
1) ՖԻԶԻԿԱԿԱՆ ՀԱՄԲԵՐՈՒԹՅՈՒՆ ԴԻՄԱՑԿՈՒՆՈՒԹՅՈՒՆ. Այստեղ մենք չենք խոսում այս տեսակի մասին: 2) ՀՈԳԵԿԱՆ, երբ մարդ համբերում է, խուսափելով նրանից, ինչին շեղում են նրա կրքերը և ցանկությունները: [1]
ԱՄԵՆԸ, ԻՆՉ ԿԱՏԱՐՎՈՒՄ Է ՄԱՐԴՈւ Հետ ԱՅՍ ԿՅԱՆՔՈՒՄ, ԿԱՐԵԼԻ Է ՊԱՅՄԱՆԱԿԱՆՈՐԵՆ ԲԱԺԱՆԵԼ ԵՐԿՈՒ ՏԵՍԱԿԻ.
1. Այն, ինչ համապատասխանում է մարդու ցանկություններին և կրքերին: ԱՅս դեպքում մարդը պիտի համբերություն ցուցաբերի, որպեսզի պատշաճ հետևի Ալլահի իրավունքին, երախտապարտ լինել Նրան և խուսափել Նրան չլսելուց:
2. Այն, ինչ հակասում է մարդու կրքերին և ցանկություններին: Այս տեսակը ունի երեք ենթատեսակ. 1) Ալլահին հնազանդության համբերությունը. Եթե խոսքը գնում է պարտադիրի մասին, ֆարդ, ապա այն պարտադիր է, իսկ եթե խոսքը գնում է ցանկալիի մասին, լրացուցիչի, ապա այսպիսի համբերությունը ցանկալի է: 2) Համբերություն, նպատակ ունենալով խուսափել Ալլահին չլսելուց. արգելվածից հրաժարվելը պարտադիր է, իսկ անցանկալիից հրաժարվելը, ցանկալի: 3) ՀԱՄԲԵՐՈՒԹՅՈՒՆ ԱԼԼԱՀԻ ԿԱՆԽՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ՀԵՏ ԿԱՊՎԱԾ. Անհրաժեշտ է խուսափել բողոքներից,

[1] Եթե այս տեսակը հանդիսանում է խուսափում կրքերից, ապա կոչվում է ողջախոհություն, իսկ եթե այն արտահայտվում է պատերազմում, ապա կոչվում է համարձակություն, եթե այն արտահայտվում է բարկության կառավարմամբ, ապա կոչվում է զգուշություն, իսկ եթե արտահայտվում է գաղտնիքի պահպանմամբ, ապա կոչվում է գաղտնիքի բացում, իսկ եթե այն արտահայտվում է կյանքի հաճույքներից խուսափելով, ապա կոչվում է բարեպաշտություն, իսկ եթե արտահայտվում է կյանքի փոքր բավարարվածություններով, ապա կոչվում է բավարարվածություն :

պահելով սիրտը առարկություններից. բարկությունից, սրտնեղումից և ետ պահել մարմնի մասերը գործողություններից, որոնք հաճելի չեն Ալլահին, օրինակ մահացածի համար բարձրաձայն լացելը և այտերը քերծելը, շորերի պատռելը, բղավելը և այլն: Իսկ ցանկալին է հանդիսանում Ալլահի կանխորոշածին գոհանալը, որը արտահայտվում է սրտով:

## Ո՞Վ Է ԱՎԵԼԻ ԼԱՎ, ԳՈՀՈՒՆԱԿ ՀԱՐՈՒՍՏԸ, ԹԵ ՀԱՄԲԵՐԱՏԱՐ ԱՂՔԱՏԸ.

Եթե հարուստը վատնում է իր հարստությունը Ալլահին հնազանդվելուն կամ, հավաքում է այնպիսի գործերի համար, որոնք հաճո են Ալլահին, ապա նա լավ է համբերատար աղքատից: Իսկ եթե հարուստը իր ունեցվածքի մեծ մասը վատնում է աշխարհիկ կյանքի թույլատրված բարիքներին, ապա համբերատար աղքատը նրանից լավն է: Ալլահի Մարգարեն (*Սալլալահու ալեյհի ուա սալամ*) ասաց. «Երախտապարտ կերակրողը հավասար է համբերատար պահք պահողին:» (Ահմեդ)

➢ ԲԱՎԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ. Այն լինում է գործողությունից հետո: Ալլահի կանխորոշմամբ բավարարությունը, Ալլահի մերձավորների ամենաբարձր աստիճանն է: Այս սիրո և ապավինության պտուղն է: Ամենաբարձրյալին դիմելը խնդրանքով, որ նա օգնի որևէ վատ բանից, չի նշանակում հակառակվել Նրա կանխորոշմանը:

➢ ՀՆԱԶԱՆԴՈՒԹՅՈՒՆ, սա Ամենաբարձրյալին մեծարել է, և Նրա դեմ համեստ և հնազանդ լինելը: Հուզեյֆան ասաց. «Զգուշացեք փարիսեցիների հնազանդությունից:» Նրան հարցրեցին. «Իսկ ի՞նչ է փարիսեցիների հնազանդությունը: «Նա պատասխանեց. «Դա, երբ մարմինը հնազանդ է, մինչ դեռ սրտում չկա հնազանդություն:» Հուզեյֆան նույնպես ասում էր. «Առաջինը, որից դուք կզրկվեք փեր կրոնից, հնազանդությունն է:» Ցանկացած երկրպագում, որը պահանջում է հնազանդություն, հավատացյալին բերում է պարգև, համապատասխան աստիճանի հնազանդություն: Մարգարեն Խ.Ա.Ո.Ն բացատրեց, որ լինում է այնպես, որ աղոթողին հասնում է իր խնդրածի կեսը, քառորդը, հինգերորդը նույնիսկ տասներորդ մասը, իսկ երբեմն նաև ոչինչ, սա հնազանդության բացառման դեպքում:

➢ ՀՈՒՅՍ, Սա հուսահատության հակառակն է: Այն Ալլահի գութի սպասում և հույս է: Արարքները, որոնք արվում են Ալլահի գութի հույսով, ավելի արժանավայել են, քան արարքները, որոնք արվում են Ամենաբարձրյալի պատժի վախով: Որովհետև հույսը ստիպում է մարդուն սպասել Ալլահից լավ բան: Իսկ Ամենաբարձրյալ Ալլահը (*Սալլալահու ալեյհի ուա սալամ*) ասաց. «Ես այնպիսին եմ, ինչ Իմ մասին մտածում է Իմ ստրուկը:» (Մուսլիմ)

### Հույսը ունի աստիճաններ.

1. Բարձրագույն, մարդ անում է այն, ինչ հանդիսանում է հնազանդություն Ալլահին և հույս ունի Ամենաբարձրյալի պարգևին: Աիշան, թող Ալլահը գոհանա նրանով, մի անգամ հարցրեց. ««Օ, ԱԼլահի Մարգարե, Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Նրանք, ովքեր անում են այն, ինչ անում են, և սրտերը նրանց

պարուրված են վախով:» Այս նրանց մասին է, ովքեր գողանում, շնանում և գինի են խմում Ալլահի վախը սրտերու՞մ:» Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) պատասխանեց. «Ոչ, օ. Աս-Սադիկի դուստր: Այս նրանց մասին է, ովքեր աղոթում են, պահք են պահում և բարեգործություն են անում և միևնույն ժամանակ վախենում են, որ նրանցից այդ չի ընդունվի:»» (Ատ- Տիրմիզի)

2. ԱՄԵՆԱՑԱԾՐ ԱՍՏԻՃԱՆԸ, սրանք մեղանչած մեղսագործներն են, որոնք Ալլահի ներման հույսը ունեն: Ինչ վերաբերվում է մեղսագործին, ով համառում է իր մեղքերում և մերժում է մեղանչել և միևնույն ժամանակ հույս է փայփայում Ալլահի ներման, ապա այդ արդեն հույս չէ, այլ անիրականալիի երազանք: Հավատացյալը անում է բարիք և վախենում է Ալլահից, իսկ փարիսեցին անում է չարիք և չի վախենում Ալլահից:

➤ ՎԱԽ. Նրան հակասում է հանգստությունը, անվտանգության զգացումը: Վախը չի հանդիսանում հույսի հակառակը: Ուղակի վախը դրդում է գործողության, այդ զգացումով, իսկ հույսը խրախուսանքի զգացումով: Անհրաժեշտ է վախը զուգակցել սիրո և հույսի հետ:

Իբն ալ- Կայիմը ասաց. « Սիրտը իր ձգտմամբ Ամենաբարձրյալ Ալլահին նման է թռչունի: Սերը, նրա գլուխն է, իսկ վախը և հույսը երկու թևերը: Եթե սրտում բույն է դնում վախը, նա այրում է կրքերը, որոնք գտնվում են այնտեղ և այնտեղից դուրս է քշում այս աշխարհ:»

Պարտադիր վախը, այն է, որը դրդում է անհրաժեշտի կատարման և արգելվածի մերժման:

Ցանկալի վախը այն է, որը դրդում է անել ցանկալին և մերժել անցանկալին:

ՎԱԽԸ ԼԻՆՈՒՄ Է ՄԻ ՔԱՆԻ ՏԵՍԱԿ.

1) ԱՍՏՎԱԾԱՀԱՃՈ ՎԱԽ, դա այն է որը կարելի է զգալ միայն Ալլահի հանդեպ, այլապես մարդը կընկնի մեծ շըրկի մեջ: Օրինակ, մարդը վախենում է, որ հեթանոսական աստվածները նրան վնաս կպատճառեն:

2) ԱՐԳԵԼՎԱԾ ՎԱԽ, այս պարտադիրի մերժումն է կամ արգելվածի կատարումն է մարդկանց նկատմամբ վախից:

3) ԹՈՒՅԼԱՏՐԵԼԻ ՎԱԽ, սա բնական վախն է գիշատիչի և այլնի դեմ:

# ՈՒՍՈՒՑՈՂԱԿԱՆ ԵՐԿԽՈՍՈՒԹՅՈՒՆ

«Աբդուլլահ» (Ալլահի ստրուկ) անունով մի մարդ հանդիպեց մեկ այլ մարդու, որի անունն էր «Աբդուննաբի» (մարգարեյի ստրուկ)։ Աբդուլլան զարմացավ Աբդուննաբի անվան վրա և ինքն իրեն մտածեց. «Ի՞նչպես կարող է մեկը չլինել Ալլահի ստրուկ։»Հետո նա դիմեց Աբդուննաբիին և հարցրեց, «Դու Ալլահին չե՞ս երկրպագում։»

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Ոչ, ես ոչ ոքի չեմ եչկչպագում բացի Ալլահից, ես մուսուլման եմ և երկրպագում եմ միայն Ալլահին։

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Այդ դեպքում այդ ի՞նչ անուն է, նման է արաբ քրիստոնյաների անուններին, որոնց մեջ գոյություն ունի Աբդումեսիհ (Մեսսիայի ստրուկ) անունը։ Այդ զարմանալի չէ, քանի որ քրիստոնյաները երկրպագում են Հիսուսին, խաղաղություն նրան։ Լսելով քո անունը մարդ անմիջապես ենթադրում է, որ դու երկրպագում ես Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), որը չի համապատասխանում մուսուլմանի համոզմունքներին։ Նրանք պարտավոր են հավատալ, որ Մուհամմեդը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) Ալլահի ստրուկը և Նրա մարգարեն է։

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Սակայն Մուհամմեդ մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) մարդկանցից լավագույնն է և մարգարեների Տերը, և մենք վերցնում ենք այս անունը, փնտրելով օրհնություն և մոտենալ Ալլահին Նրա Մարգարեյի մեծության և դրության միջոցով և խնդրում ենք նրա բարեխոսությունը այդ հարցում։ Եվ մի զարմացիր, իմ եղբայրը ունի նմանատիպ անուն, Աբդուլհուսեյն (Հուսեյնի ստրուկ), իսկ իմ հոր անուննէ Աբդուռռասուլ,(Մարգարեյի ստրուկ)։ Այս անունները օգտագործվում են վաղ ժամանակներից և տարածված են մարդկանց մեջ։ Եվ մենք հայտաբերեցինք, որ նախնիները արել են այդ, այնպես որ մի ցուցաբերի ավելորդ խստություն, քանի որ ամեն ինչ հեշտ է և կրոնը հեշտ է։

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Այս արարքը ավելի հանցապարտ է, քան առաջինը։ Դու խնդրում ես բացի Ալլահից,այն ինչ կարող է տալ միայն Ալլահը։ Եվ կարևոր չէ հանդիսանում է նա, ում դու խնդրում ես Մուհամմեդ Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), թե սուրբ մարդ,ինչպիսին է Հուսեյնը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ)։Այս հակասում է Միաստվածությանը, որը մեզ հրամայված է, և այդ հակասում է խառի իմաստին. «Չկա աստվածություն բացի Ալլահից։» (Լե իլեհե իլա Ալլահ)։ Ես կտամ քեզ մի քանի հարց, որ դու գիտակցես, թե ինչքան մեծ է այս գործը և հասկանաս այսպիսի անունների արդյունքը։ Եվ այս քայլով, ես չեմ հետևում ոչինչ բացի ճշմարտությունից և հետևելու դրան։ ես ցանկանում եմ բացատրել ճշմարտությունը, ետ պահել ստից և ցանկանում եմ խրախուսել գովելին։ Եվ, Ալլահը Նա է, Ում պիտի խնդրել օգնություն, և Նրան պիտի ապավինել։ Եվ չկա ուժ և հզորություն ոչ ոքի մոտ, բացի Ամենակարող և Մեծ Ալլահից։ Սակայն, դրանից առաջ, ես ցանկանում եմ հիշեցնել քեզ Ամենաբարձրյալի խոսքը. «Եթե հավատացյալը կոչում է առ Ալլահ և Նրա Մարգարեն, որ Նա դատի նրանց, նրանք ասում են.» Լսում և հնազանդվում ենք։»» (սուրա 24 «Լույս » այաթ 51)

Եվ Ալլահն ասաց. «Եվ , եթե դուք որևէ բան կասկածի տակ եք առնում, ապա շրջվեք առ Ալլահ և Նրա Մարգարեն, եթե դուք իրավմամբ հավատում եք Ալլահին և Վերջին Օրվան:»» (սուրա 4 «Ալ-Նիսաա» այաթ 59)
Դու պնդու՞մ ես, որ հետևում ես Միաստվածությանը և վկայում ես. «Լե իլեհե իլա Ալլահ»: Իսկ կարո՞ղ ես ինձ բացատրել, ինչ է այդ նշանակում:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Տաուհիդ, այս հավատք է Ալլահի գոյության և նրա, որ Նա Այն է, Ով արարել է երկինքն ու երկիրը և Նա Կենդանացնողն ու Մեռցնողն է և Նա տիրում է Տիեզերքում, և Նա Ամենագիտակն, Ամենահզորն և Ամենանվիրողն է:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Եթե միայն այս է Տաուհիդի նշանակությունը, ապա Փարավոնը և նրա մարդիկ, Աբու Ջեհլը և մյուսները կարող են համարվել նույնպես միաստվածներ: Նրանք չեն արհամարհում այն փաստը, որը Ալլահը գոյություն ունի, ոչ էլ բազմաստվածների մեծամասնությունը: Փարավոնը, ով հայտարարեց իր Աստվածային լինելը, իր սրտի խորքում հավատում էր, որ Ալլահը գոյություն ունի և որ միայն Նա է կառավարում արարածներին: Դրա ապացույցն է Ալլահի խոսքերը. Եվ, նա փարավոնը ժխտեց այն անարդարացիորեն և արհամարհելով , սակայն իր սրտի խորքում համոզված էր….. ( 27:14)
Այս պարզվեց, երբ նա խեղդվում էր: Իրականում, Տաուհիդը, որի համար Ալլահը ուղարկել էր Մարգարեներին, որի համար Նա լուսաբանեց սուրբ գրերը և որի հաշվով Քուրեյշները[1] պայքարում էին, Ալլահին դուրս մղելու երկրպագությունից: Երկրպագությունը սահմանված է որպես այն, ինչ Ալլահը սիրում է գոհանում է, մեր խոսքերից և արարքներից, անկախ նրանից կատարվել է մեր սրտով թե մարմնով:
Իլաահ բառը, Լե Իլաահա Իլլ-Ալլահ բառակապակցության մեջ նշանակում է որևէ մեկը, կամ բանը, որին երկրպագում են և ուստի Լաա Իլաահա Իլլ –Ալլահ նշանակում է, որ ոչինչ և ոչ ոք չունի երկրպագության իրավունք բացառությամբ Ալլահի: Արդյո՞ք դու գիտես, թե ինչու է Ալլահը երկիր ուղարկել մարգարեների, որոնցից առաջինը Նոյն էր:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Որպեսզի կոչեն բազմաստվածներին միայն Ալլահին երկրպագելու և մերժելու մյուսներին, ում տվել են զուգընկեր Ամենաբարձրյալ Ալլահին:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Իսկ որո՞նք են պատճառները Նոյի ժողովրդի կատարել շրկ:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Չգիտեմ…:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Ալլահը ուղարկեց Նոյին իր ժողովրդի մոտ, որովհետև նրանք սկսեցին չափից դուրս մեծարել սրբերին. Վադդային, Սուվային, Յագուսային, Յաուկային և Նասրային: [2]
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Դու ուզում ես ասես, որ Վադդը, Սւովան և մնացյալը,

---

[1] Արաբական ցեղ, որը հետապնդեց վաղ մուսուլմանների, Մարգարեյօի օրոք:
[2] Տես (Սուրա 71 «Նուուհ», այաթ 23)

սրբերի անուններ են, այլ ոչ թե անհավատ բռնապետների՞:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Այո, սրանք սրբերի անուններ են, որոնց Նոյի ժողովուրդը աստվածացրել է և այս հարցում նրանց հետևեցին արաբները: Իսկ որպես ապացույց, հանդիսանում է հադիթը, որը հաղորդված է Իբն Աբբասից, որը ասում է. «Նոյի ժողովրդի կուռքերը արդյունքում անցան արաբներին: Վադդը Կալբ ցեղի մոտ Դուատ ա—Ջանդալն էր, Սուվան, Խուզեյլ ցեղի մոտ էր, Յագուսը, Մուրադ ցեղի մոտ, հետո բանու Գուտեյֆ մոտ, ինչպես ալ-Ջուաֆե, Սաբայի մոտ: Յաուկը, Համդան ցեղի մոտ էր, իսկ Նասրը Հիմյար ցեղի մոտ, և Զուլ ել-Կալիի մոտ: Սրանք Նոյի ժողովրդի սրբերի անուններն են: Երբ նրանք մահացան, Սատանան ներշնչեց նրանց ժողովրդին, որ նրանք իրենց հավաքույթների վայրում դնեն արձաններ և կոչեն այդ սրբերի անուններով: Նրանք այդպես էլ արեցին, բայց այդ ժամանակ չէին երկրպագում նրանց: Բայց, երբ այդպես արած մարդիկ մահացան և նրանց գիտելիքը անհայտացավ, արձաններին սկսեցին երկրպագել:» (Ալ- Բուխարի)
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Ասվածդ զարմանալի է:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Իսկ ուզու՞մ ես ես կպատմեմ քեզ ավելի զարմանալի բան: Իմացիր, որ Ալլահը ուղարկել է Մարգարեների Կնիքը, մեր տեր Մուհամմեդին (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) մարդկանց, ովքեր երկրպագում, ապաշխարհում, հաջ էին անում, և տավաֆ (շրջայց Քաբբայի շուրջ) և սաի (Մարվա և Սաֆա բլուրների միջև վազք) և բաժանում էին բարեգործություն, սակայն, միևնույն ժամանակ, նրանք որոշ արարածների, օրինակ հրեշտակների և սրբերի արել էին բարեխոսներ իրենց և Ալլահի միջև, և ասում էին. «Մենք ուզում ենք, որ նրանք մերձեցնեն մեզ Ալլահին և բարեխոսեն մեր համար Նրան:» Եվ, այդ ժամանակ Ալլահը ուղարկեց Մուհամմեդին (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*), որ նա վերադարձնի նրանց կրոնին իրենց նախահոր Իբրահիմի և հաղորդել նրանց, որ այդ մերձեցումը և համոզմունքը միմիայն Ալլահի իրավունքն է, և ոչինչ չի կարող պատկանել ուրիշ մեկին, քանզի Նա միակ արարիչն է և չկա Նրան զուգընկեր և չկա ոչ ոք, ով տալիս է ճակատագիր բացի Նրանից: Յոթ երկինք ամենցով, ովքեր այնտեղ են և յոթ երկիր ամենով, ովքեր այնտեղ են, բոլոր նրանք հանդիսանում են Նրա ստրուկներ, և նրանք բոլորը Նրա ենթակայության և ենթարկվածության տակ են: Ավելին, նրանք ասել են, որ աստվածությունները, որոնց նրանք երկրպագում են, գտնվում է Նրա հզորության և ենթակայության տակ:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Ինչ ասացիր չափազանց հետաքրքիր և կարևոր է...: Իսկ կա՞ն ապացույցներ քո խոսքերին:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Ապացույցներ շատ կան: Դրանցից են Ամենաբարձրյալի խոսքերը. ««Ասա. «Ո՞վ է փեզ ճակատագիր տալիս երկնքից և երկրից: Ո՞վ է տիրում լսողությանը և տեսողությանը: Ո՞վ է ստեղծում մեռածից կենդանի, իսկ կենդանուց հանում է մեռածը, և ո՞վ է կառավարում ամեն ինչ:» Նրանք կասեն. «Ալլահը;» Ասա, «Մի՞թե դուք չեք վախենա:»» (Սուրա 10 «Յունուս», այաթ 31)

Նաև Նրա Խոսքերը ««Ասա. «Ու՞մ է պատկանում երկիրը և ովքեր նրա վրա են, եթե դուք միայն գիտեք:» Նրանք կասեն.«Ալլահին:» Ասա. «Մի՞թե դուք չեք հիշի խրատը:» Ասա. «Ո՞վ է յոթ երկինքների և փառահեղ Գահի Տիրակալը:» Նրանք կասեն.«Ալլահը:» Ասա. «Մի՞թե դուք չեք վախենա:» Ասա. «Ու՞մ ձեռքերում է ամեն բանի իշխանությունը: Ո՞վ է պաշտպանում և ու՞մից չկա պաշտպանություն, եթե միայն դուք գիտեք:» Նրանք կասեն. «Ալլահ:» Ասա. Ինչքան եք դուք խաբված:»» (Սուրա 23 «Հավատացյալներ»,այաթ 84-89)

Ռիխտազնացության, Հաջի ժամանակ բազմաստվածները կրկնում էին. «Ահա ես Քո առջև եմ. Օ. Ալլահ, ահա, ես Քո առջև եմ: Ահա, ես Քո առջև եմ,չկա Քեզ զուգընկեր, բացի զուգընկերոջից, որը կա Քեզ մոտ, նա պատկանում է Քեզ և ամենը, ինչ նա ունի: » Բազմաստված քուրեյշների ճանաչումը,որ հենց Ալլահն է կառավարում տիեզերքը, այսինքն Միաստվածության Տիրակալությունը, չի դարձրել նրանց մուսուլման: Եվ նրանց դիմումը հրեշտակներին, մարգարեներին և սրբերին բարեխոսության նպատակով, դարձրել է նրանց անհավատ: Այդ պատճառով անհրաժեշտ է ուղղել ամեն դուա, միմիայն Ալլահին, ինչպես նաև ուխտը, օգնության խնդրանքը,զոհողությունը, և ընդհանրապես բոլոր տեսակի երկրպագությունները պիտի ուղղվեն միայն Ալլահին:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Եթե Ալլահի գոյության ընդունումը և այն, որ նա կառավարում է ամբողջ Տիեզերքը տաուհիդ, Միաստվածություն չէ, ինչպես դու պնդում ես... Ապա, ո՞րն է տաուհիդը, Միաստվածությունը:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Տաուհիդը, որի համար ուղարկվել են մարգարեները մարդկանց և որը մերժել են ընդունել բազմաստվածները, դա Միայն Ալլահին երկրպագելն է և ընդունելը այն, որ երկրպագությունից ոչինչ չպիտի ուղղվի որևէ մեկին, կամ բանին բացի Ալլահից: Ոչ դուան, ոչ, ուխտը, ոչ զոհաբերությունը, ոչ էլ օգնության խնդրանքը...: Այս տաուհիդն է հանդիսանում քո արտաբերած «ԼԵ ԻԼԵՀԵ ԻԼԱ ԱԼԼԱՀ» բառերի իմաստը: Չկա իրական աստված արժանի երկրպագման, բացի Ալլահից: «Բազմաստված քուրեյշների մոտ «Աստվածն» այն է, որին նրանք դիմում են այս բոլոր տեսակի երկրպագություններով, լինի դա հրեշտակ, մարգարե, սուրբ, ծառ, գերեզման,թե ջին: Եվ նրանք չեն պնդել,որ սա աստված է, ավելի ճիշտ,սուտ աստված,որը հանդիսանում է արարիչ,որը տալիս է ճակատագիր, կառավարում է տիեզերքը, քանի որ նրանք գիտեն, որ այս ամենը վերաբերվում է Միայն Ալլահին, ինչպես արդեն ասել ենք: Եվ երբ, նրանց մոտ եկավ Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*), նա սկսեց կոչել նրանց միաստվածության, տաուհիդի բանաձևի, «Չկա աստված, բացի Ալլահից» և դրա իմաստի համակեցմանը,այլ ոչ միայն արտաբերմանը:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Դու, կարծես ուզում ես ասել, որ բազմաստված քուրեյշները գիտեյին «Չկա աստված, բացի Ալլահից» բառերի իմաստը ավելի լավ, քան շատ մուսուլմաններ մեր ժամանակներում:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Այո, այսպիսին է տխուր իրականությունը: Անգրարետ

անհավատները գիտեյին, որ այս բառերով Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) նկատի ուներ Միայն Ալլահի երկրպագումը և մերժումը այն ամենի, որին երկրպագում էին: Եվ երբ նա ասաց. «Ասացեք. «Չկա աստված, բացի Ալլահից», նրանք պատասխանեցին. «Մի՞թե նա դարձրել է բոլոր աստվածներին մի աստված: Ճշմարիտ, սա զարմանահրաշ մի բան է:»» (Սուրա 38 «Սյզի», այաթ5): Եվ այս ամենը այն դեպքում, որ նրանք հավատում էին, որ հենց Ալլահն է կառավարում ամբողջ տիեզերքը: Եվ եթե, անգրագետ անհավատները գիտեյին այդ, ապա մնում է միայն զարմանալ այն մարդկանց վրա, ովքեր պնդում են, որ իսլամի ներկայացուցիչներ են,բայց միևնույն ժամանակ չգիտեն այս բառերի իմաստը, որոնք հայտնի էին, նույնիսկ անգրագետ անհավատներին: Ավելին, որոշ մարդիկ համարում են, որ բավարար է արտաբերել այս խոսքերը միայն բերանով, նույնիսկ հավատ չունենալով սրտում: Մուսուլմանների որոշ մաս էլ կարծում են, որ «ԼԵ ԻԼԵՀԵ ԻԼԱԱԼԼԱՀ» բանաձևի իմաստը հետևյալն է. չի արարում, չի տալիս ճակատագիր, աշխարհիկ գործերը չի կառավարում ոչ ոք,բացի Ալլահից:
Չկա բարիք այն մարդկանց մեջ, ովքեր պնդում են, որ նրանք մուսուլման են, այն դեպքում, երբ անգրագետ անհավատ քուրեյշները ավելի տեղյակ էին «ԼԵ ԻԼԵՀԵ ԻԼԱ ԱԼԼԱՀ» բառերի իմաստին, քան նրանք:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Սակայն ես Ալլահին զուգընկեր չեմ տալիս, և ես վկայում եմ, որ չի արարում, չակատագիր չի տալիս, օգուտ և վնաս չի բերում ոչ ոք, բացի Միայն Ալլահից, Որը չունի զուգընկեր,և որ Մուհամմեդը (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) չի կարող ոչ օգուտ, ոչ վնաս բերել իրեն: Իսկ Ալի ալ-Հուսեյնը, Աբդուլքադերը և մյուսները առավելևս: Սակայն ես մեղսավոր եմ, և սրբերից, ովքեր ունեն որոշակի դիրք Ալլահի մոտ,խնդրում եմ բարեխոսություն ինձ համար:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Քեզ կարող եմ պատասխանել միայն, ինչ արդեն ասել եմ, որ նրանք, ում հետ մարտնչում էր Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*), ընդունում էին այն, ինչ դու հիմա հիշատակեցիր, ինչպես նաև նրանք ընդունում էին, որ նրանց կուռքերը իրենք իրենց չեն որոշում: Եվ նրանց ձգտման առարկա էր առանձնակի դիրքը և բարեխոսությունը, և ես արդեն դրան ապացույց բերել եմ Ղուրանից:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Սակայն այդ այաթները բերվում են նրանց համար, ովքեր երկրպագում են կուռքերի, ապա ի՞նչպես կարող եք դուք հավասարեցնել մարգարեներին և սրբերին կուռքերի հետ:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Մենք արդեն խոսել ենք այն մասին, որ այդ կուռքերից մի քանիսը անվանվել էին սրբերի անուններով, ինչպես եղել էր Նոյի ժամանակներում, և որ անհավատները նրանցից ուզում էին միայն բարեխոսություն Ալլահի մոտ, որովհետև նրանք ունեյին հատուկ դիրք և որպես ապացույց ծառայում են Ամենաբարձրյալի Խոսքերը. «Իսկ նրանք, ովքեր վերցրել են իրենց Նրա փոխարեն ուրիշ հովանավորներ և օգնականներ, ասում են. «Մենք երկրպագում ենք նրանց, միայն նրա համար, որ նրանք մեզ

մերձեցնեն Ալլահին, որքան որ հնարավոր է:»» (Սուրա «Ամբոխներ»,այաթ 3):
Ինչ վերաբերվում է քո խոսքերին.«Ինչպես եք դուք հավասարեցնում մարգարեներին և սրբերին կուռքերին», ապա այստեղ մենք ասում ենք. Ճշմարիտ,անհավատների մեջ, ում ուղղարկվել է Ալլահի Մարգարեն, կային այնպիսիններ, ովքեր կոչում էին սրբերին նույնպես: Նրանց մասին Ամենաբարձրյալը ասում է. «Նրանց, ում նրանք աղերսանքով կոչում են, իրենք են ուղիներ փնտրում մերձենալու իրենց Տիրոջը, փորձելով առաջ գնալ ուրիշներից: Նրանք հույս են դնում Նրա գթությանը և վախենում են Նրա պատժից: Ճշմարիտ, Քո տիրոջ պատժից պետք է խուսափել:» (Սուրա 17 «Գիշերային Փոխադրում»,այաթ 57):

Նրանց մեջ կային նաև նրանք, ովքեր խնդրանքով դիմում էին Հիսուսին և նրա մորը: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. ««Ահա ասաց Ալլահը. Օ, Հիսուս, Մարիամի որդի, Ասե՞լ ես դու մարդկանց. Ընդունեք ինձ և իմ մորը ինչպես երկու աստված Ալլահին հավասար:»» (Սուրա 5 «Ճաշկերույթ» այաթ 116):

Կային նրանց մեջ նաև այնպիսիններ, ովքեր կոչում էին հրեշտակների: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Այդ Օրը Նա կժողովի նրանց բոլորին, հետո կասի հրեշտակներին.» Այս նրա՞նք են երկրպագել ձեզ:» (Սուրա 34 «Սաբա»,այաթ 40)
Խորհիր այս այաթների շուրջ: Այնտեղ Ալլահը ասում է նրանց անհավատության մասին, ովքեր երկրպագում են կուռքերին և նրանց, ովքեր դիմում են մարգարեներին, հրեշտակներին, սրբերին և այդ պատճառով Ալլահի Մարգարեն ուղղարկեց իր ուղերձը նրանց բոլորին, տարբերություն չդնելով նրանց մեջ:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Սակայն անհավատները ցանկանում են հասնել օգուտի, ես վկայում եմ, որ Օգուտ և վնաս բերողը և կառավարողը Ալլահն է, և ես այդ չեմ սպասում որևէ ուրիշ մեկից, բացի Նրանից, Նա Ամենաբարձրյալն է: Սրբերը իրենք իրենց ոչինչ չեն որոշում: Ես դիմում եմ նրանց, ցանկանալով, որ նրանք բարեխոսեն ինձ համար Ալլահին:
ԱԲԴՈՒԻԼԼԱՀ. Քո, խոսքերը ճիշտ և ճիշտ անհավատների խոսքերն են: Այդ են ապացուցում Ամենաբարձրյալի խոսքերը. «Նրանք երկրպագում են Ալլահին հավասար այն բանի, ինչ ոչ օգուտ է տալիս, ոչ վնաս: Նրանք ասում են. Նրանք, մեր բարեխոսներն են Ալլահի մոտ:» (Սուրա 10 «Յունուս»,այաթ 18)
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Բայց ես չեմ երկրպագում ոչ ոքի բացի Ալլահից, և կոչն ու դիմումը նրանց առ օգնության չի հանդիսանում երկրպագություն:
ԱԲԴՈՒԻԼԼԱՀ. Բայց ես հարցնում եմ քեզ, ընդունում ես դու, որ Ալլահը պարտավորել է քեզ ուղղել երկրպագությունը միայն Նրան, և դա Իր իրավունքն է, որի ի կատար ածումը դրված է քեզ վրա: Այդ են ապացուցում Նրա Խոսքերը. «Իսկ նրանց հրամայված էր միայն երկրպագել Ալլահին, ծառայել Նրան անկեղծ, լինելով Միաստվածության հետևորդներ:» (Սուրա 98 «Պարզ նշաններ»,այաթ5):
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Այո, Ալլահը տվել է ինձ որպես պարտավորություն:
ԱԲԴՈՒԻԼԼԱՀ. Այդ դեպքում, ես խնդրում եմ քեզ ինձ բացատրել, ինչ է նշանակում այս դիմումը երկրպագելու Միայն Ալլահին, որը Նա դրել է քեզ վրա:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Ես չեմ հասկանում, ինչ դու ի նկատի ունես,այս հարցը

տալով: Խնդրում եմ բացատրիր ինձ:

**ԱԲԴՈՒԼԼԱՀ.** Լավ, արի ես քեզ բացատրեմ: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Կոչեք ձեր Տիրոջը զաղտնի և հնազանդ: Ճշմարիտ, Նա չի սիրում հանցագործների:» (Սուրա 7 «Պատնեշներ», այաթ 55): Այսպես, հանդիսանու՞մ է արդյոք դուան Ալլահին երկրպագման ձև, թե ոչ:

**ԱԲԴՈՒՆՆԱԲԻ.** Իհարկե,ավելին, դուան երկրպագման հիմք է, ինչպես ասվել է հադիթում. «Դուան երկրպագություն է:» (Աբու Դաուդ)

**ԱԲԴՈՒԼԼԱՀ.** Եթե դու ընդունում ես, որ դուան հանդիսանում է երկրպագություն, և դիմում ես Ալլահին գիշեր ու ցերեկ վախով և հույսով,խնդրելով ինչ որ բան, իսկ դրանից հետո դիմում ես նույն խնդրանքով մարգարեյին,հրեշտակին կամ սուրբին իր գերեզմանում, դա չի՞ նշանակում, որ դու տալիս ես Ալլահին զուգընկեր երկրպագության մեջ և շըրկ ես անում:

**ԱԲԴՈՒՆՆԱԲԻ.** Այո, դա շըրկ է և այստեղ ամեն ինչ պարզ է:

**ԱԲԴՈՒԼԼԱՀ.** Ահա քեզ մեկ այլ օրինակ: Եթե դու իմացար Ամենաբարձրյալի Խոսքերը. «Այսպիսով աղոթիր քո Տիրոջը և զոհաբերիր», և հնազանդվեցիր Ալլահի այս հրամանին և զոհաբերեցիր Նրան կենդանի, համարվու՞մ է արդյոք այդ քո զոհաբերությունը Ամենաբարձրյալ Ալլահին երկրպագում, թե ոչ:

**ԱԲԴՈՒՆՆԱԲԻ.** Այո, այդ հանդիսանում է երկրպագություն:

**ԱԲԴՈՒԼԼԱՀ.** Եթե դու զոհաբերություն ես արել արարածներից որևէ մեկին, մարգարեյին, ջինին և այլն, Ալլահին հավասար, դա չի՞ նշանակում արդյոք, որ դու զուգակցել ես Ալլահին ինչ որ մեկին քո երկրպագման մեջ:

**ԱԲԴՈՒՆՆԱԲԻ.** Այո, դա շըրկ է և կասկած չկա:

**ԱԲԴՈՒԼԼԱՀ.** Ես բացատրեցի քեզ դուայի և զոհաբերության օրինակով, որովհետև դուան, խոսքի երկրպագման ամենաահմաստալից տեսակն է, իսկ զոհաբերությունը գործելի տեսակը: Բայց երկրպագությունը չի սահմանափակվում այս երկու տեսակով: Այն բավական ընդարձակ է, այն ներառում է ուխտը, երդումը, պաշտպանության խնդրանքը, օգնությունը և այլն: Սակայն բազմաստվածները,որոնց համար լուսաբանվել են Ղուրանի այաթները, արդյո՞ք երկրպագել են հրեշտակներին, սուրբերին և կուռքերին, ինչպիսիք են ալ-Լյաթը և այլն:

**ԱԲԴՈՒՆՆԱԲԻ.** Այո, նրանք արել են այդ:

**ԱԲԴՈՒԼԼԱՀ.** Իսկ եղե՞լ են արդյոք, նրանց երկրպագությունը ուրիշ բան, քան դուան, զոհաբերությունը, պահպանության կամ օգնության խնդրանք: Եթե մենք հաշվի չառնենք այդ ամենը, ապա նրանք ընդունում էին, որ նրանք Ալլահի ստրուկներ են և գտնվում են Նրա իշխանության տակ, և որ հենց Ալլահն է կառավարում ամեն բան...: Սակայն, նրանք սկսեցին կոչել նրանց, հրեշտակներին, մարգարեներին և այլն: Սկսեցին դիմել նրանց օգնության, ցանկանալով բարեխոսում և բարձրացում: Այս ամենը լիովին ակնհայտ է:

**ԱԲԴՈՒՆՆԱԲԻ.** Այդ չի՞ նշանակում,օ, Աբդուլլահ,, որ դու մերժում ես Ալլահի Մարգարեյի (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) բարեխոսումը և հրաժարվում ես նրանից:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Ոչ, ես չեմ մերժում նրան, և չեմ հրաժարվում նրանից: Ես ընդունում եմ, որ Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) բարեխոս է, որին տրված է այդ իրավունքը և ես ցանկանում եմ այդ: Սակայն ամբողջ բարեխոսումը պատկանում է Ալլահին, ինչպես Նա Ինքն է ասել. «Ասա. Ալլահին է պատկանում բարեխոսումը ամբողջովին:» (Սուրա 39 «Ամբոխներ» այաթ 44): Այն չի կարող օգտագործվել առանց Նրա թույլտվության, ինչպես Նա ասել է. «Ո՞վ կբարեխոսի Նրան, առանց Նրա իսկ թույլտվության:» (Սուրա 2 «Կով»,այաթ 255): Բարեխոսները չեն բարեխոսի որևէ մեկի առանց նրա թույլտվության: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Նրանք բարեխոսում են միայն նանց, ումից Նա գոհ է:» (Սուրա 21 «Մարգարեներ», այաթ 28): Իսկ նա չի գոհանում ոչնչով, բացի տաուհիդից: Նա ասաց. «Նրանից, ով փնտրում է այլ կրոն բացի իսլամից, այդ երբեք չի ընդունվի, և Վերջին կյանքում, նա կհայտնվի պարտվածների մեջ:» (Սուրա 3 «Իմրանի Ընտանիք»,այաթ 85): Իսկ քանի որ բարեխոսությունը ամբողջովին պատկանում է Ալլահին, և իրականանում է միայն Իր թույլտվությամբ, ապա ոչ Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ), ոչ էլ որևէ մեկը չի բարեխոսի, մինչ Ալլահը չթույլատրի նրան այդ: Իսկ եթե թույլատրի, ապա միայն տաուհիդի հետևորդի: Եվ լիովին ակնհայտ է, որ բարեխոսությունը պատկանում է միայն Ալլահին, այդ պատճառով, ես խնդրում եմ Նրանից և ասում եմ. «Օ, Ալլահ, Մի զրկի ինձ Մարգարեյի բարեխոսությունից,» «Օ, Ալլահ,արա նրան բարեխոս ինձ համար » և այսպիսի բաներ:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Մենք համաձայն ենք այն բանում, որ չի կարելի որևէ մեկից խնդրել այն, ինչ նրա իշխանության տակ չէ: Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) տրված էր բարեխոսության իրավունք, իսկ քանի որ այն Նրան տրված էր, ապա այդ նրա իշխանության տակ է: Այստեղից ելնելով, կարելի է նրան խնդրել այն, ինչ նա ունի և դա չի հանդիսանա շըրկ:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Այո, այս խոսքերը ճիշտ կլինեին, եթե միայն Ալլահը չարգելած լիներ այդ ասելով. «Մի կոչեք ոչ ոքի, Ալլահին հավասար:» (Սուրա 72 « Ջիններ» այաթ 18): Բարեխոսության խնդրանքը դուան է: Հենց Ալլահն է նվիրել Մարգարեյին բարեխոսության իրավունք, և Նա արգելել է քեզ խնդրել այն որևէ մեկից, բացի Իրենից, անկախ նրանից, թե ով այդ մեկը: Բացի այդ, բարեխոսության իրավունքը տրված է ոչ միայն Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ), փաստացի հայտնի է, որ հրեշտակները նույնպես կբարեխոսեն, և երեխաները, ովքեր մահացել են մինչ չափահաս դառնալը և սրբերը...: Ապա, ի՞նչ ես ուզում ասել. «Ճշմարիտ, Ալլահը տվել է նրանց բարեխոսություն, և ես պիտի խնդրեմ այն նրանցից:» Ասելով այդ, դու կվերադառնաս սրբերին երկրպագելուն, ում մասին Ալլահը հիշատակել է Իր Գրքում: Եթե դու ասես.«Ոչ» ապա քո խոսքերը. «Ալլահը տվեց նրան բարեխոսում և ես խնդրում եմ այդ բարեխոսումը նրանից, ում այդ տրվել է» դառնում է սուտ և անկատար:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Բայց ես չեմ անում շըրկ Ալլահի նկատմամբ, և սրբերին դիմելը չի հանդիսանում շըրկ:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Դու ընդունու՞մ ես, որ շըրկի արգելքը ավելի խիստ է, քան

շնանալու արգելքը և որ Ալլահը չի ներում այդ:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Այո, ես ընդունում եմ այդ և այդ ակնհայտ է Ամենաբարձրյալի Խոսքերից:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Դու հենց նոր ասացիր, որ չես կատարում շըրկ, որը Նա արգելել է: Իսկ կարո՞ղ ես դու ինձ բացատրել, ինչ է նշանակում Ալլահին զուգընկեր տալը, որի մասին դու պնդում ես, որ չես արել և չես անի:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Շըրկը կուռքերին երկրպագելն է, նրանց ձգտելը, դիմելը և նրանցից վախենալը:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Ի՞նչ է նշանակում «կուռքերին երկրպագել:» Դու կարծու՞մ ես, որ անհավատ քուրեյշները համոզված էին,որ այդ քարի և փայտի կտորները արարում են, ճակատագրեր են տալիս և օգնում են նրանց, ովքեր կոչում են: Նրանք այդպես չէին կարծում, ինչպես արդեն ես քեզ ասել եմ:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Ես նույնպես այդպես չեմ կարծում, ես նկատի ունեմ մարդու, ով դիմում է փայտի արձանին, կառույցին կամ քարին,որը դրված է գերեզմանի վրա, և կոչում է նրան, զոհաբերում է և ասում է. «Ճշմարիտ, նա մերձեցնում է մեզ Ալլահին, և Նա մեզանից հեռացնում է վտանգը հանուն նրա օրհնության և բարիքի:» Սա է երկրպագությունը կուռքերին, որը ես նկատի ունեմ:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Դու ճիշտ ասացիր, սակայն այս է ձեր գործողությունները քարերի, գերեզմանների և կառույցների մոտ: Իսկ ինչ վերաբերվում է քո խոսքերին,«Շըրկը, կուռքերին երկրպագելն է…», ապա դու նկատի ունես, որ շըրկը սահմանափակվում է միայն նրանցով, ովքեր անում են այդպես, իսկ ով վստահում է սրբերին և կոչում է նրանց, չի՞ համարվում շըրկ անող:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Այո, հենց այս էլ ես ուզում էի ասել:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Այդ դեպքում, ո՞րն է քո դիրքորոշումը, այն բոլոր այաթների նկատմամբ, որոնք ես ասել եմ, որտեղ Ալլահը հիշեցնում է մարգարեներին և սրբերին վստահելը և հույս դնելը հրեշտակներին և այլն: Այստեղ ասվում է նաև նրանց անհավատության մասին, ովքեր արել են այդ:
ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Բայց նրանք, ովքեր կոչել են հրեշտակներին և մարգարեներին, չեն ընկել անհավատության մեջ այդ պատճառով: Նրանք դարձել են անհավատներ, երբ ասել են. «Հրեշտակները, Ալլահի դուստրերն են» և «Մեսիան Ալլահի որդին է:» Մենք չենք ասում, որ Աբդուլքադերը Ալլահի որդին է, և որ Զեյնաբը Ալլահի դուստրն է:
ԱԲԴՈՒԼԼԱՀ. Ինչ վերաբերվում է Ալլահին երեխաներ վերագրելուն, ապա սա այլ պատմություն է: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Ասա,«Նա- Ալլահը Միակն է, Ալլահը Ինքնաբավարար է: Նա չի ծնել և չի եղել ծնված:»» (Սուրա 112 «Հավատքի Մաքրում»,այաթներ 1-3): Միակը, Ով չունի նմանը, և չկա այդպիսի ուրիշ աստված: Ինքնաբավարար, Ում կարիքը բոլորը ունեն, Ում բոլորը դիմում են իրենց կարիքներով և պահանջներով: Իսկ, ով մերժում է այս, նա հանդիսանում է անհավատ, նույնիսկ եթե նա չի ժխտում սուրայի վերջին այաթը. «Նա չի ծնել և չի եղել ծնված:» Ուրիշ այաթում Ամենաբարձրյալը տարբերակում է երկու տեսակի անհավատություն. Ալլահին զուգընկեր

տալը և Նրան երեխաներ վերագրելը: Նա ասաց. «Ալլահը չի վերցրել Իրեն որդի, և չկա Նրան հավասար ուրիշ աստված: Այլապես ամեն աստված կտաներ իր հետ այն, ինչ արարել էր և նրանցից մեկը գերադաս կլիներ մյուսներին:» (Սուրա 23 «Հավատացյալներ»,այաթ 91): Մեկ այլ ապացույց այս տարբերակմանը, կարող է հանդիսանալ այն, որ նրանք, ովքեր ընկել են անհավատության մեջ, երբ աղերսում էին ալ-Լյատ կուռքին, երբեք չեն պնդել, որ նա Ալլահի որդին է: Այսպես էլ ջիներին երկրպագողները,չեն պնդել, որ նրանք Ալլահի երեխաներն են: Եվ բոլոր չորս մզհաբները, պնդում են, որ մուսուլմանը, ով ասում է, թե Ալլահը ունի երեխաներ, հանդիսանում է ուխտադրուժ: Նա, ով Ալլահին զուգընկեր է տալիս նույնպես հանդիսանում է ուխտադրուժ և այս երկու տեսակները տարբերակվում են:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Բայց Ամենաբարձրյալ Ալլահը ասում է. «Ճշմարիտ, նրանք,ովքեր մոտ են Ալլահին[1], չեն զգում վախ և չեն տխրի:» (Սուրա 10 «Յունուս»,այաթ 62)

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Մենք հավատում ենք, որ այդ ճիշտ է և ընդունում ենք:Սակայն մենք չենք երկրպագում նրանց: Եվ միակ բանը, որ մենք մերժում ենք, նրանց երկրպագումն է Ալլահին հավասար և Նրան զուգընկեր տալը: Բացի դրանից, մենք պարտավոր ենք սիրել նրանց,և հետևել և ընդունել նրանց նվիրած հրաշք ունակությունները (կարամատ): Հրաշքները, որոնք կատարվել են Ալլահի հավատարիմ ստրուկների կողմից,կարող են մերժել միայն նորարարությունների կողմնակիցները: Ալլահի կրոն,ոսկե միջին է, սա երկու մոլորությունների ճշմարիտ ճանապարհ է և սա ճշմարտություն է երկու ստի արտահայտման միջև:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Նրանք, ում չէին լուսաբանվում Ղուրանի այաթները, չէին վկայում, որ չկա աստված բացի Ալլահից և չէին հավատում Ալլահի Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), մերժում էին Հարությունը, չէին հավատում Ղուրանին, և համարում էին այն կախարդանք:Մենք վկայում ենք,որ չկա աստված բացի Ալլահից և որ Մուհամեդը Ալլահի Մարգարեն է և հավատում ենք Ղուրանին, Հարությանը, աղոթում ենք և պահք ենք պահում: Եվ ի՞նչպես ես դու մեզ նմանեցնում նրանց:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Գիտնականների մեջ տարաձայնություն չկա կապված այն բանի հետ, որ եթե մարդ համարում է Ալլահի Մարգարեյի մի խոսքը ճիշտ, իսկ մյուսը սուտ, ապա նա անհավատ է, մտած չլինելով Իսլամ: Նույնպես և անձը, ով հավատում է Ղուրանի մի մասին և չի հավատում մյուսին, ինչպես նաև նա, ով ընդունում է տաուհիդ, բայց մերժում է նամազը, կամ ընդունում է տաուհիդը և նամազը, բայց մերժում է բարեգործության պարտավորվածությունը, կամ ընդունում է այս բոլորը, բայց մերժում է պահքի պարտավորվածությունը, կամ ընդունում է այս ամենը, բայց մերժում է հաջի պարտավորվածությունը: Երբ, Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ)

---

[1] Այստեղ նկատի ունեն իրական հավատացյալներին, խիստ աստվածավախ և իրոք Ալլահին հավատարիմ մարդիկ, ովքեր փորձում են մերձենալ Նրան,իրենց հավատարմությամբ, բարի արարքներով և ջանալից երկրպագությամբ :

ժամանակ, որոշ մարդիկ չենթարկվեցին հաջ կատարելու հրամանին, Ամենաբարձրյալ Ալլահը լուսաբանեց այաթ նրանց. «Մարդիկ պարտավոր են Ալլահի նկատմամբ, հաջ կատարել Տուն (Քաաբա), եթե նրանք ի վիճակի են կատարել այդ ճանապարհը: Եթե մեկը չի հավատում, ապա Ալլահը կարիք չունի հանգստության:» (Սուրա 3 «Իմրանի Ընտանիք».այաթ 97): Իսկ եթե մարդ մերժում է Հարությունը, սա անհավատություն է և սրա հետ կապված չկա տարաձայնություն: Հենց այս պատճառով Ամենաբարձրյալ Ալլահը պարզ ասել է Իր Սուրբ Գրքում այն մասին, որ, ով հավատում է Գրքի մի մասին և չի հավատում մյուսին, ապա իրականում անհավատ է: Եվ Նա հրամայեց ընդունել Իսլամը լիարժեք և ամբողջովին, և ով վերցնի մի բան և թողնի մյուսը, նա հանդիսանում է անհավատ: Ընդունու՞մ ես դու, որ նա, ով հավատում է մի մասին և թողնում է մյուսը, կընկնի անհավատության մեջ:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Այո, ես ընդունում եմ դա: Այս պարզ երևում է Առաքինի Ղուրանում:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Եթե դու ընդունում ես, որ նա, ով հավատացել է Մարգարեին Խ.Ա.Ո.Ն ինչ որ բանում և միևնույն ժամանակ մերժեց պարտադիր աղոթքը, կամ ընդունել է ամեն ինչ, բացի Հարությունից, ապա նա կընկնի անհավատություն,ապա իմացիր, որ տաուհիդը ամենամեծ պարտավորությունն է, որով եկել էր Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ): Այն ունի ավելի մեծ իմաստ, քան աղոթքը, բարեգործությունը և հաջը:Ապա, ինչպե՞ս կարող է լինել, որ եթե մարդ մերժում է այս բաներից մեկը, նա դառնում է անհավատ, նույնիսկ, եթե նա կատարում է մնացյալը, իսկ եթե նա մերժում է տաուհիդը, որը հանդիսանում է բոլոր մարգարեների կրոն, նա չի դառնում անհավատ: Փառք Ալլահին: Ինչ կարող է լինել ավելի զարմանալի, քան այս անգրագիտությունը: Նույնպես մտածիր, Ալլահի Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հետևորդները մարտնչում էին Յամամում, բանու Հանիֆա ցեղի հետ, չնայած նրանք իսլամ էին ընդունել Մարգարեյի օրոք և վկայել էին, որ չկա աստված, բացի Ալլահից, և որ Մուհամեդը Ալլահի Մարգարեն է և աղոթք են արել և կոչել են աղոթքի:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Բայց միևնույն ժամանակ, նրանք վկայել են, որ Մուսեյլիման[1] մարգարե է, մինչ դեռ մենք ասում ենք. «Մուհամեդից հետո չի կարող մարգարե լինել:»

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Սակայն, դուք մեծարում եք Ալիյին, կամ Աբդուլքադիրին, կամ մարգարեներից մեկին, կամ հրեշտակներին, հասցնելով նրանց երկրի և երկնքի Տիրակալին: Եվ եթե մարդ, ով մեծարել է մեկին Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) աստիճանի, դառնում է անհավատ, և նրան այլևս օգուտ չի

---

[1] Մուսյլիմա,փաղաքշական Մասլյամայից,- սուտ մարգարեներից մեկը, ով նմանեցնում էր իրեն Ալլահի Մարգարեյին: Նա Հանիֆա ցեղից էր, ով բնակվում էր Յամամում, Արաբիայի արևելքում: 634 թվականին Աբու Բաքր խալիֆը, Յամամա ուղարկեց զորք, Խալիդ իբն ալ-Վալիդի գլխավորությամբ: Առկաբայի մարտում Մուսայլիմի կողմնակիցները պարտվում են, իսկ նա մահանում է:

բերում վկայությունը, աղոթքը: Իսկ Ալլահի աստիճանին հասցնելը, առավել ևս: Նույնպես նրանք, ում Ալին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հրամայեց այրել, պնդում էին, որ նրանք մուսուլման են և նրանք Ալիի հետևորդներն էին և ստանում էին Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հետևորդներից գիտելիքներ: Սակայն այդ ժամանակ, նրանք Ալիի նկատմամբ ունեյին նույն վերաբերմունքը, ինչ դուք ունեք Աբդուլքադիրի և մյուսների նկատմամբ: Ինչպե՞ս հետևորդները դարձան միահամուռ այն կարծիքում, որ այդ մարդիկ հանդիսանում են անհավատներ և որ նրանց դեմ պիտի պայքարել: Մի՞թե դու կարծում ես, որ հետևորդները ունակ են մեղադրել մուսուլմանին անհավատության մեջ: Կամ դու կարծու՞մ ես, որ այսպիսի համոզմունքները ինչ որ մեկի նկատմամբ չեն վնասում, իսկ Ալիի նկատմամբ նույն վերաբերմունքը դարձնում է մարդուն անհավատ: Արժե նաև ասել, եթե մեզանից առաջ ապրողները հանդիսանում էին անհավատներ, որովհետև միացրել էին շըրկը և անհավատությունը Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), Ղուրանին և Հարության մերժումը և այլն, ինչու այդ դեպքում բոլոր մազհաբների գիտնականները հիշատակում են Շարիաթի որոշումները կապված ուխտադրուժի հետ, որը դարձել է անհավատ, իսլամ ընդունելուց հետո...: Եվ այստեղ նրանք հիշատակում են շատ պատճառներ, որոնցից յուրաքանչյուրը անհատական, կարող է մարդուն դուրս հանել իսլամից: Նրանք հիշատակել են նույնիսկ այն բաները, որոնց մեջ մարդ հեշտությամբ կարող է ընկնել, ինչպես խոսքեր, որոնց մեջ մարդ հեշտությամբ կընկնի և կառաջացնի Ալլահի բարկությունը, նույնիսկ եթե նրանք ասված չեն սրտով, կամ ասված են կատակով: Այստեղ են մտնում նաև նրանք,ում մասին Ամենաբարձրյալ Ալլահը ասում է. «Ասա. «Մի՞թե դուք ծաղրել եք Ալլահին, Նրա այաթներին և Նրա Մարգարեներին: Մի խնդրեք ներողություն: Դուք անհավատ եք դարձել հավատալուց հետո:»» (Սուրա 9 «Ապաշխարհություն»,այաթ 66): Այս մարդիկ անհավատ են դարձել հավատալուց հետո, որովհետև,լինելով Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հետ Տաբուկի արշավանքի ժամանակ, ինչ որ բան են ասել կատակով:Կարելի է նաև հիշատակել այն, ինչ ասել է Ամենաբարձրյալ Ալլահը Իսրայելի որդիների մասին, ովքեր հավատարիմ էին Նրան, ունեյին գիտելիքներ և բարեպաշտ էին:Նրանք ասացին Մովսեսին. «Սարքիր մեզ համար աստված:» Սրա նման ասել են նաև Մարգարեյի հետևորդները:Նրանք ասել էին.«Սարքիր մեզ համար «Զաթու-ալ-անվալ:»» Իսկ Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) երդվեց, որ այս նման է Իսրայելի որդիների խոսքերին. «Սարքիր մեզ համար աստված, նման նրան, ինչպես նրանք ունեն աստված:» (Սուրա 7 «Բարձրունքներ»,այաթ 138)

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Սակայն, Իսրայելի որդիները և նրանք, ովքեր խնդրեցին Մարգարեյին սարքել իրենց համար «Զաթու ալ-անվատ»-ը, դրանից չդարձան անհավատ:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Պատասխանը այսպիսին է, որ Իսրայելի որդիները և նրանք,

ովքեր դիմեցին Մարգարեին նույն խնդրանքով, չդարձրեցին խոսքը գործ, և եթե նրանք դա անեին, ապա կդառնային անհավատներ: Եվ, եթե նրանք, ում Մարգարեն արգելեց անել այդ, նրան չենթարկվեին և անեին դա, նրանք նույնպես կդառնային անհավատներ:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Սակայն, ինձ մոտ ծագեց այսպիսի հարց. Ուսամա իբն Զեյդը սպանեց մարդու, ով ասաց, «Չկա աստված, բացի Ալլահից;» իսկ Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) նախատեց նրան և ասաց. «Օ, Ուսամա, Մի՞թե դու սպանեցիր նրան այն բանից հետո», ինչ նա ասաց,« Չկա աստված, բացի Ալլահից:»» (Ալ-Բուխարի): Նույնպես Մարգարեի (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) խոսքերն են. «Ինձ հրամայված էր մարտնչել մարդկանց հետ, այնքան ժամանակ, մինչ նրանք չեն ասի. «Չկա աստված,բացի Ալլահից:» (Մուսլիմ): Եվ ինչպե՞ս ես կարող եմ այս համաձայնեցնել այն բանի հետ ինչ դու ասացիր:Բացատրիր ինձ, թող Ալլահը քեզ տանի ճիշտ ճանապարհով:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Հադիթներից հայտնի է, որ Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) մարտնչում էր հրեաների հետ և նրանց պատանդ էր վերցնում, այն դեպքում, որ նրանք ասում էին. «Չկա աստված, բացի Ալլահից », և որ նրա հետևորդները մարտնչում էին բանու Հանիֆի հետ այն պարագայում, որ նրանք վկայել էին, որ չկա աստված, բացի Ալլահից, և որ Մուհամմեդը Ալլահի Առաքյալն է և աղոթում էին: Նույնպես նրանք, ում հրամայեց այրել Ալին...: Դու ընդունու՞մ ես, որ նա, ով մերժում է Հարությունը ընկնում է անհավատություն, նույնիսկ եթե նա ասում է. «Չկա աստված, բացի Ալլահից» և որ նա, ով մերժում է որևէ բան իսլամի սյուներից, ընկնում է անհավատություն, նույնիսկ եթե նա արտաբերել է այդ բառերը:Ինչպե՞ս այս ամենից հետո, դու կարող ես համարել, որ եթե նա մերժում է ինչ որ բան կրոնի ճյուղերից, նրան այս խոսքերը չեն օգնի: Այն ժամանակ, եթե նա մերժում է տահուդը, որը կրոնի հիմք է, ապա այդ բառերի արտաբերումը բավարար է:

Կարծես դու չես հասկացել այս հադիթների իմաստը:

Կապված Ուսամա իբն Զեյդի հադիթի հետ, ապա նա սպանեց մարդուն, ով արտահայտեց խոսքերով, որ ընդունել է իսլամ, որովհետև նա որոշեց, որ այդ մարդը արտաբերեց այդ խոսքերը իր կյանքի և ունեցվածքի կորստի վախից: Ինչ էլ որ այնտեղ եղած լինի, թշնամի է նա, թե բարեկամ, եթե մարդ արտահայտում է իսլամի ընդունում, ապա նրան պիտի համարել մուսուլման, մինչ ակնհայտ չի երևա, որ նա հակազդում է իսլամի ընդունմանը: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Օ, Նրանք, ովքեր հավատացել են: Երբ դուք հանդես եք գալիս Ալլահի ճանապարհին, ապա համոզվեք:» (Սուրա 4 «Կանայք»,այաթ 94); Այսինքն փնտրեք հաստատում: Այաթը մատնանշում է այն, որ նույնիսկ պատերազմի ժամանակ,եթե թշնամին հայտարարում է իսլամի ընդունում, նրան չի կարելի սպանել, մինչ չերևա որևէ բան, որ նա այնուամենայնիվ մուսուլման չէ:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Իսկ ինչ դու կասես Մարգարեի (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) խոսքերի մասին, այն, որ Դատաստանի օրը մարդիկ օգնություն կխնդրեն Ադամից,

հետո Նոյից, հետո Իբրահիմից, հետո Մովսեսից, հետո Հիսուսից, բայց նրանք կասեն, որ չեն կարող ոչինչ անել և վերջիվերջո նրանք կգան Մուհամեդի մոտ: Այս ցույց է տալիս այն, որ Ալլահին օգնություն չխնդրելը չի հանդիսանում շըրկ:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Դու աղավաղեցիր հարցի բուն իմաստը, քանի որ մենք ընդհանրապես չենք մերժում կենդանի մարդուն դիմած խնդրանքը,ով կարող է օգնել տվյալ պարագայում:Ամենաբարձրյալը Մովսեսի պատմության մեջ ասաց. «Նա, ով նրա հետևորդների թվից էր, խնդրեց նրան օգնել ընդդեմ նրա, ով նրա թշնամիների թվից էր:» (Սուրա 28 «Պատմվածք»,այաթ15)

Կյանքում մարդ շատ դեպքերում դիմում է իր ընկերներին օգնությամբ, որը նրանք կարող են անել: Բայց, մենք մերժում ենք օգնության խնդրանք, որը հանդիսանում է երկրպագություն, որը դուք անում եք սրբերի գերեզմաններում, կամ նրանց բացակայության ժամանակ, և դուք նրանց խնդրում եք այն, ինչ կարող է միայն Ամենաբարձրյալ Ալլահը իրականացնել:Իսկ Դատաստանի օրը մարդիկ կդիմեն մարգարեներին, ցանկանալով, որ նրանք կոչեն Ալլահին, և Նա դատի մարդկանց, որպեսզի Դրախտի բնակիչները կարողանան հանգստանալ, վերջապես,ծանր սպասումից:Եվ այս թույլատրելի է և այս և մյուս աշխարհում: Գալ սրբի մոտ, նստել նրա հետ, լսել նրա խոսքը և ասել. «Դիմիր Ալլահին, ինձ համար խնդրանքով:»Մարգարեյի (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) հետևորդները խնդրում էին նրան իր կենդանության օրոք, իսկ մահից հետո նրանք երբեք չեն կոչել նրան: Նրանք այդ չեն խնդրել նրա գերեզմանի մոտ, ավելին, մեր նախնիները դժկամություն էին ցուցաբերում նրան, ով գալիս էր գերեզման, որ կոչեր Ալլահին:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Իսկ ինչ դու կասես Իբրահիմի,խաղաղություն նրան, դեպքում, երբ նրան գցեցին կրակի մեջ և օդում հայտնվեց Գաբրիելը,խաղաղություն նրան, և հարցրեց. «Քեզ պե՞տք է որևէ բան» և Իբրահիմը,խաղաղություն նրան, պատասխանեց. «Քեզանից, ոչ:» Իսկ Գաբրիելին օգնության խնդրանքը լիներ շըրկ, ապա նա չէր առաջարկի այդ Իբրահիմին:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Այս կասկածը նման է առաջինին: « Բացի այդ այս հադիթը հաստատված չէ: Եթե նույնիսկ մենք ենթադրենք, որ այն ճիշտ է, ապա Գաբրիելը, խաղաղություն նրան, առաջարկեց նրան անել այն, ինչ նա ի վիճակի է: Ալլահը ասաց նրա մասին. «Սովորեցրի նրան հզոր ուժ:» (Սուրա53 «Աստղ».այաթ5): Եվ եթե նրան Ալլահը թույլատրեր վերցնել կրակը, որը պատրաստված էր Իբրահիմի համար, ինչպես նաև նրա շուրջ հողը և լեռները և այս բոլորը գցել արևելք և արևմուտք, նա ի վիճակի կլիներ անել այդ:Այսպես նաև հարուստը, ով առաջարկում է կարիքավորին գումար պարտքով, որպեսզի նա կարողանա ծածկել իր անհրաժեշտ ծախսերը, և նա մերժեր և սպասեր, երբ Ալլահը կտա նրան այդ հնարավորությունը, որը չի լինի գթասրտություն ոչ ոքի կողմից և որ ոչ ոք չէր կարող նախատել նրան: Ինչքան հեռու է այդ այն օգնության խնդրանքից, որը հանդիսանում է

երկրպագություն և շըրկ, և որով դու ներկա պահին զբաղված ես:

Իմացի՛ր,եղբայր, որ մեր նախահայրերի շըրկը, ում ուղարկվել էր Մուհամեդը (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ),ավելի քիչ նշանակալից էր,քան մեր ժամանակներում ապրողների շըրկը:Եվ այս կատարվում է երեք պատճառով.

✸ Մեր նախնիները Ալլահին զուգընկեր էին տալիս միայն բարօրության ժամանակ: Երբ գալիս էր դժբախտությունը, նրանք իրենց հավատը ուղղում էին միայն Ալլահին և այս ապացուցում է Ամենաբարձրյալի Խոսքերը. «Երբ նրանք նստում են նավ, ապա կոչում են Ալլահին,Նրա առջև մաքրում են իրենց հավատքը, և դիմում են Միայն Նրան իրենց երկրպագության մեջ:Երբ Նա փրկում է նրանց և հասցնում է ափ, նրանք անմիջապես սկսում են տալ զուգընկեր:» (Սուրա «Սարդ», այաթ 65): Նույնպես Նրա խոսքերը. «Երբ ալիքը ծածկում է նրանց, ինչպես ստվեր, նրանք կոչում են Ալլահին, մաքրելով Նրա առջև իրենց հավատքը, անկեղծորեն դիմում են միայն Նրան իրենց երկրպագությամբ: Երբ Նա փրկում է նրանց և հասցնում է ափ, ապա նրանց մեջ հայտնվում են նրանք, ովքեր շեղվում են պատշեճ շնորհակալությունից:Բայց, Մեր նշանները մերժում են միայն անշնորհակալ դավաճանները:» (Սուրա 31 «Լուկման» այաթ 32): Եվ բազմաստվածները, ում շըրկի դեմ պայքարում էր Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), կոչում էին Ալլահին և ուրիշներին բարեհաջող օրերին, իսկ երբ գալիս էր դժբախտությունը, նրանք կոչում էին Միայն Ալլահին և մոռանում էին իրենց տերերին: Իսկ մեր օրերի բազմաստվածները կոչում են որևէ մեկին բացի Ալլահից և բարեհաջող և վատ օրերին, իսկ եթե նրանցից մեկը լինի վատ դրության մեջ, նա անմիջապես կբացականչի. «Օ, Ալլահի Մարգարե, Օ, Հուսեյն » և այլն:Սակայն, ո՞վ է հասկանում այդ:

✸ Առաջինները կոչում էին Ալլահին հավասար նրանց, ովքեր Նրա մերձավորներից էին, ինչպես Մարգարեն, սուրբը կամ հրեշտակը, կամ ծայրահեղ դեպքում քարը կամ ծառը, ինչը հնազանդ է Ալլահին և լսում է Նրան:Իսկ մարդիկ մեր օրերում կոչում են Ալլահին հավասար,մեղավոր և վատ մարդկանց: Իսկ ունենալ այսպիսի համոզմունք այն մարդկանց վերաբերյալ,ում անբարոյականությունը և մեղսագործությունը ակնհայտ է, ավելի վատ է, քան սրբի կամ Ալլահին հնազանդ արարածի վերաբերյալ:

✸ Մարգարեյի ժամանակաշրջնի բազմաստվածների մեծամասնությունը, տալիս էին Ալլահին զուգընկեր, երկրպագման իրավունքով, բայց ոչ թե Տիրակալության պարագայում:Ի տարբերություն նրանց ժառանգորդների շըրկի,, մեր օրերի շըրկը և մերժում է ամեն ինչ: Օրինակ, նրանք պնդում էին, որ Տիեզերքը ղեկավարում է բնությունը, կենդանացնում և մեռցնում է և այլն:Խոսքերս ես կավարտեմ բացատրելով հարցը, որը գալիս է իմ ասածներից. տարաձայնություն չկա այն բանում, որ տաուհիդը սրտում եղած համոզմունք է, որը արտաբերվում է լեզվով և ապացուցվում է գործերով:Եվ եթե դրանցից որևէ բան խախտվում է, ապա մարդ այլևս մուսուլման չէ:Եվ եթե նա գիտի, ինչ է տաուհիդ, և չի գործում համաձայն

դրա, նա հանդիսանում է համառ անհավատ, ինչպես փարավոնը և Իբլիսը:Այստեղ շատ մարդիկ սխալվում են ասելով. «Այդ ճիշտ է, բայց մենք ի վիճակի չենք գործնականի մեջ դնել այդ, այս անհեթեթ է մեր երկրում և մեր ազգի համար, մենք պետք է համաձայնենք նրանց հետ,վախենալով այն չարիքից, որ նրանք կարող են պատճառել:» Այդ խեղճերը չգիտեն, որ անհավատության ներկայացուցիչների մեծամասնությունը գիտեն ճշմարտությունը և թողել են այն իրենց որոշակի պատճառներով, ինչպես ասել է Ամենաբարձրյալը. «Նրանք վաճառել են Ալլահի նշանները չնչին գնով և ուրիշներին շեղել են Նրա Ուղղուց:,Ինչ նողկալի են նրանց արարքները:» (Սուրա 9 «Ապաշխարանք»,այաթ 9)

Նա, ով ապրում է համաձայն տաուհիդի, և չի հասկանում կամ ընդունում սրտանց այն, հանդիսանում է փարիսեցի և նա իր մոլորության մեջ ավելի վատն է քան սովորական անհավատը, քանի որ Ամենաբարձրյալը ասաց. «Ճշմարիտ,փարիսեցիները կհայտնվեն Կրակի ամենաստորին աստիճանում և դու չես գտնի նրանց համար օգնական:» (Սուրա «Կանայք»,այաթ 145)

Այս հարցը կլինի պարզ և հասկանալի, եթե դու նայես մարդկանց դրությանը: Դու կտեսնես նրանց, ովքեր գիտեն ճշմարտությունը, բայց մերժում են վարվել դրան համապատասխան, վախենալով կորցնել որևէ բան իրենց աշխարհիկ բարիքներից,ինչպես Հարունը,կամ կորցնել իրենց դիրքը ինչպես Համանը, կամ իրենց իշխանությունը, ինչպես Փարավոնը:Եվ դու կտեսնես նրանց, ովքեր գործում են դրանց համապատասխան ի ցույց մարդկանց, չընդունելով այդ իրենց հոգիներում, ինչպես փարիսեցիներ: Եվ եթե դու հարցնես նրանցից մեկին,ինչին է նա հավատում սրտով, դու կհայտնաբերես, որ նա չգիտի տաուհիդ:

ՍԱԿԱՅՆ, ՔԵԶ ՊԵՏՔ Է ՀԱՍԿԱՆԱԼ ԱՄԵՆԱԲԱՐՁՐՅԱԼ ԱԼԼԱՀԻ ԳՐՔԻՑ ԵՐԿՈՒ ԱՅԱԹ:

✷ Սրանք Ամենաբարձրյալի Խոսքերն են, որոնք մենք արդեն հիշատակել ենք. «Թողություն մի խնդրեք, դուք դարձել եք անհավատ, հավատալուց հետո:» (Սուրա 9 «Ապաշխարություն»,այաթ 66): Այսպիսով, իմանալով, որ նրանցից ոմանք, ովքեր գնացել են արշավի հռոմեացիների դեմ Մարգարեյի Խ.Ա.Ո.Ն հետ, ընկել են անհավատության գիրկը, խոսքերի պատճառով, որոնք ասվել են կատակով: Դու հասկանում ես, որ նրանց արարքը, ովքեր արտաբերում են խոսք կամ գործում են արարք,որը հանդիսանում է անհավատություն, վախենալով կորցնել իրենց հարստության մի մասը կամ իրենց դիրքը, կամ ի օգուտ ինչ որ մեկի, հանդիսանում է ավելի մեծ հանցանք, քան կատակով արված խոսքերը: Որովհետև մարդը, ով կատակում է, սովորաբար իր սրտում չի հավատում նրան, ինչ ասում է իր լեզվով, շրջապատին ուրախացնելու համար:Ինչ վերաբերվում է նրան, ով արտաբերում է անհավատության խոսքերը կամ անում է այդ, վախենալով արարածներից, կամ ցանկությամբ հասնել նրանցից որևէ բանի, ապա նա հավատացել է Շեյթանի խոստմանը. «Շեյթանը սպառնում է ձեզ աղքատություն և հրամայում է անել նողկալի

արարքներ:» (Սուրա 2 «Կով»,այաթ 268) և վախեցել է նրա սպառնալիքից: «Դա միայն Սատանան վախեցնում է ձեզ իր օգնականներով:» (Սուրա 3 «Իմրանի Ընտանիք»,այաթ 175) և նա չի հավատում Ամենազթասրտին. «Ալլահը խոստանում է ձեզ ներում Իրենից և գթասրտություն» (Սուրա 2 «Կով»,այաթ268) և չի վախենում Ամենահզորի սպառնալիքից.«Մի վախեցեք նրանցից, վախեցեք Ինձանից:» (Սուրա 3 «Իմարանի Ընտանիք»,այաթ 175)

**Ապա ինչի է արժանի մարդը, ողը գտնվում է այդ դրության մեջ, լինել Ամենաբարձրյալի մերձավորների ց, թե Շեյթանի:**

✸Ամենաբարձրյալի խոսքերը. «Ալլահի բարկությունը կընկնի նրանց վրա, ովքեր կմերժեն Ալլահին այն բանից հետո, երբ հավատացել են, ոչ թե նրանց վրա, ովքեր ստիպված են եղել դրան,մինչ նրանց սրտում հանգրվանում է ամուր հավատքը, այլ նրանց վրա, ովքեր իրենք են բացել իրենց կրծքերը անհավատության:Նրանց համար պատրաստված է մեծ տանջանքներ:» (Սուրա 16 «Մեղուներ».այաթ 106): Ալլահը չի տվել նրանց արդարացում, բացի նրանցից, ովքեր ստիպված են, բայց սրտերը նրանց հանգիստ են հավատքի հարցում: Ինչ վերաբերվում է մնացածներին, ապա նրանք, միանշանակ,հանդիսանում են անհավատներ, անկախ նրանից, նրանց պատճառ է հանդիսացել վախը, թե ձգտումը ստանալ որևէ բան, կամ ինչ որ մեկին գոհացնելը հայրենիքի,ընտանիքի,ցեղի հետքրքրություններից ելնելով, կամ հանուն ունեցվածքի, կամ որպես կատակ, կամ նրանք ունեյին այլ պատճառներ: Բացառություն են կազմում միայն ստիպվածները:Իսկ այաթը մատնանշում է այն, որ ստիպողականությունը լինում է միայն խոսքերին և արարքներին: Ինչ վերաբերվում է համոզմունքներին, որոնք սրտում են,ապա այստեղ ստիպողականությունը անհնար է: Ամենաբարձրյալը նույնպես ասաց. «Այդ այն պատճառով է, որ նրանք գերադասեցին աշխարհիկ կյանքը, Վերջին Կյանքից: Ճշմարիտ, Ալլահը չի տանում ուղիղ ճանապարհով անհավատ մարդկանց:» (Սուրա 16,«Մեղուներ» այաթ107): Այստեղ պարզ ասվում է, որ պատժի պատճառ հանդիսանում է ոչ թե համոզմունքը, կամ տգիտությունը, կամ կրոնի հանդեպ ատելությունը, կամ անհավատության հանդեպ սերը, այլ այն, որ մարդ այդ ճանապարհով ձգտում է աշխարհիկ բարիքների, որոնք նա գերադասում է կրոնից:

Իսկ Ալլահը ամենի մասին լավ գիտի: Այս ամենից հետո, արդյոք չի եկել ժամանակը, թող Ալլահը քեզ ճիշտ ուղղու դնի, ապաշխարհել քո Տիրոջը, վերադառնալ Նրան, և թողնել այն, ինչին դու հակվում ես:Քանի որ գործը շատ կարևոր է, ինչպես դու հասկանում ես: Հարցը լուրջ է, իսկ վտանգը մեծ:

ԱԲԴՈՒՆՆԱԲԻ. Թողություն եմ խնդրում Ալլահից, և երկրպագում եմ Նրան, և վկայում եմ, որ չկա աստված բացի Ալլահից, և որ Մուհամեդը Ալլահի Առաքյալն է:Ես թողեցի հավատքը այն ամենին, ինչին ես երկրպագում էի բացի Ալլահից, և ես խնդրում եմ Նրան, որ Նա ների ինձ այնի համար, ինչ ես արել եմ դրանից առաջ և չհարցնի ինձանից, և տարածի իմ վրա Իր բարությունը, ներողամտությունը և գթասրտությունը

և ամուր պահի ինձ իրական Միաստվածության և «ակիդայի» մեջ, մինչ ես կհանդիպեմ Նրան:Եվ ես խնդրում եմ, որ նա արժանին պարգևի քեզ, իմ եղբայր Աբդուլլահ,քո այս խորհուրդների համար:Ճշմարիտ, կրոնը խորհուրդ է: Եվ թող նա արժանին տա քեզ այն բանի համար նաև, որ դու դատեցիր ինձ իմ անվան համար «**Աբդուննաբի**», և ես ցանկանում եմ ասել քեզ, որ իմ անունը հիմա «Աբդուռռահման» է, որը նշանակում է Գթասիրտի ստրուկ:Եվ այն բանի համար, որ դու անհամաձայնություն հայտնեցիր իմ համոզմունքներին:Նրանք հանդիսանում են մոլորություն, և եթե ես հանդիպեյի Ալլահին, ունենալով այդ համոզմունքները, ես երբեք չէի լինի հաջողակ: Սակայն ես ունեմ վերջին խնդրանքը, ասա ինձ դատապարտելի արարքները, որոնք մարդիկ հաճախ անում են մեր օրերում:

ԱԲԴՈՒԼԼԱՀ. Խնդրեմ, լսիր.

- Մի ձգտիր ընտրել քեզ շահավետ կարծիք, հենվելով նրան, որ տվյալ հարցում կա տարաձայնություն,տարածելով մոլորություն և փորձելով գտնել բացատրություն կամ արդարացում քո կարծիքին, քանի որ դրա էությունը ոչ ոք չգիտի բացի Ալլահից:Թող քո կարգախոսը լինի այնը, որը հիմնված է հիմնավոր գիտելիքների վրա, որոնք ասում են ակնարկող այաթների մասին. «Մենք հավատացինք նրանց, նրանք բոլորը մեր Տիրոջից են», իսկ այն դեպքում, երբ կա տարաձայնություն Ալլահի Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) խոսքերը «Թող, այն, ինչ քեզ մոտ կասկած է առաջացնում,ի օգուտ նրա, ինչը չի առաջացնում այդ կասկածը:» (Ահմեդ, ատ-Թիրմիզի): Ինչպես նաև Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) խոսքերը. «Ով խուսափում է կասկածելիից, նա մաքրել է իրեն իր կրոնում և պատվում, իսկ ով ընկել է կասկածելին, նա ընկել է արգելվածի մեջ:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ); Ինչպես նաև Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հետևյալ խոսքերը «Մեղքը այն է, ինչ առաջացնում է անհանգստություն սրտում, այն, ինչի մասին դու չես ցանկանում որ մարդիկ իմանան:» (Մուսլիմ) Նույնպես Նրա (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հետևյալ խոսքերը. «Խորհուրդ հարցրու քո սրտից և հոգուց (Նա կրկնեց այդ երեք անգամ): Բարեպաշտությունը այն է, ինչում քո հոգին հանգիստ է, իսկ մեղքը այն է, ինչ առաջացնում է քո հոգում անհանգստություն և ճնշում կրծքում, նույնիսկ եթե մարդիկ համոզեն քեզ, որ դրա մեջ վատ բան չկա:»[1] (Ահմեդ)
- Խուսափիր հետևել քո կրքերին, քանզի ճշմարիտ, Ամենաբարձրյալ Ալլահը պաշտպանում է մեզ դրանից, ասելով.«Տեսե՞լ ես դու նրան, ով իր աստվածն է արել իր իսկ կիրքը:» (Սուրա 45 « Ծնկապաշտություն »,այաթ 23)
- Խուսափիր ծայրահեղական կապվածությունից որոշակի մարդկանց և կարծիքներին, ինչպես նաև նրանց, ինչին հետևում էին հայրերը, քանի որ այդ հեռացնում է մարդուն Ճշմարտությունից: Ճշմարտությունը հավատացյալի մոլորված գառն է, որտեղ որ նա չգտնի այն, նա միշտ ունի

---

[1] Այսինքն, նույնիսկ եթե մարդիկ, ովքեր չունեն գիտելիք, բազմակի կրկնեն քեզ, որ տվյալ արարքը բոլորովին մեղք չէ:

ավելի շատ իրավունքներ, քան մյուսները: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. ««Երբ նրանց ասում են.«Հետևեք նրան, ինչ լուսաբանել է Ալլահը », նրանք պատասխանում են. «Ոչ,Մենք կհետևենք նրան,, ինչին հետևում էին մեր հայրերը:» Իսկ եթե նրանց հայրերը ոչինչ չգիտեյի՞ն և հետևում էին սխալ ուղղու:»» ( Սուրա 2 «Կով»,այաթ 170)

- Խուսափեք նմանվել անհավատներին: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ով նմանակում է ինչ որ մարդկանց, ապա նա ինքը նրանցից է:»
- Խուսափեք չվստահել Ալլահին: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Նա, ով վստահում է Ալլահին, բավարար կլինի Նա:» (Սուրա 65 «Ամուսնալուծություն»,այաթ 3)
- Մի ենթարկվիր արարածին այն բանում, ինչը հանդիսանում է Արարչին անհնազանդություն: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Չի կարող լինել հնազանդություն արարածին այն բանում, ինչը հանդիսանում է Արարչին անհնազանդություն:» (Ատ-Թիրմիզի)
- Խուսափեք մտածել վատ Ալլահի մասին, այսինքն սպասել նրանից միայն վատը[1],քանի որ Նա ասել է կուդսի հադիթում. «Ես այնպիսին եմ, ինչպես մտածում է իմ մասին Իմ ստրուկը» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)
- Մի կրիր մատանի, թել կամ որևէ այլ բան, որպեսզի հեռացնես քեզանից եկող վտանգը, կամ վտարես այն, երբ արդեն եկել է:
- Խուսափեք կրել թալիսման աչքի դեմ, քանզի այդ շըրկ է: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ով կրում է թալիսման, կամ դրա նման մի բան, նա տրված է նրան:» (Ատ-Թիրմիզի)
- Խուսափեք փնտրել օրհնություն,քարերից,ծառերից, այն բանից, ինչ եղել էր մարդու մի մաս,(մազ, քրտինք և այլն) և տարբեր կառույցներից, (գերեզմանաքարերից և այլն), քանի որ այն հանդիսանում է շըրկ:
- Խուսափեք վատ նշաններին հավատալուն և ցանկացած սնոտիապաշտությունից, քանի որ այդ շըրկ է: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Վատ նշաններին հավատալը շըրկ է,վատ նշաններին ահավատալը շըրկ է:» Եվ կրկնեց այդ երեք անգամ: (Ահմեդ,Աբու Դաուդ)
- Խուսափեք հավատալ կախարդներին և աստղաբաններին,ովքեր պնդում են, որ գիտեն գաղտնին, որոնք հրապարակում են գուշակությունները աստղերով թերթերում, կանխորոշելով մարդկանց երջանկություն կամ դժբախտություն, կապված աստղերի տեղաբաշխության հետ:Ով հավատում է նրանց, նա անում է շըրկ, որովհետև ոչ ոք չգիտի գաղտնին, բացի Ալլահից:
- Խուսափեք կապել անձրևի գալը աստղերի (մոլորակների) հետ, կամ միայն սեզոնային ժամանակի հետ:[1] Քանի որ ամեն ինչ, այդ թվում նաև անձրևի գալը կախված է միայն Ամենազոր Ալլահից:

---

[1] Այստեղից հետևում է, որ մուսուլմանը, ով մահամերձ է, պիտի մտածի Ալլահի գթության և գթասրտության մասին: Նրա սիրո մասին դեպի ստրուկները և Նրա ներման ընդարձակության մասին, այլ ոչ թե Նրա բարկության: Նա պիտի հուսա լավագույնը և ապավինի Ալլահին, որի գութը անսահման է: Եվ նրան չպետք է ներշնչել, որ իրեն անպատճառ սպասվում է պատիժ Ալլահից, իր մեղքերի և արարքների համար:

- Խուսափեք երդվել ինչ որ մեկով, կամ բանով բացի Ալլահից,քանի որ սա շըրկ է և հադիթում ասվում է. «Ով երդվել է ոչ Ալլահին, նա ընկել է անհավատություն կամ արել է շըրկ:» (Ահմեդ, Աբու Դաուդ): Սրան են վերաբերվում Մարգարեներին երդումը հավատարմությամբ, պատվով, խղճով և կյանքով:
- Մի պախարակեք ժամանակը, ինչպես նաև քամին, արևը, ցուրտը և շոգը, քանի որ այդ պախարակում է Ալլահին, Ով ստեղծել է դրանք:
- Մի ասեք. «Ահ, եթե լիներ այս կամ այն…», երբ քեզ հասել է դժբախտությունը, կամ անհաջողությունը, քանի որ այդ դուռ է բացում Շեյթանի խաղերին, և այդ խոսքերը հանդիսանում են Ալլահի Կանխորոշումների դեմ բողոք: Դրա փոխարեն ասա. «Ալլահը կանխորոշել է և արել է, ինչ ցանկացել է:»
- Խուսափեք ընտրել գերեզմանները աղոթատեղի:Չի կարելի աղոթել մզկիթում, որտեղ կա գերեզման: Հադիթում ասվում է, որ Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալամ*) ասաց. «Ճշմարիտ նրանք, ովքեր ապրել են ձեզանից առաջ, դարձնում էին իրենց մարգարեների և սրբերի գերեզմանները աղոթատեղիներ:Այսպիսով մի դարձրեք գերեզմանները մզկիթներ: Ճշմարիտ, ես արգելում եմ այդ ձեզ:» (Աբու Ավանա)
- Խուսափեք հավատալ հադիթներին, որոնք սուտասանները վերագրում են Ալլահի Մարգարեյին (*Սալլալլահու ալեյհի ուա սալամ*) և որոնցում կա դրդում մերձենալ Ալլահին (տավասուլ) Մարգարեյի կամ սրբի միջոցով նրա ումմայի: Այս բոլոր հադիթները սուտ և երևակայական են:Դրանցից են.«Մոտեցեք Ալլահին, իմ դրությամբ, Ճշմարիտ իմ դիրքը Ալլահի մոտ բարձր է:» Ինչպես նաև. «Եթե ձեզ հոգնեցրել են գործերը, այսինքն (անհաջողությունները և դժբախտությունները), դիմեք հնազանդությամբ գերեզմաններին:» Նաև. «Ճշմարիտ,Ալլահը թողնում է հրեշտակ ամեն սրբի գերեզմանի մոտ, (վալի), որ նա բավարարի մարդկանց կարիքները:» Ինչպես նաև. «Եթե ձեզանից յուրաքանչյուրը լավ մտածի քարի մասին[2], ապա այն կբերի օգուտ նրան:» Գոյություն ունի այսպիսի շատ սուտ հադիթներ:
- Խուսափեք նշել այն, ինչ կոչվում է «կրոնական տոն», ինչպես Մարգարեյի (*Սալլալլահու ալեյհի ուա սալամ*) ծննդյան տոնը (մուվալիդ), Հարության Գիշերը, շաբան ամսվա գիշերը և այլն: Այս բոլորը նորարարություններ են և նրանք չունեն ոչ մի հիմք, ոչ Ալլահի Մարգարեյից, ոչ նրա հետևորդնեից, ովքեր սիրում էին Ալլահի Մարգարեյին, ավելի շատ քան մենք, և եթե այտեղ լիներ բարիք, նրանք կասեյին մեզ անել այդ:

---

[1] Այսինքն, մուսուլմանը չպիտի համոզված լինի, որ իրեն համար սովորական պատկերը, ինչպիսիք են, անձրևի գալը, ձյունը, չի կարող փոխվել :Որովհետև Ալլահը ամենազորն է և Նա արարում է ինչ ցանկանում է, Նրա իշխանության տակ է փոխել հաստատված կարգը: Օրինակ, անել այնպես, որ անրձրևը գա այն ժամանակ, որը սովորաբար չի լինում :

[2] Այսինքն կհավատա նրան, որ այդ քարը կարող է օգնել նրան և օգուտ բերել :

# ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆ «ՉԿԱ ԱՍՏՎԱԾ,ԲԱՑԻ ԱԼԼԱՀԻՑ»

## (Լե իլեհե իլա Ալլահ)

Միաստվածության բանաձևը բաղկացած է երկու մասերից.

1. «Չկա աստված...», այս իրական աստծո մերժումն է, ով էլ որ նա լինի, բացի Ալլահից: 2. «...բացի Ալլահից:» Այս համոզմունք է իրական աստվածության, Միայն Ալլահի: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. ««Ահա Իբրահիմը (Աբրահամը) ասաց իր հորը և ազգին. «Ճշմարիտ, ես կապ չունեմ նրան, ինչին դուք երկրպագում եք, բացի Նրանից,Ով ստեղծել է ինձ: Ճշմարիտ, Նա կտանի ինձ ուղիղ ճանապարհով:»» Բավարար չէ ուղակի երկրպագել Ալլահին, անհրաժեշտ է երկրպագել Միայն Նրան: Իրական միաստվածությունը, Միայն Ալլահին երկրպագելն է և մերժելը որևէ մեկին կամ բանին, բացի Ալլահից: Հաղորդված է, որ Դրախտի բանալին «Չկա աստված, բացի Ալլահից» խոսքերն են: Սակայն, արդյո՞ք ամեն ոք, ով կասի այդ,արժանի է որպեսզի Դրախտի դռների բացվեն նրա առջև:

Վահբ իբն Մունաիիբուլին, թող Ալլահը գթա նրան, ասացին. ««Մի՞թե «Չկա աստված բացի Ալլահից «խոսքերը չեն հանդիսանում Դրախտի բանալի:»» Նա պատասխանեց. «Իհարկե, սակայն, ամեն բանալի ունի ատամներ, և եթե դու գաս համապատասխան ատամներ ունեցող բանալիով, ապա քեզ համար կբացվի, իսկ եթե ոչ, ապա չի բացվի:» Շատ հադիթներ մեր Մարգարեից (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես պարզաբանում են մեզ, թե ինչ է հանդիսանում ատամները այդ բանալիի: Օրինակ, Ալլահի Մարգարեի խոսքերը.« Ով ասում է. «Չկա աստված, բացի Ալլահից «անկեղծորեն», կամ «*...ունենալով խոր համոզմունք սրտում...*», կամ «*...ասաց այդ անկեղծ, սրտանց...*» և այլն, այս հադիթները կապում են Դրախտի մուտքը խոսքերի իմաստով և մինչ մահ դրանց հետևելով:

Որպեսզի «Չկա աստված, բացի Ալլահից» խոսքերը լինեն Դրախտի բանալի և բերեն օգուտ ասողին, ապա նրանք պիտի հետևեն որոշ պայմանների և բացասեն որոշակի խոչընդոտներ: Ապացույցների շարքից են գիտնականների կողմից արված հետևյալ պայմանները,Նրանք էլ հանդիսանում են բանալու ատամները: Ահա նրանք.

1. Գիտելիք. Ամեն խոսք ունի իմաստ, և դու պիտի իմանաս «Չկա աստված, բացի Ալլահից» խոսքերի իմաստը ամբողջովին և բազմակողմանի: Այս խոսքերը մերժում են որևէ մեկի աստվածայնությունը, բացի Ալլահից, և պնդում են միայն Նրա Աստվածայնությունը: Այսինքն, չկա ուրիշ մեկը արժանի երկրպագման, բացի Ալլահից: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Բարեխոսություն կլինի միայն նրանց, ովքեր գիտակցաբար վկայել են Ճշմարտությունը, միաստվածությունը:» (Սուրա 43 «Զարդարանք» այաթ 86) Եվ ասաց Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) «Ով մահացել է, իմանալով, որ չկա աստված բացի Ալլահից, կմտնի Դրախտ:» (Մուսլիմ)

2. ԽՈՐ ՀԱՄՈԶՄՈՒՆՔ. Այսինքն, իմաստի հաստատուն հավատք, որոնք ներառված են այս խոսքերում: Այստեղ, տեղ չկա կասկածի, ենթադրության, տատանման և անվստահության: Այս խոսքերի արտաբերումը, պետք է հիմնված լինի խոր և հաստատուն համոզվածության վրա: Ամենաբարձրյալը ասել է նկարագրելով հավատացյալներին. «Հավատացյալ համարվում են միայն նրանք, ովքեր հավատացել են Ալլահին և Նրա

առաքյալին և հետո, չեն ունեցել կասկած և պայքարել են Ալլահի ճանապարհին իրենց ունեցվածքով և իրենց հոգիներով:» (Սուրա 49 «Սենյակներ», այաթ 15): Եվ բավարար չէ այս խոսքերի հասարակ արտաբերումը, նրանք պիտի համակցվեն սրտում գտնվող խոր հավատքով:Եթե այդ չկա, ապա այն պարզապես փարիսեցիություն է: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Վկայում եմ, որ չկա աստված բացի Ալլահից, և որ ես Ալլահի Մարգարեն եմ: Մարդ, ով կհանդիպի Ալլահին այս խոսքերով, առանց կասկածելու, անպատճառ կմտնի Դրախտ:» (Մուսլիմ)

3. ԸՆԴՈՒՆՈՒՄ. Եթե դու իմացել և հավատացել ես, ապա այս հաստատուն գիտելիքը պիտի ունենա արտահայտում,և ընդունում այնի, ինչ ենթադրում են այս խոսքերը բառերով և սրտում: Ով մերժել է տաուհիդի կոչը և չի ընդունել այն, նա հանդիսանում է անհավատ: Եվ կարևոր չէ, այդ մերժման պատճառը եղել է գոռոզությունը, նախանձը, թե համառությունը: Ամենաբարձրյալ Ալլահը ասել է այն հավատացյալների մասին, ովքեր մերժել են իրենց գոռոզությունից ելնելով. «Երբ նրանց ասել են. Չկա աստված բացի Ալլահից, նրանք գոռոզացել են:» (Սուրա 37 «Շարք կանգնածներ » այաթ 35)

4. ՀՆԱԶԱՆԴՈՒԹՅՈՒՆ տաուհիդին, բացարձակ ձևով: Այս միակ չափանիշն է և (իմանի), հավատքի, իրական արտահայտումը: Այն իրականանում է գործնականում այն բանով, ինչ պատվիրել է Ամենաբարձրյալ Ալլահը և մերժում այն, ինչ արգելել է Նա: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Ով իր երեսը թեքել է առ Ալլահ, կատարելով բարիք, նա բռնել է վստահելի ձեռք, իսկ գործերի որոշումը Ալլահինն է:» (Սուրա 31 «Լուկման», այաթ 22): Եվ սա կատարյալ հնազանդություն է:

5. ԱՅՍ ԽՈՍՔԵՐԻ ԱՐՏԱԲԵՐՄԱՆ ՃՇՄԱՐՏԱՑԻՈՒԹՅՈՒՆԸ. Եթե մարդ արտաբերում է այն լեզվով, իսկ սիրտը նրա համարում է դրանք սուտ, ապա այդ փարիսեցիություն է և որպես ապացույց հանդիսանում են Ամենաբարձրյալի Խոսքերը, որոնցով Նա պախարակում է փարիսեցիներին. «Նրանք արտաբերում են իրենց լեզվով այն, ինչ չկա իրենց սրտերում:» (Սուրա 48 «Հաղթանակ », այաթ 11)

6.ՍԵՐ. Հավատացյալը սիրում է այս խոսքերը, և սիրում է գործել համաձայն դրանց և սիրում է նրանց, ովքեր նվիրված են այս խոսքերին և գործում են համաձայն դրա: Ստրուկի սիրո նշանը առ Աստված այն է, որ մարդ առաջին տեղում է դնում այն, ինչ սիրում է Ալլահը, նույնիսկ եթե այն հակասում է իր կրքերին և ցանկություններին: Ինչպես նաև Ալլահին և նրա Մարգարեյին հավատարմությունը, և թշնամությունը նրանց նկատմամբ, ովքեր թշնամաբար են վերաբերվում Ալլահին, հետևելով Նրա Մարգարեյին և ընդունելով նրան որպես օրինակ:

7. ԱՆԿԵՂԾՈՒԹՅՈՒՆ. Մարդ, ով արտաբերում է այս խոսքերը չպիտի ձգտի ոչ մի բանի, բացի Ալլահի գոհության: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. « Իսկ նրանց հրամայված էր միայն երկրպագել Ալլահին, ծառայել Նրան անկեղծ, լինելով Միաստվածության հետևորդներ:» (Սուրա 98 «Պարզ նախանշաններ», այաթ 5): Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. ««Ճշմարիտ, Ալլահը արգելեց կրակին կպնել նրան, ով ասել է.«Չկա աստված, բացի Ալլահից », փորձելով գոհացնել Ալլահին:»» (Ալ- Բուխարի)

# ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆ «Մուհամեդը Ալլահի Մարգարե»

Հանգուցյալը գերեզմանում ենթարկվում է փորձության, և նրան տալիս են երեք հարց: Եթե նա պատասխանի դրանց, ապա կփրկվի, իսկ եթե չպատասխանի, կկործանվի: Այդ հարցերից մեկն է. «Ո՞վ է քո մարգարեն:» Այս հարցին կպատասխանի միայն նա, ում Ալլահը օգնել է հետևել անհրաժեշտ պայմանների, որոնք վերաբերվում են «Մուհամեդը Ալլահի Մարգարե» վկայությանը կյանքի ընթացքում, իսկ հետո ամրապնդել է այն և ներշնչել է նրան ճիշտ ուղղի գերեզմանում, իսկ դրանից հետո, բերել է մարդուն օգուտ հավիտենական աշխարհում, այն Օրը, երբ չի բերի օգուտ, ոչ հարստությունը, ոչ որդիները: Ահա այս անհրաժեշտ պայմանները.

1. ՀՆԱԶԱՆԴՈՒԹՅՈՒՆ ՄԱՐԳԱՐԵ ՄՈՒՀԱՄԵԴԻՆ այն բանում, ինչ նա հրամայել է, քանի որ Ալլահը հրամայել է մեզ ենթարկվել նրան: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Ով հնազանդվել է Մարգարեյին, նա հնազանդվել է Ալլահին:» (Սուրա 4 «Կանայք», այաթ 80): Նա նույնպես ասաց. ««Ասա.«Եթե դուք սիրում եք Ալլահին, ապա հետևեք ինձ, և այդ ժամանակ Ալլահը կսիրի ձեզ...»» (Սուրա 3 «Իմրանի Ընտանիք » այաթ 31); Դրախտի մուտքը անմիջականորեն կապված է նրան հնազանդվելով, Մարգարեն ասաց. «Իմ ամբողջ ումման կմտնի Դրախտ, բացի նրանցից, ովքեր կմերժեն:» Մարդիկ հարցրեցին, «Օ, Ալլահի Մարգարե, ո՞վ կմերժի:» Նա ասաց. «Ով լսում է ինձ, նա կմտնի Դրախտ, իսկ ով չի լսել ինձ, նա կմերժի:» (Ալ-Բուխարի): Ով սիրում է Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), նա անպատճառ պիտի ենթարկվի նրան, քանի որ հնազանդությունը սիրո պտուղ է: Իսկ նա, ով պնդում է իր սերը Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նկատմամբ և չի հետևում նրա օրինակին, չի հնազանդվում նրան, նա ստում է:

2. ՀԱՎԱՏՔ ԱՅՆ ԲԱՆԻՆ, ԻՆՉ ՆԱ ՀԱՂՈՐԴԵԼ Է. Ով համարել է սուտ,հավաստի հաղորդակցությունը, որը տրվել է Մարգարեյի (Խ.Ա.Ո,Ն) կողմից, իր կրքերից և գայթակղություններից ելնելով, ապա նա սուտ է դրել Ալլահի և Նրա Մարգարեյի վրա: Իսկ Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) պաշտպանված է ստից և սխալներից: Ղուրանում ասվում է. «Եվ ասում է նա ոչ թե նախասիրությունից ելնելով, այլ սա ոչ ինչ է, քան ուղարկված լուսաբանում:»

3. ԱՄԵՆ ԻՆՉԻՑ ՀԵՌԱՆԱԼ, ինչ արգելել է Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) և ինչից նախազգուշացրել է: Այն ներառում է ամենամեծ մեղքը, շըրկը և այլն, մեծ մեղքերից մինչ փոքրերը, որը ավարտվում է անցանկալի (մակրուհ) խոսքերով և արարքներով: Ըստ մուսուլմանի սիրո աստիճանի դեպի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), ավելանում է նրա իմանը: Իսկ երբ ավելանում է նրա իմանը, այն ներշնչում է նրան, կատարել բարի արարքներ և ատելի է դարձնում անհավատությունը, մեղքերը և Ալլահին անհնազանդ լինելը:

4. ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ԵՐԿՐՊԱԳԵԼ ԱԼԼԱՀԻՆ ՄԻԱՅՆ ԱՅՆՊԵՍ, ինչպես հասցրել է մեզ Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ): Քանի որ, երկրպագության հիմքը արգելքն է և չի կարելի երկրպագել Ալլահին այլ ձև, բացի այնից, ինչպես տվել է մեզ Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ): Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ)

ասաց. «Ով արել է որևէ բան, որը չի համապատասխանում մեր գործին, այն կմերժվի:» ( Մուսլիմ)

ԾԱՆՈՒՑՈՒՄ.

Իմացիր, որ Մարգարեի նկատմամբ սերը պարտադիր է, և միայն սիրելը բավարար չէ: Մենք պարտավոր ենք սիրել նրան բոլորից շատ աշխարհում, նույնիսկ ավելի շատ քան մեզ: Քանի որ, ով սիրում է որևէ մեկին, նա գերադասում է նրան իրենից, զոհաբերում է ամեն ինչ հանուն նրա և փորձում է ոչնչում չհակաճառել նրան: Անկեղծ սիրող մարդու վարքագծում, ով սիրում է Մարգարեին, երևում են նշանները: Նա հետևում է Սուննային խոսքերով և արարքներով, հնազանդվում է նրա ազդեցությանը, խուսափում է այն ամենից, ինչ նա արգելել է, հետևում է Նրա էսթետիկ նորմերին և դժվարին, և հեշտ պահերին: Քանի որ հնազանդությունը և հետևելը հանդիսանում են սիրո արդյունք, առանց որոնց սերը չի կարող լինել անկեղծ:

ՄԱՐԳԱՐԵՑԻ ՀԱՆԴԵՊ ԿԱՆ ՆԱև ՈՒՐԻՇ ՍԻՐՈ ՆՇԱՆՆԵՐ.

որոնցից են օրինակ, Նրան հաճախակի հիշատակելը և Ալլահի օրհնությունը խնդրելը, քանր որ մարդ ով սիրում է, անընդհատ հիշում է իր սիրած էակին: Ինչպես նաև նրան հանդիպելու ցանկությունը, քազի ցանկացած սիրող մարդ ձգտում է հանդիպել իր սիրած էակին: Նաև նրան հարգելը և պատվելը հիշատակելիս: Իսհակը, թող Ալլահը գոհանա նրանով, ասաց. «Երբ Մարգարեի հետևորդները հիշեցին նրան մահից հետո, նրանց սրտերը լցվեցին հնազանդությամբ և նրանք արտասվեցին:» Նրա հանդեպ սիրո նշան է նաև ատել այն, ինչ նա ատում էր, առանձնացումը, Նրա Սուննային հակառակվելը և կրոնի մեջ նորարարություններ բերելը: Սիրո նշան է նաև սերը այն մարդկանց նկատմամբ, ում սիրել է Մարգարեն, նրա ընտանիքը, կանայք, հետևորդները մուջահջիրներից և ասարներից: Ինչպես նաև թշնամական վերաբերմունք նրանց նկատմամբ, ովքեր թշնամաբար էին վերաբերվում նրան և ատելություն նրանց, ովքեր ատում և պախարակում են նրան:

Մարգարեի նկատմամբ սիրո մեկ այլ նշան է նրան կրկնօրինակելը իր առաքինի պահվածքում և բարոյականությունում: Նա մարդկանցից ամենաառաքինին էր: Աիշան հաղորդում է. «Ալլահի Մարգարեի (Սալլալահու ալեյհի ուա սալամ) բարոյականությունը Ղուրանն էր: Այսինքն, նա ինքն իրեն պարտադրել էր անել այն, ինչ հրամայում էր Ղուրանը:

Բացի դրանից, նա մարդկանցից ամենա անվախն էր, մանավանդ մարտերում և ամանաառատաձեռն և մեծահոգին էր, ռամադան ամսում: Նա մարդկանցից ամենահամբերատարն էր և երբեք վրեժխնդիր չէր եղել իր համար: Նա, նաև ամենահաստատակամն էր, երբ գործը վերաբերվում էր Ամենաբարձրյալին: Սակայն այս ամենի հետ, նա ամենահամեստ և առաքինին էր, և ավելի ամաչկոտ էր, քան հարսնացուն: Նա ամենալավն էր մարդկանց մեջ, կապված իր ընտանիքի հետ և ամենագթասիրտը:

# ԾԻՍԱԿԱՆ ՄԱՔՐՈՒԹՅՈՒՆ (ՏԱՀԱՐԱ)

Նամազը հանդիսանում է իսլամի երկրորդ սյունը և այն վավերական է միայն որոշակի մաքրության դեպքում, իսկ ծիսական այդ մաքրությունը կատարվում է ջրի կամ հողի օգնությամբ:

ՋՐԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ.

1) ՄԱՔՈՒՐ ՋՈՒՐ, ինքն իրեն մաքուր է և մաքրում է ամեն ինչ, այսպիսի ջուրը հեռացնում է անմաքրությունը և կեղտը (նեջես): 2)ԱՆՄԱՔՈՒՐ ՋՈՒՐ, այն է, որը խառնվել է կեղտի հետ (նաջաս), եթե նրա քանակը քիչ է, և այն ջուրը, որի համը, գույնը և հոտը փոխվել է ինչ որ անմաքուր (նաջես) բանի հետևանքով, նույնիսկ այն դեպքում, երբ նրա քանակը մեծ է:

ԾԱՆՈՒՑՈՒՄ

ջրի մեծ քանակությունը համարվում է անմաքուր այն դեպքում, եթե ինչ որ բանի ազդեցության տակ այն փոխել է իր որակներից մեկը,գույնը, համը, հոտը: Իսկ քիչ քանակությամբ ջուրը դառնում է անմաքուր, նույնիսկ ամենահասարակ կեղտի հետ խառնվելուց: Մեծ քանակություն է համարվում 210 լիտրից ավել ջուրը:

ՏԱՐՐԱ. Ցանկացած տարրա համարվում է մաքուր և այն կարելի է օգտագործել, բացի ոսկե և արծաթե տարրաներից: Այդպիսի տարրաներից օգտագործվող ջրով մաքրվելը վավերական է, բայց համարվում է մեղք: Նույնպես կարելի է օգտագործել անհավատի տարրան և հագուստը, բացի այն դեպքերից, երբ մենք գիտենք, որ նրանց վրա կա ինչ որ անմաքուր բան (նաջաս), կամ այն օգտագործվել է դրանք արտադրելու ժամանակ:

ԳԻՇԱԿԵՐԻ ՄՈՐԹԻՆ

ամեն դեպքում համարվում է նաջաս: Գիշակերը լինում է երկու տեսակի.

1) Կենդանի, որի միսը չի օգտագործվում ուտելիքի մեջ.

2) Կենդանի, որի միսը օգտագործվում է ուտելիքի մեջ, բայց մորթի ժամանակ չի հիշատակվել Ալլահի անունը:

Երկրորդ տեսակի կենդանու մորթին մշակումից հետո կարելի է օգտագործել չոր բաներ պահպանելու, բայց ոչ հեղուկ:

ԼՎԱՑՈՒՄ (իստինջա). Այս մաքրվելն է մեծ և փոքր կարիքներից հետո: Եթե այդ ժամանակ օգտագործվում է ջուր, ապա այն կոչվում է «իստինջա», իսկ եթե քար, թուղթ և այլն, այն կոչվում է «իստիջմար»: Եթե իստիջմարը համարվի վավերական, այն պիտի կատարվի որևէ մաքուր, թույլատրելի, մաքրող և ուտելիքի մեջ չօգտագործվող առարկայով: Քարի օգտագործման ժամանակ դրանք պիտի լինեն երեք և ավելի: Իստինջան կամ իստինջմարը պարտադիր է այն ամենի համար, ինչ դուրս է գալիս համապատասխան օրգաններից:

ԿԱՐԻՔԸ ՀՈԳԱՑՈՂԻՆ արգելվում է գտնվել այդ վայրում ավելի երկար ժամանակ,քան պահանջում է այդ կարիքը: Արգելվում է նաև հոգալ կարիքը ջրի աղբյուրի, ճանապարհի, ստվերի, մարդկանց հանգստանալու վայրերի, ծառերի մոտ: Կարիք հոգալուց չի կարելի ուղղվել Քիբլայի ուղղությամբ:

ԿԱՐԻՔ ՀՈԳԱՑՈՂԻՆ ԱՆԹՈՒՅԼԱՏՐԵԼԻ Է այնտեղ տանել որևէ բան, ինչ պարունակում է Ալլահի անունը, և խոսել այդ ժամանակ: Նաև անթույլատրելի է կարիք հոգալ որևէ բնի մոտ և այլն: Չի թույլտրվում աջ ձեռքով ձեռք տալ սեռական օրգանները և թեքվել Քաբբայի ուղղությամբ փակ տարածքում: Սակայն անհրաժեշտության դեպքում այս ամենը թույլատրելի են:

ԿԱՐԻՔ ՀՈԳԱՑՈՂԻՆ ՑԱՆԿԱԼԻ Է. սրբել կամ լվալ համապատասխան օրգանները անհաշվելի անգամներ և օգտագործել ջուր քարով, թղթով և այլն:

ՍԻՎԱԿը հանդիսանում է սուննա, ատամների մաքրության համար: Այն հանդիսանում է արակ ծառի նման ծառի ճյուղ: Այն առանձնակի ցանկալի է անել նամազից, Ղուրան կարդալուց, փոքր լվացում (վուդու) անելուց, բերանը ողողելուց, քնից արթնանալուց, տուն կամ մզկիթ մտնելուց առաջ, ինչպես նաև տհաճ հոտերից խուսափելու համար: Սուննա է համարվում անել այդ աջ ձեռքով, իսկ ձախը պիտի օգտագործել անցանկալի մանրուքները հեռացնելու ժամանակ:

ՓՈՔՐ ԼՎԱՑՈՒՄ (ՎՈՒԴՈՒ): Նրա հիմքերն են (ռուկն)

1) երեսի լվացումը, այն ներառում է բերանի ողողումը և քթի մաքրումը; 2) ձեռքերի լվացումը մատերի ծայրերից մինչև արմունկ; 3) գլխի և ականջների սրբելը; 4) ոտքերի լվացումը, ներառելով կոճերը; 5) բոլոր գործողությունների հերթականությունը; 6) անդադարությունը, որպեսզի գործողությունների կատարման միջև չանցնի երկար ժամանակ:

ՊԱՐՏԱԴԻՐ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ (վաջաբ).

Լվացումից առաջ Ալլահի անունը հիշատակելը և երեք անգամ ձեռքերի լվանալը քնից արթնանալուց հետո:

ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ, ՈՐԸ ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ Է ՑԱՆԿԱԼԻ ՍՈՒՆՆԱ.

Սիվակի օգտագործումը, ձեռքերի դաստակների լվացում վուդույից առաջ, և մինչ երես լվանալը բերանի ողողումը և ականջների լվալը: Անհրաժեշտ է, որ ջուրը խորը ներթափանցի քթի և բերանի խոռոչը, որը սակայն, ցանկալի չէ պահք պահողի համար: Պետք է թավ մորուքը մատներով սանրել և այդ մասի մաշկի մանրակրկիտ լվալ: Անհրաժեշտ է սկսել լվացումը աջ կողմից: Մարմինը պիտի լվալ երկու կամ երեք անգամ: Սկսել աջ ձեռքով և ավարտել ձախով, և լվացման ժամանակ թեթև մերսել մարմնի մասերը: Ամենը կատարել մանրակրկիտ և ասել որոշակի դուա դրանից հետո:

ԼՎԱՑՄԱՆ ԸՆԹԱՑՔՈՒՄ ԱՆՑԱՆԿԱԼԻ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ (ՄԱԿՐՈՒՀ) Է շատ տաք կամ սառը ջրի օգտագործումը, մարմնի որևէ մասի լվացումը ավելի քան երեք անգամ, ջրի թափահարումը լվացված մասերից, և աչքերի ներսից լվացումը: Ինչ վերաբերվում է լվացումից հետո սրբիչի օգտագործմանը, ապա այն թույլատրելի է:

ԾԱՆՈՒՑՈՒՄ. Բերանի խոռոչի ողողման ժամանակ անհրաժեշտ է ջուրը շարժել այնտեղ, իսկ քթի լվացման ժամանակ, պետք է զգույշ քաշել ջուրը ներս շնչելով, և դուրս անել այդ արտաշնչելով:

ՎՈՒԴՈՒՅԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ.

Մուսուլմանը իր սրտում, նպատակ է դնում անել այդ, հետո հիշատակում է Ալլահի անունը և լվնում է ձեռքերի դաստակները, հետո ողողում է բերանը և լվանում է քիթը, որից հետո լվանում է երեսը: Հետո նա լվանում է ձեռքերը մինչև արմունկները, որից հետո սրբում է գլուխը ճակատից մինչև ծոծորակ, ներառելով ականջների ետևի մաշկը, միևնույն ժամանակ ցուցամատով մաքրում է ականջների ներսը, իսկ բութ մատով դրսի մասը: Դրանից հետո նա լվանում է ոտքերը ներառելով կոճերը:

ԾԱՆՈՒՑՈՒՄ. Եթե մորուքը թավ չէ, ապա պետք է լվալ նրա տակի մաշկը, իսկ եթե ոչ, բավարար է լվալ նրա արտաքին մասը:

ԽՈՒՖՕՎՆԵՐԻ ՍՐԲՈՒՄԸ. Խուֆը, հատուկ կոշիկ է կաշվից կամ նմանատիպ նյութից: Եթե դրանք պատրաստվում են բրդից կամ դրա նման նյութից, ապա դա նույնն է ինչ գուլպան: Դրանք թույլատրված են սրբել միայն փոքր կեղտից հետո և պետք է հետևել հետևյալ պայմանները. 1) խուֆերը հագնում են ծիսական կատարյալ մաքրության դեպքում, այսինքն երկրորդ ոտքի լվալուց հետո; 2) ծիսական մաքրումը պիտի կատարվի ջրով; 3) խուֆերը պիտի ծածկեն այն ամբողջ մասը, որը անհրաժեշտ է լվանալ վուդույի ժամանակ; 4) խուֆերը պիտի լինեն թույլատրելի, այսինքն չգողացված և այլն; 5) դրանք պիտի լինեն մաքուր, այսինքն չպարունակեն իրենց մեջ այն, որը հանդիսանում է անմաքուր (նաջաս):

ՍՐԲԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՀԱՏՎԱԾԸ.

Այն մեկ օր է, այն մարդու համար, ով գտնվում է իր մշտական բնակության վայրում և երեք օր ճանապարհորդին, որին թույլատրվել է կարճեցնել նամազը, որը անցել է 85 կիլոմետր: Այս ժամանակահատվածը սկսվում է առաջին սրբումից և հագնելուց և ավարտվում է 24 ժամ հետո, իսկ ճանապարհորդին թույլատրվում է սրբել խուֆերը երեք օր հետո:

ՕԳՏԱԿԱՐ ԽՈՐՀՈՒՐԴ. Ով եղել է տանը, հետո ճանապարհ է անցել, կամ հակառակը, ճանապարհ է անցել և վերադարձել է տուն, կամ կասկածում է ժամանակահատվածի սկզբին, ապա նա սրբում է ինչպես բոլոր մարդիկ:

ԽՈՒՖԵՐԻ ՍՐԲՄԱՆ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆԸ.

Այն ներառում է ոտքի վերին մասի մեծամասնությունը, մատներից մինչև կոճերը: Կարելի է սրբել մատների բացված դիրքով:

ՕԳՏԱԿԱՐ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆ. Լավ է սրբել երկու խուֆերը միաժամանակ և չսկսել աջից, պարտադիր չէ սրբել նրանց տակերը և ետևի մասը: Ցանկալի չէ լվանալ խուֆերը սրբելու փոխարեն, ինչպես նաև կատարել կրկնակի սրբում: Սակայն պետք է սրբել չալման և կանացի գլխաշորը:

ՉԱԼՄԱՅԻ ՍՐԲԵԼԸ. Այն կարելի է սրբել հետևելով հետևյալ պայմաններին: 1) եթե այն կրում է տղամարդ, 2) եթե այն ծածկում է գլխի այն մասը, որը պիտի ծածկի; 3) եթե սրբումը տեղի է ունենում փոքր կարիքներից հետո; 4) եթե դրան նախորդած ծիսական մաքրումը կատարվել է ջրով:

ԿԱՆԱՑԻ ԳԼԽԱՇՈՐԻ ՍՐԲՈՒՄԸ.

Թույլատրվում է, եթե կատարվում է ըստ հետևյալ պայմանների.

1) եթե այն կրում է կին; 2) տեղ է գտնում միայն փոքր կեղտոտումը; 3) գլխաշորը ծածկում է կոկորդի մասը; 4) նախորդող լվացումը կատարվել է ջրով;
5) այն պիտի ծածկի այն ամենը, ինչ սովորաբար ծածկում է կանացի գլխաշորը:
ԲԵԿԱԿԱԼ: Ձողեր, որոնք դրվում են կոտրվածքի մասում: Այն կարելի է սրբել, հետևելով հետևյալ պայմաններին:
1. մարդ պիտի իսկապես կարիք ունենա դրա;
2. այնպիտի դրվի միայն վնասված մասում;
3. այն անհրաժեշտ է սրբել վուդույի ժամանակ, առանց հանելու այն: Օրինակ, եթե այն դրված է ձեռքին, ապա պիտի անել վուդու նորմալ ձևով, միայն վնասված ձեռքի լվանալու փոխարեն, պետք է սրբել դրված ձողը: Եթե ձողը ընդգրկում է ոչ միայն վնասված մասը,այդ դեպքում մնացած մասը պիտի ազատել դրանից: Եթե մարդ վախենում է, որ այդ անելուց կվնասի իրեն, ապա նրան թույլատրվում է սրբել ձողը իր սկզբնական տեսքով:
ԻՆՉՆ Է ԽԱԽՏՈՒՄ ՎՈՒԴՈՒՆ.
1. Այն, ինչ դուրս է գալիս միզածորանից և հետանցքից, անկախ նրանից, թե դրանք մաքուր արտաղրություն են, ինչպիսիք են գազերը, սերմը, թե անմաքուր, ինչպիսիք են մեզը և կղղանքը: 2. Գիտակցության անջատվելը, որոնք են գիտակցության կորուստը կամ քունը, բացի այն դեպքերից, երբ մարդ ննջում է կանգնած, կամ նստած, երբ նրա վուդուն չի խախտվում:
3. Մեզի կամ այլնի դուրս գալը, ոչ բնական մասերից:
4. Մարմնից որոշ բաների դուրս գալը, ինչպիսիք են արյունը և այլն, որոնք համարվում են նաջաս: 5. Ուղտի մսի օգտագործումը սննդի մեջ:
6. Ձեռքով սեռական օրգաններին ձեռք տալը:
7.Տղամարդու կրքով կնոջը ձեռք տալը 8. Կրոնաղրժությունը:
ԾԱՆՈՒՑՈՒՄ: Նա, ով համոզված է, որ կատարել է լվացում, բայց կասկածում է խախտել է այն թե ոչ, անում այն, ինչին վստահ է:
ԼԻԱԿԱՏԱՐ ԼՎԱՑՈՒՄ (ղուսուլ): Պատճառները. այդ կատարելու
1) Սերմնահեղուկի դուրս գալը, որին հաջորդում է բերկրանք, ինչպես նաև նրա արտազատումը քնի ժամանակ, բերկրանքով կամ առանց; 2) Կնոջ և տղամարդու սեռական օրգանների մերձեցումը,նույնիսկ եթե սերմարտաղրություն չի լինում: 3) Անհավատի իսլամ ընդունելու ժամանակ, նույնիսկ եթե նա եղել է ուխտադրուժ: 4) Ամսականի ժամանակ եղած արյունը: 5) Հետծննդյան շրջանի արյունահոսությունը: 6) Մուսուլմանի մահը:
ՂՈՒՍՈՒԼԻ ԺԱՄԱՆԱԿ ԿԱՏԱՐՎՈՂ ՊԱՐՏԱԴԻՐ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ.
Բավարար է ցողել մարմինը ջրով լիակատար մաքրվելու ցանկությամբ: Միևնույն ժամանակ պետք է ողողել բերանը և քիթը: Որպեսզի ղուսուլը լինի կատարյալ անհրաժեշտ է. 1) Մտադրվել; 2) Հիշատակել Ալլահի անունը; 3) Լվալ ձեռքերը մինչ այն տարրայի մեջ մտցնելը; 4) Լվանալ սեռական օրգանները, հեռացնելով բոլոր աղտերը; 5) կատարել վուդու;
6) գլխին լցնել երեք թաս ջուր; 7) ցողել ջրով ամբողջ մարմինը;
8) միևնույն ժամանակ թեթևակի մերսել; 9) Սկսել աջ կողմից:

ՆՐԱՆ, ՈՎ ԳՏՆՎՈՒՄ Է ՓՈՔՐ ԱՆՄԱՔՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ, ԱՐԳԵԼՎՈՒՄ Է.
1) ձեռք տալ արաբերեն լեզվով գրված Ղուրանին;
2) նամազ անել; 3) շրջել Քաաբայի շուրջ:

Նրան, ով գտնվում է մեծ անմաքրության մեջ, բացի բոլոր հիշատակված գործողություններից, արգելվում է կարդալ Ղուրան և մտնել մզկիթ առանց լվացման: Անցանկալի է համարվում նաև քունը, սեռական գործողությունից հետո, առանց վուդուի: Նաև անցանկալի է ջրի մեծ քանակի օգտագործումը ղուսուլի ժամանակ:

ՀՈՂՈՎ ԿԱՄ ԱՎԱԶՈՎ ՄԱՔՐՎԵԼԸ, (ՏԱՅԱՄՈՒՄ);
Նրա պարտադիր պայմաններն են.
1) ջրի բացակայությունը; 2) այն պիտի կատարվի մաքուր, թույլատրելի հողի փոշով, որը ունի իր սկզբնական վիճակը:

ՀԻՄՆԱԿԱՆ ԳԱՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ռուկն);
ամբողջ երեսի մաքրումը, հետո ձեռքերինը մինչև դաստակները, և գործողությունների հերթականությունը և անդադարությունը:

ԻՆՉՆ Է ԴԱՐՁՆՈՒՄ ՏԱՅԱՄՈՒՄԸ ԱՆՎԱՎԵՐ.
1) այն ամենը, ինչ դարձնում է վուդուն անվավեր;
2) ջրի գտնելը, եթե նա տայամում է արել նրա բացակայության պատրվակով;
3) պատրվակի հեռացումը, օրինակ եթե նա տայամում է արել հիվանդության պատճառով, հետո այդ անցել է:

ՈՐՆ Է ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ ՍՈՒՆՆԱ ՏԱՅԱՄՈՒՄԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ.
1) **հետևել** կարգին և գործողությունների անդադարությանը մեծ աղտոտության ժամանակ; 2) **նամազի** ժամանակի հետաձգումը;
3) **դուայի** ընթերցումը, որը արվում է վուդույից հետո: Անցանկալի է կրկնել երեսը գետնին կպցնելը մի քանի անգամ:

ՏԱՅԱՄՈՒՄԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ.
ընդունել մտադրությունը, հիշատակել Ալլահի անունը, ձեռքերով հարվածել գետնին մեկ կամ երկու անգամ, սրբել ձեռքի ափերով երեսը, մորուքը, որից հետո սրբել ձեռքի դաստակները, սկզբում աջը, հետո ձախը:

ԱՂՏԻ (ՆԱՋԱՍ) ՀԵՌԱՑՈՒՄԸ.
Կենդանի էակները բաժանվում են երկու տեսակի.
1. ԱՆՄԱՔՈՒՐ (ՆԱՋԱՍ). Որոնցից են շները, խոզերը, նրանց ձագերը, ինչպես նաև կենդանիները, որոնց միսը չի օգտագործվում սննդում, (կենդանիներ և թռչուններ, որոնց չափսերը մեծ են կատվի չափսերից): Այս կենդանիների մեզը, կերակրի ավելցուկները, թուքը, սերմը, քրտինքը, կաթը, քթի արտադրությունը անմաքուր (նաջաս) են:
2. ՄԱՔՈՒՐ. Նրանք լինում են երեք տեսակի.
1) **Մարդ.** Նրա սերմը, քրտինքը, կաթը, քթի արտադրությունը, կանացի օրգանների խոնավությունը, համարվում են մաքուր: Այդպիսին են համարվում մարմնի բոլոր մասերը և դրանցից դուրս եկող ամեն ինչ, բացի մեզից, կղղանքից, քուսկից և արյունից: Այս բոլորը համարվում են անմաքուր (նաջաս):

2) ԿԵՆԴԱՆԻՆԵՐ, որոնց միսը օգտագործվում է սննդի մեջ: Այդ կեղանիների մեզը, սննդի մնացորդները, սերմը, կաթը, քրտինքը, թուքը, քթի արտադրությունը, քուքը, փսխումը մաքուր են:
3) ԿԵՆԴԱՆԻՆԵՐ, որոնց հպվելը կամ կողքին ապրելը անխուսափելի է: Այդպիսիներից են կատուն, ավանակը, մուկը և այլն: Մաքուր են համարվում նրանց միայն քրտինքը և թուքը:
ԳԻՇԱԿԵՐ. Ցանկացած գիշակեր համարվում է անմաքուր (նաջաս), բացի մեռած մարդուց, ինչպես նաև ձկից, մորեխից և արարածներից, որոնք չունեն արյուն: Այդպիսիք են կարիճը, մրջյունը, մոծակը:
ԱՆՕՐԳԱՆԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐ.
Դրանք բոլորը մաքուր են: Այդպիսիք են քարը, հողը և այլն: Բացառություն են կազմում այդ նյութերի պինդ և կարծրացած տեսակները:
ՕԳՏԱԿԱՐ ԾԱՆՈՒՑՈՒՄ. Արյունը, փսխանքը և թարախը նաջաս են: Նամազի ժամանակ և մյուս դեպքերում ներելի են համարվում դրանց քիչ քանակությունը, եթե աղբյուրը մաքուր կենդանիներն են: Երկու տեսակի արյունը համարվում է մաքուր.
1) ձկան արյունը; 2) արյունը, որը մնացել է մսի և տարրայի մեջ կենդանու մորթից հետո, որի ժամանակ հիշատակվել է Ալլահի անունը:
Ամենը, ինչ առանձնացրած է կենդաի կենդանուց, միսը, որը օգտագործվում է սննդի մեջ, լինի դա արյան լերդացում, կամ մսի կտոր, համարվում է նաջաս:
Աղտի հեռացնելը կարիք չունի մտադրության և, եթե այն հեռացրել է անձրևը, ապա այդ համարվում է մաքրում:
Որևէ աղտի ձեռքով հպումը, կամ վրայով քայլելը, չի խախտում վուդուն, և պետք է ուղակի հեռացնել այն մարմնից կամ հագուստից:
ՆԱՋԱՍԸ ՀԵՌԱՑՎՈՒՄ Է ԸՍՏ ՀԵՏևՅԱԼ ՊԱՅՄԱՆՆԵՐԻ.
1) Մաքրումը պիտի կատարվի մաքուր ջրով; 2) ինչ կարելի է քամել, պիտի անել այդ, հանելով ջրից; 3) նաջասը պետք է հեռացնել շփումով կամ թափ տալով, եթե լվալը բավարար չէ; 4) պետք է լվալ յոթ անգամ ջրով և դրանցից մեկ անգամը հողի կամ օճառի առկայությամբ:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. Նաջասը, որը գտնվում է հողի երեսին, եթե այն հեղուկ է, ինչպիսին է մեզը, բավական է ջրել, այնպես որ մաքրվի այն, հոտը և գույնը: ✷ Եթե այն ավելի առարկայական է, պետք է հեռացնել այն և նրա հետքերը:. Եթե հնարավոր չէ հեռացնել նաջասը ոչնչով բացի ջրից, ապա պետք է լվալ այն: ✷ Եթե տեղը, որտեղ կար նաջաս դժվար է գտնել, ապա պետք է լվալ կամ մաքրել ամբողջ ենթադրյալ մասը, այնպես, որ համոզված լինել որ այն այլևս չկա: ✷ Ով արել է վուդու որպեսզի կատարի ոչ պարտադիր նամազ, ապա նույն վուդույով կարող է կատարել պարտադիր նամազ: ✷ Նրան, ով քնել է և արտազատել է աղիքային գազեր, կարիք չկա լվացման, քանի որ այդ գազերը համարվում են մաքուր, բայց նա պետք է անի վուդու:

# ԿԱՆՈՆՆԵՐ. ՈՐՈՆՔ ԿԱՊՎԱԾ ԵՆ ԱՄՍԱԿԱՆԻ (ՀԱՅԴԻ) ՀԵՏ և ԴՐԱ ՆՄԱՆ ԱՐՅՈՒՆԱՀՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ԻՍՏԻՀԱԴԱ)

| ՀԱՐՑ | ՇԱՐԻԱԹԻ ՈՐՈՇՈՒՄԸ |
|---|---|
| Կանանց ամսականի առկայության ամենամեծ և ամենափոքր տարիքը | Ամենափոքր տարիքը, որի ժամանակ հնարավոր է ամսեկանի հայտնվելը, ինը տարեկանն է:Արյունը, որը հայտնվում է այդ տարիքից առաջ, համարվում է իստիհադա: Ամսեկանի սկսման ամենամեծ տարիք գոյություն չունի: |
| Ամսեկանի առկայության ամենակարճ ժամանակահատվածը | Մեկ օր: Եթե արյան արտադրության ժամանակահատվածը կարճ է, ապա այդ իստիհադա է: |
| Ամենաերկար ժամանակահատվածը | Տասնհինգ օր: Եթե արյան արտադրությունը շարունակվում է հետո էլ, այն արդեն իստիհադա է: |
| Երկու ամսականների միջև մաքրության ժամանակահատվածը | Տասներեք օր: Եթե արյունը սկսել է հոսել մինչև այդ ժամանակահատվածի ավարտը, ապա այդ իստիհադ է: |
| Կանացի ամսականի սովորական տևողությունը | Վեց- յոթ օր |
| Երկու ամսականների միջև եղած սովորական ժամանակահատվածը | Քսաներեք- քսանչորս օր |
| Հղիության ժամանակ տեղի ունեցող արյունահոսությունը արդյոք համարվու՞մ է ամսական: | Արյունը, ինչպես նաև դեղին կամ շագանակագույն արտադրությունը հղիության ընթացքում, համարվում է իստիհադա:[1] |
| Ինչպե՞ս կինը իմնանում, որ նա մաքրվել է ամսականից | **1.**Սովորական սպիտակ արտադրությունից[2], եթե դրանք կան կնոջ մոտ, ամսականների միջև ընկած ժամանակահատվածում; **2.** Դադարը արյան հոսքի, ինչպես նաև շագանակագույն և դեղին արտադրության դուրս գալը, եթե կնոջ մոտ սովորաբար չի լինում սպիտակ արտադրություն: |
| Այն, ինչ դուրս է գալիս կնոջ սեռական օրգաններից ամսականների միջև | Եթե արտադրությունը թափանցիկ կամ սպիտակ է, ապա համարվում են մաքուր: Եթե այն արյուն, դեղին կամ շագանակագույն արտադրություն է, ապա այդ համարվում է նաջաս: Ամեն դեպքում դրանք |

---

[1] Ամսականը, բնական արյուն է, որի առկայությունը բնական է կնոջ օրգանիզմում, և որը որը ունի ժամանակին արտահայտումը, անկախ առողջական վիճակից :
Իստիհադան, արյունահոսություն է ոչ ամսական բնույթի, որը կարող է տեղի ունենալ անորոշ ժամանակում, կախված առողջական վիճակից: Հայդի և իստահադայի միջև եղած տարբերությունը.
**1.** Ամսականի արյունը մուգ կարմիր գույնի է, մոտ սևի, իսկ իստիհադայի ժամանակ արյունը վառ կարմիր է, ինչպես քթի արյունահոսության ժամանակ :
**2.** Ամսական արյունը թանձր է և կարող է պարունակել թանձրույթներ, իսկ իստիհադայի ժամանակ արյունը հեղուկ է և հոսում է, ինչպես վերքի արյունը ;
**3.** Ամսական արյունը սովորաբար ունի տհաճ հոտ, իսկ իստիհադայի ճամանակ, սովորական արյան հոտ է գալիս : Ամսականաի ժամանակահատվածում արգելվում է սեռական հարաբերություն, ամուսնալուծություն, աղոթել, պահք պահել, շրջայց կատարել Քաաբա, կարդալ Ղուրան, վերցնել այն ձեռքը, և գտնվել մզկիթում :
[2] Նկատի է առնվում սպիտակ հեղուկը, որը սովորաբար արտադրվում են սեռական օրգաններից ամսականների միջև մաքրման ժամանակահատվածում: Այդ արտադրությունը համարվում է մաքուր, բայց այն խախտում է վուդուն :

| | |
|---|---|
| եղած ժամանակահատվածում | խախտում են վուղուն, իսկ եթե այն շարունակվում է երկար ժամանակ, ապա այդ արդեն խտիհաղ է: |
| Դեղին և անորոշ արտադրությունը | Եթե դրանք տեղի են ունենում ամսեկանից հետո կամ առաջ, ապա հանդիսանում են ամսականի մաս, մնացած այլ դեպքերում այն խտիհաղա է: |
| Եթե ամսականը ավարտվել է ավելի շուտ, քան սովորաբար, օրինակ միշտ եղել է վեց օր, իսկ մի անգամ միայն չորս: | Կինր համարվում է մաքրված, եթե դադարել է արյան հոսքը և նա տեսնում է մաքրման նշանները, նույնիսկ եթե այն տևում է սովորականից քիչ: |
| Եթե ամսականը սկսվել է սովորականից շուտ կամ ուշ | Այս ամենը համապատասխանում է ամսականի նկարագրությանը, անկախ նրանից թե երբ է եկել, սակայն կարևորը այն է, որ վերջին ամսականից պիտի անցած լինի տասներեք օր: Այլապես այն խտիհաղա է: |
| Եթե ամսականի շարունակականությունը ավելացել կամ պակասել է համեմատած սովորականի | Այն ամսական է պայմանով, որ այն կշարունակվի ոչ ավելի քան տասնհինգ օր: |
| Եթե արյունը շարունակվում է ամբողջ ամիս կամ ավելի | 1.Կինը, ով գիտի երբ է նրա մոտ սովորաբար տեղի ունենում ամսականը և քանի օր է տևում, սպասում այն օրերը, որի ժամանակ լինում է ամսեկանը, նա այդ ժամանակ չի աղոթում, և պահք չի պահում; 2. Կինը, ով գիտի ամսեկանի գալու ժամանակը, բայց չգիտի նրա տևողությունը, սպասում է վեց – յոթ օր, այն ժամանակը երբ նրա մոտ սովորաբար լինում են ամսականներ: 3.Կինը, ով գիտի քանի օր է սովորաբար տևում նրա ամսեկանը, բայց չգիտի այն գալու ժամանակը, սպասում է համապատասխան քանակի օրեր ամեն յուսնային ամսվա սկզբում: |

# ՀԵՏԾՆՆԴՅԱՆ ԱՐՅՈՒՆԱՀՈՍՈՒԹՅՈՒՆ (ՆԻՖԱՍ)

| ՀԱՐՑ | ՇԱՐԻԱԹԻ ՈՐՈՇՈՒՄԸ |
|---|---|
| Եթե կինը ծննդաբերել է, բայց չի տեսել արյուն | Նա չի համարվում նիֆասի վիճակում, նա կարիք չունի անել ղուսուլ և նրա պահքը չի խախտվում |
| Եթե կինը տեսնում է սկսվող ծննդաբերության նշանները | Արյան արտադրությունը և ջրերի հեռանալը, որոնք բնորոշ են կնոջը ծննդաբերությունից առաջ և հաջորդում է ցավով, չի համարվում նիֆաս, բայց հանդիսանում է խտիհաղա: |
| Արյունը, որը գալիս է ծննդաբերության ժամանակ | Այդ արյունը նիֆաս է, նույնիսկ եթե երեխան չի հայտնվել, կամ հայտնվել է նրա կեսը: Եվ կինը պարտավորված չէ վերականգնել նամազը, որը նա բաց է թողել այդ ժամանակ |
| Ո՞ր պահից է սկսվում նիֆասի օրերի հաշվարկը: | Այն բանից հետո, երբ պտուղը ամբողջովին դուրս է գալիս մոր արգանդից: |
| Ո՞րն է նիֆասի ամենակարճ տևողությունը: | Գոյություն չունի նիֆասի ամենակարճ ժամանակահատված: Եթե կինը ծննդաբերել է, և արյունահոսությունը ավարտվել է ծննդաբերությունից անմիջապես հետո, նա պիտի կատարի ղուսուլ և աղոթի, չսպասելով քառասուն օրվա ավարտին: |

| | |
|---|---|
| Ո՞րն է նիֆասի ամենաերկար ժամանակահատվածը: | Քառասուն օր, բայց եթե արյունահոսությունը շարունակվում է հետո էլ, ապա դրա վրա այլևս ուշադրություն չեն դարձնում, այսինքն այդ իստիհադ է, և կինը պիտի կատարի ղուսուլ և սկսի նամազ անել, եթե միայն այն չի համընկնում ամսականի սովորական ժամանակին, որը եղել էր կնոջ մոտ հղիությունից առաջ: Այս դեպքում արյունահոսությունը համարվում է ամսական: |
| Եթե կինը ծննդաբերել է երկվորյակ և եռյակ | Նիֆասի սկիզբ է հանդիսանում առաջին երեխայի լույս աշխարհ գալու պահը: |
| Վիժումից հետո տեղի ունեցող արյունահոսությունը | Եթե պտուղի տարիքը ութանասուն օր կամ պակաս է, ապա դրանից հետո արյունահոսությունը իստիհադ է: Եթե տարիքը ավելի քան իննսուն օր է, ապա այդ նիֆաս է: Իսկ եթե ութանասուն կամ իննսուն օրականի միջև է, ապա ամեն ինչ կախված է պտուղի ձևավորման տեսանկյունից: Եթե վիժված երեխան ունի մարդու տեսք, այսինքն կարելի է հասկանալ, որ այն մարդկային էմբրիոն է, ապա արյունը նրանից հետո նիֆաս է, իսկ եթե ոչ, ապա այդ իստիհադ է: |
| Եթե արյունահոսությունը ավարտվել է նիֆասի քառասուն օրվա ընթացքում, և կրկին սկսել է մինչ նրա ավարտվելը | Եթե կինը նիֆասի ժամանակահատվածում տեսնում է, որ նա մաքրվել է, ապա նա պիտի ղուսուլ անի և կատարի նամազ: Եվ եթե արյունահոսությունը կրկնվել է մինչ այդ քառասուն օրվա ավարտը, ապա կինը համարվում է նիֆասի իրավիճակում, և այդպես մինչև նրա ավարտը: |

ԾԱՆՈՒՑՈՒՄ:

✸ Կինը, որի մոտ իստիհադ է, պարտավոր է նամազ անել, բայց այդ դեպքում, նա վուդու է անում ամեն նամազից առաջ: ✸Եթե կինը մաքրվել է ամսեկանից մղրեբ աղոթքից առաջ, նա պիտի կատարի այդ օրվա դուհր և ասր նամազները: Իսկ եթե նա մաքրվել է մինչ առավոտյան նամազը, ապա նա պետք է կատարի մեղրեբ և աիշա նամազները: ✸Եթե եկել է ժամը որևէ նամազի, իսկ կնոջ մոտ սկսել է ամսեկանը կամ ետծննդյան արյունահոսությունը մինչ նա կկատարի այդ նամազը, նա պարտավոր չէ վերականգնել այդ: ✸Կինը պարտավոր է բաց արձակել մազերը ղուսուլի ժամանակ, որը նա կատարում է ամսեկանից կամ նիֆասից հետո և նա պարտավոր չէ անել այդ ղուսուլի ժամանակ, որը նա կատարում է սեռական հարաբերությունից հետո: ✸Համարվում է անցանկալի ժողովվել կնոջ մոտ, որը իստիհադայի մեջ է, սակայն այն թույլատրվում է, եթե նրա ամուսինը կարիք ունի դրա: ✸Ամսեկանի ավարտից հետո, լիակատար լվացումից հետո, կինը, որի արյունահոսությունը ոչ ամսական բնույթ է կրում, պետք է կատարի փոքր լվացում ամեն աղոթքի համար, մինչ արյունահոսության ավարտը: ✸Կնոջը թույլատրվում է ընդունել դեղեր, որոնք ժամանակավոր հետաձգում կամ հեռացնում են ամսականը: Այդ կատարվում է հաջի կամ ումրայի, կամ պահքի ավարտելու համար: Սակայն այն ունի մի պայման, այն չպիտի վնասի առողջությանը:

# ԿԻՆԸ ԻՍԼԱՄՈՒՄ

Կնոջ պարգևը և արժանապատվությունը Ալլահի դեմ ոչ պակաս է, քան տղամարդունը: Ամեն ինչ կախված է հավատքից և արարքներից: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ճշմարիտ, կանայք տղամարդկանց զարմիկներն են:» (Աբու Դաուդ) Կինը իրավունք ունի պահանջել այն, ինչ իրեն է պատկանում օրենքով, կամ հեռացնել իրեն եկող անարդարությունը, որովհետև կրոնի օրենքները տարածվում են ինչպես տղամարդկանց, այնպես էլ կանանց վրա: Բացառություն են կազմում այն բաները, որոնք վերաբերվում են միայն տղամարդկանց: Այդպիսինները շատ քիչ են, իսկ նրանց առկայությունը բացատրում է նրանով, որ Ամենաբարձրյալ Ալլահը հաշվի է առնում կնոջ և տղամարդու կառուցվածքի առանձնահատկությունները: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Միթե չգիտեք, որ Նա, Ով արարել է, և Նա Բարի է, Գիտակ:» Կանայք ունեն իրենց նախագծածը, իսկ տղամարդիկ իրենցը: Եվ եթե նրանցից յուրաքանչյուրը խառնվի մյուսի պարտավորություններին, ապա այն կարող է աղետաբեր լինել հավասարությանը և հարմոնյային, որը դրել է Ամենաբարձրյալ Ալլահը մարդկային կյանքում: Կինը ստանում է նույն պարգևը, ինչ որ տղամարդը, մնալով իր տանը: Մեկ անգամ, Ալլահի Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) մոտ եկավ Ասմե բնթ Յազիդը և ասաց. «Թող հայրս ու մայրս քեզ լինեն փրկագին: Ես կանանց դեսպանն եմ քեզ և արևմուտքի ու արևելքի ցանկացած կինը իմանար որ գալիս եմ քեզ մոտ թե ոչ, ունի նույն կարծիքը ինչ ես: Ճշմարիտ Ալլահը ուղարկել է քեզ ճշմարտությամբ տղամարդկանց ու կանանց, և մենք հավատացել ենք քեզ և Աստծոն, Ով ուղարկել է քեզ: Մենք, կանայք սահմանափակված ենք շարժման մեջ: Մենք նստում ենք տանը բավարարելով ձեր կրքերը, և կրելով ձեր երեխաներին: Իսկ դուք, տղամարդիկ առավելություն ունեցաք մեզանից, որովհետև այցելում եք ուրբաթ օրվա և պարտադիր աղոթքները, այցելում եք հիվանդներին, ուղեկցում եք մահվան թափորը, կատարում եք հաջ, հաջի ետևից: Ավելին, դուք պայքարում եք Ալլահի ճանապարհին: Եվ եթե, ձեզանից մեկը գնում է հաջ կամ ումրա, կամ գնում է հետախուզության, մենք ձեր համար պահպանում ենք ձեր ունեցվածքը, պատրաստում ենք հագուստ, դաստիարակում ենք ձեր երեխաներին: Մի՞ թե մենք չենք կիսում ձեր հետ ձեր պարգևը, Օ, Ալլահի Մարգարե:» Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) շրջվեց իր հետևորդների կողմը և ասաց. « Դու երբևէ լսե՞լ եք, որ կինը ինչ որ բան հարցնի իր կրոնում ավելի լավ, քան նա:» Նրանք ասացին. « Օ, Ալլահի Մարգարե, մենք չէինք մտածում, որ կինը ի վիճակի է այսպիսի կարծիք ունենալ:» Այդ ժամանակ Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) շրջվեց դեպի կինը և ասաց. «Գնա, Օ. Կին և հաղորդի քեզ ուղարկած կանանց, որ լավ կին լինելը և ամուսնուն գոհացնելը և նրա հետ համաձայնություն փնտրելը հավասար է այս ամենին:» Եվ կինը շրջվեց ու գնաց, մեծարելով Ալլահին և բացականչելով.«Չկա աստված, բացի Ալլահից:» (Ալ-Բայհեկի)

Մի անգամ Ալլահի Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) մոտ եկան կանայք և ասացին.

«Օ, Ալլահի Մարգարե, տղամարդիկ մեզանից առավել են, որովհետև մարտնչում են Ալլահի ճանապարհին: Իսկ կա՞ այնպիսի արարք, որը անելով մենք կարող ենք ստանալ նույն պարգևը, ինչ Ալլահի ճանապարհին մարտնչողը:» Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Կատարելով ձեր տնային պարտականությունները, դուք ստանում եք այնպիսի պարգև, ինչպիսին Ալլահի ճանապարհին մարտնչողը:» (Ալ- Բայհակի)

Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես ասաց, որ բարեկամին բարի գործ անելը առաքինի է, որի համար մեծ պարգև է ենթադրվում. «Ով ապահովել է երկու դուստր, երկու քույր կամ երկու բարեկամ, հուսալով Ամենաբարձրյալի պարգևին, այնքան ժամանակ, որքան նրանք դրա կարիքը ունեն, նրանք կհանդիսանան նրա համար Կրակից պաշտպան:» (Ահմեդ, Ատ-Տաբարինի)

## ՇԱՐԻԱԹԻ ՈՐՈՇ ՆՈՐՄԵՐ ԿԱՊՎԱԾ ԿԱՆԱՆՑ ՀԵՏ

➢ Կնոջը և տղամարդուն, որոնց միջև չկա մոտ բարեկամական կապ (մահրամ) կամ ամուսնական կապ, արգելվում է մնալ մենակ իրար հետ:[1] Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Տղամարդը չպիտի առանձնանա կնոջ հետ, եթե նա նրան մոտիկ բարեկամ չէ:» (Ալ- Բուխարի, Մուսլիմ)

➢ Կնոջը թույլատրվում է աղոթել մզկիթում, սակայն այդ անցանկալի է: Եթե կա գայթակղության հավանականություն: Աիշան, թող Ալլահը գոհանա նրանով, ասաց. «Եթե Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) տեսներ ինչի են հասել կանայք, ապա նա կարգելեր նրանց դնալ մզկիթ, ինչպես այն արգելված էր բանու Իսրայելի կանանց:» (Ալ- Բուխարի, Մուսլիմ)

Եթե տղամարդը մզկիթում աղոթքի համար ստանում է ավելի մեծ պարգև քան տանը աղոթելու համար, ապա կնոջ պարագայում այն հակառակն է: Իմամ Ահմեդը հաղորդում է. ««Մի կին եկավ Մարգարեի մոտ (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) և ասաց. «Օ, Ալլահի Մարգարե, Ճշմարիտ, ես ցանկանում եմ աղոթել քո մզկիթում քեզ հետ:» Նա ասաց. «Ես գիտեմ, որ դու ցանկանում ես աղոթել ինձ հետ, սակայն քո կողմից կատարված աղոթքը սենյակի մեկուսացված մասում ավելի լավ է քեզ համար, քան քո սենյակում կատարած աղոթքը, իսկ քո սենյակում կատարած աղոթքը ավելի լավ է քեզ համար, քան քո տանը կատարած աղոթքը, իսկ քո տանը կատարած աղոթքը քեզ համար ավելի լավ է, քան աղոթքը կատարած քո ազգի մզկիթում, իսկ աղոթքը քո ազգի մզկիթում (այսինքն քո տանը մոտիկ մզկիթում), ավելի լավ է քեզ համար, քան աղոթքը իմ մզկիթում:» Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես ասաց.« Կանանց համար լավագույն մզկիթը, նրանց տունն է: » (Ահմեդ)

➢ Կինը պարտավոր է կատարել հաջ կամ ումրա միայն այն դեպքում, եթե նա ունի մոտիկ բարեկամ (մահրամ), ով կարող է ուղեկցել նրան, որովհետև, կնոջը չի թույլատրվում ճամփորդել, առանց մոտիկ

[1] Մահրամ կնոջ համար այն տղամարդն է, որի հետ նա իրավունք չունի ամուսնանալ մինչ կյանքի վերջ: Նրանք են հայրը, պապը, նախապապը և այլն, որդին, թոռը, ծոռը և այլն, եղբայրը և նրա որդիները, քրոջ որդիները, քեռիները և հորեղբայրները, ամուսնու հայրը, պապը, նախապապը, ամուսնու որդին, թոռը և ծոռը, կաթնահայրը, եղբայրը, որդին, ինչպես նաև դստեր ամուսինը և մոր ամուսինը:

բարեկամի ուղեկցության: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Կինը չի կարող ճանապարհ գնալ, որը երեք օրից ավել է, առանց մոտիկ բարեկամի ուղեկցության:» (Ալ- Բուխարի, Մուսլիմ)

➤ Կնոջը արգելվում է հաճախ այցելել գերեզմաններ և հետևել թաղման թափորին: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ալլահը անիծել է կանանց, ովքեր հաճախ այցելում են գերեզմաններ:» Իսկ Ումմ Ատիյյան (թող Ալլահը գոհանա նրանով) ասաց. «Մեզ արգելվել էր հետևել թաղման թափորին, սակայն ոչ շատ խիստ:»

➤ Կնոջը թույլատրվում է ներկել մազերը ցանկացած գույն, սակայն սևը անցանկալի է: Բայց մի պայմանով այդ կարելի է անել,եթե այդ նպատակ չունի խաբել փեսացուին:

➤ Կինը իրավունք ունի ժառանգության բաժնի, որը որոշված է Շարիաթով, և արգելվում է նրան զրկել նրանից, ինչ հասնում է: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ով կզրկի ժառանգորդին նրա օրինական ժառանգությունից,նրան Ամենաբարձրյալ Ալլահը կզրկի դրախտային ժառանգությունից Դատաստանի Օրը:» (Իբն Մաջա)

➤ Ամուսինը պարտավոր է ապահովել կնոջը ամեն անհրաժեշտ բաներով, սննդով, ըմպելիքով, հագուստով և կացարանով ըստ սովորույթի: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Թող, ով ունի ունեցվածք, վատնի այն ըստ դրա: Իսկ նա, ով նեղված է նյութականում, թող վատնի նրանից, ինչ տվել է նրան Ալլահը:» Եթե կինը ամուսնացած չէ, ապա նրան պարտավոր են պահել հայրը, եղբայրը կամ որդին: Իսկ եթե նա չունի բարեկամներ, ցանկալի է որ նրան պահեն ուրիշ մարդիկ: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Այրու կամ աղքատի մասին հոգացողը, նման է Ալլահի ճանապարհում մարտնչողի, կամ գիշեր ու ցերեկ աղոթողի:» (Ալ- Բուխարի, Մուսլիմ)

➤ Կինը ունի ավելի շատ իրավունքներ իր փոքրիկ երեխայի դաստիարակության գործում, մինչ չի ամուսնացել կրկին: Իսկ ամուսինը պարտավոր է պահել երեխային, վճարելով կնոջը այդ նպաստը, այնքան ժամանակ, մինչ նա հոգում է երեխայի մասին և նա մոր խնամակալության տակ է:

➤ Անցանկալի է որ կինը, առաջինը ողջունի ինչ որ մեկին, մանավանդ եթե խոսքը գնում է երիտասարդ աղջկա մասին և գոյություն ունի գայթակղության հնարավորություն:

➤ Ցանկալի է, որ կինը սափրի ինտիմ մասերի և թևատակերի մազերը, ինչպես նաև կտրի եղունգները ամեն ուրբաթ: Ցանկալի չէ հետաձգել այդ գործողությունները ավելի քան քառասուն օր:

➤ Արգելվում է հանել երեսի մազերը, նաև հանել հոնքերը: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ալլահը անիծել է նրան, ով հանում է մազերը, և նրան, ով խնդրում է հանել դրանք:» (Աբու Դաուդ)

➤ **Սուգ.** Կնոջը արգելված է որևէ մեկի համար երեք օրից ավել սուգ պահել, բացի ամուսնու համար: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Թույլ մի տվեք կնոջը, ով հավատում է Ալլահին և Վերջին Օրվան, որևէ

մեկի համար սուգ պահել ավելի քան երեք օր, բացառությամբ ամուսնու, սուգը որի համար չորս ամիս և տաս օր է: » Ամուսնու համար սուգը չորս ամիս և տաս օր է: Սուգի ընթացքում նա չպիտի կրի զարդեղեն և օծանելիք, նույնիսկ մատանի, վառ, տոնական հագուստ, զարդարի իրեն հինայով: Նա չպիտի օգտագործի դիմահարդարում, սուրմա կամ բուրավետ յուղեր: Նրան թույլատրելի է կտրել եղունգները հանել մազերը և լվացվել: Նա պարտավորված չէ կրել հագուստ որոշակի գույնի, օրինակ սև: Իր իղդան, նա պարտավոր է անցկացնել տանը, որտեղ նա բնակվել է ամուսնու մահվանից առաջ և նրան արգելվում է մեկնել ուրիշ վայր առանց անհրաժեշտության: Նա պիտի տանից դուրս գա միայն անհրաժեշտության դեպքում և միայն ցերեկը:

- Կնոջը արգելվում է սափրել գլուխը առանց կարիքի, սակայն թույլատրվում է կարճացնել մազերը պայմանով, որ նա չի նմանվի տղամարդու: Ալլահի Մարգարեն (Մալլալլահու ալեյհի ուա սալլամ) անիծեց կանանց, ովքեր նմանվում են տղամարդու, ինչպես հաղորդում է ատ-Տիրմիզին: Մուսուլման կանայք, նույնպես, չպիտի նմանակեն անհավատ կանանց, քանի որ Ալլահի Մարգարեն (Մալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Ով նմանակում է ինչ որ մարդկանց, նա ինքը նրանցից է:» (Աբու Դաուդ)

Տանից դուրս գալուց, կամ օտար տղամարդկանց ներկայությամբ, կինը պարտավոր է ծածկել մարմինը հագուստով, որը պիտի համապատասխանի հետևյալ պայմաններին. 1) Այն պիտի ծածկի ամբողջ մարմինը: 2) Ինքնին հագուստը չպիտի լինի զարդարանք: 3) Այն պիտի լինի բավական ամուր և չպիտի թափանցի: 4) Այն պիտի լինի բավական լայն և չպիտի ցուցադրի մամինը: 5) Հագուստից չպիտի որևէ բուրմունք գա: 6) Հագուստը չպիտի նմանվի տղամարդու հագուստի: 7) Հագուստը չպիտի նմանվի անհավատ կնոջ հագուստին: 8) Հագուստը չպիտի ուշադրություն գրավի: Միևնույն ժամանակ արգելվում է կրել հագուստ մարդու կամ կենդանու պատկերով: Այսպիսի հագուստը չի կարելի կախել տեսանելի մասում, ծածկել նրանով պատը և վաճառել:

ԿՆՈՋ ԱՈՒՐԱՆ ՄՅՈՒՍ ՄԱՐԴԿԱՆՑ ՆԿԱՏՄԱՄԲ ԲԱԺԱՆՎՈՒՄ Է ԵՐԵՔ ԴԱՍԱԿԱՐԳԵՐԻ: 1. Ամուսնու առջև, նրանց միջև չկա աուրա, այսինքն նրանք կարող են տեսնել միմյանց մարմինները ամբողջովին:

2. Կանայք և մոտիկ բարեկամները, նրանք կարող են տեսնել մարմնի այն մասերը, որոնք սովորաբար երևում են: Դրանք են դեմքը, մազերը, պարանոցը, ձեռքերը, ուսերը, ոտքի կոճերը և այլն:

3. Մնացած տղամարդկանց առջև, նրանք չպիտի տեսնեն մարմնի որևէ մաս, բացառությամբ անհրաժեշտ դեպքերի: Այդ դեպքերից են նշանադրությունը[1], բուժումը և այլն, որովհետև ամենամեծ գայթակղությունը կնոջ, նրա երեսն է: Ֆաթմա բնթ ալ- Մունզիրը ասաց. «Մենք ծածկում էինք մեր երեսները տղամարդկանցից» (Ալ- Հակիմ) Աիշան,

[1] Փեսացուն իրավունք ունի տեսնել հարսնացույի դեմքը և ձեռքերը :

(թող Ալլահը օրհնի նրան), հաղորդում է. « Երբ մենք գտնվում էինք իհրամի վիճակում Ալլահի Մարգարեի հետ, մեր կողքով անցնում էին հեծյալներ, և երբ նրանք մոտենում էին մեզ, մենք ծածկում էինք մեր երեսները, իսկ երբ նրանք հեռանում էին, մենք կրկին բացում էինք մեր երեսները:» (Աբու Դաուդ)

➢ ԻԴԴԱ, այսինքն ժամանակահատվածը ամուսնու մահից կամ ամուսնալուծությունից հետո, որի ժամանակ կինը իրավունք չունի կրկին ամուսնանալ, կածված է կնոջ դիրքից: 1) Հղի կնոջ, ամուսնալուծվածի, այրու իդդան ավարտվում է, երբ նա ավարտում է բեռը: 2) Այրու իդդան, կազմում է չորս ամիս և տաս օր: 3) Ամուսնալուծվածի իդդան, ով ունի ամսական կազմում է երեք ամսական ցիկլ: Այսինքն իդդան ավարտվում է այն ժամանակ, երբ սկսում է մաքրման ժամանակահատվածը երրորդ ամսականից հետո: 4) Ամուսնալուծվածի իդդան, ով չունի ամսական, կազմում է երեք ամիս: Կինը իդդայի ընթացքում պարտավոր է մնալ ամուսնու հետ մինչ դրա ավարտը, և նա կարող է նայել նրան,այնպես ինչպես անում էր ամուսնալուծությունից առաջ և առանձնանալ նրա հետ: Միգուցե նրանց հարաբերությունները կվերականգնվեն և ամուսնական կյանքը կվերադառնա նորմալ հուն: Այդ ժամանակաընթացքում կնոջը վերադարձնելը չի պահանջում նրա համաձայնությունը: Վերադարձնելու համար բավարար է ասել. «Ես վերադարձրել եմ քեզ» կամ ունենալ սեռական հարաբերություն:

➢ Կինը չի կարող ինքն իրեն ամուսնացնել: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Յանկացած կնոջ ամուսնությունը, ով ամուսնացել է առանց խնամակալի համաձայնության,անվավեր է:» (Աբու Դաուդ)

➢ Կնոջը արգելվում է սերտաճեցնել մազեր, ամրացնելով ուրիշ մազեր, ինչպես նաև անել դաջվածք մարմնի վրա:Այս արարքները համարվում են ծանր մեղքեր: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ալլահը անիծել է նրան, ով ամրացնում է ուրիշ մազեր և նրան, ով խնդրում է անել այդ, ինչպես նաև նրան, ով անում է դաջվածքներ և նրան, ով խնդրում է անել այդ:» (Ալ- Բուխարի, Մուսլիմ)

➢ Կնոջը արգելվում է խնդրել ամուսնուց ամուսնալուծություն, առանց հարգալի պատճառի: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Յանկացած կին, ով կխնդրի ամուսնուց ամուսնալուծություն առանց հարգալից պատճառի, չի զգա Դրախտի բույրը:» (Աբու Դաուդ)

➢ Կինը պարտավոր է ենթարկվել ամուսնուն սովորաբար, մանավանդ եթե նա կանչում է նրան ամուսնական առագաստ: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Եթե տղամարդը կանչեց կնոջը անկողին և նա մերժեց գալ և տղամարդը գնաց քնելու բարկացած, ապա հրեշտակները կանիծեն կնոջը մինչ առավոտ:» (Ալ- Բուխարի, Մուսլիմ)

➢ Կնոջը արգելվում է օծվել օծանելիքով, եթե նա գիտի, որ պիտի անցնի օտար տղամարդկանց մոտով կամ գտնվի նրանց շրջապատում: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Եթե կինը օծել է իրեն բույրով, իսկ հետո անցել է ինչ որ մարդկանց մոտով, որպեսզի նրանք զգան նրանից եկող բույրը, ապա նա այսպիսին և այսպիսին է, այսինքն անառակ:» (Աբու Դաուդ)

# ՍԱԼԱՀ (ՆԱՄԱԶ)

Կանչ աղոթքի (ազան)[1] և կանչ աղոթքից անմիջապես առաջ (իկամա)[2], ֆարդ կիֆայա[3] տղամարդկանց համար, եթե միայն նրանք ճանապարհորդներ չեն և սուննա ճանապարհորդի և միայնակ նամազ անողի և անցանկալին (մակրուհ) կնոջ համար:Եվ նրանց արտաբերումը մինչ նամազի սկսելու սկիզբը անվավեր է, բացառությամբ առավոտյան նամազի առաջին ազանի: Այն կարելի է արտաբերել, սկսած գիշերվա երկրորդ կեսից:[4]

ՆԱՄԱԶԻ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ,

**1.** Իսլամ, մարդ պիտի լինի մուսուլման; **2.** Գիտակցություն, մարդը չպիտի տառապի խելացնորությամբ; **3.** Ունակություն տարբերել լավը վատից, թույլատրելին անթույլատրելիից և այլն: Նա պիտի հասնի հասկացության որոշակի աստիճանի: Սովորաբար այդ տեղի է ունենում յոթ տարեկանում; **4.** Հնարավորության դեպքում ծիսական մաքրություն; **5.** Ժամանակի սկսելը: Կեսօրվա աղոթքի ժամանակը, դըհր, սկսվում է այն ժամանակից, երբ արևը սկսում է թեքվել արևմուտք, այսինքն կանցնի զենիթի կետից և մինչ այն ժամանակ երբ ամեն առարկայի ստվերը չի սկսի հավասարվել այդ առարկային երկարությամբ: Եռկեսօրվա նամազի ժամանակը, ասր, այն է, երբ ավարտվում է կեսօրցա նամազը և մինչ այն պահը, երբ առարկայի ստվերը կդառնա կրկնակի երկար առարկայից, գերադասելի ժամանակ[5] և մինչ արևի մայր մտնելը: Այնուհետև սկսվում է երեկոյան աղոթքի ժամանակը, մղրեբ: Այն ձգվում է մինչև երեկոյան արևի

---

[1] Ազանը աղոթքի կոչ է, որը բաղկացած է
1. «Ալլահու Աքբար», Ալլահը Մեծ է, խոսքերի չորս անգամ կրկնությամբ :
2. «Աշհեդու լեիլեհե իլԱլլահ» խոսքերի երկակի կրկնությամբ :
3. Աշհեդու ընը Մուհամեդուն ռասուլ ուլլահ «խոսքերի երկակի կրկնությամբ :»
4. « Հայա ալ Սալահ» խոսքերի կրկնակի արտաբերմամբ, որը նշանակում է շտապեք աղոթքի:
5. «Հայա ալ ֆելեհ« խոսքերի երկակի արտաբերմամբ, որը նշանակում է, շտապեք փրկության:
6. Իկամեյի ժամանակ ՙՙԱլլահու Աքբարՙՙ խոսքերի երկակի արտաբերումը մնում է ինչպես կա:
7. «Լե իլեհե իլ Ալլահ» խոսքերի արտաբերումը մեկ անգամ :
8. Բացի դրանից առավոտյան աղոթքից առաջ, «շտապեք փրկության» խոսքերից առաջ արտաբերվում է «Աս սալաթ խեյրուն մին ան նոում» խոսքերը, որը նշանակում է աղոթքը քնից լավ է :

[2] Իկաման աղոթքի սկզբի հայտարարումն է: Իկամը կարդացվում է մուազինի կողմից մզկիթում, անմիջապես աղոթքից առաջ, հավաքվածների մեջ: Իկաման ձևով նման է ազանին, եթե հաշվի չառնենք այն, որ այն երկու անգամ կարճ է, քանի որ այն ամենը ինչ ազանի ժամանակ արտաբերվում է չորս անգամ, այստեղ արտաբերվում է երկու անգամ, իսկ ազանի ժամանակ արտաբերվածը կրկնվում է մեկ անգամ: Եվս մեկ տարբերություն կայանում է նրանում, որ «Հայալ ել ֆելեհ» խոսքերից հետո, իկամայի ժամանակ երկակի անգամ կրկնվում է «Կադ կամատի սալեհ», աղոթքը սկսվեց, խոսքերը:

[3] Ֆարդ կիֆայա, գործողությունների տեսակ է, որոնք պարտադիր են մուսուլման ումմայի համար, բայց այն պարտադիր չէ ամեն մուսուլմանի համար: Եթե այն կատարում են ոմանք ումմայից, ապա այդ հանում է ամբողջ ումմայի մեղքը, իսկ եթե այն ոչ ոք չի կատարում, մեղքը ընկնում է ամբողջ ումմայի վրա:

[4] Գիշերը համարվում է արևամուտքից մինչ արևածագ ժամանակահատվածը:

[5] Այս ժամանակ, մարդ կարող է ազատ կատարել նամազ : Իսկ դրանից հետո եկող ժամանակ, որը շարունակվում է մինչ արևի մայր մտնելը, այն ժամանակն է, երբ մարդ կարող է կարդալ տվյալ նամազը, բայց միևնույն ժամանակ անցանկալի է, հետաձգել այն մինչ այդ առանց լուրջ պատճառների :

անհայտանալը: Դրան հաջորդում է գիշերվա նամազը, իշա, ցանկալի ժամանակն է մինչ գիշերվա կեսը, իսկ հետո անհրաժեշտության դեպքում մինչ արևածագ: դրանից հետո սկսվում է առավոտյան նամազի, ֆջրի ժամանակը, արևածագից մինչ արևի դուրս գալը:

6. Աուրայի[1] ծածկումը, հնարավորության դեպքում ինչ որ բանով, որի միջով չի երևում մաշկը: Տղամարդու աուրան, ով հասել է հասունացման, պորտի և ծնկների շրջանն է, իսկ ազատ կնոջինը, ով հասել է հասունության, աուրա է ամբողջ մարմինը, բացի երեսից և ձեռքի դաստակներից:

7. Խուսափել որևէ անմաքուր բանից, որը կընկնի մարմնի վրա, հագուստի և վայրի, որտեղ մարդ նամազ է անում:

8. Քիբլայի ուղղության շրջվելը, եթե դա հնարավոր է: 9. Մտադրություն:

## ՆԱՄԱԶԻ ԺԱՄԱՆԱԿ ԿԱՏԱՐՎՈՂ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ՌՈՒԿՆ)

1. Կանգնելը, եթե հնարավոր է, պարտադիր նամազի կատարման ժամանակ; 2. նամազը բացող տակբիրը[2] (տակբիրատուլ _իհրամ); 3. Սուրա «Ալ_Ֆետիհա»_յի կարդալը; 4. Գոտկատեղի կքանիստ (ռուկու), նամազի ամեն ռակատում; 5. Բարձրացումը, դրանից հետո ուղղվելը; 6. մինչև վերջ ուղղվելը գոտկատեղային կքանիստից և կարճ կանգնելուց հետո; 7.երկրային կքանիստ, որի հիմք են հանդիսանում մարմնի յոթ մասեր, երեսը, ճակատը և քիթը, ձեռքի ափերը, ծնկները և ոտքի մատերը; 8. երկու երկրային կքանիստների միջև նստելը; 9. Վերջին տաշահուդը; 10. դրա արտաբերման ժամանակ նստելը; 11. Մարգարեի (*Սալլալահու ալեյհի ուա սալլամ*) համար աղոթքը վերջին տաշահուդի ժամանակ; 12. տասլիմ[3]; 13. բոլոր գործողությունների կատարման հանգստությունը և հավասարակշռվածությունը; 14.Կատարվող գործողությունների հերթականության հետևելը:

**Նամազը կլինի վավերական, միայն այս բոլոր պայմանները կատարելուց հետո և ռակատը համարվում է անվավեր, եթե մարդ խախտում է դրանցից մեկը անուշադրության պատճառով և ամբողջ աղոթքը դառնում ա անվավեր, եթե մարդ դիտմամբ է խախտել այդ գործողություններից մեկը:**

---

[1] Աուրան մարդու ամոթալի մասերն են և խոցելիները : Տղայի աուրան, ով յոթ տարեկան է, սեռական օրգանները և կոնքերն են, իսկ տաս տարեկանից, պորտից մինչև ծնկները: Ազատ, հասունության հասած կինը, պետք է ծածկի ողջ մարմինը, բացի երեսից: Աղոթքի ժամանակ երեսը ծածկելը անցանկալի է: Եթե նա աղոթել է կամ շրջայց է կատարել Քաաբայի շուրջ և միևնույն ժամանակ նրա մարմնի որևէ մաս բաց է եղել, ապա նրա երկրպագումը անվավեր է : Այս հադիթը ապացույց է հանդիսանում նրա, որ աուրան, ամոթալի մասերը, պիտի ծածկվեն ոչ միայն աղոթքի ժամանակ : Առանց անհրաժեշտության դրանք բացելը անցանկալի է, նույնիսկ մթության մեջ և երբ մարդ մենակ է: Սակայն թույլատրվում է բացել աուրան ամուսնու առջև, ինչպես նաև բուժման և թլպատման ժամանակ:

[2] Տակբիրը ՛՛Ալլահու Աքբար՛՛ խոսքերի արտաբերումն է, որը նշանակում է Ալլահը Մեծ է: Նրա իմաստն է, որ ոչ ոք և ոչինչ չունի ավելի շատ մեծություն, քան Ալլահը :

[3] Տասլիմը ՛՛աս-սալամ ալեյքում ուա ռահմատուլահ՛՛ բառերի արտաբերումն է ամեն նամազից հետո :

## ՆԱՄԱԶՈՒՄ ՊԱՐՏԱԴԻՐ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ՌՈՒԱՋԵԲ)

1. Բոլոր տակբիրները, բացի բացման տակբիրից;
2. «Սամի լեհու լիման համիդահ» խոսքերը իմամի և միայնակ նամազ անող մարդու համար, որը նշանակում է, թող Ալլահը լսի նրան, ով Նրան մեծարում է:
3. Գոտկատեղային կքանստումից ուղղվելուց հետո «Ռաբբանա ուա լեկաել համդ, բառերը, որը նշանակում է Տեր մեր Քեզ փառք;»
4. Գոտկատեղային կքանստումի ժամանակ կրկնումը մեկ անգամ «Սուբհանա Ռաբբիյա ել Ազիմ», որը նշանակում է Փառահեղ է Տերը իմ և Հզոր;
5. Մեկ անգամ գետնային կքանիստի ժամանակ « Սուբհանա Ռաբբիյա ալԱելե» խոսքերը, որը նշանակում է իմ Տերը Ամենաբարձրյալն է;
6. Երկու երկրային կքանիստների միջև «Ռաբբի ղֆիր լի» խոսքերը, որը նշանակում է իմ Տեր ներիր ինձ;
7. Առաջին տաշահուդը; 8. Տաշահուդի արտաբերման համար նստելը:
Եթե մարդ այս գործողություններից մեկը թողել է դիտմամբ, նրա նամազը դառնում է անվավեր, եթե նա այդ անում է անուշադրությունից ելնելով, նա պիտի կատարի եչկու գետնային կքանիստ, սուջուդ ս սահֆ:

### ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ և ԽՈՍՔԵՐ, ՈՐՈՆՔ ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ ԵՆ ՑԱՆԿԱԼԻ ՍՈՒՆՆԱ.

**Եթե մարդ թողնում է դրանցից որևէ մեկը, նույնիսկ դիտավորյալ, նրա նամազը չի դառնում անվավեր:**

1. ԽՈՍՔԵՐ. Բացող դուա (դուա իստիֆտահ), որոնք են. «Աուդուբիլեհի մինաշ շեյտանիռ ռեջիմ, բիսմիլեհի ռահմեն ռահիմ»[1], ինչպես նաև «Ամեն» բառը և նրա բարձրաձայն արտաբերումը նամազների ժամանակ, որոնցում սուրաները կարդացվում են բարձրաձայն և այն բանի կարդալը, որը մարդու համար դժվար չէ Ղուրանից, «Ալ –Ֆատիհա»-ից հետո: Նաև իմամի կամ միայնակ նամազ անողի համար կարդալ բարձրաձայն «Համդան քաթիրան տայյիբան մուբարական ֆիհի միլյուս-սամաուատի ուա միլյուս ել առդ..»[2] խոսքերը, «Ռաբբանա ուա լյաքա ել համդ» խոսքերից հետո, որը նշանակում է «Տեր մեր, Քեզ փառք:» Արտաբերվում է նաև Ալլահի փառաբանող խոսքեր գոտկատեղային և երկրային կքանիստի ժամանակ և «Ռբբին ղֆիր լի» խոսքերը ավելի քան մեկ անգամ: Ինչպես նաև պետք է դուա «Ասսալամ ալեյքում ուա ռահմատուլահ» խոսքերից առաջ:
2. ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ. ձեռքերի բարձրացնելը բացող տակբիրի ժամանակ, ինչպես նաև գոտկատեղային կքանիստից առաջ, դրա ուղղվելուց հետո և առաջին տաշշահուդից ելնելուց հետո: Աջ ձեռքի դնելը ձախին կրծքի տակ,կանգնելու ժամանակ: Հայացքը պիտի լինի գետնային կքանիստի վայրի վրա, և տարածություն ոտքերի միջև: Երկրային

---

[1] «Փնտրում եմ պաշտպանություն Ալլահից, անիծված Շեյթանից.. Ալլահի անունով Ամենագթասիրտ և Ամենաներող :»
[2] «Փառք ամենին, բարիքին և պտղաբերին, որը լցնում է երկիրն ու երկինքը ...»

կքանիստը պիտի լինի հետևյալ ձևով. Սկզբում ծնկները, հետո ձեռքերը հետո ճակատը և քիթը: Պետք է առանձնացնել ուսերը կողքերից, փորը կոնքերից և կոնքերը ոտքի թաթերից: Պիտի թողնել տարածություն ծնկների միջև, և ոտնաթաթերը դնել այնպես, որ նրանք չկպնեն և միևնույն ժամանակ ոտքի մատները հենվեն գետնին: Ձեռքերի դաստակները պիտի լինեն ուսերի դիմաց, բաց ափերով և միացած մատներով: Ոտքի կանգնելուց հենքը պիտի լինի ոտնաթաթերի կենտրոնական մասում, և ձեռքերը հենքը ծնկներին: Առաջին տաշահուդի ժամանակ, երկու գետնային կքանիստների միջև, ոտնաթաթերը պիտի խաչվեն և երկրորդ տաշահուդի ժամանակ, ոտքի կանգնելուց,ձախ ոտնաթաթը և աջը պիտի հենվի ոտքի մատներին: Երկու երկրային կքանիստի միջև ինչպես նաև տաշահուդի ժամանակ ձեռքերը պիտի լինեն կոնքերի վրա դիմացից, մատները պիտի լինեն միացված,իսկ դաստակներըուղիղ: Այս դեպքում պիտի մեծ և միջնամատը միացնել օղակի ձևով և ծալել ճկույթը և մատնեմատը: Ցուցամատը ուղղել տաշահուդ կարդալու սկզբից մինչև վերջ:Հետո պիտի թեքել գլուխը սկզբում աջ, հետո ձախ ասելով «Ասսալամ ալեյքում ուա ռահիմատուլահ» խոսքերը:

ԵՐԿՐԱՅԻՆ ԿՔԱՆԻՍՏԸ, ՈՐԸ ԿԱՏԱՐՎՈՒՄ Է ԱՆՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԵՏևԱՆՔՈՎ ԿԱՏԱՐՎԱԾ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ. Այն հանդիսանում է ցանկալի, եթե մարդ ասել է պատեհ բառը, ոչ տեղին, այնպես, ինչպես օրինակ սկսել է կարդալ Ղուրան սուջուդի ժամանակ: Այն նաև թույլատրելի է, եթե մարդ թողել է որևէ բան նրանից, որը հանդիսանում է սուննա: Այն համարվում է պարտադիր, եթե աղոթողը կատարել է ավելորդ գոտկատեղային կամ երկրային կքանիստ, կանգնելը կամ նստելը կամ ասել է. «Ասսալամ ալեյքում, ուառահիմատուլահ» մինչ նամազի ավարտը, կամ եթե սխալ բան է կարդացել, որի արդյունքում փոխվել է խոսքի իմաստը, կամ թողել է որևէ բան պարտադիրից, ուաջաբից, կամ նրան թվացել է, որ նա ավելորդություն է թույլ տվել նամազի ժամանակ:Նամազը դառնում է անվավեր, եթե աղոթողը դիտավորյալ թողել է սուջուդ ս սահվը: Այս սուջուդը իրենից ներկայացնում է երկու երկրային կքանիստ և դրանք կարելի է անել մինչ «Աս սալամ ալեյքում ուա ռահիմատուլահ» խոսքերը կամ նրանցից հետո: Եթե մարդը մոռացել է անել այդ և երկար ժամանակ է անցել, կատարման պարտավորրվածությունը հանվում է աղոթողից:

ՆԱՄԱԶԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ. Ցանկանալով կատարել նամազ, մուսուլմանը թեքվում է Քաբբայի ուղղությամբ, արտաբերելով «Ալլահու Աքբար» խոսքերը: Իմամը արտաբերում է այս բացող տակբիրը և մնացած տակբիրները բարձրաձայն, որ ետևում գտնվողները լսեն: Միևնույն ժամանակ, նա բարձրացնում է ձեռքերը ուսերին հավասար, որից հետո դնում է աջ դաստակը ձախին, բռնում է դրանք և դնում է կրծքի տակ: Հայացքի պիտի լինի այն վայրին որտեղ նա պիտի կատարի երկրային

կքանիստ: Հետո նա ինքն իրեն կարդում է բացող դուա, դրանցից, որոնք կատարվում են Սուննայի ժամանակ: Օրինակ. «ՍուբհանակաԼյահումա ուա բիհամդիկա ուա տակբարակա ս սմուկա, ուա տաալա ջադուկա ուալաիլահա հայրուկա»[1], ինչպես նաև ասում է. «Աուզուբիլեհի մինաշեյտանռռաջիմ» և «Բիսմիլեհիռահմեն ռահիմ», կրկին իր մեջ: Հետո, նա կարդում է սուրա «Ալ-Ֆետիհա», և մարդը, ով աղոթում է իմամի ետևից, ցանկալի է, կարդալ այդ իմամի լռության ժամանակ և միևնույն ժամանակ, երբ նա ոչինչ բարձրաձայն չի կարդում այդ նամազների ժամանակ, որտեղ սուրաները կարդացվում են բարձրաձայն: Իսկ նամազներում, որտեղ սուրաները կարդացվում են անձայն, նա պարտավոր է կարդալ այդ: Բացի դրանից, նա կարդում է այն, ինչ նրան դժվար չէ Ղուրանից: Առավոտյան նամազի ժամանակ, ցանկալի է կարդալ որևէ բան 50 –ից մինչ 78 սուրաներից որևէ բան, մեղրեբ նամազում 93 –ից մինչ 114, իսկ մնացած նամազներում 78- ից մինչև 93: Առավոտյան նամազում իմամը կարդում է բոլոր սուրաները բարձրաձայն, իսկ մեղրեբ ու իշա նամազներում միայն առաջին երկու ռակատում: Մնացյալը կարդացվում է անձայն: Դրանից հետո աղոթողը ասում է. «Ալլահու Աքբար», բարձրացնելով ձեռքերը ինչպես բացող տակբիրում և կատարում է գոտկատեղային կքանիստ դնելով ձեռքերը բաց մատներով ծնկներին և ուղղելով մեջքը այնպես, որը գլուխը գտնվի նրա հետ նույն գծի վրա: Հետո նա ասում է. «ՍուբհանաՌաբբիյաալ Ազիմ» երեք անգամ և բարձրացնում է գլուխը «Սամիլահու լիման համիդի» խոսքերով: Այնուհետև բարձրացնում է ձեռքերը ինչպես բացող տակբիրում, ուղղվում է և ասում է. «Ռաբբանա ուա լկալ համդու համդան կաթիրան տայյիբուն, մուբարական ֆիհի միլլուսսամաուատ ուա միլյուարդի ուա միլյու մա շիտա մին շեյին բաղ:» Որից հետո նա կատարում է երկրային կքանիստ, ասելով «Ալլահու Աքբար» խոսքերը, հեռացնելով ուսերը կոնքերից և փորը նույնպես, այնպես, որ ձեռքի դաստակները լինեն ուսերի դիմաց, իսկ ձեռքի և ոտքի մատները ուղղվեն Քաաբայի ուղղությամբ: Հետո նա ասում է «Սուբհանա Ռաբբիյա Ալա» երեք անգամ, դրանից հետո նա կարող է ավելացնել որևէ դուա, կամ խոսք, որը հիշատակում է Ալլահին: Դրանից հետո նա բարձրացնում է գլուխը «Ալլահու Աքբար» խոսքերով, նստում է ձախ ոտքի փռված թաթին և դնում է աջը այնպես, որ մատները ուղղված լինեն Քաաբայի ուղղությամբ, կամ դնում է այդպես երկու ոտնաթաթերն, նստում է դրանց վրա և ասում է. «Ռաբբի ղաֆիր լի» երկու անգամ: Նա կարող է նաև ավելացնել. «...ուառահմենի ուաջբուրնի ուարֆա նի ուառզուկնի ուանսուրնի ուահդինի

---

[1] «Փառաբանված ես Դու, օ, Ալլահ, և փառք Քեզ, օրհնյալ է Անունը Քո, ամենից մեծ է Քո մեծությունը, և չկա աստված բացի Քեզանից :»

ուա աֆինի ուա ֆու աննի:»[1] Հետո աղոթողը կատարում է երկրորդ երկրային կքանիստը, այնպիսին, ինչպիսին առաջինն է, որից հետո բարձրացնում է գլուխը «Ալլահու Աքբար» խոսքերով և վեր է կենում, հենվելով ոտնաթաթերի կենտրոնական մասին և կատարում է երկրորդ նույնանման գործողությունների միություն, ռակաթ: Ավարտելով այն, նա մնում է նստած, կատարելով տաշշահուդ, ժամանակ, ձախ ոտնաթաթը փռված է իֆտիրաշ և ձախ ձեռքը նա դնում է ձախ կոնքին, իսկ աջը աջին, սեղմում է ցուցամատը և ճկույթը և միացնում է մեծ մատը մատնեմատի հետ օղակի ձևով, և ցուցամատով ցույց տալով, նա ասում է. «Ատ-տայյատու լիլլեհի ուա սսալաուատու, ուա-տայիբատու, աս-սալամ ալեյքում այյուհաննաբիյհուն, ուա ռահմատուհու, աս սալամ ալեյնա ուա ալաիբադիլեհի սսալիհուն: Աշշահդու ալլա իլեհե իլԱլլահ, ուա աշշհադու ընը Մուհամեդան աբդուհու ուա ռասուլուհու:»[2] Հետո նա ոտքի է կանգնում, եթե նամազը երեք կամ չորս ռակատ է, նա արտաբերում է «Ալլահու Աքբար» և բարձրացնում է այդ ժամանակ ձեռքերը: Նույնպես նա կատարում է մնացած ռակատները, ոչինչ չասելով բարձրաձայն, և կարդում է միայն « Ալ-Ֆատիհա », հետո նստում է վերջին տաշահուդի համար, տարածելով ձախ ոտնաթաթը և դուրս է հանում աջ կոնքի տակից և դնում է աջ ոտնաթաթը հորիզոնական դիրքով, այնպես որ մատները ուղղված լինեն Քիբլայի ուղղությամբ, նստած լինելով գետնին: Այսպիսի դիրք ունի աղոթողը նամազում, որը ունի երկու տաշշահուդ: Հետո նա արտաբերում է այն, ինչ կոչվում է առաջին տաշշահուդ, որից հետո ասում է «Ալլահումա սալլի ալա Մուհամմադին ուա ալե ալի Մուհամմադին քամա սալլայտա ալե Իբրահիմ ուա ալլա ալի Իբրահիմա իննակա Համիդուն Մաջիդ, Ալլահումա բարեք ալա Մուհամմադին ուա ալե ալի Մուհամմադին կամա բարակտա ալա Իբրահիմա ուա ալա ալի Իբրահիմա, իննակա Համիդուն Մաջիդ:»[3] Սուննա է համարվում նաև « Ալլահումա իննա աուզու բիկա մին ազաբիլ կաբրի ուա մին ազաբին նառի, ուա մին ֆիտնաթի ել մահյա ուա լա մամատի ուա մին ֆիտնատի ել մասիհիդ դաղջալ»[4]: Եվ ուրիշներ, որոնք փոխանցված են Մարգարեյից: Որից հետո

1 «... և ներիր ինձ և գթա ինձ և բարձրացրու ինձ և նվիրիր ինձ ճակատագիր և օգնիր ինձ և տար ինձ ուղիղ ճանապարհով, և նվիրիր ինձ բարեկեցություն և նվիրիր ինձ թողություն:»

2 «Ողջույն Ալլահին և աղոթքներ ու լավագույն խոսքերը, խաղաղությունը քեզ, օ, Մարգարե և Ալլահի գութը և օրհնությունը, խաղաղություն մեզ Ալլահի ստրուկներին: Վկայում եմ, որ չկա աստված բացի Ալլահից, և վկայում եմ, որ Մուհամեդը Նրա ստրուկն ու առաքյալն է :»

3 «Օ, Ալլահ, օրհնիր Մուհամեդին և նրա ընտանիքը, ինչպես օրհնել ես Դու Իբրահիմին և Իբրահիմի ընտանիքը, Ճշմարիտ, Դու Արժանի ես գովասանքի, Փառավոր: Օ, Ալլահ ուղարկիր օրհնություն Մուհամեդին և ընտանիքին Մուհամեդի, ինչպես ուղարկել ես Դու Իբրահիմին և ընտանիքին Իբրահիմի, Ճշմարիտ, Դու Արժանի ես գովասանքի, Փառահեղ:»

4 «Օ, Ալլահ, Ճշմարիտ, ես գալիս եմ Քեզ մոտ Դժոխքի և գերեզմանի տանջանքներից պաշտպանվելու, կյանքի գայթակղություններից և մահից և ադ-Դաջալի չարիքի գայթակղություններից :»

նա արտաբերում է «Աս սալամ ալեյքում ուա ռահմատուլլեհ » խոսքերը, և թեքում է գլուխը աջ, հետո անում է նույնը թեքելով գլուխը ձախ: Սուննա է հանդիսանում համապատասխան դուայի արտաբերումը դրանից հետո:[1]

ՀԻՎԱՆԴԻ ՆԱՄԱԶԸ. Եթե կանգնած վիճակում նամազը վատթարացնում է նրա վիճակը, կամ նա ի վիճակի չէ կանգնել, նա աղոթում է նստած: եթե այդ էլ նրա ուժերից վեր է, նա աղոթում է պառկած կողքի վրա: Եթե այդ դժվար է նրա համար, ապա նա աղոթում է մեջքի վրա պառկած: Եթե նա չի կարող կատարել երկրային և գոտկատեղային կքանստումները, բավարար է գլխով նշան անել կամ փակել կոպերը: Ամեն դեպքում հիվանդը չպիտի բաց թողնի աղոթքը: Եվ նա պիտի լրացնի բոլոր բաց թողած նամազները: Եթե նրան դժվար է կատարել ամեն նամազ ժամանակին, նա կարող է միացնել կեսօրվա նամազը ետկեսօրյա նամազի հետ, կատարելով դրանք միասին: Ինչպես նաև երեկոյան աղոթքը գիշերվա աղոթքի հետ:

ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴԻ ՆԱՄԱԶԸ. Եթե նրա անցած տարածությունը ավելի քան 85 կիլոմետր է և այդ ճանապարհորդությունը չունի արգելված նպատակներ, ապա նա կարճեցնում է նամազը չորս ռակյաթից երկուսի: Եթե նա պատրաստվում է կանգ առնել որևէ վայրում ավելի քան չորս օր, ապա այդ

[1] Հենց պիտի ասել «Աստախֆիրուլլահ», որը նշանակում է խնդրում եմ թողություն Ալլահից երեք անգամ, որից հետո ասել . «Ալլահումա, Անտասսալամ ուա մինկա ասալամ տաբարակա յազալ ջալալի ուալ իկրամ, լաիլեհե իլլալահու ուահդահու լա շարիկա լեհու, լեհու ել մուլքու ուա լեհուել համդու ուա հուֆա ալա կուպլի շեյին կադիր: Լե հաուլա ուա լա քուվատա իլլա բիլեհիհ, լա իլեհե իլլեհու լա նա բուդու իլլա յահու, լեհուննի մատու ուա լահուլֆադլու ուա լեհու սաանաու ելհասան: Լե իլեհե իլլահու մուխլիսինա լահուդդինա, ուա լաու կարիհալ քեֆիրուն: Ալլահումա լամանի ա լիմա ատայտա ուա լա մուտի լիմա մանատա ուա յանֆաու, զալջադի մինկել ջադ,որը նշանակում է Օ, Ալլահ, Դու Աշխարհ ես և Քեզանից է աշխարհը, օրհնյալ ես Դու,Օ մեծության և պատվի տիրակալ: Չկա աստված, բացի միայն Ալլահից, Ով չունի զուգընկեր, Նրան է պատկանում Տիրակալությունը, Նրան փառք և Նա Ամենազորն է: Ոչ ոք չունի ուժ կամ հզորություն, բացի Ալլահից : Չկա աստված, բացի Ալլահից և մենք չենք երկրպագում որևէ մեկին բացի նրանից: Նրան է պատկանում գութը և բարիքը և Նրանն է գեղեցիկ մեծարումը: Չկա աստված, բացի Ալլահից, և մենք ուղղում ենք հավատքը միայն Նրան, նույնիսկ եթե այն ատելի է անհավատներին: Օ, Ալլահ, ոչ ոք չի զրկի այն բանից, ինչ դու պարգևել ես, ր ոչ ոք չի պարգևի այն ինչից Դու զրկել ես և Քո առջև կլինի անճզուտ հզորույունը, ով ունի հզորություն:» Իսկ ֆաջր և մաղրեբ նամազներից հետո պետք է ասել ավելացնելով վերը նշված խոսքերին. «Լե իլեհհե աԻլլեհու ուահդու լաշարիկա լեհու, լեհու ելմուլքու, ուա լեհուել համդու յուհի ուա յումիտու ոա հուվա ալե կուպլի շեյին կադիր:» որը նշանակում է չկա աստված բացի միայն Ալլահից, Ով չունի զուգընկեր, Նրան է պատկանում արքայություն: Նա Կենդանացնում և մեռցնում է, Փառք Նրան և Նա Հզոր է;Այս պիտի ասել տաս անգամ: Պիտի ասել «Սուբհան Ալլահ» երեսուն անգամ, որը նշանակում է Փառաբանված է Ալլահը: Երեսուն երեք անգամ «Ելհամդուլիլեհ» որը նշանակում է Փառք Ալլահին, երեսուն երեք անգամ «Ալլահու աքբար», որը նշանակում է Ալլահը Հզոր է : Այս ամենից հետո պիտի ասել . «Լե իլեհե իլլալեհու ուահդու լե շարիկա լեհու, լեհոը ել մուլքու ուա լեհու ալհամդու, ուա հուվա ալե կուլլի շեյին կադիր», որը նշանակում է չկա աստված բացի միայն Ալլահից, որը չունի զուգընկեր, Նրան է պատկանում արքայությունը, Փառք Նրան և Նա Ամենահզորն է: Հետո պիտի կարդալ այաթ «ալ Քուռսին» և 112, 113, 114 սուրաները: Ֆաջր և մաղրեբ նամազներից հետո, այս սուրաները պետք է կարդալ երեք անգամ:

վայր գալու պահից նա կատարում է նամազ լիարժեք առանց կրճատումների:Եթե ճանապարհորդը նամազ է անում մի մարդու ետևից, ով ճանապարհորդ չէ, կամ նա մոռացել է անել նամազ, գտնվելով իր բնակության վայրում և հիշել է այդ մասին ճամփորդության ժամանակ, ապա երկու դեպքում էլ նա պիտի կատարի նամազ լիարժեք ճանապարհորդին թույլատրվում է նամազ կատարել լիարժեք, բայց կրճատելը ավելի լավ է:

**ՈՒՐԲԱԹՕՐՅԱ ՆԱՄԱԶ (ՋՈՒՄԱ).** Այն կեսօրվա նամազից լավն է և այն հանդիսանում է առանձին նամազ, այլ ոչ թե կեսօրյա նամազի կրճատ ձև: Այդ դեպքում չի կարելի կատարել չորս ռաքյատ և այն անվավեր է, եթե կատարել այդ դուհր նամազի մտադրությամբ: Այն ոչ մի պարագայում չպիտի միացնել ասր նամազին, նույնիսկ եթե առիթ կա:

**ՆԱՄԱԶ ՈՒԻԹՐ.** Ուիթրը հանդիսանում է Սուննա: Այն կարելի է կատարել գիշերվա աղոթքի և առավոտյան աղոթքի միջև: Ամենաքիչ ռաքյատի քանակը մեկն է, իսկ ամենաշատը տասնմեկ: Ավելի լավ է ամեն երկու ռակյաթից հետո արտաբերել տասլիմ: Ամենաքիչ քանակի ռակյաթները վիթրի, որոնք անհրաժեշտ են կատարել, որ այն լինի լիարժեք երեքն են: Սուննա է համարվում «Ամենաբարձրյալը» սուրայի ընթերցումը, վիթրի առաջին ռակյաթի ժամանակ: «Անհավատները» սուրան երկրորդ և «Անկեղծություն» սուրան երրորդ ռակյաթում: Կունուտը ցանկալի է կատարել գոտկատեղային կքանստումից հետո, բարձրացնել ձեռքերը և ասել դուա բարձրաձայն, նույնիսկ եթե մարդ աղոթում է միայնակ:

**ՀՈՒՂԱՐԿԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՆԱՄԱԶ.** Հանգուցյալի լվացումը, նրան փաթաթելը պատանքի մեջ, նամազ անելը նրա համար, տանելը գերեզմանոց և թաղելը հանդիսանում են միասնական պարտավորություն (ֆարդ կիֆայա): Բացառություն է կազմում մարտում զոհվածը հանուն Ալլահի: Նրա մարմինը չեն լվանում և չեն փաթաթում պատանքի մեջ, բայց հուղարկավորման նամազը թուլատրվում է: Նրան թաղում են այնպես, ինչպես զոհվել է: Հանգուցյալ տղամարդուն փաթաթում են երեք կտոր սպիտակ կտորով, իսկ կնոջը հինգ. Իզար,[1] գլխի ծածկոց (խիմար), շապիկի նման և երկու մաս կտոր: Ըստ սուննայի, իմամը կամ մարդը, ով կատարում է այդ նամազը, կանգնում է հանգուցյալ տղամարդու կրծքավանդակի մոտ, և կնոջ մարմնի մոտ և կրկնում է «Ալլահու Աքբար» խոսքերը չորս անգամ, ամեն անգամ բարձրացնելով ձեռքերը: Այս բառերը առաջին անգամ արտաբերելով, նա ասում է. «Աուզուբիլլեհի մինելշեյթանոռ ռաջիմ», հետո «Բիսմիլլեհի ռահմեն, ռահիմ» խոսքերը և մտքում կարդում է միայն «Ալ- Ֆատիհա» սուրան: Հետո հետևում է երկրորդ տակբիրը և կոչ օրհնելու Մարգարեին (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*), որից հետո գալիս է երրորդ տակբիրը և խնդրանք Ալլահին, հանգուցյալի համար:

---

[1] Իզար, հագուստ, որը իրենից ներկայացնում է կտորի մաս, որը փաթաթում են մարմնի ներքևի մասում:

Հետո աղոթողը արտաբերում է չորրորդ տակբիրը և կանգնած է մնում որոշ ժամանակ, որից հետո արտաբերում է տասլիմը. «Աս-սալամ ալեյքում ուա ռահմատուլլահ:» Արգելվում է բարձրացնել գերեզմանը ավելի քան ոտքի կոճերն են, ինչպես նաև ծածկել այն գիպսով, համբուրել, ծխել անուշաբույր, անել գրառում,նստել նրա վրա և անցնել նրա տակով: Արգելվում է լուսավորել գերեզմանները, շրջայց կատարել նրա շուրջ, կառուցել մզկիթ նրանց վրա և մզկիթում հուղարկավորել: Նույնպես անհրաժեշտ է հեռացնել բոլոր կառույցները, որոնք կառուցված են գերեզմանի վրա, ինչպիսիք են գմբեթները, դամբարանները և այլն:

Ցավակցելու համար չկա որևէ սահմանափակում: Կարելի է օրինակ ասել. «Ազամալահու աջրակա ուա ահսանա ազաակա ուա ղաֆարա լի մայյիտիկա:»[1] Իսկ մուսուլմանին, ում անհավատ բարեկամն է մահացել, կարելի է ասել. «Ազամալահու աջրակա ուա ահսանա ազակա:» Եթե մուսուլմանը գիտի, որ իր բարեկամները սովորություն ունեն բարձրաձայն ողբալ, ապա նա պետք է արգելի նրանց անել այդ, այլապես նա տանջանքների կենթարկվի նրանց ողբերից:

Աշ-Շաֆիին, (թող Ալլահը օրհնի նրան), ասաց. «Անցանկալի է հանգուցյալի բարեկամներին հավաքվել տանը և նստել այնտեղ, որպեսզի նրանց մոտ գան ցավակցություն հայտնելու: Նրանք պիտի դուրս գան իրենց գործերով: Այս վերաբերվում է և կանանց, և տղամարդկանց:»

Սուննա է հանդիսանում հանգուցյալի բարեկամների համար ուտելիք պատրաստելը և անցանկալի է այդ անել հավաքվածների մոտ: Սուննա է նաև գերեզմանի այցելությունը, եթե այն երկար ճանապարհ չի պահանջում: Թույլատրվում է այցելել անհավատի գերեզման, ինչպես նաև անհավատին մուսուլմանի գերեզման:

✷ Սուննա է համարվում, գերեզման մտնելուց արտաբերել հետևյալ խոսքերը: «Ասսալամ ալեյքում, ահլադ դիյարի, մինալ մումինինա: Ուա ինշաալլահու բիկում լալահիկուն ուա երհամուլեհուլ մուստակդիմինա միննա ուալ մուստախիրինա: Իննա նասալու լենա ուա լյակումու աֆիյատա: Ալլահումա լա տահրիմնա աջրահում, ուալա տաֆտինա բադահում ուաղֆիր լանա ուա լյահում:»[2]

ԵՐԿՈՒ ՏՈՆԵՐԻ ՆԱՄԱԶԸ. Ֆարդ կիֆայա. Ժամանակը, դուհա նամազի ժամանակն է[3], այսինքն, այն բանից հետո, երբ արևը բարձրանում է

---

[1] «Թող Ալլահը մեծացնի քո պարգևը և թող ուղարկի քեզ մխիթարություն և թող ների նրան, ով մահացել է:»

[2] «Խաղաղություն ձեզ, օ, այստեղ պառկած հավատացյալներ: Ճշմարիտ, եթե Ալլահին պետք լինի, մենք կմիանանք ձեզ, և թող Ալլահը ների մեզանից նրանց, ով գնացել է ավելի շուտ և նրանց, ովքեր մնացել են և ես Ալլահին խնդրում եմ, որ նա ազտի մեզ և ձեզ : Օ, Ալլահ, մի զրկի մեզ նրանց պարգևից, և մի ենթարկիր մեզ փորձության նրանցից հետո, և ներիր և մեզ, և նրանց:»

[3] «Ադ-Դուհա» ժամանակի հատված է, որը սկսվում է երբ արևը բարձրանում է հորիզոն նիզակի երկարությամբ, և շարունակվում է համարյա մինչ կեսօր :

հորիզոն: Եթե հայտնի է դարձել, որ այդ օրը տոն է, միայն այն բանից հետո, երբ արևը մոտենում է մայրամուտ, այդ նամազը կատարվում է հաջորդ օրը որպես փոխհատուցում: Նրա անհրաժեշտ պայմանները նույնն են, ինչ ուրբաթ օրվա նամազը, բացի երկու քարոզչություններից (խուտբա): Անցանկալի է կատարել կամավոր լրացուցիչ նամազներ,դրանից հետո և առաջ, նույն վայրում:

**ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ.** Երկու ռաքյատ, առաջին ռակյատում, բացող տակբիրից հետո ասվում է ևս վեց տակբիր մինչ «Աուզուբիլեհի մինաշշայտանո ռաջիմ» խոսքերի արտաբերումը: Իսկ երկրորդ ռակյատում, կատարվում է հինգ տակբիր, սուրա կարդալուց առաջ: Հետո ասում է. «Աուզու բիլեհի մինաշշայտանո ռեջիմ », կարդում է սուրա «Ալ-Ֆետիհան» բարձրաձայն, հետո առաջին ռակյատում 87 –րդ սուրան, իսկ երկրորդում 88-րդը: Տասլիմից հետո կարդում են երկու քարոզներ խուտբա, որոնք նման են ուրբաթ օրվա նամազի խուտբայի, բայց սուննա է հանդիսանում դրանց ժամանակ «Ալլահու Աքբար» խոսքերի բազմակի օգտագործումը: Եթե մարդ կատարում է տոնական աղոթքը ինչպես կամովի լրացուցիչ աղոթք, այն վավեր է, քանի որ լրացուցիչ տակբիրները և Ալլահի հիշատակումը դրանց միջև, սուննա է:

**ՆԱՄԱԶ, ՈՐԸ ԿԱՏԱՐՎՈՒՄ Է ԼՈՒՍՆԻ ԿԱՄ ԱՐԵՒ ԽԱՎԱՐՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ.**

Այն հանդիսանում է սուննա: Ժամանակն է լուսնի կամ արևի խավարման սկզբից մինչ ավարտը և այն չի վերականգնվում առիթի անհայտանալուց հետո: Այն իրենից ներկայացնում է երկու ռակյատ: Առաջինում կարդում են բարձրաձայն, սուրա «Ալ- Ֆատիհա»-ն և ուրիշ ցանկացած երկար սուրա, որից հետո կատարվում է երկար գոտկատեղային կքանիստ: Ուղղվելուց հետո աղոթողը չի կատարում երկրային կքանիստ, այլ կարդում է սուրա «Ալ-Ֆատիհա»-ն և երկար սուրա, որից հետո կրկին կատարում է երկար գոտկատեղային կքանիստ, հետո նա ուղղվում է, որից հետո կատարում է երկու, երկար երկրային կքանիստ: Նույն ձևի էլ կատարվում է երկրորդ ռակյատը, որին հետևում է տաշահուդը և տասլիմը: Եթե իմամի ետևից աղոթողը եկել է առաջին գոտկատեղային կքանստումից հետո, ապա համարվում է, որ նա չի հասել այդ ռակյատին:

**ՆԱՄԱԶ, ԽՆԴՐԱՆՔ ԱՐՁՐԵՒ.** Այս աղոթքի կատարումը համարվում է սուննա, այն դեպքում, եթե հողը դարձել է չոր և անպտուղ, և անձրևներ համարյա չեն գալիս: Դրա ժամանակը, նկարագրությունը և ձևը, նույնն են ինչպես երկու տոների աղոթքը, բայց իմամը կարդում է մեկ խուտբա աղոթքից հետո: Սուննա է հանդիսանում անձրևային թիկնոցի շրջելը, ինչպես հույսի նշան, որ իրավիճակը կփոխվի:

**Լրացուցիչ Նամազ (սուննա)** Հայտնի է, որ Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ամեն օր բացի պարտադիր նամազից, աղոթում էր տասներկու ռակյատ ինչպես սուննա: Երկու ռակյատ մինչ ֆաջր նամազը, չորս զուհր

նամազից առաջ և երկու դրանից հետո, երկու մաղրեբ նամազից հետո և երկու աիշա նամազից հետո: Հավաստի տեղեկացվում է, որ նա կատարում էր, ուրիշ լրացուցիչ աղոթքներ ևս:

ԱՐԳԵԼՎՈՒՄ Է ԿԱՏԱՐԵԼ ԼՐԱՑՈՒՑԻՉ ԿԱՄՈՎԻ ԱՂՈԹՔՆԵՐ ՕՐՎԱ ԱՐԳԵԼՎԱԾ ԺԱՄԵՐԻՆ: Այդ ժամերն են.

1. Արշալույսից մինչ արևածագը և այնքան ժամանակ, մինչ նա չի բարձրանում հորիզոնի վրա նիզակի բարձրությամբ; 2. Կեսօր, մինչ արևը զենիթում է; 3. Ասր աղոթքի սկսելուց հետո, մինչ արևի մայր մտնելը:

Ինչ վերաբերվում է աղոթքներին, որոնք պայմանավորված են որոշակի պատճառներով, ապա դրանք կարելի է կատարել նաև այդ ժամերին: Այդպիսի աղոթքներ են մզկիթի ողջույնը (տահիյաթ ալ մեզջիթ), երկու ռակյաթ (տաուաֆա,) երկու ռակյաթ ֆաջրի նամազը, հուղարկավորության աղոթք (ջանազա), փոքր լվացումից հետո կատարվող երկու ռակյաթ, ինչպես նաև երկրային կքանիստ, որը կատարվում է Ղուրանի որոշ այաթների կարդալուց հետո (սուջուդ ատ-տիլյավա) կամ որպես շնորհակալություն երկրային կքանիստ Արարիչին (սուջուդ աշ-շուկր):

ՇԱՐԻԱԹԻ ՆՈՐՄԵՐԸ, ՈՐՈՆՔ ՎԵՐԱԲԵՐՎՈՒՄ ԵՆ ՄԶԿԻԹԻՆ. Մզկիթների կառուցելը այնպիսի չափսերով, որպեսզի բավարարի գոյություն ունեցող պահանջը: Դրանք հանդիսանում են Ալլահի համար ամենասիրելի վայրերը երկրի վրա:

Այնտեղ արգելվում է երգել, ծափ տալ, նվագել երաժշտական գործիք, կարդալ արգելված բանաստեղծություններ, նստել կանանց ու տղամարդկանց հետ միասին, սեռական կապ ունենալ, առևտուր անել: Եվ սուննա է մզկիթում առևտուր անողին ասել. «Ալլահը չի տա քեզ եկամուտ քո առևտրից:»

Ագելվում է հարց ու փորձ անել կորած անասունի մասին և սուննա է, ասել այդպիսի մարդուն. «Ալլահը չի վերադարձնի այն քեզ:»

Թույատրվում է երեխաներին սովորեցնել մզկիթներում, եթե նրանցից վնաս չկա, ինչպես նաև կատարել ամուսնություններ, դատել, կարդալ թույլատրելի բանաստեղծություններ, քնել, այն մարդկանց համար, ովքեր կատարում են տիկաֆ, ով առանց հեռանալու մնում է մզկիթում, ինչպես նաև ճանապարհորդներին և հիվանդներին և հանգստանալ կեսօրվա ժամերին:

Սուննա է պահպանել մզկիթները աղմուկից, վեճերից, շատախոսություններից, վատ խոսքերից, բարձր ձայներից և անառիթ ճանապարհ դարձնելուց:

Անցանկալի է մզկիթում աշխարհիկ խոսակցություններ տանել: Մզկիթների գորգերը, լամպերը և էլեկտրականությունը չի կարելի օգտագործել հարսանեկան կամ ցավակցական առիթներով հավաքույթների համար:

# ԶԱՔՅԱԹ

ԶԱՔՅԱԹԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ. Զաքյաթը համարվում է պարտադիր չորս տեսակի ունեցվածքից։ 1. Անասուն, որը գտնվում է արոտավայրերում։ 2. Հողից վերցվածը։ 3. Թանկարժեք ապրանքներից։ 4. Ապրանքներից։

ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ, զաքյաթը հանդիսանում է պարտադիր, միայն հետևյալ պայմանների առկայության դեպքում;
1. Մարդը պիտի լինի մուսուլման; 2. Ազատ, ոչ ստրուկ; 3. Նա պիտի ունենա հիշատակված բաները այն քանակությամբ, որից վերցնում են զաքյաթ, այդ քանակությունը կոչվում է նիսաբ[1]; 4. Տվյալ ունեցվածքի լիակատար տնօրինելը; 5. Լիարժեք տարվա լրանալը ըստ լուսնային օրացույցի, որը 354 օր է, բացի բերքահավաքից։

ԶԱՔՅԱԹ ԱՆԱՍՈՒՆԻՑ. Անասունը լինում է երեք տեսակի. ուղտ, կով և ոչխար։ Որպեսզի զաքյաթը լինի պարտադիր, պետք է կատարվի հետևյալ պայմանները. 1. Ամբողջ տարին, կամ դրա մեծ մասը անասունը պիտի լինի արոտավայրում; 2. այն պիտի լինի կաթի կամ պտղաբերության համար, այլ ոչ թե աշխատանքի։ Եթե այն պիտի վաճառքի հանվի, ապա նրանից վերցնում են զաքյաթ, ինչպես ապրանքից։

ԶԱՔՅԱԹ ՈՒՂՏԵՐԻՑ

| Քանակ | 1-4 | 5-9 | 10-14 | 15-19 | 20-24 | 25-35 | 36-45 | 46-60 | 61-75 | 76-90 | 91-120 |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Զաքյաթ | Զաքյաթ չէն վերցվումկէ վերցնում վերցնում | 1 ուղտ | 2 ուղտ | 3 ուղտ | 4 ուղտ | 1 մեկամյա ուղտ | 1 երկամյա ուղտ | 1 եռամյա ուղտ | 1 քառամյա ուղտ | 2 երկամյա ուղտ | 2 եռամյա ուղտ |
| Եթե նրանք 120 ից ավելի են, ամեն 50 դիմաց վերցնում են 1 եռամյա ուղտ, իսկ ամեն 40 ից 1 երկամյա։ | | | | | | | | | | | |

ԶԱՔՅԱԹ ԿՈՎԵՐԻՑ.

| Քանակ | 1-29 | 30-39 | 40-59 |
|---|---|---|---|
| Զաքյաթ | Զաքյաթ չի վերցվում | 1 մեկամյա հորթ | 1 երկամյա հորթ |
| Եթե դրանք 60 –ից ավելի են ամեն 30-ի դիմաց վերցվում է 1մեկամյա հորթ, իսկ ամեն 40-ից երկամյա։ | | | |

ԶԱՔՅԱԹ ՈՉԽԱՐՆԵՐԻՑ

| ՔԱՆԱԿ | 1-39 | 40-120 | 121-200 | 201-399 |
|---|---|---|---|---|
| ԶԱՔՅԱԹ | Զաքյաթ չի վերցվում | 1 ոչխար[2] | 2 ոչխար | 3 ոչխար |
| Եթե դրանք 400-ից ավել են, ամեն հարյուրից վերցվում է մեկ ոչխար, բայց չի վերցվում այծ, ծեր կենդանի, մեկաչքանի, բեղմնավորման համար օգտագործվող, կամ հղի, ինչպես նաև այն, որը ունի հատուկ արժեք։ | | | | |

ԶԱՔՅԱԹ ԲԵՐՔԻՑ. Զաքյաթը վերցվում է հացահատիկից և պտուղներից, որի ընթացքում հաշվի է առնվում երեք պայման.

[1] Նիսաբը գումարի ամենափոքր քանակությունն է, կամ ծավալը, կշիռը կամ ապրանքների քանակը, որոնցից պետք է վճարել զաքյաթ։
[2] Այն պիտի լինի այծ մեկ տարեկանից ավել կամ ոչխար 6 կամ ավել ամսական ։

1. Բույսը պիտի լինի նրանցից, որոնք չափում և ամբարում են, ինչպիսիք են ցորենը և գարին հացահատիկային կուլտուրաներից, իսկ պտուղներից խաղողը և արմավը:
2. Որոշակի քանակություն, քաշ,653 կիլոգրամ և ավելի:
3. Բուսականությունը պետք է պատկանի տվյալ մարդուն, այն ժամանակ, երբ նրանից պետք է վերցվի զաքյաթ, այսինքն այն ժամանակ, երբ արդեն երևում է պտուղների հասունությունը,երբ դրանք արդեն դեղնել կամ կարմրել են: Իսկ հացահատիկները, երբ նրանք արդեն չորացել են:
Այն բանից, ինչ աճում է առանց ջանք գործադրելու, այսինքն արձրևի կամ գետի շնորհիվ, վերցվում է տասներրորդ մասը (ուշր), իսկ այն բանից, որը պահանջում է ծախս և ջանք, օրինակ ջրհորից ջուր բերել և այլն, այս դեպքում վերցվում է կես ուշր (5%): Ինչ վերաբերվում է երկու ձևերին էլ, ապա այս դեպքում հաշվի է առնվում, որ ձևն է ավելի շատ օգտագործվել, հաշվվում է տարվա օրերի քանակը, որի ընթացքում ցանքը մշակում են այս կամ այն ձևով:

## ԱՐԺԵՔԱՎՈՐ ԻՐԵՐԻ ԶԱՔՅԱԹԸ.

Արժեքավոր իրերը բաժանվում են երկու տեսակի.

1. Ոսկի, որից զաքյաթ չեն վերցնում, մինչ նրա 85 գրամ հասնելը;
2. Արծաթ, որից չեն վերցնում զաքյաթ, մինչ նրա 595 գրամ հասնելը:

Մետաղական և թղթե դրամներից զաքյաթ չի վերցվում այնքան ժամանակ, մինչ նրանց ընդհանուր արժեքը վճարելու պահին չի հասնում 85 գրամ ոսկու կամ 595 գրամ արծաթի արժեքին: Զաքյաթի չափը 2,5%-է:

Թույլատրելի թանկարժեք զարդեղենից, որոնք օգտագործվում են, զաքյաթ չի վերցվում: Իսկ նրանցից, որոնք վարձով են տրվում կամ ուղակի պահվում են, զաքյաթ վերցվում է:

Թույլատրելի է կանանց համար սովորութային ոսկե և արծաթե զարդերը: Նույնպես թույլատրվում է ափսեները մի փոքր արծաթով օծել: Տղամարդկանց թույլատրվում է քիչ քանակությամբ արծաթ կրել մատանու, ակնոցի և այլնի տեսքով: Տղամարդուն թույլատրվում է կրել քիչ քանակությամբ ոսկի, եթե այն կապված է որևէ ուրիշ բանի հետ, օրինակ անդրավարտիքի կոճակ, ատամի դրոշմ և այլն, որտեղ նրանք չեն նմանվում կանանց:
Մարդ, ում գումարները անընդհատ ավելանում կամ պակասում են, այնպես որ նա դժվարանում է վճարել զաքյաթ տարվա ամեն գումարի հետ, պիտի ընտրի տարվա որոշակի օր և վճարի զաքյաթ: Այդ օրը նա նայում է, ինչքան է նրա գումարը այդ պահին և վճարում է 2,5%, նույնիսկ եթե այդ գումարի մասը չի մնացել տարվա մեջ: Մարդ, ով ստանում է աշխատավարձ կամ վարձով է տալիս տունը, հողը և միևնույն ժամանակ ետ չի գցում այդ գումարից, չպիտի վճարի զաքյաթ, նույնիսկ եթե գումարը մեծ է: Իսկ եթե, նա ետ է գցում որևէ գումար, ապա նա պիտի վճարի

դրանից զաքյաթ տարվա ընթացքում: Իսկ եթե այդ դժվար է նրա համար, ապա նա պիտի ընտրի մեկ օր և վճարի զաքյաթ, ինչպես արդեն ասվել է:

ԶԱՔՅԱԹ ՊԱՐՏՔԻՑ,

մարդ, ում պարտք է հարուստը կամ որևէ մեկը, ումից առանց խոչընդոտների կարելի է ետ վերցնել պարտքը, պարտավոր է վճարել զաքյաթ, հենց որ ետ ստանա այդ, ամբողջ անցած ընթացքի համար: Եթե այդ պարտքը հնարավոր չէ վերադարձնել, ապա նրանից զաքյաթ չի վերցվում, քանի որ նա հնարավորություն չունի տնօրինել այդ գումարը:

ԶԱՔՅԱԹ ԱՊՐԱՆՔՆԵՐԻՑ,

զաքյաթ դրանցից վերցվում է միայն որոշակի պայմանների պարագայում.

1. Դրանք պիտի գտնվեն տվյալ մարդու տնօրինության տակ;

2. Նա պիտի մտադրված լինի, որ դրանք միայն առևտրի համար են;

3. Դրանց արժեքը պիտի համապատասխանի 85 գրամ ոսկու և 595 գրամ արծաթի արժեքին;

4. Տարվա լրանալը:

Եթե բոլոր պայմանները կատարվում են, ապա այս դեպքում վճարվում է զաքյաթ այդ ապրանքների արժեքին համապատասխան: Եթե մարդ ունի նաև ոսկի, արծաթ ինչպես նաև թղթադրամ և մետաղական փող, դրանք ավելացնում են ապրանքին, որպեսզի նրանց ընդհանուր արժեքը հասնի անհրաժեշտին, նիսաբին: Եթե մարդու մոտ առաջացել է մտադրություն օգտագործել ապրանքները, ինչպիսիք են հագուստը, տունը, մեքենան և այլն, ապա զաքյաթ նրանցից չեն վճարվում: Եթե ավելի ուշ նա որոշի օգտագործել դրանք առևտրի համար, վերականգնվում է տարին, որի ավարտից հետո վճարվում է զաքյաթը:

ԶԱՔՅԱԹ_ԵԼ _ՖՏՐ. Այն պարտավոր է վճարել յուրաքանչյուր մուսուլմանը, ով ունի ունեցվածք, որը ավելին է քան իր ընտանիքին և իր կերակրման մինիմումը: Վճարում է նա այդ Տոնի գիշերը, կամ Տոնին,աղոթքից առաջ: Դրա չափն է այդ երկրին համապատասխան 2.25 կիլոգրամ սնունդ,, ամեն մարդուց, լինի դա տղամարդ թե կին: Նա, ում վրա է իր փոխարեն վճարելու պարտավորությունը, պիտի վճարի նաև նրանց համար, ովքեր գտնվում են նրա խնամակալության տակ Տոնի գիշերը, եթե նա ունի այդ հնարավորությունը: Ցանկալի է վճարել այն Տոնի օրը, մինչ տոնական աղոթքը, և չի կարելի հետաձգել այն դրանից հետո:Թույլատրվում է վճարել այն նաև Տոնից մեկ կամ երկու օր առաջ, կարելի է տալ մեկ մարդու զաքյաթ մի քանիսի կողմից և կարելի է մի քանի հոգու, մեկ մարդու կողմից:

ԶԱՔՅԱԹԻ ՎՃԱՐՈՒՄԸ. Այն վճարվում է անմիջապես տարվա ընթացքում, իսկ անչափահասի և հոգեկան հիվանդի խնամակալը պիտի վճարի այդ նրանց ունեցվածքից:Սուննա է ինքնակամ վճարը և ունեցվածքի տարաբաժանումը զաքյաթի համար: Չափահասի մուկալաֆ և գիտակից մարդու համար,վճարման անհրաժեշտ պայմանն է

մտադրությունը: Եթե մարդ վճարում է այդ բարեգործության նպատակով, ապա զաքյաթը համարվում է անվավեր, նույնիսկ եթե նա զոհաբերել է իր ամբողջ գումարը: Լավ է վճարել զաքյաթ ցանկացած ունեցվածքից աղքատ մարդկանց, ովքեր բնակվում են տվյալ տարածքում: Կարելի է նաև ուղարկել այլ վայրեր, եթե կա անհրաժեշտություն: Եթե մարդ ունի նիսաբ, նա կարող է զաքյաթ վճարել երկու տարվա համար:

ՈՒՄ Է ՎՃԱՐՎՈՒՄ ԶԱՔՅԱԹ. Այն տրվում է ութ տեսակի մարդկանց.

1. Աղքատներ;
2. Չքավորներ;
3. Զաքյաթ հավաքողներ;
4. Նրանց, ում սրտերը պիտի ուղղել առ Իսլամ;
5. Ստրուկներ, տալ փրկագին կամ ազատել նրանց;
6. Պարտք ունեցողներ;
7. Ալլահի ճանապարհին ծախսողներ;
8. Ճանապարհորդներ: Բոլոր նշվածներին տրվում է այնքան որքան անհրաժեշտ է, բացի զաքյաթ հավաքողներից: Նրանց տրվում է այնքան, որքան նրանց աշխատանքի գինն է, նույնիսկ եթե նա հարուստ է: Զաքյաթի վճարումը խարիջիտներին և անարդարություն անողներին, այսինքն, բռնապետներին, կեղեքիչներին, եթե տվյալ երկիրը հայտնվել է նրանց իշխանության տակ, վավեր է:

Եթե իշխանավորը կորզում է զաքյաթ մարդկանցից պարտադրաբար, կամ կամովի, նրա վճարումը վավեր է, անկախ նրանից նա արդար է թե ոչ: Ավավեր է համարվում անհավատին, ստրուկին, հարուստին, ում առանց այդ կարիքի ապահովում են և Մարգարեյի (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ցեղին, (հաշիմին) վճարած զաքյաթը: Եվ եթե մարդ վճարել է զաքյաթ նրան, ով չունի դրա իրավունքը, անգիտակցաբար և հետո պարզում է, նրա զաքյաթը չի հաշվվում: Բացառություն է կազմում այն դեպքը, երբ մարդ տալիս է զաքյաթ նրան, ում համարում է աղքատ, իսկ արդյունքում պարզվում է, որ նա հարուստ է:

ԻՆՔՆԱԿԱՄ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ (ՍԱԴԱԿԱ).

Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Ճշմարիտ, այն ամենից ինչ հասնում է հավատացյալին իր բարի գործերից,մահից հետո գիտելիքն է, որը նա սովորեցրել և տարածել է, առաքինի զավակը, որը նա թողել է, Ղուրանի մասը, որը նա թողել է ժառանգներին, մզկիթը, որը նա կառուցել է, կամ ճամփորդների համար տունը, որը նա է կառուցել կամ գետը, որը նա է զցել հունը, կամ բարեգործությունը, որը նա բաժանել է իր գումարներից կյանքի ընթացքում, առողջ ժամանակ: Այս ամենի պարգևը հասնում է նրան մահից հետո:» (Իբն Մաջա)

# ԱԼՍԻԱՄ (ՊԱՀՔ)

Պահքը պիտի պահի յուրաքանչյուր մուսուլման, ով գտնվում է գիտակից վիճակում, չափհաս է, և ի վիճակի է տանել այն:Կինը չպիտի գտնվի ետծննդյան արյունահոսության (նիֆասի) կամ ամսականի (հայդի) մեջ:Երեխային պատվիրում են պահք պահել, եթե նա ի վիճակի է դրան, որպեսզի սովորական դառնա այն: Ռամադանի գալը իմանում են հետևյալ նշաններից մեկով;
1. Վստահելի մուսուլմանի վկայությամբ, ով գիտակից և չափահաս է, ով տեսել է ռամադանի չծնված ամիսը: Այն կարող է նաև կին լինել:
2. Շաբէն ամսվա 30- երորդ օրվա ավարտը:
Պահքի պահելը պարտադիր է արևածագից մինչև արևի մայր մտնելը: Պարտադիր պահքի համար մարդը պիտի նպատակ այդ կատարելու, մինչև արևածագ:

## ՊԱՀՔԸ ԽԱԽՏՈՒՄ Է.

1. Սեռական հարաբերությունը: Դրա համար պետք է փոխհատուցում և թողություն (կաֆֆարա): Թողություն է հանդիսանում ստրուկի ազատումը, իսկ ով չի կարող, նա պիտի պահք պահի երկու ամիս շարունակ, իսկ ով այդ էլ չի կարող, նա կերակրում է վաթսուն աղքատ, իսկ ով այդ էլ չի կարող, նա ոչինչ չպիտի անի:
2. Սերմնահեղուկի արտազատումը համբույրի, մաստուրբացիայի կամ շոշափման հետևանքով: Իսկ այն մարդու պահքը, ում մոտ տեղի է ունեցել պոլուցիա, չի խախտվում:
3. Սննդի կամ ըմպելիքի ընդունումը մոռացության պատճառով, պահքը չի խախտվում:
4. Արյան դուրս հանելը հիջեմայի կամ դոնորական արյան պատճառով: Իսկ եթե դուրս է գալիս քիչ քանակությամբ արյուն, օրինակ քթից կամ վերքից, կամ արյան քննումից, ապա այս դեպքում այն չի խախտվում:
5. Դիտավորյալ փսխումը:
Եթե պահք պահողի կոկորդ ընկել է փոշի, կամ եթե նա լվացել է քիթը կամ ողողել է բերանը և այնտեղ ջուր է մտել, կամ եթե նրա մոտ մտքերից սերմնաազատում է եղել, կամ պոլուցիա, կամ արյուն կամ փսխում է եղել, նա չի խախտում իր պահքը:

Ով կերել է մտածելով, որ դեռ գիշեր է և պարզվել է, որ ոչ, նա հաջորդ օրը պիտի փոխհատուցի այդ: Իսկ ով կերել է գիշերը կասկած ունենալով, արդյոք արևածագ է թե ոչ, նրա պահքը չի խախտվում: Ով կերել է ցերեկը, կասկածելով, արևը մայր է մտել, ապա նա պիտի փոխհատուցի պահքը ուրիշ օր:

## ՆՈՐՄԵՐԸ, ՈՐՈՆՔ ՎԵՐԱԲԵՐՎՈՒՄ ԵՆ ՊԱՀՔԻՑ ԱԶԱՏՎՈՂՆԵՐԻ.

Պահքից խուսափելը ռամադանին, արգելված նրան, ով չունի հարգալից պատճառ: Խուսափումը պարտադիր է կնոջ համար, ով ամսականի, կամ ետծննդյան արյունահոսության մեջ է, ինչպես նաև նրան, ով դրա կարիքը ունի կյանքի պահպանման համար: Խախտումը համարվում է ցանկալի

ճանապարհորդի համար, ում թույլատրվում է կրճատել նամազները, եթե նրան դժվար է պահք պահել, ինչպես նաև հիվանդի համար, որին այն կարող է վնաս պատճառել: Թույլատրվում է խախտել այն մարդուն, ով ճանապարհ է ընկնում օրվա կեսին: Սակայն նա պարտավոր է փոխհատուցել այդ մեկ ուրիշ օր:

Հղի կնոջը կամ կերակրող մորը նույնպես թույլատրելի է խախտել այն, եթե նրանք վախենում են իրենց կամ երեխայի համար: Նրանք պարտավորված չեն փոխհատուցել այդ, սակայն նրանք պիտի կերակրեն աղքատին ամեն օրվա դիմաց: Նա, ով չի կարող պահք պահել ծերության կամ անբուժելի հիվանդության պատճառով, պետք կերակրի ամեն օրվա դիմաց աղքատի, և պարտավոր չէ փոխհատուցել այդ:

Ով հետաձգել է պահքի փոխհատուցումը մինչ հաջորդ ռամադան հարգալից պատճառով, պարտավոր է միայն փոխհատուցել բաց թողնված օրերը: Իսկ ով այդ արել է առանց պատճառի, պետք է փոխհատուցման հետ միասին կերակրի աղքատի: Եթե մարդ հետաձգել է փոխհատուցումը հարգալից պատճառով և մահացել է չհասցնելով անել այդ, ապա այդտեղ ոչ մի վատ բան չկա: Եթե նա այդ արել է առանց պատճառի, նրա փոխարեն կերակրում են ամեն օր աղքատի: Սուննա է հանդիսանում այդպիսի մարդու բարեկամի համար փոխհատուցել նրա փոխարեն: Ինչպես նաև կարող է կատարել նրանց կողմից արված ուխտը, որը ենթադրում է պահք, ինչպես նաև ցանկացած ուխտ, որը հանդիսանում է Ամենաբարձրյալին հնազանդություն: Եթե մարդ պահք չի պահել հարգալից պատճառով, որից հետո այդ պատճառը անհայտանում է ռամադանի ժամանակ, ինչպես նաև երբ անհավատը ընդունում է իսլամ, կամ եթե կինը մաքրվում է ամսականից, կամ բուժվում է հիվանդը, կամ ճանապարհորդը վերադառնում է տուն, կամ մանուկը դառնում է հասուն, կամ գիտակցության է գալիս մեկ օր հետո խելագարը, և բոլոր վերը նշվածները չեն պահել պահք, նրանք պարտավոր են փոխհատուցել այդ օրը, նույնիսկ եթե կեսը պահք են պահել: Նրանց, ում թույլատրվում է ռամադանի պահքի խախտելը, այլ ուրիշ պահքեր չպիտի պահեն:

ԿԱՄԱՎՈՐ ՊԱՀՔ. Դրա ամենալավ տեսակը մեկ օր հետո պահքն է: Դրան հետևում է երկուշաբթվա և հինգշաբթվա պահքը, հետո ամեն ամիս երեք օրվա պահքը, և ցանկալի է որ դրանք լինեն «սպիտակ օրեր»,այսինքն ամեն լուսնային ամսվա 13-րդ,14-րդ և 15-րդ օրերը: Սուննա է նաև պահք պահել մուհարրամ և շաբեն ամիսների մեծ մասը, «աշուրա» օրը: Ցանկալի է նաև «Արաֆա» օրվա պահքը և վեց օր շավալ ամսին: Անցանկալի է պահքի համար ռաջաբ ամիսը, ինչպես նաև ուրբաթ և շաբաթ օրերը և «կասկածի օրը», այսինքն շաբան ամսվա 30-րդ օրը, պայմանով, որ երկինքը պարզ է:

Արգելվում է պահք պահել տոն օրերին, տաշրիկա օրերին, որոնք են 11-րդ,12-րդ,13-րդ օրերը զուլ ել հիջրա ամսվա: Սակայն բացառություն են այն դեպքերը, երբ մարդ պարտավոր է անել զոհաբերություն հաջի տամատտուլյում և կիրանում:»

КАРЕВОР ԾԱՆՈՒՑՈՒՄ.

- Մարդ, ով գտնվում է մեծ աղտի մեջ, այսինքն ունեցել է սեռական հարաբերություն, ինչպես նաև կանայք, ովքեր մաքրվում են հայդից կամ նիֆասից մինչ արևածագը, կարող են հետաձգել դուսուլը և կարող են անել այդ փաջր նամազից հետո, ավարտելով առավոտվա սնունդը, սուհուրը, մինչ արևաձագը: Այս դեպքում նրանց պահքը կլինի ճիշտ:
- Կնոջը թույլատրվում է ընդունել դեղեր, որոնք հետաձգում են ամսականը ռամադան ամսում, որպեսզի նա կարողանա մասնակցել այն բանին, ինչ կոչվում է բարի գործ և Ալլահին հնազանդություն, մյուս մուսուլմանների հետ: Սակայն այդ կարող է տեղի ունենալ մի պայմանով, որ դեղօրայքը չի վնասում առողջությանը:
- Պահք հետևողին թույլատրելի է կուլ տալ թուքը, ինչպես նաև մարմնում գտնվող հեղուկները:
- Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Իմ ումման կլինի բարիքի մեջ այնքան ժամանակ, որքան արագ նա կմիանա իֆտարի ավարտին և կհետաձգի համարյա մինչև արևածագ սուհուրը:» (Ահմեդ) Նա (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես ասաց. «Կրոնը չի դադարի լինել հզոր և ծաղկուն այնքան ժամանակ, մինչ մարդիկ կշտապեն ավարտելու պահքը, քանի որ հրեաները և քրիստոնյաները հետաձգում են այն:» (Աբու Դաուդ)
- Ցանկալի է կարդալ դուա պահքի ավարտի ժամանակ: Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ճշմարիտ, պահքի ավարտի ժամանակվա խնդրանքը չի մնա անպատասխան:» (Իբն Մաջա) Այդ դուաներից մեկն է Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) խոսքերը.«Զահաբազ զամաու ուա բտալյատի ել ուրուկու ուա սաբատա ել աջուրու ինշաԱլլահ:»[1] (Աբու Դաուդ)
- Սուննա է պահքը ավարտել թարմ խուրմաներով, իսկ եթե չկա, չորացրած: Եթե դա էլ չկա, ապա պահքը կոտրում են ջրի մի քանի կումով:
- Պահք պահողին պետք է խուսափել սուրմայից, աչքի և քթի կաթիլներից, որպեսզի չլինեն կասկածներից:Քանի որ գիտնականների մեջ կան տարաձայնություններ կապված դրանց հետ: Եթե մարդ իրոք դրանց կարիքը ունի որպես բուժում, ապա օգտագործումը ոչինչ վատ չի նշանակում: Նույնիսկ եթե նա զգա դեղը բերանի խոռոչում, նրա պահքը չի խախտվում:
- Սուննա է նաև սիվակի օգտագործումը պահքի օրվա ցանկացած ժամանակ, առանց որևէ անցանկալի հետևանքների:

[1] «Անցել է ծարավը և լցվել են տարրաները և հաստատվել է պարգևը Ալլահի թույլտվությամբ:»

• Պահք պահողը պիտի թողնի հուլան, բամբասանքը, ստելը և դրա նման բաները, իսկ եթե որևէ մեկը սկսի պախարակել նրան, նա պիտի ասի. «Ճշմարիտ, ես պահք եմ պահում:» Պահպանելով իր լեզուն և մարմնի մյուս մասերը մեղքերից, նա պահպանում է իր պահքը: Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ով չի հրաժարվել վատաբանումից և սուտ վկայությունից և գործում է դրանց համապատասխան, Ալլահը կարիք չունի, որ նա հրաժարվի սննդից և ըմպելիքից:» (Ալ- Բուխարի)

• Սուննա է պահք պահողի խնդրանքը Ալլահին այն մարդու համար, ով հրավիրել է նրան ուտելու, իսկ եթե նա պահք չի պահում, նա պիտի ուտի:

• Կանխագուշակման գիշերը, լեյլատու քադր, լավագույնն է տարվա մեջ: Այն պիտի սպասել Ռամադանի վերջին տաս օրվա ընթացքում: Ամենահավանական ժամանակը ռամադանի 27- րդ օրն է: Այդ գիշերը կատարած բարիքը, ավելի լավ է բարիքը, որը կատարվում է հազար ամիսների ընթացքում: Դրա նշաններն են, որ արևը արևածագին,առավոտյան սպիտակ է, փոքր փայլերով, իսկ եղանակը օրվա ընթացում հանգիստ և լավն է: Կարող է պատահել, որ այդ օրը անցնի և մուսուլմանը չնկատի, ուստի ռամադանի վերջին տաս օրվա ընթացքում պետք է ավելի ջանասեր լինել երկրպագման մեջ և փորձել բաց չթողնել ոչ մի գիշեր, կատարել կամավոր գիշերային աղոթքներ: Եթե նա մասնակցում է միասնական տարաուիհ աղոթքին, նա չպիտի գնա, մինչ իմամը չի վերջացնի աղոթքը ամբողջովին, քանի որ այդ դեպքում, նրան կգրվի կամովի գիշերային աղոթք:

• Ով սկսել է կամավոր պահք օրերից մի օր, ապա սուննա է ավարտել այն, բայց այդ չի հանդիսանում պարտավորվածություն: Իսկ եթե նա ավարտում է իր պահքը դիտավորյալ, չկա վատ բան դրա մեջ, և նա պարտավոր չէ փոխհատուցել այդ:

Իտիկաֆը գիտակից մուսուլմանի մնալն է մզկիթում բարի, աստվածահաճո գործերի համար: Իտիկաֆի պարտադիր պայմաններից է. Մուսուլմանը չգտնվի մեծ աղտի մեջ: Իտիկաֆ անողը չպիտի թողնի մզկիթը առանց անհրաժեշտության: Իտիկաֆը դառնում է անվավեր, եթե մարդը դուրս է եկել մզկիթից առանց կարիքի: Իտիկաֆը սուննա է ցանկացած ժամանակ, սակայն ռամադան ամսվա ընթացքում այն ավելի ցանկալի է, առավելապես վերջին տաս օրերին: Իտիկաֆի նվազագույն ժամանակը մեկ ժամն է, բայց ցանկալի է. որ այն շարունակվի նվազագույնը մեկ օր: Կինը պիտի կատարի իտիկաֆ միայն ամուսնու թույլտվությամբ: Իտիկաֆ կատարողի համար սուննա է հանդիսանում երկրպագությունը և Ալլահին գոհացնող արարքները, ցոփության մերժումը և այլն:

# ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹՅՈՒՆ. ՀԱՋ ԵՎ ՈՒՄՐԱ

Կյանքի ընթացքում մեկ անգամ հաջ կամ ումրա կատարելը մուսուլմանի պարտքն:

ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ և ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ;

1. Մարդը պիտի մուսուլման լինի;
2. Նա պիտի գտնվի գիտակից վիճակում;
3. Պիտի չափահաս լինի; 4. Նա պիտի ազատ լինի;
5. Պիտի ունենա բավարար միջոցներ ճանապարհի և կենդանու համար:

ՌՎ հետաձգել է այս երկու ուխտագնացությունները մինչ մահը, նրա գումարից բաժին են հանում հաջի և ումրայի ծախսերը,և կատարում են դրանք նրա անունից: ԱՆհավատի և հոգեկան հիվանդի հաջը համարվում է անվավեր: Անչափահաս երեխայի կամ ստրուկի հաջը վավերական է, սակայն այն չի բացառում հետագա հաջ ևս, այսինքն երբ երեխան դառնում է չափահաս, իսկ ստրուկը ազատություն է ձեռք բերում: Եթե մարդ չի կարող կատարել հաջ աղքատության պատճառով, բայց այնուամենայնիվ կատարել է այդ, ապա այդ հաջը համարվում է վավերական:

ԻՀՐԱՄ[1] Ցանկացողի համար մտնել իհրամի վիճակ սուննա է հանդիսանում դուսուլը, լիակատար լվացումը, մարմնի ընդհանուր մաքրումը և անուշաբույրերով օծվելը: Նա հանում է կարած հագուստը և հագնում է մաքուր, սպիտակ իզար և նույնանման թիկնոց, որից հետո մտնում է իհրամի վիճակի մեջ ասելով. «ԼեբեյկԱլլահումա ումրատան, կամ հաջատան»[2], կամ «Լբեյկա Լահումա հաջան ուա ումրատան:»[3] Եթե նա վախ ունի որևէ խոչընդոտի, նա պիտի պայման դնի ասելով. «Իսկ եթե իմ առջև ծագի խոչընդոտ, ապա իմ իհրամի դուրս գալու վայրը կլինի այնտեղ, որտեղ Դու ինձ կպահես:»

ՈՒԽՏԱԳՆԱՑԸ ԸՆՏՐՈՒՄ Է ՀԱՋԻ ԵՐԵՔ ՏԵՍԱԿՆԵՐԻՑ ՄԵԿԸ. տամատու[4], իֆրադ և կիրան: Լավագույնը հանդիսանում է տամատուն, մուսուլմանը մտնում է իհրամի վիճակ հաջի ամիսներից մեկում, որոնցից են շավալը, զուլ-կիդան և զուլ-հիջան: Կատարում է ումրա, որից հետո դուրս է գալիս իհրամի վիճակից, հետո նորից մտնում է այդ վիճակ, երբ գալիս է հաջի ժամանակը և կատարում է հաջ: Իֆրադը, երբ մուսուլմանը միայն հաջ է կատարում: Կիրանի ժամանակ ուխտագնացը հագնում է

---

[1] Իհրամ, ուխտագնացի վիճակ է, ով կատարում է հաջ և ումրա, երբ նա պիտի հետևի որոշակի արգելքների, որից ազատված են մյուս մուսուլմանները: Իհրամը նաև որոշակի հագուստն է, որը որոշակի մասերում, մինկատ, մերկացնում է մարդուն, ով կատարում է մեծ կամ փոքր ուխտագնացություն : Իհրամը բաղկացած է երկու կտոր մաքուր սպիտակ, չկարված նյութից: Մի մասը, ռիդան, ուխտագնաց տղամարդը գցում է վզին և ձախ ուսին, իսկ մյուսով, իզար ծածկում է գոտկատեղը :

[2] « Ահա ես քո առջև եմ, օ, Ալլահ, մտադրվել եմ կատարել ումրա կամ հաջ:»

[3] « Ահա ես քո առջև եմ, օ, Ալլահ, մտադրված եմ կատարել հաջ և ումրա :»

[4] Իհրամի առավելագույն տեսակը, երբ ուխտագնացը այդ կատարում է հաջի ամիսներից մեկում :Այդ ամիսներն են շավալը, զուլ-կիդան և զուլ-հիջրան :

իհրամ հաջի և ումրայի համար, կամ հագնում է այն ումրա կատարելու համար, որին հետևում է հաջը: Սա տեղի է ունենում Քաաբայի շուրջ շրջայցից (տաուաֆ)առաջ, ումրայի համար:
Հաջից հետո մարդ նստում է իր տեղաշարժման միջոցը և սկսում է ասել տալբիի խոսքերը:. «ԼբեյկաԼահումա լբեյկ, լբեյկալաշարիկալեքե լեբեյկ, իննալ համդա ուանի մատա լեքա ուալ մուլք լե շարիկալեքե:»[1] Ցանկալի է արտաբերել այդ որքան հնարավոր է շատ և այդ ժամանակ բարձրացնել ձայնը: Սակայն այդ չի վերաբերվում կանանց:
ԻՆՉ Է ԱՐԳԵԼՎԱԾ ԱՆԵԼ ԻՀՐԱՄԻ ՎԻՃԱԿՈՒՄ ԳՏՆՎԵԼՈՒՑ;
1. Սափրել մազերը; 2. Կտրել եղունգները;
3. Տղամարդկանց համար հագնել կարած հագուստ: Իսկ նա, ով չի գտել իզար, նա կարող է հագնել շալվար, իսկ ով չի գտել սանդալներ, կարող է հագնել խուֆեր, նախօրոք կարճացնելով այն, այնպես որ լինի կոճերից ցածր: Այդ դեպքում նա պարտավոր չէ հատուցել դրա համար:
4. Տղամարդկանց համար կարևոր է նաև ծածկել գլուխը;
5. Մարմինը և հագուստը օծել անուշայուղերով:
6. Որս անել, որը թույլատրվում է վայրի կենդանու սննդի համար:
7. Ամուսնություն կնքել: Այդ հարամ է, արգելված, բայց դրա համար նա չի հատուցում:
8.Մոտենալ կնոջը կրքով: Այս դոպքում հատուցումն է ոչխարի զոհաբերությունը, կամ երեք օրվա պահք կամ կերակրել վեց աղքատ:
9.Սեռական հարաբերություն: Եթե այդ կատարվի մինչ իհրամի առաջին դուրս գալը, ապա այս դեպքում հաջը դառնում է անվավեր: Ուխտագնացը պիտի ավարտի այդ և հաջորդ տարի կրկնի, զոհաբերելով ուղտ, որի միսը պետք է բաժանի Մեքքայի աղքատներին: Իսկ եթե այդ տեղի է ունեցել իհրամից առաջին դուրս գալուց, որը լիարժեք չէ, այս դեպքում հաջը համարվում է վավեր, բայց նա պիտի զոհաբերի ուղտ կամ կով: Եթե սեռական հարաբերությունը եղել է ումրայի ժամանակ, այն դառնում է անվավեր և ուխտագնացը պետք է զոհաբերի ոչխար և նորից կատարի ումրա: Միայն սեռական հարաբերությունն է դարձնում հաջը, և ումրան անվավեր:
ԿԻնը նման է տղամարդուն ամեն ինչում, միայն նրան թույլատրվում է կրել կարած հագուստ և նա չպիտի հագնի փարաջա, նիկաբ և ձեռնոցներ:
ՔԱՎՈՒԹՅՈՒՆ (ՖԻԴՅԱ). Այն լինում է երկու տեսակ;
1. Ըստ ընտրության, որը ներկայացնում է քավություն մազերի կտրելու համար, անուշաբույրերի օգտագործման, եղունգների կտրման համար: Իսկ տղամարդկանց դեպքում նաև կարած հագուստ հագնելու և գլուխը ծածկելու համար: Այս դեպքերում, ուխտագնացը ընտրում է երեք օրյա պահքի, վեց աղքատ կերակրելու և ոչխար զոհաբերելու միջև:Իսկ որսի

[1] «Ահա ես Քո առջև եմ,Օ, Ալլահ, ահա ես Քո առջև եմ, չկա Քեզ զուգընկեր, ահա ես Քո առջև եմ: Ճշմարիտ փառք Քեզ և գութը պատկանում է Քեզ և արքայությունը, չկա Քեզ զուգընկեր:»

ժամանակ սպանված կենդանու համար պատիժն է նմանատիպ կենդանու վերադարձնելը, իսկ եթե այդպիսին չկա ապա, նա պիտի վճարի դրա արժեքը աղքատներին և այլն:
2. Հերթականությամբ: Կիրան և տամատու կատարողի քավությունն է, ոչխար: Սեռական հարաբերության քավությունն է, կովը կամ ուղտը: Եթե նա չի կարող, ապա նա պիտի պահք պահի երեք օր հաջի ժամանակ և յոթ օր վերադառնալուց հետո: Զոհաբերված միսը տրվում է միայն Մեքքայի աղքատներին:
ՄՈՒՏՔԸ ՄԵՔՔԱ. Մտնելով Արգելված մզկիթ (ալ մասջիդ ալ-հարամ), ուխտագնացը Ալլահին հիշատակելու խոսքեր է արտաբերում, որը ասվում է ներս մտնելուց: Հետո նա կատարում է տավաֆ ումրայի համար, իսկ եթե հաջ է, ապա տամատու: Կամ Ժամանման տավաֆ, (տավաֆ –ալ-կուդում, եթե նրա հաջը կիրան կամ իֆրադ է): Այդ ժամանակ, նա փաթաթվում է թիկնոցով, (ռիդա), բռնելով մի ծայրը աջ ձեռքով, իսկ մյուսը դնելով ձախ ուսին: Նա սկսում է տավաֆ Սև քարից, շոշափելով և համբուրելով, կամ մատնացույց է անում ասելով. «Բիսմիլեհի, ուա լեհու Աքբար:»[1] Այսպես նա անում է ամեն շրջանի ժամանակ: Նույն ժամանակ նա կանգնում է այնպես, որ Քաբբան լինի իր ձախ կողմում և պտտվի նրա շուրջ յոթ անգամ, ըստ ժամացույցի սլաքի և ըստ հնարավորության արագացնի և մոտեցնի քայլերը երեք շրջան, իսկ մնացածը քայլի սովորական քայլերով: Ամեն անգամ հայտնվելով Քաբբայի անկյան դիմաց, որը ուղղված է Յեմենի ուղղությամբ, նա պիտի հնարավորին չափ մոտենա նրան, իսկ գտնվելով երկու անկյունների միջև, պիտի ասի. «Ռաբբանա ատինա ֆիդ դունյա հասանեթան ուա ֆիլախիրաթի հասանեթան ուա կինա ազաբաննառ:»[2] Մնացած շրջանների ժամանակ, ուխտավորը կարող է կոչել Ալլահին ցանկացած խնդրանքներով: Հետո նա աղոթում է երկու ռակյաթ Իբրահիմի կանգնած վայրի ետնամասում, եթե դա հնարավոր է: Այդ երկու ռակյաթի ժամանակ, նա կարդում է «Քաֆիրուն», («Անհավատներ») սուրան և «Իխլյաս» («Մաքրում ») սուրան: Դրանից հետո, նա ըմպում է Զամզամ ջուրը, որքան շատ, այնքան լավ: Որից հետո, վերադառնում է Սև քարի մոտ և շոշափում է այն,եթե հնարավոր է: Գտնվելով Քարի և Քաբբայի դռների միջև, նա կարդում է դուա: Այս ամենից հետո, ուխտագնացը ուղղվում է աս-Սաֆա բլրի ուղղությամբ, մագլցում է այն և ասում է. «Աբդաու բիմա բադաաԼեհու բիհի,»[3] և կարդումէ Ամենաբարձրյալի Խոսքերը. « Ճշմարիտ աս- Սաֆա և ալ-Մարվա բլուրների միջև վազքը, ծեսերից մեկն է, որը օրհնականացրել

---

[1] «Հանուն Ալլահի և Ալլահը Մեծ է»
[2] «Տեր մեր,պարգևիր մեզ բարիք այս աշխարհում և Վերջին Կյանքում և պահպանիր մեզ Կրակի տանջանքներից:»
[3] «Ես սկսում եմ նրանից, ինչից սկսել է Ալլահը :»

է Ալլահը: Ով կատարում է հաջ կամ փոքր ուխտագնացություն Քաբբա, նա չի մեղանչի, եթե անցնի նրանց միջով: Իսկ եթե մեկը կամովի բարիք է անում, ապա Ալլահը Գոհունակ և Իմացյալ է:» (**Սուրա 2 «Կով», այաթ 158**:) Այս ամենից հետո, նա կրկնում է « Ալլահու Աքբար » և «Լե իլեհե իլա Ալլահ» խոսքերը, շրջվում է Քաբբայի ուղղությամբ, բարձրացնում է ձեռքերը և դուա է կարդում: Այնուհետև նա իջնում է, հասնում է մինչև կանաչ նշանը և վազում է, կամ արագ քայլում է, մինչ հաջորդ նշանը, հետո սովորական քայլերով հասնում է ալ-Մարվա բլուրը և անում է այն, ինչ արել է աս Սաֆա բլուրում, բացի վերոհիշյալ դուաների կարդալուց: Որից հետո, նա իջնում է և անում է նույնը յոթ անգամ: աս- Սաֆայից մինչ ալ- Մավրա կատարած վազքը համարվում է մեկ հատ: Այնուհետև նա կտրում է մազերը կամ սափրում: Բացառություն է կազմում այն ուխտավորը, ով կատարում է ումրա հաջում տամատու, քանի որ նա հաջ է անում դրանից հետո: Ինչ վերաբերվում է կիրան կամ իֆրադ կատարողներին, ապա նրանք դուրս չեն գալիս իհրամի վիճակից տավաֆայից հետո, մինչ Տոնին (ջամրաթու ալ ակաբա) չքարկոծեն: Կինը անում է նույնը, ինչ տղամարդը, բայց նա չի արագացնում քայլերը տավաֆայի և աս-Սաֆա և ալ-Մարվա բլուրների միջև վազքի ժամանակ:

ՀԱՋԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ. Զուլ ել- հիջր ամսվա 8-րդ օրը, ուխտագնացը հագնում է իհրամ, եթե նա այդ չի կրում, և ուղղվում է Մինայի հարթավայր, որպեսզի այնտեղ անց կացնի 9-րդ գիշերը: 9-րդ օրվա արևածագից հետո, նա ուղղվում է Առաֆա և երբ արևը զենիթի դիրքից անցնում է, նա կատարում է զուհր և ասր նամազները, դրանք միացնելով և կրճատելով: Ամբաղջ Արաֆան կանգնելու վայր է, բացի Ուրանա հարթավայրից: Այնտեղ գտնվելու ժամանակ ուխտագնացը պիտի շատ կրկնի. « Լե իլեհե իլա Ալլահու ուահդահու լե շերիկա լեհու, լեհու ել մուլկու ուա լեհու ել համդու, ուա հուվա կուլի շեյին կադիր » և շատ դուաներ է ասում: Նա նաև թողություն է խնդրում և ձգտում է մոտենալ Ալլահին: Արևի մայր մտնելուց հետո, նա հանգիստ և անշտապ ուղղվում է Մուզդալիֆա, արտաբերելով տալբիի խոսքերը և հիշատակելով Ալլահին: Հասնելով Մուզդալիֆա ուխտագնացը կատարում է մաղրեբ և իշա նամազները, կրճատելով և միացնելով դրանք: Այնուհետև գիշերում է այնտեղ: Հետո նա կատարում է ֆաջր նամզաը հենց սկզբից և մնում է այնտեղ դուա կարդալով, մինչ լիարժեք լուսացումը: Մինչ արևածագը նա հեռանում է և հասնում է Մուխասիր հարթավայրը, որպեսզի հաղթահարի այդ վայրը որքան հնարավոր է շուտ: Դրանից հետո նա ժամանում է Մինա հարթավայր և սկսում է գցել յոթ քար «ջամրատու ալ ակաբ»-ից: Քարերը պիտի լինեն սիսեռի կամ ընկույզի չափսի: Ամեն անգամ ուխտագնացը բարձրացնում է ձեռքը, շպրտում է քարը և արտաբերում է «Ալլահու Աքբար» խոսքերը: Անհրաժեշտ պայման է, որ քարերը ընկնեն խորության մեջ, նույնիսկ եթե

նրանք չկպչեն սյանը: Քարերի նետման սկզբով, ուխտագնացը ավարտում է տալբիյան: Հետո նա դնում է զոհաբերվող կենդանին, որից հետո կարճեցնում է մազերը կամ սափրում է գլուխը: Այդ ամենի ավարտից հետո ուխտավորին թույլատրվում է ամեն ինչ, ինչ արգելված էր իհրամի ընթացքում, բացի սեռական հարաբերությունից: Այս առաջին, մասնակի դուրս գալն է իհրամից: Այնուհետ նա վերադառնում է Մեքքա և կատարում է նոր տավաֆ (տավաֆ ալ իֆադա), որը պարտադիր է և որով ավարտվում է հաջը: Եթե նրա հաջը տամատու է, կամ եթե նա չի վազել տավաֆ ժամանման, ապա այս ամենից հետո նա յոթ անգամ վազում է աս- Սաֆա և ալ-Մարվա բլուրների միջև: Այդ ամենի ավարտից հետո, նրա համար ավարտվում են իհրամի բոլոր արգելքները, նրան թույլատրելի է դառնում ամեն ինչ, նույնիսկ սեռական հարաբերությունը: Սա իհրամի վիճակի երկրորդ և վերջնական դուրս գալն է:

Դրանից հետո նա վերադառնում է Մինա հարթավայր և պարտադիր կարգով այնտեղ անց է կացնում տաշրիկի 11-րդ, 12-րդ և 13-րդ օրերը: Այնտեղ ամեն օրվա կեսօրից հետո, նա քարեր է նետում: Սկզբում նա նետում է յոթ քար առաջին սյան վրա, հետո առաջ է շարժվում և կանգ է առնում, կարդում է դուա և նետում է յոթ քար միջին սյան վրա և նորից կարդում է դուա, հետո յոթ քար վերջին սյան (ջամրատ ալ- ակաբա) վրա կանգ չառնելով դրանից հետո: Նույնը նա անում է երկրորդ օրը: Եթե ուխտագնացը շտապում է, նա պիտի լքի Մինա հարթավայրը մինչ 12-րդ օրվա արևի մայր մտնելը: Եթե այդ օրվա արևը մայր է մտել և նա դեռ գտնվում է Մինա հարթավայրում, ապա նա պարտավոր է գիշերել այնտեղ և քարեր նետել հաջորդ օրը: Բացառություն են կազմում այն դեպքերը, երբ նրան խոչընդոտել են մարդկանց բազմությունը, բայց նա հստակ մտադրվել է դուրս գալ: Այս դեպքում նա կարող է դուրս գալ արևի մայր մտնելուց հետո: Հաջ կիրան կատարողը նման է հաջ իֆրադ կատարողի, միայն նա պարտավոր է զոհաբերություն անել, ինչպես հաջ տամատու կատարողը: Տուն վերադարձող ուխտագնացը պետք է հրաժեշտ տա Տանը (Քաբբային), կատարելով տավաֆ: Կինը, ով ետծննդյան արյունահոսության կամ ամսեկանի մեջ է, պարտավոր չէ կատարել հրաժեշտի տավաֆը: Եթե ուխտագնացը դրանից հետո զբաղվել է առք և վաճառքով, նա պիտի կրկնի այդ կրկին: Ով դուրս է եկել չկատարելով հրաժեշտի տավաֆ, պետք է վերադառնա, եթե գտնվում է մոտիկ: Եթե նա արդեն մեկնել է հեռու, ապա նա պետք է զոհաբերություն տա, որպես թողություն:

## ՀԱՋԻ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ՌՈՒԿՆ)

1.Հաջի ծեսերի կատարման մտադրությունը նշանակված վայրից (միկատ);
2. Արաֆայում կանգնելը մինչ արևի մայր մտնելը;
3.Մուզդալիֆում գտնվելը մինչ կեսգիշեր;
4. Տաշրիկ օրերին Մինայում մնալը;

5. Քարերի նետումը; 6. Մազերի կարճացնելը կամ սափրելը;
7.Հրաժեշտի տավաֆ (տավաֆ ալ- վադա);
8. Մուտամատիի և կարինի պարտադիր զոհաբերությունը:

ՈՒՄՐԱՅԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ՌՈՒԿՆ).

1. Ումրայի ծեսերի կատարման մտադրությունը: 2. Տավաֆ, որը վերաբերվում է ումրային: 3. Ումրային վերաբերվող վազքը:

ՈՒՄՐԱՅԻ ՊԱՐՏԱԴԻՐ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ՈՒԱՋԱԲ).

1. Ումրայի ծեսերի կատարման մտադրություն, նշանակված վայրից (միկատ):
2. Մազերի կարճեցումը կամ սափրումը:

Ով թողել է ռուկունի իրականացումը, առանց այս մեկի, նրա հաջը չի համարվում կատարված: Ով չի կատարել ուաջաբը, նա պիտի տա թողության զոհաբերություն: Նա, ով չի կատարել այն, ինչ սուննա է, չունի ոչ մի պայման իր առջև:

ՔԱԲԲԱՅԻ ՇՐՋԱՅՑԻ (ՏԱՎԱՖ) ՃԻՇՏ ԿԱՏԱՐՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ;

1. Իսլամ: 2. Գիտակցություն: 3. Որոշակի մտադրություն: 4. Կատարման ժամանակի սկիզբ: 5. Ուխտագնացի մարմնի այն մասերի ծածկումը, որոնք հանդիսանում են աուրա, եթե կա այդ հնարավորությունը: 6.Ծիսական մաքրության վիճակում գտնվելը, որը չի վերաբերվում երեխաներին: 7. Քաբբայի յոթ անգամ շրջանցի համոզվածությունը: 8.Շրջայցի ժամանակ Քաբբայի ձախ կողմում լինելը և այն շրջանների կրկին անցումը, որոնցում եղել է շփոթմունք չկատարելով այս պայմանը: 9. Շրջայցի ժամանակ, ետ չվերադառնալը: 10. Ինքնուրույն տեղաշարժումը, ովքեր ի վիճակի են: 11. Բոլոր յոթ շրջանները, անցումը մեկը մյուսի ետևից, առանց դադարի: 12. Շրջայցը կատարումը ալ Հարամ մզկիթի ներսում: 13. Շրջայցը սկսելը Սև քարից:

ՏԱՎԱՖԱՅԻ ԺԱՄԱՆԱԿՎԱ ՍՈՒՆՆԱ Է, շոշափել Սև քարը, համբուրել այն, և նրա մոտ « Ալլահու Աքբար » խոսքերը արտաբերել: Քաբբայի անկյուններին կպնելը, որոնք ուղղված են Յեմենի կողմը: Իհրամ թիկնոցի ընտրությունը, յուրահատուկ ձևով, քայլերի արագացնել և դանդաղեցնելը, կախված պահանջից: Ինչպես նաև դուայի կարդալը և Ալլահին հիշատակելը: Քաբբային մոտենալը և երկու ռակյատով աղոթք անելը տավաֆայից հետո, Իբրահիմի կանգնած վայրի ետնամասում:

ՎԱԶՔԻ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ (ՍԱԱԻ);

1. Իսլամ: 2. Գիտակցություն: 3. Մտադրություն: 4. Անդադարություն: 5.Ինքնուրույն տեղաշարժում, եթե հնարավոր է: 6. Երկու բլուրների միջև տարածության հաղթահարում: 7. Երկու բլուրների միջև տարածության լիակատար հաղթահարում: 8. Դրան ճիշտ կատարված տավաֆի նախորդում: 9. Աս- Սաֆա բլրից կենտ վազք, իսկ Ալ-Մարվայից զույգ:

ՎԱԶՔԻ ՍՈՒՆՆԱՆ. Մաքրությունը,որը իր մեջ ներառում է ծիսական մաքրությունը, հագուստը: Աուրայի ծածկելը, դուայի կարդալը և Ալլահին

հիշատակելը, ինչպես նաև արագացված և սովորական քայլքը, երկու բլուրների բարձրանալը, և տավաֆից անմիջապես հետո վազքի կատարելը:

ԾԱՆՈՒՑՈՒՄ. Ամենից լավ է նետել քարեր նույն օրը, սակայն նետումը վավերական կլինի նաև տաշրիկայի երկրորդ և երրորդ օրերի ժամանակ:

ԶՈՀԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ. Հաստատված սուննա է: Երբ գալիս է զուլ ել հիջր ամսվա 10 -րդ օրը, զոհաբերություն կատարողին արգելվում է առանձնացնել իր մազերից, մաշկից և եղունգներից որևէ մաս այնքան ժամանակ, մինչ նա չի մորթել զոհաբերվող կենդանուն:

ԱԿԻԿԱ. Այն սուննա է: Ծնված օրվանից յոթ օր հետո,տղա երեխայի համար մորթում են երկու ոչխար, իսկ աղջկա համար մեկ: Սուննա է նաև նույն օրը մազերի սափրելը և բարեգործության բաժանելը արծաթի տեսքով, որը համապատասխանում է մազերի քաշին: Այդ ժամանակ էլ երեխային անուն են տալիս: Լավագույն անուններն են Աբդուլլան և Աբդուռռահմենը: Արգելված է երեխային կոչել այնպիսի անուններով, որը չի նշանակում Ալլահի ստրուկ: Այդ անուններից են Աբդուննաբի, Աբդունռասուլ: Եթե ակիկան համընկնում է զոհաբերության օրվա հետ, ապա կարելի է սահմանափակվել դրանցից մեկով:

ՕԳՏԱԿԱՐ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ.

Մարդ, ով այցելում է Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) մզկիթը Մեդինայում, պիտի մտնի մզկիթ և աղոթի մզկիթի ողջույն, երկու ռակյատով: Հետո նա պիտի մոտենա Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) գերեզմանին և կանգնի նրա դիմաց, Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) գլխի ուղղությամբ, և մեջքը շրջած կիբլայից: Միևնույն ժամանակ հավատացյալի սիրտը պիտի լի լինի հրճվանքով կարծես իրոք նա տեսնում է Մարգարեին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ): Դրանից հետո, նա պիտի արտաբերի հետևյալ ողջույնը «Խաղաղություն քեզ, օ, Ալլահի Մարգարե:»[1] Ողջույնը կարող է լինել ավելի երկար: Հետո նա պիտի շարժվի աջ արմուկի երկարությամբ և ասի. «Խաղաղություն քեզ օ, Աբու Բաքր աս- Սադիկ: Խաղաղություն քեզ, Օ, Ումար ալ-Ֆարուկ: Օ, Ալլահ, տուր նրանց իրենց Մարգարեյից և իսլամից բարիք:»[2] Սրանից հետո, նա պիտի շրջվի կիբլային այնպես, որ սենյակը գտնվի նրանից ձախ և դիմի Ամենաբարձրյալին խնդրանքով:

---

[1] «Ասսալյամ ալեյկա յա ռասուլիլլահ:»

[2] «Ասսալյամ ալեյկա յա Աբու Բաքր աս- Սադիկ, ասսալյամ ալեյկա յա Ումար ալ-Ֆարուկ: Ալլահումմա ջազահումա ան նաբիիհիմա ուա անիլ իսլամի խեյրան:»

## ՕԳՏԱԿԱՐ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՏԱՐԲԵՐ ԹԵՄԱՆԵՐՈՎ

✸ ՎԱՏ ԱՐԱՐՔՆԵՐԸ ԿԱՐԵԼԻ Է ՄԱՔՐԵԼ և ՔԱՎԵԼ ՀՈՏՆՑԱԼ ԿԵՐՊՈՎ.
Պետք է անկեղծ զղջալ, խնդրել, բարի գործեր անել, որպեսզի Ալլահից ուղարկված փորձությունները հաղթահարել: Կարելի է բարեգործություն տալ, որը կոչվում է սաղակա, կարելի է կարդալ դուա, աղոթել: Եթե մարդու մահվան ժամանակ դեռ գոյություն ունեն չներված մեղքեր, ապա նա պատժի է ենթարկվում գերեզմանում կամ Դատաստանի Օրը կամ Դժոխքի կրակներում այնքան ժամանակ, մինչ չի մաքրվում, որից հետո նա կմտնի Դրախտ, եթե մահացել է Միաստվածության հետևորդ լինելով: Իսկ նրանց, ովքեր մահացել են կեֆիր, մուշրիկ, կամ փարիսեցի, սպասվում է Կրակում հավերժ բնակություն:

ՄԵՂՔԵՐԻ և ԱԼԼԱՀԻՆ ԱՆՀՆԱԶԱՆԴՈՒԹՅԱՆ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՐԴՈՒ ՎՐԱ.
Դրանցից են;

✸ Ազդեցություն սրտի վրա, որոնք բերում են միայնակության, ճնշման, անհանգստության,մթության զգացում: Նրան նվաստացնում են, բերում են հիվանդություն և կարծես վարագույրով ծածկում են Ալլահից:

✸ Ազդեցություն կրոնի վրա: Դրանք իրենց հետ բերում են նոր մեղքեր և արարքներ, որոնք ետ են մղում Ալլահին հնազանդվելուց, լավ արարքներից և զրկում են մարդուն Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) հրեշտակների և հավատացյալների բարի աղոթքներից:

✸ Ազդեցություն ճակատագրի վրա: Դրանք խոչընդոտում են ճակատագրի ստացմանը, հեռացնում են բարիքը և զրկում են ունեցվածքը օրհնությունից:

✸ Դրանց ազդեցությունը առանձին մարդու վրա: Դրանք մաքրում են կյանքի ապրելաձևի առաքինությունը, լցնում են այն զրկանքներով և բարդացնում են մարդու գործերը:

✸ Մեր կողմից կատարվող արարքների վրայի ազդեցությունը: Դրանք խոչընդոտում են Ալլահի կողմից ընդունվելուն:

✸ Ազդեցություն հասարակության վրա: Դրանք հեռացնում են անվտանգությունը և հանգստությունը, ազդում են գների բարձրացմանը, իշխանավորների կամայականություններին: Դրանց շնորհիվ թշնամին տնօրինում է, դադարում է արձրևը և այլն:

✸ ԱՆՀԱՆԳՍՏՈՒԹՅՈՒՆ. Յուրաքանչյուրի ցանկությունն է սրտի ուրախությունը և թեթևությունը, տխրության և կարիքների վերացումը: ՄԻայն այսպես կարելի է հասնել բարեկեցիկ կյանքի: Իսկ դրան հասնելուն նպաստում են որոշակի կրոնական, բնական և գործնական միջոցները, որոնք չի կարող ընտրել ոչ ոք, բացի հավատացյալից: Դրանց թվում են.
1. Հավատքը Ալլահին: 2. Ամենաբարձրյալ Ալլահի հրամանների կատարելը և Նրա արգելքներին հետևելը: 3. Բարեգործությունը խոսքերով և արարքներով Ալլահի արարածների նկատմամբ: 4. Օգտակար գործերով

զբաղվելը կամ օգտակար կրոնական գիտելիքներ ձեռք բերելը: 5. Անցյալի կամ ապագայի անօգուտ մտորումները թողնելը և ամենօրյա գործերով զբաղվելը: 6. Ալլահի հաճախակի հիշատակելը: 7. Մարդկանց Ալլահի գաղտնի և պարզ գթասրտության պատմելը: 8. Պետք է նայել նրանց, ովքեր մեզանից ցածր են դիրքով, այլ ոչ թե նրանց, ում տրված է աշխարհիկ ավելի շատ բարիք, քան մեզ: 9. Ջանքերի ներդնումը, որպեսզի հեռացնել այն, ինչ ծնում է տխրություն և բեռ և ձգտում նրան, ինչ բերում է ուրախություն: 10. Ալլահին դիմելը այնպիսի աղոթքներով, որոնցով դիմում էր Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալամ*), որպեսզի ազատվեր տխրությունից և կարիքից:

Իբրահիմ ալ-Հավասը, թող Ալլահը ների նրան, ասաց. «Սրտի դարման են հանդիսանում հինգ բան. Ղուրանի ընթերցումը, նրա այաթների մասին մտորումը, դատարկ փորը, գիշերը աղոթելը, հնազանդ խնդրանքը, Ալլահին դիմելը լուսաբացին և առաքինիների հետ զրույցը:»

✸ ԱՄՈՒՍՆՈՒԹՅՈՒՆ. Ամուսնանալը ցանկալի է, սուննա է, այն մարդու համար, ով ցանկություն ունի հակառակ սեռի նկատմամբ, բայց, ով չի վախենում, որ կշնանա: Այն համարվում է թույլատրելի (մուբահ) նրա համար, ով չի զգում կիրք և պարտադիր (ուաջաբ) այն մարդու համար, ով վախենում է, որ կարող է շնանալ: Տվյալ պարագայում այն առաջնակարգ է, համեմատած հաջի հետ: Տղամարդուն արգելվում է նայել օտար կնոջ, ինչպես նաև կրքով նայել տարեց կնոջը կամ անչափահաս տղային:

ԱՄՈՒՍՆՈՒԹՅՈՒՆԸ ՎԱՎԵՐԱԿԱՆ Է ՄԻԱՅՆ ՀԵՏԵՎՅԱԼ ՊԱՅՄԱՆՆԵՐԻ ՊԱՐԱԳԱՅՈՒՄ.

1. Ամուսինների հստակ որոշումը: Որովհետև, երբ խնամակալը ունի մի քանի դուստր, ապա նրա խոսքերը «Ես տալիս եմ կնության իմ դուստրերից մեկին» չի համարվում վավերական:
2. Գիտակից և չափահաս (մուկալլաֆ) տղամարդու և ազատ և գիտակից կնոջ համաձայնությունը:
3. Խնամակալի ներկայությունը: Առանց նրա, կնոջ ինքնուրույն կայացած ամուսնությունը անվավեր է: Նրան ամուսնացնում է միայն վալին, բացառությամբ այն դեպքերի, երբ նա մերժում է նրան ամուսնացնել այն մարդու հետ, ով ամեն ինչով համապատասխանում է նրան: Խնամակալի իրավունքը պատկանում է աղջկա հորը:[1] Նրան հետևում է հորական պապը, ապուպապը և այլն: Հետո որդին, ով չափահաս է, թոռը տղայի կողմից և այլն: Նրանց հետևում է հարազատ եղբայրը, հետո եղբայրը հոր կողմից, հետո զարմիկը և այլն:
4. Վկաներ, երկու արդար, գիտակից և չափահաս տղամարդ:
5. Արգելքի բացակայությունը, որը իրենից ներկայացնում է կաթի կամ արյունակցական կապը կամ ամուսնական բարեկամությունը:

[1] Կարևոր է նշել, որ խնամակալը իրավունք չունի ստիպողաբար ամուսնացնել իր խնամյալին:

ԿԱՆԱՅՔ, ՈՒՄ ՀԵՏ ԱՐԳԵԼՎԱԾ Է ԱՄՈՒՍՆԱՆԱԼ.

ՑՄԱՀ ԱՐԳԵԼՔ Է.

1. Արյունակցական բարեկամությունը, մայրը, տատը, դուստրը, որդու դուստրը, թոռան դուստրը և այլն, ինչպես նաև քույրը, հարազատ կամ մոր կամ հոր կողմից, քրոջ դուստրը, նրա որդու կամ դստեր դուստրը, եղբոր դուստրը հոր կամ մոր կողմից, նրա դուստրերը, հորաքույրները կամ մայրերը:

2. Կաթնային բարեկամություն; Այն արգելում է այն խմբերը, որոնք և արյունակցականը, նույնիսկ եթե խոսքը վերաբերվում է ամուսնական բարեկամությանը:

3. Ամուսնությամբ բարեկամությունը, որը ներկայացնում են կնոջ մայրը և տատը, նախնիների և ժառանգորդների կանայք, կնոջ դուստրերը, նրա երեխաների դուստրերը, թոռները և այլն:

ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԱՐԳԵԼՔ.

1. Միանալու պատճառով, ինչպես արգելք ամուսնանալ երկու հարազատ քույրերի, կամ աղջկա, կամ նրա մորաքրոջ և այլն:

2. Պատճառով, որը կարող է անհայտանալ, ինչպես արգելք ամուսնանալ ուրիշի հետ ամուսնացած կնոջ հետ:

ԾԱՆՈՒՑՈՒՄ. Տղամարդու ծնողները իրավունք չունեն ստիպել նրան ամուսնանալ որևէ մեկի հետ անկախ իր կամքից: Նա պարտավոր չէ ենթարկվել նրանց այդ հարցում:[1] Եվ այդ չի դիտվի որպես անհարգալից վերաբերմունք ծնողների նկատմամբ:

Ամուսինը պարտավոր է ապահովել կնոջը սննդով, հագուստով և բնակարանով:

✷ ԱՄՈՒՍՆԱԼՈՒԾՈՒԹՅՈՒՆ. Արգելվում է կնոջը ամուսնալուծություն տալ հայդի, նիֆասի կամ մաքրության ժամանակ, որի ընթացքում ամուսինների միջև եղել է սեռական հարաբերություն, բայց միևնույն ժամանակ ամուսնալուծությունը կարող է հաշվի առնվել: Անցանկալի (մակրուհ) է համարվում ամուսնալուծությունը առանց որևէ պատճառի: Ամուսնալուծությունը թույլատրվում է, եթե կա անհրաժեշտություն: Ամուսնալուծությունը համարվում է ցանկալի այն մարդու համար, ում ամուսնությունը վնաս է պատճառում: Պարտադիր չէ ենթարկվել ծնողներին ամուսնալուծության հարցում: Կնոջից ամուսնալուծվել ցանկացողին արգելվում է այդ անել անմիջապես մեկ անգամից: Այսինքն արտաբերել տալակի բանաձևը մի քանի անգամ անընդհատ, համարելով ամեն այդպիսի արտաբերումը առանձին ամուսնալուծություն:

✷ ԵՐԴՈՒՄՆԵՐ. Նրանց թողությունը պարտադիր է դառնում հետևյալ պայմաններում.

1. Եթե մարդ նպատակ է ունեցել երդման: Եթե նա ինչ որ բան է ասել նկատի

---

[1] Այս վերաբերվում է և կանանց և տղամարդկանց :

չունենալով երդվելը, այդ կոչվում է դատարկաբանություն երդման մեջ: Այդպիսի խոսքերից են օրինակ «Ուալլահ» բառը, որը օգտագործվում է խոսակցության մեջ առանց նկատի առնվելու որպես երդում:
2. Եթե երդումը վերաբերվում է ապագայում ինչ որ հնարավորի մասին և հաշվի չի առնվում երդումը, կապված անցյալի հետ, որի մասին նա տեղեկություններ չունի, կամ համոզված է իր ճշտության վրա, երբ մարդ երդվում է ինչ որ բանում, համոզված լինելով, որ ամեն ինչ այդպես է, ինչպես նա երդվում է, իսկ հետո ստացվում է, որ ամեն ինչ այդպես չէ: Կամ մտադրված սուտ երդումը, որը արդեն մեծ մեղքերի թվում է: Եվ երբ մարդ երդվում է մի բանում, որը լինելու է ապագայում, և նա համոզված է իր ճշտի մեջ, իսկ հետո պարզվում է, որ ամեն ինչ այլ կերպ է:
3. Եթե երդումը եղել է կամավոր, ապա մարդուն ոչ ոք չի կարող պարտադրել:
4. Եթե երդումը խախտվել է, ինչպես եթե մարդ արել է այն, ինչ երդվել է թողնել, կամ թողել է այն, ինչ երդվել է անել:
Ով, երդվելով բացառություններ է արել, այսինք իր երդումը թողել է Ալլահի կամքին, և հետո արել է այդպես, ապա այդ դեպքում նա պարտավոր չէ քավել իր երդումը: Բայց այս դեպքում էլ անհրաժեշտ է հետևել երկու պայմանի.
1. Բացառությունը պիտի հնչի երդման հետ միասին:
2. Այդ բացառությամբ մարդ պիտի ենթադրի, որ երդումը կախված է դրանից, օրինակ, երբ նա ասում է. «Ուալլահ, նշահԱլլահ», որը նշանակում է «Երդվում է Ալլահով, եթե Ալլահը ցանկանա:»
Ով երդվել է անել ինչ որ բան, իսկ հետո պարզել է, որ ավելի լավ և օգտակար է այլ կերպ վարվել, ապա ցանկալի է քավել երդումը և անել այն, ինչ լավ է: Այս սուննա է:
ԵՐԴՄԱՆ ՔԱՎՈՒԹՅՈՒՆԸ. Այդ կարող է լինել տաս աղքատի կերակրելը, հագուստ տալը, կամ ստրուկին ազատելը: Իսկ ով չի կարող, նա պիտի պահք պահի երեք օր: Ով պահք է պահել հնարավորություն ունենալով կերակրել և հագցնել աղքատներին, նրանից քավության պատասխանատվությունը չի վերցվում: Քավությունը կարելի է անել և երդման խախտումից առաջ և հետո: Եթե մարդ երդվել է նույն բանի համար մի քանի անգամ, նրան բավարար է մեկ քավությունը: Իսկ եթե երդումները կապված են եղել տարբեր բաների հետ, ապա այս դեպքում անհրաժեշտ է մի քանի քավություն:
✸ ՈՒԽՏ, ԽՈՍՏՈՒՄ. Դրանք լինում են տարբեր տեսակի.
1. Ուխտ առանց սահմանման: Օրինակ երբ մարդ ասում է. «Եթե ես ապաքինվեմ, ապա ես ուխտ ունեմ Ալլահին:» Այս ասելով, եթե մարդ լռում է, և նա մտադրված չէ որևէ որոշակի ուխտի, ապա ապաքինումից հետո, նա պիտի քավի իր ուխտը նույն ձևի, ինչպես երդման քավության ժամանակ:
2. Ուխտ, որը տրվում է բարկության կամ վեճի ժամանակ, երբ մարդ կապում

է այն որոշակի պայմանների հետ, ցանկանալով արգելել ինչ որ մեկին անել ինչ որ բան կամ հակառակը, ստիպել ինչ որ մեկին անել ինչ որ բան: Այդպիսի խոսքեր են. «Եթե ես խոսեմ քեզ հետ, ապա պահք կպահեմ ամբողջ տարին:» Այս դեպքում ուխտ անողը ընտրում է կատարել այդ, թե քավել, այն բանից հետո, երբ խոսել է այդ մարդու հետ:
3. Թույլատրելի ուխտ, ինչպես. «Ես Ալլահին ուխտ եմ անում, որ կհագնեմ իմ հագուստը:» Տվյալ դեպքում, մարդ ընտրում է հագուստը կրելու և քավության միջև:
4. Անցանկալի ուխտ (մակրուհ), օրինակ. « Ալլահին իմ ուխտն է, որ ես կամուսնալուծվեմ իմ կնոջից:» Տվյալ դեպքում, ինչպես սուննա, ցանկալի է ուխտը փոխարինել քավությամբ:
5. Ուխտ, որը հանդիսանում է Ալլահին չլսելը, օրինակ. «Իմ ուխտն է, որ ես գողություն կանեմ:» Այսպիսի ուխտը արգելվում է իրականացնել, այդ պատճառով, այն պիտի քավվի: Եթե մարդը այդ իրագործում է, ապա այդ դառնում է մեղք և քավություն չի պահանջվում:
6. Ուխտ, որը հանդիսանում է Ալլահին հնազանդվելը, օրինակ. « Ես ուխտ եմ անում, կատարել այսքան ռակյատ աղոթք», որպեսզի մերձենամ Ալլահին: Իսկ եթե նա այդ կապում է պայմանով, ապա նա պիտի կատարի այդ այն դեպքում, եթե տվյալ պայմանը իրականացել է: Իսկ եթե այդ կապված չի եղել որևէ պայմանով, ապա այն ամեն դեպքում պիտի կատարվի:
✸ ԿՐԾՔՈՎ ԿԵՐԱԿՐԵԼԸ. Այն արգելք է դարձնում այն, ինչ արգելք է համարում արյունակցական կապը, երեք պայմանների կատարմամբ.
1. Կաթի արտադրվածության պատճառը պիտի լինի ծննդաբերությունը:
2. Երեխային կերակրելը, պիտի լինի ծնված օրվանից, երկու լուսնային տարի:
3. Պիտի համոզվածություն լինի, որ կերակրումը կատարվել է հինգ և ավել անգամ: Մեկ անգամ նկատի է առնվում, որ երեխան բռնել է կուրծքը և որոշ ժամանակ անց բաց է թողել այդ և չի կշտացել: Կաթնային կապը ժառանգության և ապահովման իրավունք չի տալիս:
✸ ԿՏԱԿ. Այդ պարտադիր է այն մարդու համար, ով մահանում է: Եթե նա ունի չհաստատված պարտավորություններ ինչ որ մեկի առջև և այդ պատճառով նա կտակում է կատարել այդ պարտավորվածությունները: Դա սուննա է հանդիսանում այն մարդու համար, ով իրենից հետո մեծ կարողություն է թողնում: Ցանկալի է, որ այդ ունեցվածքի մեկ հինգերորդ մասը նա թողնի աղքատ բարեկամին, ով չի մտնում ժառանգների ցուցակում, կամ չունևորի, ով գիտելիքներ ունի, կամ ուղղակի առաքինի մարդու: Անցանկալի է ժառանգորդ ունեցողին, ունեցվածքը կտակել ուրիշին: Այդ կարելի է, եթե ժառանգորդները հարուստ են: Արգելված է օտարին ժառանգություն տալ մեկ երրորդից ավելին:Արգելվում է նաև կտակել ինչ որ բան ժառանգին, եթե մնացյալ ժառանգները չեն համաձայնվել դրան, տվյալ մարդու մահից հետո: Կտակը կորցնում է իր ուժը, եթե այդ մարդը ասում է. «Ես հրաժարվում եմ իմ կտակից:» «Ես

անվավեր եմ համարում այդ:» «Ես փոխում եմ այդ» և այլն: Ցանկալի է կտակի սկզբում գրել «Բիսմիլեհի ռռահմեն ռռահիմ: Սա այսինչի կտակն է: Այն վկայում է, որ չկա աստված բացի Ալլահից, Միակից, Ով չունի զուգընկեր և որ Մուհամեդը Նրա ստրուկն ու Մարգարեն է, և որ Դրախտը ճշմարիտ է, և որ Դժոխքը ճշմարիտ է և Ժամը կգա և այդ մասին չկա կասկած, և որ Ալլահը հարություն կտա նրանց, ովքեր գերեզմանում են: Եվ ես կտակում եմ իմ մերձավորներին, որոնց ես թողնում եմ, վախենալ Ալլահից և լավ հարաբերություններ պահպանել միմյանց հետ և ենթարկվել Ալլահին և Նրա Մարգարեյին, եթե նրանք հավատացյալներ են: Եվ ես նրանց կտակում եմ նույնը, ինչ կտակել են Իբրահիմը և Նոյը իրենց զավակներին. « Օ, Իմ որդիներ, Ալլահը ընտրել է ձեր համար կրոն: Եվ մահացեք միայն լինելով մուսուլմաններ:» (Սուրա 2 «Կով», այաթ 132):»

✷ Ցանկալի է Մարգերյի (Սալլալահու ալեյհի ուա սալամ) օրհնության կոչին միավորել օրհնությունը և ողջույնը և չսահմանափակվել դրանցով մեկով, այսինքն ասել «Սալլալահու ալեյհի ուա սալամ» կամ «Ալլեյհի սսալյաթու ուա սսալյամ », այլ ոչ թե « Ալլեհի սսալամ:» Հետևյալ բանաձևը չի ընդունվում ոչ ոքի համար, բացի մարգարեներից: Երբեք չի ասվի. «Աբու Բաքր, խաղաղություն նրան:» Այդ բավական անցանկալի է, բայց թույլատրելի է, գիտնականների կարծիքով կարելի է որևէ մեկին ավելացնել մարգարեներին, կոչելով նրանց օրհնություն և ասել. «Օ, Ալլահ, օրհնիր Մուհամեդին և Մուհամեդի ընտանիքը և նրա հետևորդներին, կանանց և ժառանգներին:»

Ցանկալի է համարվում, կոչել Ալլահի գոհունակությունը և գութը հետևորդներին և սերունդներին, ովքեր գտնվել են նրանց ժամանակ, բայց ոչ թե Մարգարեյին, տաբիուն: Ինչպես նաև գիտնականներին, սրբերին և իսլամում մեծ հաջողությունների հասած մարդկանց և ասել. «Աբու Հանիֆա, Մալիք, Շաֆիա Ահմեդ, թող Ալլահը գոհանա նրանցով, կամ, թող Ալլահը ների նրանց:»

✷ ԱԼԼԱՀԻ ԱՆՎԱՆ ԿՈՉԵԼԸ ԿԵՆԴԱՆՈՒ ՄՈՐԹԻ ԺԱՄԱՆԱԿ. Ամեն կենդանու վրա, 1, որի միսը թույլատրելի է ուտել, 2,որը գտնվում է մարդու տնօրինության տակ և 3, որը գտնվում է ցամաքում, անհրաժեշտ է հիշատակել Ալլահի անունը, որպեսզի միսը լինի թույլատրելի:

Դրա համար կան մի քանի պայմաններ; 1. Կենդանու վրա Ալլահի անունը հիշատակողը պիտի լինի գիտակից, ոչ թե խելագար: 2. Մորթի գործիքը չպիտի լինի ժանիքները կամ կլատչերը, քանի որ դրանցով մորթը արգելված է: 3. Կոկորդի, փորի կամ որևէ կարևոր երակի կտրելը:

4. «Բիսմիլեհ» խոսքի օգտագործումը, մորթի ժամանակ: Կարելի է այդ չասել արաբերեն: Սուննա է «Բիսմիլեհ» խոսքից հետո, «Ալլահու Աքբար» խոսքերի ասելը: Եվ եթե մարդ մոռացել է ասել դրանք, ապա ներելի է:

✷ ՈՐՍ Այն վայրի կենդանու բռնելն է, 1, որի միսը թույլատրելի է ուտել և

2, որը հնարավոր չէ գտնել, բացի որսալուց:

3, Որսը թույլատրելի է, եթե նպատակն է կոնկրետ տվյալ կենդանու ձեռք բերելը:

Այն դառնում է անցանկալի (մակրուհ), եթե նրա նպատակը հրճվանքն կամ հաճույքն է: Արգելվում է նաև այն դեպքում, երբ կենդանուն հետևելով մարդ վնասում է կացարանները և ցանքերը:

Որսը թույլատրելի է հետևյալ պայմաններին հետևելու դեպքում.

1. Որսորդը պիտի լինի նրանցից, որի Ալլահի անունը տալը կենդանու վրա, համարվում է վավեր: 2. Որսի գործիքները պիտի լինեն այնպիսի, որ միսը հնարավոր լինի ուտել: Այն պիտի սուր լինի: Իսկ եթե այդ որս է շներով և բազեյով, նրանք պիտի վարժեցրած լինեն: 3. Գործողությունը պիտի մտադրված լինի: Եթե ամեն ինչ պատահական է ստացվել, առանց որսորդի մտադրության, սպանվածի միսը արգելվում է ուտել: 4.«Բիսմիլեհ» խոսքերի արտաբերումը, զենքը որսին ուղղելուց: Տվյալ պարագայում, եթե մարդը չի հիշատակել Ալլահի անունը, համարվում է աններելի, նույնիսկ եթե նա մոռացել է այդ: Եվ կենդանու միսը, որի վրա չեն ասել Ալլահի անունը, չի կարելի օգտագործել սննդի մեջ:

✸ ՍՆՈՒՆԴ. այն ամենն է ինչ ուտում և ըմպում են: Ամենի հիմքը թույլատրելիությունն է: Ցանկացած սնունդ համարվում է թույլատրելի, եթե կատարվի հետևյալ պայմանները;

1. Սնունդը պիտի մաքուր լինի:

2. Այն չպիտի վնասակար լինի: 3. Այն չպիտի համարվի կեղտոտ և պիղծ:

Արգելվում է որպես սնունդ օգտագործել ամեն աղտը, նաջաս, ինչիսիք են արյունը, սատկած մարմինը: Նաև վնասակարը, ինչպիսիք թույնն է և այն ամենը, ինչ համարվում է կեղտոտ և պիղծ, ինչպես մեզը, թրիքը, ոջիլը և այլն:

Կենդանիներից, որոնք ցամաքում են արգելվում է սննդում օգտագործել խոզի միսը, տնային ավանակի և վայրի կենդանիների միսը, որոնք ունեն ժանիքներ, ինչպես նաև շան, կատվի, կապիկի, աղվեսի, սկյուռիկի և այլն միսը, բացի հեենայից:

Թռչուններից, արգելվում է ուտել նրանց միսը, որոնք բռնում են որսը կլաչներով, ինչպիսիք են արծիվը, բազեն, բուն և այլն: Արգելվում է օգտագործել այն թռչունների միսը, որոնք համարվում են լեշակեր, ինչպիսիք են արագիլը, գրիֆը և այլն:

Նույնպես արգելվում է օգտագործել այն ամենը, ինչ ամբողջ աշխարհում համարվում են վանող, ինչպիսիք են չղջիկը, սովորական մուկը, առնետը, իշամեղուն, մեղուն, ճանճը, օձը և այլն:

Արգելվում է սննդում օգտագործել միջատներ, որդեր, և այլն:

Չի կարելի սննդում օգտագործել արարածներ, որոնք Շարիաթը հրամայում է սպանել, ինչպիսիք են կարիճը կամ արգելում է անել այդ, ինչպիսիք են մրջյունը: Արգելվում է ուտել խառնածին կենդանիների միսը, որի մի կողմինը կարելի է ուտել, իսկ մյուսինը ոչ: Արգելքը չի տարածվում երկու կենդանիների խառնուրդներին, որոնց միսը կարելի է ուտել: Մնացած կենդանիների միսը թույլատրվում է ուտել: Այդ կենդանիներից են ընտանի անասունները, օրինակ ձին և այլ: Թույլատրելի է ուտել այնպիսի

վայրի կենդանիների միսը ինչպիսիք են ընձուղտը, նապաստակը և այլն: Իսկ թռչուններից կարելի է ուտել հավի, հնդկահավի, փասիանի, աղավնու, բադի սագի և այլնի միսը: Կարելի է օգտագործել բոլոր ջրային կենդանիների միսը, բացի գորտից, օձից և կոկորդիլոսից:

✸ Բույսերը, որոնք ջրվում են կամ պարարտացվում են անմաքուր բաներով, (նաջասով), կարելի է ուտել, եթե նրանց մեջ առկա չեն դրանց համը կամ հոտը: Այդ դեպքում դրանց օգտագործումը արգելվում է: Անցանկալի է կուլ տալ քարածուխ, հող, կավ, ինչպես նաև ուտել սոխ և սխտոր հում վիճակում:

Եթե մարդ սովի է մատնվել և նա ստիպված է ուտել որևէ արգելված բան, ապա նա պարտավոր է ուտել ճիշտ այնքան, որքան անհրաժեշտ է կյանքի պահպանմանը:

➢ ԶՍՊՎԱԾՈՒԹՅՈՒՆ, կապված աշխարհիկ բարիքների հետ: Աշխահիկ բարիքներից օգտվելու չափավորվածությունը բերում է հանգստություն և մարմնին և սրտին: Իսկ այդ բարիքներին ձգտելը, հակառակը բերում է չարիք, տխրություն և տագնապ: Այս աշխարհի նկատմամբ սերը ամեն մեղքի հիմք է հանդիսանում, իսկ ատելությունը դրա նկատմամբ, պատճառ ամեն հնազանդության Ալլահին: Աշխարհիկ կյանքի հաճույքներից ձեռնպահ մնալը այն է, երբ դու դուրս ես հանում այս աշխարհը քո կյանքից, չնայած որոշ անկիրթ մարդիկ կարծում են, որ պետք է ազատել ձեռքերը աշխարհիկ բարիքներից, այն ժամանակ երբ սիրտը կարող է կապված մնալ դրանց հետ: Ալլահի Մարգարեն (*Սալլալահու ալեյհի ուա սալամ*) ասաց. «Հիանալի է, երբ լավ մարդու մոտ կա լավ ունեցվածք:» (Ահմեդ)

Աղքատ մարդու վերաբերմունքը ունեցվածքին կարելի է բաժանել հինգ տեսակի.

1.Նա խուսափում է վերցնել ունեցվածք ատելով այն, և վախենալով չարիքից, որը այն բերում է: ԱՅՍ ՄԱՐԴՈՒՆ ԱՆՎԱՆՈՒՄ ԵՆ ԶԵՌՆՊԱՀ ԱՇԽԱՐՀԻԿ ԲԱՐԻՔՆԵՐԻՑ (ԶԱՀԻԴ):

2. Մարդը չի ուրախանում ձեռք բերած ունեցվածքից, բայց նաև չի տածում հակակրանք դրան: ԱՅՍՊԻՍԻ ՄԱՐԴՈՒՆ ԱՆՎԱՆՈՒՄ ԵՆ ԳՈՀ:

3. Մարդ ձգտում է ունեցվածքի և գերադասում է նրա առկայությունը բացակայությունից; Սակայն նա չի ձգտում դրա ձեռքբերման և չի վազում դրա ետևից: Եթե այն գալիս է նրա մոտ, ապա նա ընդունում է այդ և ուրախանում է: Եթե ունեցվածքի ձեռք բերումը պահանջում է որոշակի ջանքեր, նա չի հոգնեցնում իրեն դրանով: ԱՅՍՊԻՍԻ ՄԱՐԴԸ ԱՆՎԱՆՎՈՒՄ Է ԲԱՎԱՐԱՐՎԱԾ:

4. Մարդ չի ձգտում ձեռք բերել ունեցվածք, որովհետև նա ի վիճակի չէ անելու այդ: Միևնույն ժամանակ նա ունի ձգտում դրան և եթե նա ունենա հնարավորություն, նա անկասկած ձեռք կբերեր այդ: ԱՅՍՊԻՍԻ ՄԱՐԴՈՒՆ ԱՆՎԱՆՈՒՄ ԵՆ ՁԳՏՈՂ:

5. Մարդը ծայրահեղ կարիք ունի որոշակի ունեցվածքի, օրինակ սովյալ, բոբիկ: ԱՅՍՊԻՍԻ ՄԱՐԴՈՒՆ ԱՆՎԱՆՈՒՄ ԵՆ ՍՏԻՊՎԱԾ:

# ԹՈՒՅԼԱՏՐԵԼԻ ՀՄԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, ՈՐՈՆՔ ՆՊԱՍՏՈՒՄ ԵՆ ԱՊԱՔԻՆՄԱՆԸ

Ով մտորում է Ալլահի օրենքների մասին, գիտի, որ փորձությունը տիեզերքում Նրա օրենքներից մեկն է և Նրա կանխորոշման մասը: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Մենք անպատճառ կփորձենք ձեզ, որոշ վախերով, սովով, ունեցվածքի, մարդկանց և պտուղների կորուստներով: Ուրախացրու համբերատարներին:» (Սուրա 2 «Կով», այաթ 155)
Սխալվում են նրանք, ովքեր կարծում են, որ սրբերին շրջանցում է ձորձությունը: Ճիշտ հակառակը, այս փորձությունները նշում են այն մարդու իմանը, ում մոտ գալիս են: Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) հարցրեցին «Ո՞վքեր են մադկանց միջից ամենաշատը ենթարկվում փորձության:» Նա ասաց. «Մարգարեները, հետո, սրբերը հետո մարդկանցից լավագույները: Մարդ ենթարկվում է փորձության, ըստ իր հավատքի: Եվ եթե նրա հավատքը ամուր է նրան ավելանում է փորձությունը, իսկ եթե հավատքը թույլ է, նրա փորձությունը մեղմանում է:» (Իբն Մաջա)
Փորձությունը Ալլահի սիրո նշանն է իր ստրուկին: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Ճշմարիտ, Ալլահը եթե սիրի մեկին, ենթարկում է նրան փորձության:» (Ահմեդ): Այդ նշում է նաև այն, որ Ալլահը ցանկանում է բարին Իր ստրուկին: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Եթե Ալլահը ցանկանում է Իր ստրուկին բարիք, նա շտապեցնում է նրա պատիժը, անելով այդ այս աշխարհում: Իսկ եթե Ալլահը ցանկանում է Իր ստրուկին չարիք, Նա չի պատժում նրան մեղքերի համար այս աշխարհում, որպեսզի լիովին պատժի նրան Դատաստանի Օրը:» (Ատ- Տիրմիզի); Նույնիսկ ամենաչնչին փորձություններով Ալլահը մաքրում է ստրուկի մեղքերը: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Ցանկացած մուսուլմանի, ում գոնե ծակել է փուշը կամ հասել է դրանից ավելի լուրջ բան, Ալլահը անպատճառ ներում է դրա համար նրա վատ արարքները, և նա ազատվում է իր մեղքերից, ինչպես ծառը ազատվում է իր տերևներից:» (Ալ-Բուխարի, Մուսլիմ)
Եթե փորձության է ենթարկվում սուրբը կամ բարեպաշտ մուսուլմանը, ապա այդ կծառայի քավություն նրա վատ արարքների համար, կամ կբարձրացնի նրա դիրքը Դրախտում: Մեղսագործի համար փորձությունը կլինի վատ արարքների քավություն և հիշեցում, թե որքան վտանգավոր են դրանք: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Չարիքը հայտնվում է ցամաքում և ջրում այն պատճառով, ինչ անում են մարդկային ձեռքերը և այդ այն բանի համար է, որ նրանք փորձեն միայն մի մասը այն բանի, ինչ արել են, միգուցե նրանք կվերադառնան ճիշտ ուղղու:» (սուրա 30 «Հռոմ» այաթ 41)
ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԼԻՆՈՒՄ ԵՆ ՄԻ ՔԱՆԻ ՏԵՍԱԿԻ. Փորձություն բարիքով, ինչպես ունեցվածքի ավելանալը և փորձություն չարիքով, օրինակ սովը, վախը, ունեցվածքի կորուստը: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Մենք փորձում ենք ձեզ լավով և վատով որպես գայթակղություն:» (Սուրա 21 «Մարգարեներ» այաթ 35) Փորձություններ են նաև հիվանդությունը, մահը, որոնց ամենատարածված պատճառը կախարդությունը, աչքով տալն է,

որը նախանձի արդյունք է: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «**Ամենաշատ մահերը իմ ումմայում, Ալլահի կանխորոշումներից և սահմանումներից հետո, կլինեն աչքից:**» (Ատ- Տայալիսի)

**ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆ ԱՉՔԻՑ և ԿԱԽԱՐԴԱՆՔԻՑ.** Մենք պիտի իմանանք, ինչպես պաշտպանել մեզ աչքից և կախարդանքից մինչ դրանք կհասնեն մեզ և գործել ըստ այդ գիտելիքի: Պրոֆիլակտիկան միշտ էլ բուժումից լավ է: Պաշտպանելու միջոցները շատ քիչ են:

**ԴՐԱՆՑ ԹՎՈՒՄ ԵՆ.**

✸ Տաուհիդի ամրապնդումը հավատքով, որ ամբողջ տիեզերքը տնօրինում է միայն Ալլահը, ինչպես նաև շատ բարիք գործելով:

✸Մարդ միշտ պիտի լավ մտածի Ալլահի մասին, սպասի Նրանից լավը և ապավինի Նրան և ամեն առիթի դեպքում չներշնչի, որ նա հիվանդացել է կամ նրան աչքով են տվել, որովհետև ինքնաներշնչելը ինքնին արդեն հիվանդություն է: [1]. Եթե որևէ մեկի մասին հայտնի է, որ նա վատ աչք ունի կամ զբաղվում է կախարդությամբ, ապա պիտի խուսափել շփվել նրա հետ, ոչ թե վախից այլ պաշտպանվելու նպատակով:

✸ Տեսնելով որևէ բան, որը հաճելի է իրեն,մարդը պիտի հիշի Ալլահին և խնդրի Նրանից օրհնություն: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «**Եթե ձեզանից մեկը տեսնի իր կամ ունեցվածքի մեջ կամ իր եղբոր մեջ ինչ որ բան, որ իրեն դուր է գալիս, թող նա խնդրի Ալլահի օրհնությունը, քանի որ աչքը ճշմարտություն է:** » (Ալ-Հակիմ) Օրհնություն խնդրել նշանակում է ասել. «Բարակալլահու լեկա », որը նշանակում է «Թող Ալլահը տա քեզ բարիք դրանում:»

✸ Կախարդությունից կարելի է պաշտպանվել ամեն առավոտ ուտելով յոթ խուրմա Մեդինայից:

✸ Անհրաժեշտ է պաշտպանություն փնտրել Ալլահից, վստահել Նրան, մտածել Նրա մասին լավ, խնդրել Նրանից պաշտպանություն կախարդությունից և աչքից, և չթողնել Ալլահին հիշելու հնարավորությունը և խնդրել Նրանից պաշտպանություն, որը պիտի ասել առավոտյան և երեկոյան: Այս խոսքերի ազդեցությունը դառնում է ուժեղ կամ թույլ, ըստ Ալլահի Կամքի և կախված է երկու բաներից;

1. Հավատք նրանում, որ այս խոսքերում կա ճշմարտություն և նրանք օգուտ են բերում Ալլահի կամքով:

2. Մարդը պիտի արտաբերի այդ և ընկալի լսողությամբ և սրտով, որովհետև այդ հանդիսանում է դուա: Իսկ անտարբեր և անհավատ արտաբերված դուային պատասխան չի լինի, ինչպես հաղորդել է Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ):

---

[1] Բժիշկ մասնագետները պնդում են, որ օրգանների հիվանդությունների երկու երրորդ մասը ունենն հոգեբանական պատճառ: Այսինքն մարդը ներշնչում է իրեն, որ նա հիվանդ է, երբ իրականում այն գոյություն չունի:

**ՀԻՇԵԼՈՒ ԽՈՍՔԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԸ.** Կան խոսքեր, որոնք պիտի ասվեն առավոտյան, ֆաջր աղոթքից հետո և խոսքեր, որոնք պիտի ասվեն երեկոյան, ասր նամազից հետո: Եթե մուսուլմանը մոռացել է դրանց մասին, նա կարտաբերի դրանք, երբ հիշի:

**ՆՇԱՆՆԵՐ,ՈՐ ՄԱՐԴՈՒՆ ՀԱՍԵԼ Է ԱՉՔԸ և ԴՐԱ ՆՄԱՆ ԲԱՆԵՐԸ.** Չկա հակասություն բժշկության և ռուկիայի միջև, որը սահմանված է Շարիաթով: Ղուրանում կա ինչպես ֆիզիկական այնպես էլ հոգեբանական աղտերի բուժումը: Եթե մարդը չի տառապում որևէ օրգանի հիվանդությունից, ապա վնասի պատճառը կարող է լինել կախարդությունը կամ աչքը: Օրինակ միգրենը, ցավը գլխի այս կամ այն մասում, դեմքի դեղնավուն գույնը, առատ քրտնարտադրությունը, հաճախամիզությունը, ախորժակի կորուստը, սակավարյունությունը, վերջույթների սառելը և տենդը, սրտի արագ բաբախը, ցավը, որը հայտնվում է կամ մեջքի ներքևի, կամ ուսերի մեջ, տխրությունը և ճնշվածությունը, անքնությունը, ուժեղ վախի կամ զայրույթի հայտնվելը, հաճախակի զկռտոցը, հոգոցը, միայնակության հակվածությունը, ապատիան, ծուլությունը և առողջական մյուս խնդիրները, որոնք չունեն բժշկական բացատրություն: Այս նշանները, հայտնվում են վնասի ուժգնությամբ:
Մուսուլմանը պիտի ունենա ուժեղ իման և սիրտ, որոնցում տեղ չեն գտնում ներշնչանքը: Եվ նա չպիտի իրեն ներշնչի, որ հիվանդ է, միայն այն պատճառով, որ տեսել այդ նշաններից մեկը, որովհետև ինքնաներշնչանքը բուժել ավելի դժվար է քան հիվանդությունը: Այս նշաններից մի քանիսը կարող են հայտնվել նույնիսկ առողջ մարդու մոտ, կամ նրանց առաջացման պատճառը կարող է լինել սովորական հիվանդությունը, այլ ոչ թե աչքը: Կրծքավանդակի նեղվածությունը, տխրությունը, ապատիան, կարող է լինել իմանի թուլությունը: Այս պարագայում,մարդ պիտի վերանայի իր հարաբերությունները Ամենաբարձրյալի հետ:

**Եթե հիվանդության պատճառը աչքն է [1], ապա այն բուժում են Ալլահի կամքով,երկու միջոցով;**

1. Եթե հայտնի է նա, ով աչքով է տվել, նրան հրամայում են կատարել լիակատար լվացում, որից հետո հիվանդը **վերցնում** է նրա օգտագործած ջուրը և լցնում է իր վրա: 2. Եթե նա անհայտ է, ապա բուժումը ռուկյեն է, դուան և արյան քիչ քանակության հանելը մարմնից, որը կոչվում է հիջեմա:

---

[1] Աչքով տալ, այն վնաս է, որը գալիս է ջինի միջոցով Ալլահի կամոք: Այն հանսում է մարդուն նկարագրությամբ կամ հիացմունքով այն մարդու, որին այցելում է շեյթանը և նույն ժամանակ բացակայում է որևէ խոչընդոտ, Ալլահին հիշելը, աղոթքը և այլն : Աչքի գոյությունը հաստատվում է հադիթով .«Աչքը ճշմարտություն է :» (ալ- Բուխարի): Իսկ մյուս տարբերակում . «Եվ բերում է նրան շեյթանը և Ադամի որդու նախանձը (Աhմեդ, ալ-Հայսամի անվանել այդ հավաստի և գոյություն ունեն այլ հադիթներ նմանատիպ նկարագրություններով): Նա անվանում է աչքով տալ, որովհետև հենց աչքերն են օգտագործվում հայացքում, այլ ոչ թե հենց աչքերն են վնասում: Այս ապացուցում է նաև այն փաստը, որ նույնիսկ կույր մարդուց կարող է գալ աչք, այն դեպքում, երբ նա չի կարող ոչ ոքի նայել:

## ԵԹԵ ՀԻՎԱՆԴՈՒԹՅԱՆ ՊԱՏՃԱՌԸ ԿԱԽԱՐԴԱՆՔՆ Է[1], ԱՊԱ ԱՅՆ ԲՈՒԺՎՈՒՄ Է ՀԵՏևՅԱԼ ՄԻՋՈՑՆԵՐԻՑ ՄԵԿՈՎ;

1) Եթե հայտնի է կախարդության կապը, ապա այն բացում են, միևնույն ժամանակ կարդալով Ղուրանի 113-րդ և 114-րդ սուրաները, իսկ հետո այրում են: 2) Ռուկյա, որը սահմանված է Շարիաթով, Ղուրանի այաթներն են, առավելապես 2, 113 և 114 սուրաները, ինչպես նաև դուաներ, աղոթքները, որոնք մենք հիշատակել ենք: 3) Նուշրա. Այս գործողություն է, որը հանում է կախարդությունը: Այն լինում է երկու տեսակ. 1. Արգելված, ինչպիսին է կախարդանքի վերացնելը մեկ այլ կախարդանքով, կամ կախարդին դիմելը դրա համար; 2. Թույլատրելի, օրինակ վերցնել ժոժոբայի յոթ թերթիկ, տրորել երկու քարերի միջև, կարդալ նրանց վրա 103-րդ « Ալ-Կաֆիրուն », 112-րդ « Ալ –Իխլաս,» 113-րդ «Ալ-Ֆալակ » և 114-րդ «Ան- Նաս » սուրաները երեք անգամ, որից հետո դնել դրանք ջուրը և ըմպել կամ լվացվել: Պետք է կրկնել այդ այնքան ժամանակ, մինչ չի գա բուժումը Ալլահի կամոք:
4) Կախարդանքի հեռացնելը փսխումով, որը կարելի է առաջացնել լուծողականով, եթե այն ստամոքսում է և արյուն դուրս հանելով մարմնի մյուս մասերից, որը կոչվում է հիջամա:[2]

ՌՈՒԿՅԱ. Նրա անհրաժեշտ պայմաններն են.

1. Այն պիտի բաղկացած լինի Ղուրանի այաթներից և թույլատրելի աղոթքներից; 2. Այն կարող է լինել արաբերեն կամ այլ լեզվով, սակայն անհրաժեշտ է, իմաստը հասկանալի լինի; 3. Հավատք նրանում, որ ռուկյան ինքն իրեն ազդեցություն չի գործում: Ապաքինությունը գալիս է Ալլահից:
Որպեսզի ռուկյան ազդեցություն ունենա, անհրաժեշտ է այդ անել հիվանդին բուժելու մտադրությամբ և ջինների հովանավորությամբ, քանի որ Ղուրանը ուղարկվել է բուժմամբ և հովանավորությամբ, այլ որ թե ջինին սպանելու մտադրությամբ, եթե վերը ասվածից ոչինչ չի օգնել:

ՌՈՒԿՅՈՒ ԱՆՈՂԻ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ.

1. Նա պիտի լինի մուսուլման և աստվածավախ, որքան շատ նա աստվածավախ է, այդքան արդյունավետ է աշխատանքը:
2. Նա պիտի ձգտի Ալլահին անկեղծությամբ ռուկյայի ժամանակ, այնպես որ ոչ միայն լեզուն խոսի,այլև սիրտը: Ամենալավն է, երբ մարդ այդ ինքն է անում, որովհետև ուրիշ մարդու սիրտը սովորաբար զբաղված է ինչ որ բանով, և ոչ ոք չի զգում, թե որքան է նա տառապում և կարիքի մեջ է: Իսկ

---

[1] Կախարդությունը հատուկ խոսքեր կամ գործողություններ են, որոնք ուղղակի ազդեցություն են ունենում այն մարդու մարմնի, սրտի կամ գիտակցության վրա, որին ուղղված է այն : Կախարդությունը իրականում գոյություն ունի : Այն կարող է սպանել, հիվանդացնել, անել այնպես որ տղամարդը չի կարող սեռական հարաբերություն ունենալ կնոջ հետ, բաժանել : Կախարդության տեսակներից կան այնպիսիններ, որոնք հանդիսանում են շըրկ և կուֆր, կան այնպիսիններ, որոնք մեծ մեղք են :

[2] Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Ճշմարիտ, ամենից լավագույնը, արյան դուրս հանելն է:» Ալլահը բուժել է դրա միջոցով տարբեր օրգանների հիվանդություններ, որոնց պատճառը աչքն ու կախարդությունն է : Դեպքերը հայտնի են :

կարիքավորի խնդրանքին Ալլահը խոստացել է պատասխանել:
ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ ԱՅՆ ՄԱՐԴՈՒ, ՈՒՄ ԱՆՈՒՄ ԵՆ ՌՈՒԿՅՈՒ.
1. Ցանկալի է որ նա լինի հավատացյալ և առաքինի և որքան ամուր է նրա իմանը, այնքան լավ կլինի ռուկյունի ազդեցությունը: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Մենք ուղարկում են Ղուրանում այն, ինչ հանդիսանում է բուժում և գութ հավատացյալին, իսկ անարդարին այդ ոչինչ չի ավելացնում, բացի կորստից:» (Սուրա 17 « Գիշերային տեղափոխում » այաթ 82)
2. Նա պիտի ձգտի Ալլահին ամբողջ սրտով և ապաքինման խնդրանքով:
3. Նա չպիտի հաշվի, որ ապաքինումը շատ դանդաղ է կամ ուշանում է, որովհետև ռուկյան դուա է, և եթե շտապեցնել պատասխանը, այն կարող է ընդհանրապես չհայտնվել: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Յուրաքանչյուրիդ խնդրանքի պատասխանը կլինի, եթե միայն նա չշտապի ասելով. Ահա ես կոչեցի Ալլահին, բայց Նա ինձ չլսեց:» (Ալ-Բուխարի Մուսլիմ)
ՌՈՒԿՅԱ ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ՄԻ ՔԱՆԻ ԵՂԱՆԱԿՆԵՐՈՎ. 1. Նրա կարդալը, որը ուղեկցվում է փչելով, թեթև թքելով; 2. Կարդալը առանց փչելու: 3. Մատի վրա թքելը և այն խառնելը հողի հետ, որից հետո հիվանդ մասին դնելը: 4. Կարդալը, որը ուղեկցվոմ է հիվանդ մասի տրորելով:
ԱՅԱԹՆԵՐ և ՀԱԴԻԹՆԵՐ, ՈՐՈՆՔ ՕԳՏԱԳՈՐԾՎՈՒՄ ԵՆ ՌՈՒԿՅԵՅԻ ԺԱՄԱՆԱԿ
(Սուրա 1) - (Սուրա 109) - (Սուրա 112) - (Սուրա 113) - (Սուրա 114)
(Սուրա 2, այաթ 255 )
﴿ ٱللَّهُ لَآ إِلَٰهَ إِلَّا هُوَ ٱلۡحَيُّ ٱلۡقَيُّومُۚ لَا تَأۡخُذُهُۥ سِنَةٞ وَلَا نَوۡمٞۚ لَّهُۥ مَا فِي ٱلسَّمَٰوَٰتِ وَمَا فِي ٱلۡأَرۡضِۗ مَن ذَا ٱلَّذِي يَشۡفَعُ عِندَهُۥٓ
إِلَّا بِإِذۡنِهِۦۚ يَعۡلَمُ مَا بَيۡنَ أَيۡدِيهِمۡ وَمَا خَلۡفَهُمۡۖ وَلَا يُحِيطُونَ بِشَيۡءٖ مِّنۡ عِلۡمِهِۦٓ إِلَّا بِمَا شَآءَۚ وَسِعَ كُرۡسِيُّهُ ٱلسَّمَٰوَٰتِ وَٱلۡأَرۡضَۖ
وَلَا يَـُٔودُهُۥ حِفۡظُهُمَاۚ وَهُوَ ٱلۡعَلِيُّ ٱلۡعَظِيمُ ﴾[1]
(Սուրա 2, այաթ 285 - 286)
﴿ ءَامَنَ ٱلرَّسُولُ بِمَآ أُنزِلَ إِلَيۡهِ مِن رَّبِّهِۦ وَٱلۡمُؤۡمِنُونَۚ كُلٌّ ءَامَنَ بِٱللَّهِ وَمَلَٰٓئِكَتِهِۦ وَكُتُبِهِۦ وَرُسُلِهِۦ لَا نُفَرِّقُ بَيۡنَ أَحَدٖ مِّن
رُّسُلِهِۦۚ وَقَالُواْ سَمِعۡنَا وَأَطَعۡنَاۖ غُفۡرَانَكَ رَبَّنَا وَإِلَيۡكَ ٱلۡمَصِيرُ ٢٨٥ لَا يُكَلِّفُ ٱللَّهُ نَفۡسًا إِلَّا وُسۡعَهَاۚ لَهَا مَا كَسَبَتۡ
وَعَلَيۡهَا مَا ٱكۡتَسَبَتۡۗ رَبَّنَا لَا تُؤَاخِذۡنَآ إِن نَّسِينَآ أَوۡ أَخۡطَأۡنَاۚ رَبَّنَا وَلَا تَحۡمِلۡ عَلَيۡنَآ إِصۡرٗا كَمَا حَمَلۡتَهُۥ عَلَى ٱلَّذِينَ مِن
قَبۡلِنَاۚ رَبَّنَا وَلَا تُحَمِّلۡنَا مَا لَا طَاقَةَ لَنَا بِهِۦۖ وَٱعۡفُ عَنَّا وَٱغۡفِرۡ لَنَا وَٱرۡحَمۡنَآۚ أَنتَ مَوۡلَىٰنَا فَٱنصُرۡنَا عَلَى ٱلۡقَوۡمِ ٱلۡكَٰفِرِينَ ﴾[2]

---

[1] «Ալլահ, չկա աստված, բացի Նրանից, Կենդանի, Կյանք պահպանող: Նա ոչ ննջում, ոչ էլ քնում է: Նրան է պատկանում այն, ինչ երկնքում է և այն, ինչ երկրում է : Ո'վ կարող է բարեխոսել Նրան առանց, Նրա թույլտվության : Նա գիտի նրանց ապագան և անցյալը : Նրանք ձեռք են բերում Նրա գիտելիքներից այն, ինչ Նա է ցանկանում : Նրա գահը պարուրում է եչկինքը և երկիրը և նրանց պաշտպանությունը դժվար չէ Նրա համար : Նա Մեծարած և Հզոր է:

[2] ««Մարգարեն և հավատացյալները հավատացել են նրան, ինչ ուղարկվել է Նրան աստծոց: Նրանք բոլորը հավատացել են Ալլահին, Նրա հրեշտակներին, Նրա Գրերին և Նրա Մարգարեներին: Նրանք ասում են. «Մենք տարբերություն չենք դնում Նրա մարգարեների միջև :» Նրանք ասում են «Լսում և Ենթարկվում ենք, Քո ներումն ենք մենք աղերսում, Տեր մեր, և Քեզ մոտ է մեր ժամանումը:»Ալլահը մարդուն ուժերից վեր ոչինչ չի տալիս : Նրան հասնում է այն, ինչ ձեռք է բերում և նրա դեմ է լինում այն, ինչ նա ձեռք է բերել :Տեր մեր, մի պատժիր մեզ, եթե մենք մոռացել կամ սխալվել ենք :Տեր մեր, մի տուր մ,եզ բեռ, որը Դու դրել ես մեր նախորդների վրա: Տեր մեր, մի տուր մեզ այն, ինչ մեր ուժերից վեր է: Եղիր մեղմ մեզ հետ : Ներիր և գթա մեզ: Դու մեր հովանավորն ես: Օգնիր մեզ հաղթելու անհավատ մարդկանց :»»

﴿ فَسَيَكْفِيكَهُمُ ٱللَّهُ ۚ وَهُوَ ٱلسَّمِيعُ ٱلْعَلِيمُ ﴾ [1]

﴿ يَٰقَوْمَنَآ أَجِيبُوا۟ دَاعِىَ ٱللَّهِ وَءَامِنُوا۟ بِهِۦ يَغْفِرْ لَكُم مِّن ذُنُوبِكُمْ وَيُجِرْكُم مِّنْ عَذَابٍ أَلِيمٍ ﴾ [2]

﴿ وَنُنَزِّلُ مِنَ ٱلْقُرْءَانِ مَا هُوَ شِفَآءٌ وَرَحْمَةٌ لِّلْمُؤْمِنِينَ ۙ وَلَا يَزِيدُ ٱلظَّٰلِمِينَ إِلَّا خَسَارًا ﴾ [3]

[5] ﴿ وَإِذَا مَرِضْتُ فَهُوَ يَشْفِينِ ﴾ [4] ﴿ أَمْ يَحْسُدُونَ ٱلنَّاسَ عَلَىٰ مَآ ءَاتَىٰهُمُ ٱللَّهُ مِن فَضْلِهِۦ ﴾

[7] ﴿ قُلْ هُوَ لِلَّذِينَ ءَامَنُوا۟ هُدًى وَشِفَآءٌ ﴾ [6] ﴿ وَيَشْفِ صُدُورَ قَوْمٍ مُّؤْمِنِينَ ﴾

[9] ﴿ لَوْ أَنزَلْنَا هَٰذَا ٱلْقُرْءَانَ عَلَىٰ جَبَلٍ لَّرَأَيْتَهُۥ خَٰشِعًا مُّتَصَدِّعًا مِّنْ خَشْيَةِ ٱللَّهِ ﴾ [8] ﴿ فَٱرْجِعِ ٱلْبَصَرَ هَلْ تَرَىٰ مِن فُطُورٍ ﴾ [9]

﴿ وَإِن يَكَادُ ٱلَّذِينَ كَفَرُوا۟ لَيُزْلِقُونَكَ بِأَبْصَٰرِهِمْ لَمَّا سَمِعُوا۟ ٱلذِّكْرَ وَيَقُولُونَ إِنَّهُۥ لَمَجْنُونٌ ﴾ [10]

﴿ وَأَوْحَيْنَآ إِلَىٰ مُوسَىٰٓ أَنْ أَلْقِ عَصَاكَ ۖ فَإِذَا هِىَ تَلْقَفُ مَا يَأْفِكُونَ ﴿١١٧﴾ فَوَقَعَ ٱلْحَقُّ وَبَطَلَ مَا كَانُوا۟ يَعْمَلُونَ ﴿١١٨﴾ فَغُلِبُوا۟
هُنَالِكَ وَٱنقَلَبُوا۟ صَٰغِرِينَ ﴾ [11]

﴿ قَالُوا۟ يَٰمُوسَىٰٓ إِمَّآ أَن تُلْقِىَ وَإِمَّآ أَن نَّكُونَ أَوَّلَ مَنْ أَلْقَىٰ ﴿٦٥﴾ قَالَ بَلْ أَلْقُوا۟ ۖ فَإِذَا حِبَالُهُمْ وَعِصِيُّهُمْ يُخَيَّلُ إِلَيْهِ مِن
سِحْرِهِمْ أَنَّهَا تَسْعَىٰ ﴿٦٦﴾ فَأَوْجَسَ فِى نَفْسِهِۦ خِيفَةً مُّوسَىٰ ﴿٦٧﴾ قُلْنَا لَا تَخَفْ إِنَّكَ أَنتَ ٱلْأَعْلَىٰ ﴿٦٨﴾ وَأَلْقِ مَا فِى
يَمِينِكَ تَلْقَفْ مَا صَنَعُوٓا۟ ۖ إِنَّمَا صَنَعُوا۟ كَيْدُ سَٰحِرٍ ۖ وَلَا يُفْلِحُ ٱلسَّاحِرُ حَيْثُ أَتَىٰ ﴾ [12]

[13] ﴿ ثُمَّ أَنزَلَ ٱللَّهُ سَكِينَتَهُۥ عَلَىٰ رَسُولِهِۦ وَعَلَى ٱلْمُؤْمِنِينَ ﴾

[14] ﴿ فَأَنزَلَ ٱللَّهُ سَكِينَتَهُۥ عَلَيْهِ وَأَيَّدَهُۥ بِجُنُودٍ لَّمْ تَرَوْهَا ﴾

---

[1] **«Բայց , Ալլահը կբավարարի նրանց ,որպես դեմ և Նա Աս-Սամիէ (Ամենալսողն) ու Ալ-Ալիմ (Իմացյալն) է:»** (Սուրա 2, այաթ 137)

[2] **«Օ, Մեր մարդիկ, լսեք նրան, ով կոչում է քեզ առ Ալլահ և հավատա նրան: Նա կների քեզ, քո մեղքերը և կազատի ձեզ Ծանր Պատժից:»** (Սուրա 46 ,այաթ 31)

[3] **«Մենք ուղարկել ենք Ղուրանում այն, ինչ հանդիսանում է ապաքինում և գութ հավատացյալների համար :»** ( Սուրա 17, այաթ 82)

[4] **«Կամ նրանք նախանձում են, որ Ալլահը նվիրել է նրանց Իր Գո՞թը:»** (սուրա 4 այաթ 54)

[5] **«Որը բուժում է ինձ, երբ ես հիվանդ եմ :»** (Սուրա 26 այաթ 80)

[6] **« Նա կապաքինի հավատացյալների սրտերը:** » (Սուրա 9 այաթ 14)

[7] **«Ասա. « Նա հանդիսանում է հավատարիմ ուղղություն և ապաքինում նրանց, ովքեր հավատացել են …»** (Սուրա 41 այաթ 44)

[8] **«Եթե մենք ուղարկեյինք այս Ղուրանը լեռան, ապա դու կտեսնեյիր, ինչպես է նա խոնարհ ճաքում ալլահի նկատմամբ վախից:»** (Սուրա 59 այաթ 21)

[9] **«Նայիր մեկ անգամ ևս: Դու տեսնու՞մ ես որևէ ճաք:»** (Սուրա 67 այաթ 3)

[10] **«Ճշմարիտ, անհավատները պատրաստ են պարտադրել քեզ սայթաքել իրենց հայացքներով, երբ նրանք լսում են Հիշեցումը և ասում են .« Ճշմարիտ, նա ուժեղ է :»»** (Սուրա 68 այաթ 51)

**« Մենք ներշնչել ենք Մովսեսին. « Գցիր քո ձեռնափայտը » Եվ ահա նա, օձը սկսեց կուլ տալ այն, ինչ նրանք մտածել են : Ճշմարտությունը հաստատվել է և պարտելի է դարձել այն, ինչ նրանք արել են : Նրանք պարտվեցին այնտեղ և վերադարձան անպատիվ :»** ( Սուրա 7, այաթ 117-119

[12] **«Նրանք ասացին. «Օ. Մովսես. Դու կգցես առաջինը, թե մենք գցենք առաջինը :» Նա ասաց.« Ոչ, դուք գցեք » Եվ այստեղ նրան թվաց, որ նրանց պարանները և ձեռնափայտերը իրենց կախարդանքից շարժման մեջ մտան: Եվ նա հոգում վախ զգաց: Մենք ասացինք . « Մի վախեցիր, դու կհաղթես: Գցիր այն, ինչ պահում ես քո աջ ձեռքով և այն կուլ կտա նրանց ստեղծածը : Ճշմարիտ նրանց ստեղծածը կախարդների աշխատանքն է, իսկ կախարդը հաջողություն չի ունենա ուր էլ որ գնա : »** ( Սուրա 20 այաթ 65-69)

[13] **«Հետո Ալլահը ուղարկեց հանգստություն Իր առաքյալին և հավատացյալներին :»** (Սուրա 9 այաթ 26)

[14] **«… Իսկ Ալլահը ուղարկեց Իր Մարգարեյին և հավատացյալներին հանգիստ և անբաժանելի դարձրեց աստվածավախության խոսքը,վկայություն նրա, որ չկա աստված բացի Ալլահից:»** (Սուրա 48 այաթ 26)

[1] ﴿فَأَنزَلَ ٱللَّهُ سَكِينَتَهُۥ عَلَىٰ رَسُولِهِۦ وَعَلَى ٱلْمُؤْمِنِينَ وَأَلْزَمَهُمْ كَلِمَةَ ٱلتَّقْوَىٰ﴾
[2] ﴿لَّقَدْ رَضِىَ ٱللَّهُ عَنِ ٱلْمُؤْمِنِينَ إِذْ يُبَايِعُونَكَ تَحْتَ ٱلشَّجَرَةِ فَعَلِمَ مَا فِى قُلُوبِهِمْ فَأَنزَلَ ٱلسَّكِينَةَ عَلَيْهِمْ وَأَثَٰبَهُمْ فَتْحًا قَرِيبًا﴾
[3] ﴿هُوَ ٱلَّذِىٓ أَنزَلَ ٱلسَّكِينَةَ فِى قُلُوبِ ٱلْمُؤْمِنِينَ لِيَزْدَادُوٓا۟ إِيمَٰنًا مَّعَ إِيمَٰنِهِمْ﴾

## ՀԱԴԻՍՆԵՐ

«Ասալյուլահաել Ազիմա Ռաբբաել արշիլ ազիմի ան յաշֆիյակա»[4] **(Յոթ անգամ)**

«Ուիզուկե բիքալիմետի Լեհի տտամմա մին կուլի շեյտանին ուա համմա ուա մին կուլլի այնին լյամմա»[5] (Երեք անգամ)

«Ալլահումա, Ռաբբա ննասի ազհիբի ելբասա,իշֆի Անտաշշաֆի, լա շիֆա իլլա շիֆաուկա շիֆան լե յուգադիրու սակաման»[6] (Երեք անգամ)

«Ալլահումա ազհիբ անհու հարրահա ուա բարդահի ուա ուասաբահա»[7] **(Մեկ անգամ)**

«ՀասբիյահուԼեհու լե իլեհե իլլե հուա ալլեհի տավակյատու ուա հուա ռաբբուլ արշի ել ազիմ»[8] (Յոթ անգամ)

«Բիսմիլեհի արկիկե մին կուլլի դաին յուզիկա ուա մին շարրի կուլի նաֆսան աու այնին հասիդ: Ալլահու յաշֆիկա Բիսմիլեհի արկիկե» [9] (Երեք անգամ)

Նույնպես կարելի է ձեռքը դնել հիվանդ մասին և ասել «Բիսմիլեհ» երեք անգամ, որից հետո «Աուզու բիզզատի Լեհի ուա կուդրատիհի մին շարրի մա աջադու ուա ուհազիրու»[10] (Յոթ անգամ)

## ԾԱՆՈՒՑՈՒՄ.

❶ Չի կարելի հավատալ սնոտիապաշտությանը, որը կապված է աչքով տվողի հետ, ինչպես որ պետք է ըմպել նրա մեզը կամ որ եթե աչքով տվողը իմանա, որ տուժածը նրանից բուժման համար ինչ որ բան է վերցրել, այն կկորցնի ուժը և այլն:

---

[1] **«Ալլահը հավատացյալներից գոհ է մնացել, երբ նրանք երդվել են քեզ Խուդեյբին ծառի տակ : Նա գիտեր, ինչ կար նրանց սրտերում և ուղարկեց նրանց հանգստություն և պարգևեց նրանց մոտալուտ հաղթանակ**:» (Սուրա 48 այաթ 18)

[2] **«Ալլահի Մեծ Հաճույքն է հավատացյալների վրա , երբ նրանք երդվում են Նվիրվածություն քեզ Ծառի տակ: Նա գիտեր ինչ կար նրանց սրտում և Նա ուղարկեց Հանգստություն նրանց և Նա պարգևեց նրանց արագ Հաղթանակ:»** (Սուրա 48, այաթ 18)

[3] **«Այդ Նա է, Ով տվել է հանգստություն հավատացյալների սրտերին, որպեսզի նրանց հավատքը մեծանա**:» (Սուրա 48 այաթ 4)

[4] «նդրում եմ Ամենազոր Ալլահին, Գահի Տիրոջը, որ Նա ապաքինի քեզ:»

[5] « Դիմում եմ Ալլահի կատարյալ Խոսքերին, որպեսզի դրանք պաշտպանեն քեզ ցանկացած շեյթանից, վնասակար միջատից և վատ աչքից :»

[6] «Օ. Ալլահ, մարդկանց Տեր, հեռացրու այս հիվանդությունը և բուժի : Դու Ապաքինող ես, ես, չկա ապաքինում, բացի Քո ապաքինումից, ապաքինիր այնպես, որ դրանից հետո չմնա հիվանդություն:»

[7] «Օ, Ալլահ, հեռացրու նրանից տենդը այս կյանքի, նրա սառնությունը և հիվանդությունը :»

[8] «Ինձ բավարար է Ալլահը, չկա աստված բացի Նրանից, և Նա հզոր գահի Տիրակալն է :»

[9] « Ալլահի անունով հմայում եմ քեզ այն ամենից, ինչ պատճառում է քեզ տառապանք, ցանկացած մարդու չարիքից և չարակամի վատ աչքից : Թող Ալլահը ապաքինի քեզ : Հանուն Ալլահի հմայում եմ քեզ :»

[10] « Դառնում եմ Ալլահի հզորությանը և Նրա զորությանը այն չարիքից, ինչ ես զգում եմ և որից խուսափում եմ:»

❷ Չի կարելի կախել թալիսմաններ կաշվից, ապարանջաններ, վզնոցներ այն մասերում, որոնք խոցելի են: Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Ով կախել է որևէ առարկա, ապա նա տրվում է նրան:» (Ատ –Տիրմիզի) Եթե այդպիսի առարկայի վրա գրված է Ղուրանի այաթ, ապա այստեղ գիտնականները բաժանվել են, բայց ամեն դեպքում լավ է հրաժարվել դրանցից:

❸«Մաշաալլահ տաբարակլլիլեհ» գրածը, թրի, դանակի կամ աչքի նկարները, Ղուրանի առկայությունը մեքենայում, կամ այաթների կախելը պատերին չի պաշտպանում աչքից: Ավելին, այս ամենը կարող է համարվել արգելված թալիսմաններ:

❹Հիվանդը պիտի համոզված լինի պատասխանում և չհամարի, որ ապաքինումը ուշանում է: Եթե նրան ասեն, որ ապաքինման համար նա պիտի դեռօրայք ընդունի ամբողջ կյանք, նա կդիմանա և կանի այդ, բայց նա կորցնում է համբերությունը, եթե ռուկյան ձգձգվում է … Բայց Ղուրանից ամեն տառի համար,որը նա կարդում է ռուկյայի ժամանակ, նրան գրվում է բարի արարք, իսկ ամեն բարի արարքի համար նրան սպասվում է պարգև տասնապատիկի չափով:Նա պիտի կարդա դուա և խնդրի Ալլահից ներում և ավելի շատ բարեգործություն անի:

❺Միասնական կարդալը հակասում է Սուննային և նրա ազդեցությունը շատ թույլ է, ինչպես նաև ձայնագրիչի օգտագործումը: Քանի որ այդ եղանակով մտադրությունը, որը հանդիսանում է ռուկյայի պարտադիր պայման չի կոչվում կյանքի: Ռուկյան պիտի անընդհատ կրկնել մինչ ապաքինումը: Բայց եթե այդ հոգնեցնում է հիվանդին, ապա պիտի կատարվի ավելի սակավ: Ինչ վերաբերվում է տվյալ այաթը կամ դուան մեկ անգամ կարդալուն, ապա դա սխալ է, եթե միայն չկա սահմանում շարիաթով:

❻ Գոյություն ունեն որոշակի նշաններ, որոնք ցույց են տալիս, որ ռուկյա անողը օգտագործում է կախարդանք այլ ոչ թե Ղուրան: Եվ թող ձեզ չխաբի այն հավատցյալ վիճակը, որով նրանք դա անում են: Նրանք կարող են սկսել կարդալ Ղուրան, հետո անմիջապես փոխեն: Այդ մարդիկ ուրիշներին խաբելու համար կարող են անընդհատ այցելել մզկիթ:Նրանք կարող են ձեր ներկայությամբ անընդհատ հիշել Ալլահին: Մի գայթակղվեք և եղեք ուշադիր:

ԿԱԽԱՐԴԱՆՔՈՎ ԶԲԱՂՎՈՂԻ ՆՇԱՆՆԵՐԸ. ✷ Հիվանդին նրա անվան կամ նրա մոր անվան հարցնելը, քանի որ անվան իմանալը ոչ մի ազդեցություն չունի բուժման վրա: ✷ Խնդրանք վերցնել հիվանդի հագուստներից: ✷ Խնդրանք, բերել որևէ կենդանի, որը ունի որոշակի հատկանիշներ: Նա զոհաբերում է այդ ջինի համար և երբեմն մերսում է հիվանդին այդ արյամբ: ✷ Հմայիլի կարդալը, կամ թալիսմանի պատրաստելը, որտեղ գրված են անհասկանալի կամ անիմաստ խոսքեր: ✷ Հիվանդին թուղթ տալը, որտեղ նկարված են քառակուսիներ, որի ներսում թվեր և տառեր են: Այդ կոչվում է հիջեբ: ✷ Հիվանդին հրամայելը

խուսափել մարդկանցից որոշակի ժամանակ և մթության մեջ մնալը: ✷Ջրին չմոտենալու հրամանը, որը պիտի տևի որոշ ժամանակ: ✷Հիվանդին որևէ առարկայի տալը,որը նա պիտի թաղի հողի մեջ կամ թողի տալը, որը նա պիտի այրի և իրեն պարուրի այդ ծխով: ✷Հիվանդին անձնական մանրուքների, անունների, բնակավայրի տալը, երբ նա սկսում է խոսելը: ✷ Առաջին հայացքից, հեռախոսով կամ փոստով հիվանդության անվանելը:

7.Սուննայի հետևորդների համոզմունքն է, որ ջինը կարող է մտնել մարդու մեջ: Որպես ապացույց հանդիսանում է Ամենաբարձրյալի խոսքերը. «Նրանք, ովքեր կուլ են տվել վաշխառություն, կապստամբեն, ինչպես կապստամբի նա, որին Շեյթանը ձգել է իր հպումով:» (Սուրա 2 «Կով» այաթ 275) Ղուրանի բացատրողները եկել են այն կարծիքի, որ «հպում» բառը այաթում նկատի ունի խելագարությունը, որը հասնում է մարդուն, երբ նրա մեջ ջին է մտնում:196

ԻՍԼԱՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ ԿԱՊՎԱԾ ԿԱԽԱՐԴԱՆՔԻ ՀԵՏ. Կախարդանք գոյություն ունի, իսկ էությունը երևակայության խնդիր է: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Եվ այստեղ նրան թվաց, որ նրանց պարանները և ձեռնափայտը կախարդության հետևանքով շարժման մեջ մտան:» (Սուրա « Տահա » այաթ 66): Եվ նրա ազդեցությունը հաստատված է Ղուրանով և Սուննայով: Կախարդությունը արգելված է (հարամ) և հանդիսանում է մեծ մեղք: Ալլահի Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Զգուշացեք յոթ կործանող արարքներից:» Մարդիկ ասացին.«Օ, Ալլահի Մարգարե, ո՞րոնք են այդ արարքները:» Նա ասաց. «Ալլահին զուգընկեր տալը, կախարդությունը …» (Ալ-Բուխարի Մուսլիմ) Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Բայց նրանք ոչ ոքի չեն սովորեցրել առանց ասելու. «Ճշմարիտ, մենք գայթակղություն ենք, մի դարձիր անհավատ:» (Սուրա 2 «Կով» այաթ 102)

Կախարդությունը լինում է երկու տեսակի

1. Շեյթանների, ջիների օգտագործմամբ: Նրանք չեն օգնում կախարդին այնքան ժամանակ, մինչ նա չդառնա անհավատ: Նրանց օգնությամբ կախարդը վնասում է մարդկանց:

2. Դեղօրայքի, օգտագործմամբ, որոնք ազդում են երևակայության վրա: Դրանք փոխում են մարդու գիտակցությունը և ստիպում են նրան տեսնել այն, որը իրականում գոյություն չունի:

Առաջին տեսակը անհավատությունն է, իսկ երկրորդը, մեծ մեղք: Կախարդությունը ազդում է Ալլահի կամքով, և եթե Ալլահը ցանկանա, որ այդ ազդեցություն չգործի, ապա այն չի գործի:

# ԴՈՒԱ

Ոչ մի արարած չի կարող գոյատևել առանց Ալլահի, և նրանք բոլորը կարիք ունեն այն բանի ինչ Նա տալիս է: Միևնույն ժամանակ, Նա նրանց կարիքը չունի և կախված չէ նրանցից:

Ամենաբարձրյալ Ալլահը պարտավորել է իր ստրուկներին կոչել իրեն խնդրանքով, դուայով: Ամենաբարձրյալը ասաց. «Կոչեք Ինձ և Ես կպատասխանեմ ձեզ:Ճշմարիտ, նրանք ովքեր իրենց բարձր են դասում Ինձ երկրպագելուց, կմտնեն ստորացած Հեենա:» (Սուրա 40 «Ներող» այաթ 60) Այսինքն, մեծամտորեն ձեռնպահ է մնում Ամենաբարձրյալին խնդրելուց: Եվ ասաց Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) «Ալլահը բարկանում է նրա վրա, ով ոչինչ իրենից չի խնդրում:» (Իբն Մաջա) Եվ չնայած դրան, Ալլահը հրճվում է, երբ Նրա ստրուկները խնդրում են նրան ինչ որ բան և Նա սիրում է նրանց, ովքեր հաստատակամորեն կոչում են Նրան խնդրանքով և մերձեցնում է նրանց Իրեն:

Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) հետևորդները հասկացան այդ և զգացին և նրանցից ոչ մեկը չէր համարձակվում խնդրել Ալլահին, նույնիսկ ամենաչնչին և աննշան բան: Եվ նրանք իրենց խնդրանքներով չէին դիմում Նրա արարածներին նույնպես: Այս տեղի էր ունենում իրենց Տիրոջը նվիրվածության զգացումից, ինչպես նաև Ամենաբարձրյալ Ալլահի խոսքերին հետևելու պատճառով: «Եվ եթե քեզ հարցնեն Իմ ստրուկները Իմ մասին, ապա Ես մոտ եմ:» Ալլահի մոտ դուան ունի բարձրագույն աստիճան: Այն ամենաառաքինի արարքն է և այն կարող է կանխարգելել կանխորոշվածը: Մուսուլմանի դուային անպատճառ կլինի պատասխան, և չպիտի լինի կասկած դրանում, եթե կան պատճառներ պատասխանի համար և արգելքի բացակայություն: Ալլահին կոչ անողին կնվիրվի երեք բաներից մեկը, ինչպես հիշատակել է Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) «Ամեն մուսուլմանի, ով կոչում է Ալլահին խնդրանքով, որում չկա մեղք, ոչ բարեկամական կապերի քանդում, Ալլահը նվիրում է երեք բաներից մեկը, կամ նրան արագ կտրվի, ինչ նա խնդրում է, կամ այդ խնդրանքը կլինի ամբար հաջորդ կյանքում, կամ նրանից կտարվի չարիքը, որը հավասար է այդ խնդրանքին:» Մարդիկ հարցրեցին.« Նշանակում է, մենք պիտի ավելի շատ կոչենք Նրան?:» Նա ասաց. « Ալլահը ամեն դեպքում ավելի շատ է նվիրում: » (Ահմեդ,Տիրմիզի)

Դուայի տեսակները, դուան լինում է երկու տեսակի.

1. Երկրպագման դուա, ինչպիսիք են նամազը և պահքը 2. Դուա խնդրանք, աղերս:

ՈՐՈՇ ԱՐԱՐՔՆԵՐԻ ԳԵՐԱԴԱՍՈՒԹՅՈՒՆԸ ՄՅՈՒՍՆԵՐԻՑ,

որն է ավելի լավ. Ղուրանի ընթերցումը, թե Ալլահին հիշատակելը, թե դուան: Անխոս, Ղուրանի ընթերցումը ամենալավն է բոլոր արարքներից: Դրան հետևում է Ալլահին հիշատակելը, որին հետևում է դուա: Այս, եթե մենք ընդհանուր մոտենանք հարցին, սակայն պատահում է այնպես, որ արարքը, որը զբաղեցնում է ավելի ցածր աստիճան, գերազանցում է մյուսներին, որոնք ավելի լավն են դրանից: Օրինակ, Արաֆաթի օրվա դուան ավելի լավ է, քան Ղուրանի ընթերցումը, իսկ հիշատակելը, որոնք փոխանցված են Մարգարեյից (Սալլալլահու ալեյհի ուա սալամ), նամազից հետո, գերադասելի է Ղուրանի ընթերցումից:

ԴՈՒԱՅԻՆ ՊԱՏԱՍԽԱՆ ՍՏԱՆԱԼՈՒ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ. Գոյություն ունեն ակնհայտ, (արտաքին) և քողարկված, (ներքին) պատճառներ.

1. ԱՐՏԱՔԻՆ ՊԱՏՃԱՌՆԵՐ. Դրան նախորդում են բարի գործերը, ինչպես բարեգործությունը (սադակա), փոքր լվացումը (վուդու) և աղոթքը, քիբլայի ուղղության շրջվելը, ձեռքերի բարձրացնելը, Ամենաբարձրյալ Ալլահին պատշաճ ձևով գովաբանելը,օգտագործելով Նրա անունները,որոնք համապատասխանում են մարդու խնդրանքին: Եթե մարդ խնդրում է Դրախտ, նա պիտի դիմի Ալլահին որպես գթասիրտ և ներող, իսկ եթե նա խնդրում է պատժել կեղեքիչին, ապա պատեհ կլինի օգտագործել Ալ-Ջաբար, (Ամենաիզոր), Ալ –Կահար, (Հաղթող) և այլն անունները:Հետևյալ պատճառներին է վերաբերվում Մարգարեյին օրհնելու կոչերը, դուայի կեսին և վերջում, ինչպես նաև մեղքերի ընդունումը, և Ալլահին երախտապարտ լինելը Իր գթասրտության համար: Նույնպես պետք է օգտագործել այն ժամերը, որոնց մասին կան վկայություններ, որ դուան ընդունվում և արձագանքվում է ավելի արագ: Այդպիսի ժամերը բազմաթիվ են: Օրինակ.

➢ Օրվա ընթացքում. գիշերվա վերջին երրորդը, երբ Ամենաբարձրյալը մոտենում է ցածր երկնքին, ինչպես նաև ազանի և իկամայի միջև ընկած ժամանակ, վուդույից հետո, երկրային կքանիստի ժամանակ, նամազում տեսլիմից առաջ, պարտադիր նամազներից հետո, Ղուրանի ընթերցման ավարտից հետո, աքլորականչի, ճանապարհորդության ժամանակ,, ինչպես նաև կարիքավորի և կեղեքվողի դուան, ծնողների դուան երեխայի համար, մուսուլմանի դուան իր հավատքի եղբոր համար, ով բացակա է, մարտում թշնամու դեմ դուրս գալու դուան, շաբաթվա ընթացքում, ուրբաթ օրը, մանավանդ այդ օրվա վերջին ժամը:

✸ ՈՐՈՇԱԿԻ ԱՄԻՍՆԵՐԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ. Այդ ամիսներն են ռամադանը, իֆտարի և սուհուրի ժամանակ, Կանխորոշման գիշերը և Արաֆատի օրը:

✸ ՕՐՀՆՎԱԾ ՎԱՅՐԵՐՈՒՄ, Դրանք են մզկիթները, Քաբբան, մանավանդ այն վայրում, որի մոտ պետք է խոնարհվել [1], Իբրահիմի կանգնած տեղը, Աս-Սաֆա և Ալ- Մարվա բլուրներում, Արաֆատ լեռան վրա, Մուզդալիֆում, Մինայի հարթավայրում հաջի օրերին, Զամզամ ջրի ըմպելու ժամանակ և այլն:

2. ՆԵՐՔԻՆ ՊԱՏՃԱՌՆԵՐ. Դուա կարդալուց առաջ անհրաժեշտ է ապաշխարհել, մարդկանց վերադարձնել անարդարորեն վերցվածը: Անհրաժեշտ է հոգ տանել, որ սնունդը, հագուստը, ըմպելիքը և կացարանը լինեն բարենպաստ և ձեռք բերված պատշաճ ձևով: Անհրաժեշտ է կատարել աստվածահաճո շատ արարքներ, խուսափել արգելվածից, կասկածելի բաներից, կրքերից և ջանալ, որ խնդրանքը լինի սրտանց: Միևնույն ժամանակ, անհրաժեշտ է վստահել Ալլահին, տրվել Նրան, չկորցնել պատասխանի հույսը, փնտրել Ալլահի պաշտպանությունը, հաստատուն լինել խնդրանքներում, և համոզված լինել, որ այն կլսվի:

[1] Քաբբայի անկյունի մաս, որտեղ գտնվում է Սև քարը և Քաբբայի դուռը: Այն կոչվում է «մուլտազամ»:

ԴՈՒԱՅԻ ՊԱՏԱՍԽԱՆԻ ԽԱՆԳԱՐՈՂ ԽՈՉԸՆԴՈՏՆԵՐԸ. Լինում է այնպես, որ մարդ կոչում է Ալլահին, բայց նրա դուան մնում է անպատասխան կամ այն գալիս է ուշ: Դրա պատճառները բազմազան են: Դրանցից են.

✸Դուայով դիմելը ուրիշին նույնպես Ալլահի հետ միասին, անիմաստ մանրամասնությունները դուայում, օրինակ Դժոխքի տապի, նեղության և մթության վախը, երբ ուղակի կարելի է Դժոխքից պաշտպանություն խնդրել:

✸ Սրան է վերաբերվում նաև մուսուլմանի դուան, որը ուղղված է իր իսկ կամ ուրիշի դեմ, որը համարվում է անարդար:

✸ Դուա, որում կա մեղք և բարեկամական կապերի ընդհատում

✸Ինչպես նաև դուայի կապելը կամքի հետ, երբ մարդ ասում է. « Օ, Ալլահ, ներիր ինձ, եթե ցանկանում ես: » և այլն: ✸ Կամ,երբ մարդ շտապեցնում է դուայի պատասխանը ասելով. « Ես կոչեցի Ալլահին, բայց Նա չլսեց:»

✸Պատճառներից մեկն է նաև այն, որ մարդ դադարում է խնդրել ձանձրանալով, կամ հոգնելով: ✸ Մարդու դուան, դատարկ, ուրիշ բաների վրա կենտրոնացած սրտով, ինչպես նաև անդաստիարակ վերաբերմունքը Ալլահին, Նրան դիմելուց: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) լսեց, երբ մի մարդ նամազի ժամանակ Ալլահին կոչում էր, բայց միևնույն ժամանակ չէր խնդրում օրհնություն Մարգարեյի համար և այդ ժամանակ նա ասաց. « Նա շտապել է»: Հետո նա կանչեց նրան և ասաց. « Երբ ձեզանից մեկը աղոթում է, թող սկսի Ալլահին մեծարելով, հետո թող կոչի օրհնելու Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ), իսկ դրանից հետո խնդրի Ալլահին ինչ ուզում է:» (Ատ_Տիրմիզի, Աբու Դաուդ)

✸ Սրան նույնպես վերաբերվում է խնդրանք, որը դեմ է Ալլահի կանխորոշումներին: Օրինակ անմահությունը այս աշխարհում և այլն:

✸ Դուա, որոնցում կան ամպագոռգոռ խոսքեր: Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. « Կոչեք ձեր Տիրոջը հնազանդությամբ և գաղտնի: Ճշմարիտ, Նա չի սիրում հանցագործների:» (Սուրա 7 «Պատնեշներ» այաթ 55) Իբն Աբբասը, (թող Ալլահը գթա նրան), ասաց. «Խուսափիր Ալլահին դիմելուց օգտագործել բանաստեղծական հանգ: Ճշմարիտ, ես գիտեյի Ալլահի Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) և նրա հետևորդներին և նրանք այդպես էլ վարվում էին, այսինքն նրանք խուսափում էին անել այդպես»: (Ալ-Բուխարի)

✸ Նույնպես անպատեհ է դուայի ժամանակ բարձրացնել ձայնը: Ամենաբարձրյալը ասաց. « Մի կոչեք Ալլահին, ոչ բարձրաձայն, ոչ էլ շշուկով, այլ ընտրեք միջինը դրանց միջև:» (Սուրա 17 «Գիշերային փոխադրում» այաթ 110): Իսկ Աիշան (թող Ալլահը գոհանա նրանով), ասաց, որ այս այաթը ուղարկվել է դուայի համար:

Ցանկալի է, որ մարդը.ով դիմում է ալլահին,հերթականության մեջ դնի իր դուան հետևյալ կերպ. 1. Մեծարի և գովաբանի Ալլահին; 2. Խնդրի օրհնել Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ); 3. Ապաշխարհի և ընդունի իր մեղքերը; 4.Շնորհակալություն հայտնի Ալլահին իր գթասրտության համար;
5. Ասի իր անձնական դուան հակիրճ, պարզ և արտահայտիչ, օգտագործի դուա փոխանցված Մարգարեյից (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) կամ որևէ սրբից;
6. Ավարել դուան Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) օրհնելու խնդրանքով:

# ԿԱՐԵՎՈՐ ԴՈՒԱ,ՈՐՈՆՔ ՄՈՒՍՈՒԼՄԱՆԸ ՊԻՏԻ ԻՄԱՆԱ

| Առիթ | Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. |
|---|---|
| Քնելուց առաջ և արթնանալուց հետո | «ԲիսմիկաԼահումա ամուտու ուա ահյա»[1] Իսկ արթնանալուց հետո պետք է ասել. «Ալ համդուլիլյեհի լեզի ահյանա բադա մա ամատանա ուա իլեյհի ննուշուր»[2] |
| Երբ մարդ քնի մեջ վախեցել է ինչ որ բանից | « Աուզու բիքալիմեթի Լեհի տտամատի մին ղադաբիհի ուա իկաբիհի ուա մին շառի իբադիհի, ուա մին համազատի շշեյթանի ուա ան յահդուրունի»[3] |
| Երբ մարդ երազ է տեսել | «Եթե ձեզանից մեկը երազ է տեսնում, որը իր սրտով է,ապա այդ Ալլահից է, թող նա փառաբանի Ալլահին և պատմի այդ երազի մասին: Իսկ եթե տեսնի ուրիշ երազ, որը իրեն հաճելի չէ, ապա այդ Շեյթանից է: Թող նա խնդրի Ալլահին չարից պաշտպանություն և թող չպատմի այդ ոչ ոքի և ճշմարիտ, այդ չի վնասի նրան:» |
| Տանից դուրս գալուց | «Ալլահումա իննի աուզու բիկա ան աղիլա աու ուդալա, աու ազիլա, աու ուզալա, աու ազլիմա, աու ուզլամա, աու աջհալա, աու յուջհալա ալեյյա»[4] |
| Մզկիթ մտնելուց | Մզկիթ մտնել պետք է աջ ոտքով և ասել. « Բիսմիլյեհի, ուա սսալյամու ալա ռասուլիլյեհի» Ալլահումա ղաֆիր լի զունուբի ուա ֆտահ լի աբուաբա ռահմատիկա:»[5] |
| Մզիկիթ դուրս գալուց | Մզկիթից պետք է դուրս գալ ձախ ոտքով և ասել. « Բիսմիլեհի ուասսալյամու ալա ռասուլիլլեհ, Ալլահումա ղաֆիր լի զունուբի ուա ֆտահիլի աբուաբա ֆադլիկա:»[6] |
| Բարեմաղթանք նորապսակին | «Բարաքալեհու լաքա, ուա բարաք ալեյքա ուա ջամա բայնակումա ֆի խեյր:»[7] |
| Եթե մարդ լսել է աքլորի կանչը կամ ավանակի զռռոցը | «Եթե դուք լսել եք ավանակի զռռոցը, ապա դիմեք Ալլահին Շեյթանից պաշտպանություն, քանի որ իրոք ավանակը տեսել է շեյթանին: Եթե լսեք աքլորի կանչը, ապա խնդրեք Ալլահին Նրա գութը, քանի որ իրոք, աքլորը տեսել է հրեշտակ:» «Եթե գիշերը լսեք ավանակի զռռոց կամ շան հաչոց, դիմեք Ալլահին օգնության խնդրանքով նրանցից...» |
| Եթե մեկը ասել է | Անասը, թող Ալլահը գթա նրան, հաղորդում է, որ Մարգարեյի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) մոտ գտնվում էր մի մարդ և այդ մարդու մոտով |

[1] «Քո անունով եմ ես մահանում և վերակենդանանում»:
[2] «Փառք Ալլահին, Ով հարություն տվեց մեզ այն բանից հետո, երբ վերցրեց հոգիները և Նրան է հարությունը :»
[3] «Դիմում եմ Ալլահի կատարյալ խոսքերին բարկությունից և Նրա պատժից, Նրա ստրուկների չարիքից և շեյթանից, և որ նրանք չհայտնվեն ինձ:»
[4] «Օ, Ալլահ, իրոք ես գալիս եմ քեզ մոտ այն բանից, որ հեռանամ ճանապարհից, կամ լինեմ հեռացված, որպեսզի ինքս սխալ գործեմ և այն բանից, որ ինձ ստիպեն սխալ գործել, որ անարդար լինեմ և որ ինձ հետ անրարդար լինեն, այն բանից որ լինեմ տգետ և որ ինձ պահեն տգիտության մեջ :»
[5] «Ալլահի անունով, Խաղաղություն Ալլահի առաքյալին : Օ, Ալլահ, ներիր ինձ իմ մեղքերը և բաց իմ առջև Քո գթասրտության դարպասները:»
[6] «Ալլահի անունով, խաղաղություն Ալլահի Մարգարեյին: Օ, Ալլահ, ներիր ինձ իմ մեղքերը և բացիր իմ առջև Քո գթասրտության դարպասները:»
[7] «Ալլահը օրհնի քեզ և ուղարկի քեզ Իր օրհնությունը և թող միացնի ձեզ բարիքում:»

| | |
|---|---|
| մարդուն,որ նա սիրել է նրան հանուն Ալլահի | անցավ մեկ ուրիշը: Առաջինը ասաց. «Օ, Ալլահի Մարգարե, իրոք ես սիրում եմ այս մարդուն:» Նա հարցրեց. «Դու ասել ես նրան այդ մասին» Վերջինս պատասխանեց. «Ոչ»: Նա ասաց. «Հաղորդիր նրան այդ մասին:» Եվ նա շտապեց մյուսի մոտ և ասաց. «Իննի ուահիբուքա ֆիլլահ:» Որը նշանակում է, իրոք ես սիրում եմ քեզ որպես հավատքի եղբայր հանուն Ալլահի:» Որին մյուսը պատասխանեց.« Ահիաբաքա լլեզի ահբաբտանի լեհու:»[1] |
| Եթե կողքի մուսուլմանը փռշտա | «Եթե ձեզանից մեկը փռշտա, թող ասի. «Ալ համդուլիլլեհ», Փառք Ալլահին, և թող նրա կողքինը ասի նրան «Երհամկումուլահ», որը նշանակում է, թող Ալլահը ների քեզ: Եվ եթե նա ասի, «Թող Ալլահը ների քեզ» ապա փռշտացողը նրան կպատասխանի. «Յեհդիկումուլլեհու ուա յուսլիհու բալակում:» Որը նշանակում է, «Թող Ալլահը ցույց տա ձեզ ճիշտ ճանապարհը և թող Նա կարգավորի ձեր բոլոր գործերը:» Իսկ եթե անհավատը փռշտա և փառաբանի Ալլահին, նրան պիտի ասել.«Յեհդիկումուլլեհ», այլ ոչ թե «Յարհամկուլլահ»: |
| Եթե մարդ տխուր է | «Լե իլեհա իլլալլահու ել Ազիմու ել Հալիմու, լեիլեհե իլլե լեհու, ռաբբուել արշիել ազիմի լե իլեհե իլլելեհու, ռաբբուս սամավատի, ուա ռաբբուել առդի ուա ռաբբու ել արշիել կարիմ:»[2]<br>«Ալլահու, Ալլահու, Ռաբբի, լաուշրիկու բիհի շեյան:»[3]<br>«Յա Հայյու յա Կայյում, բիռահմատիկի աստագիս:»[4]<br>«Սուբհանալլեհի ել Ազիմ»[5] |
| Խնդրանք, որը ուղղված է թշնամիների դեմ | «Ալլահումա մուջրիյա սսահաբի, մունզիլաել Քիտեբի սահալիհսեբի իհզիմիալ ազեբի, Ալլահումա հզիմուհում ուա զալզիլուհաում:»[6] |
| Ով ընթերցել է դուա, գիշերը արթնանալով | ««Ով արթնացել է գիշերը և ասել է. «Լեիլեհե իլլահու ուահդահու լա շարիկա լեհու, լեհու ել մուլքու ուա լեհուել համդու ուա հուա այա քուլլի շեյին քադիր, ալ համդու լիլեհի ուա սուբհանալիլեհի ուլա իլահա իլլալահու, ուալեհու Աքբար, ուա լե հաուլա ուլա կուվատա իլլաբիլլեհ»[7], որից հետո ասաց. «Ալլահումա ղաֆիր լի», որը նշանակում է.«Օ,Ալլահ, ներիր ինձ:» Կամ դիմել է Ալլահին աղերսով, ապա նրան կպատասխանի, իսկ եթե մարդ լվացվի և աղոթի, ապա նրա աղոթքը կընդունվի:» |
| Եթե մարդուն | Որևէ մեկին, ով բարիք է արել և նա ասել է մյուսին. |

1 «Թող սիրի քեզ Նա, հանուն Ում դու սիրեցիր ինձ:»

2 « Չկա աստված, բացի Ալլահից, Զուսպ և Մեծ, չկա աստված, բացի Ալլահից, հզոր գահի Տիրոջից, չկա աստված, բացի Ալլահից, երկնքի և երկրի և առաքինի Գահի Տիրոջից :»

3 «Ալլահ, Ալլահ, Տեր իմ, ոչ ոքի մի երկրպագիր, Նրան հավասար:»

4 « Օ, Կենդանի, Օ, Էական, խնդրում եմ, Քո գութը :»

5 « Փառահեղ Ալլահը Մեծ է:»

6 « Օ, Ալլահ, Ով շարժման մեջ է դնում երկինքը, ով բերում է Գրերը և արագ հաշիվ է տալիս, տուր այդ մարդկանց պարտություն : Օ, Ալլահ, հաղթիր նրանց և ցնցիր :»

7 «Չկա աստված, բացի միայն Ալլահից, ով չունի զուգընկեր, Նրան է պատկանում արքայություն, փառք Նրան : Նա ունակ է ամեն ինչի, փառք Ալլահին, փառք Ալլահին, չկա աստված բացի Ալլահից, Ալլահը մեծ է, ոչ ոքի մոտ չկա հզորություն և ուժ,բացի Նրանից:»

| | |
|---|---|
| որևէ բան դժվար է թվում | «Ջազակալլահու խեյրուն;», որը նշանակում է, թող Ալլահը քեզ բարիք տա:Ապա նա մյուսին գովել է լավագույն ձևով: Իսկ մյուս մարդը պիտի ասի նրան,«Ուա ջազակա», որը նշանակում է թող Նա քեզ էլ պարգևի:Կամ կարճ,կարող է ասել «Ուա հյյակա», որը նշանակում է, եվ քեզ: |
| Խնդրանք, պարտքի ավարտի | «Ալլահումա, իննի աուզու բիկա մինալ համմի ուալ հազենի ուալ աջիզի ուալկասալի ուալ բուխլի ուալ ջուբնի, ուա դալահդ դեյնի ուա գալաբատիռ ռիջել:»[1] |
| Արտաքնոց մտնելուց | Արտաքնոց մտնելուց պիտի ասել. «Ալլահումա իննի աուզու բիկա մին ալ հուբսի ուալ հաբաիս:»[2]<br>Արտաքնոց այցելելուց հետո պիտի ասել. «Ղուֆրանակա»: Որը նշանակում է «Կներես » |
| Եթե մարդուն նամազի ժամանակ, ինչ որ բան խանգարում է կենտրոնանալ | « Այդ Հանզաբ անունով շեյթանն է: Եթե դու զգաս նրա ներկայությունը, խնդրի Ալլահին պաշտպանություն նրանից և երեք անգամ թքիր ձախ կողմ:» |
| Երկրային կքանիստի ժամանակ | «Ալլահումա ղաֆիրլի զանբի կուլլահու,դիկկահու ուա ջիլլահու, ուա ավալլահու ուա ախիրահու, ուա ալյանիյատահու ուա սիրահու:»[3] « Սուբհանակա Ռաբբի, ուա բիհամդիկա, Ալլահումա ղաֆիրլի:»[4] «Ալլահումա, իննի աուզու բիրիդակա մին սախատիկա ուա բիմու աֆատիկա մին ուկուբատիկա ուա աուզու բիկա մինկի, լեուհսի սանաան ալեյկա Անտա կամա ասնայտա ալա նեֆսիկա:»[5] |
| Երկրային կքանիստի ժամանակ, երբ ընթերցում են Ղուրանի որոշ այաթներ | «Ալլահումմա լակա սաջադու ուա բիկա ամաննտու ուա լակա ասլամտու, սաջադա ուաջհի լիլեզի խալակու ու շակկա սամահու ուա բասարահու բիխաուլիհի ուա կուվատիհի, ֆա տաբարակա Լեհու ահսանու ել խալիկին:»[6] խալիկին:»[6] |
| Դուա, որը բացում է աղոթքը | «Ալլահումա, բաիդ բայնի ուա բայնա հատայայա կյամա բաադտա բայնաել մաշրիկի ուա ել մաղրեբ, Ալլահումա նակինի մին հատայյայակյամա յուննակա սսաուբուլ աբյադու մին ադդանաս, Ալլահումա ղսլ հատայայա բիլմա ուաս սալջի ուալ բառադ:»[7] |

---

[1] «Օ, Ալլահ, Ճշմարիտ, ես գալիս եմ Քեզ մոտ տխրությունից և անհանգստությունից, թուլությունից, ծուլությունից, փոքրոգությունից, պարտքի բեռից և այնից, ինչ հաճախակի պատահում է մարդկանց :»

[2] «Օ, Ալլահ, իրոք, ես դիմում եմ քեզ վատ արարքներից և նեղությունից :»

[3] «Օ, Ալլահ, ներիր ինձ իմ բոլոր մեղքերը, մեծ և փոքր, առաջին և վերջին, ակնհայտ և գաղտնի :»

[4] « Փառք Քեզ, Տեր իմ, Փառք Քեզ, օ, Ալլահ, ներիր ինձ:»

[5] « Օ, Ալլահ, իրոք, եսդիմում եմ Քո օրհնությանը, և Քո ներումը Քո պատժից և ես դիմում եմ Քեզ, Քեզանից: Չեմ կարող հաշվել ամբողջ գովքը, որին Դու արժանի ես, Քանզի միայն Դու տվել ես քեզ դրանք բավարար չափով :»

[6] «Օ, Ալլահ, քեզ եմ կատարում երկրային կքանիստ և Քեզ եմ հավատում և Քեզ եմ տրվում... Իմ երեսով ընկնում եմ գետնին Քո առջև, Ով ստեղծել է այն և տվել է լսողություն և տեսողություն, Իր հզորությամբ և ուժով, օրհնյալ է Ալլահը, արարիչներից լավագույնը :»

[7] « Օ, Ալլահ, հեռացրու ինձ իմ մեղքերից, ինչպես դու հեռացրել ես արևմուտը արևելքից, Օ,ալլահ, մաքրիր ինձ մեղքերից, ինչպես մաքրում ես սպիտակ հագուստը կեղտից, Օ, Ալլահ, լվա իմ մեղքերը ջրով, ձնով և ամպրոպով :»

| | |
|---|---|
| **Նամազի վերջում** | «Ալլահումմա, իննի զալամտու նեֆսի զուլման կասիրան, ուա լա յաղֆիրու զզունուբի իլլա Անտա, ֆա ղաֆիր լի մագֆիրատան մին ինդիկա ուա ռահամնի, իննակա Անտալ Ղաֆուրու Ռռահիմեն:»[1] |
| **Աղոթքից հետո** | «Ալլահումա ահննի ալա զիկրիկա ուա շուքրիկա ուա հուսնի իբադատիկա:»[2] «Ալլահումա իննի աուզու բիկա մինալ կուֆրի ուալ ֆակրի ուա ազաբիել կաբր:»[3] |
| **Անձրևի ժամանակ** | «Ալլահումա, սայիբան նեֆի ան:»[4] երկու կամ երեք անգամ; «Մուտիրնա բիֆադլիլեհի ուա ռահմատիկի»[5] |
| **Եթե քամի է գալիս** | « Ալլահումա, իննի ասալուկա հայրահա, ուա հայրա մա ֆիհա ուա խայրա մա ուրսիլատ բիհի, ուա աուզու բիկա մին շարիհա, ուա շարրի մա ֆիհա, ուա շարրի մա ուրսիլատ բիհի:»[6] |
| **Երիտասարդ լուսնի հայտնվելուց** | « Ալլահումա ախիլահու ալեյնե բի ել յումնի ուալ իմանի, ուա սալամատի, ուալ իսլամի, հիլալու խեյրին ուա ռուշդին, Ռաբբի ուա Ռաբբուկալլահու:»[7] |
| **Եթե մարդ ճանապարհում է որևէ մեկին** | «Աստաուդիուլլահա դինակա, ուա ամանատակա ուա հավատիմա ամալիկա:»[8]<br>Իսկ ճանապարհ գնացողը պատասխանում է հետևյալ կերպ, «Աստաուդիուկումուլլահա լազի լա տադիու ուադայուհու:»[9] |
| **Եթե որևէ բան դուր է գալիս կամ հակառակը** | Երբ Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) տեսնում էր որևէ բան, որ իրեն դուր էր գալիս, նա ասում էր. «Փառք Ալլահին, Ում գթասրտությամբ կատարվում է բարիք:» Իսկ երբ տեսնում էր որևէ բան, որ իրեն դուր չէր գալիս, նա ասում էր. «Փառք Ալլահին, ամեն դեպքում:» |
| **Աղերսի խոսքեր ճանապարհից առաջ** | «Ալլահու Աքբար, Ալլահու Աքբար, Ալլահու Աքբար: Սուբհանա լլեզի սախխարա լանա հազա ումա կուննա լեհու մուկրինին, ուա իննա իլա ռաբբինա լամունկալիբուն: Ալլահումմա, իննա նասսալուկա ֆի սաֆարինա հազա ելբիրա ուա տտակուա, ուա մին ալ ամալի մա տարդա: Ալլահումմա, հավին ալեյնա սաֆարանա հազա ուա տվի աննա բուդահու: Ալլահումմա Անտա սսահիբու, ֆի սսաֆարի ուալ խալիֆատու ֆիալ ահլի, Ալլահումմա իննի աուզու բիկա մին ուասայի սսաֆարի ուա |

[1] « Օ, Ալլահ, իրոք ես վիրավորել եմ ինձ շատ անգամ ը ոչ ոք բացի քեզանից չի ներում մեղքերը : Խնդրիր ինձ և նվիրիր ինձ քո ներողամտությունը և ներիր ինձ, քանզի Դու Ներող և Գթասիրտ ես :»
[2] «Օ, Ալլահ, օգնիր ինձ հիշել Քեզ, եչախտապարտ լինել և երկրպագել Քեզ լավագույն ձևով :»
[3] « Օ, Ալլահ, Ճշմարիտ, ես Քեզ մոտ պաշտպանություն եմ խնդրում անհավատությունից, անհավատությունից, աղքատությունից և գերեզմանի տանջանքներից : »
[4] « Օ, Ալլահ, թող այս անձրը բերի օգուտ :»
[5] « Մեզ վրա Ալլահի գթասրտությամբ և ներողամտությամբ եկավ անձրև:»
[6] «Օ, Ալլահ, չկա ավելի հեշտ բան, քան այն, ինչ Դու հեշտացրել ես, և եթե Դու ցանկանաս, ապա այդ դժվարինը կհեշտացնես :»
[7] « Օ, Ալլահ, մեծրիր նրան մեզանից և նվիրի մեզ հավատք և բարիք, փրկություն և իսլամ, իսլամ, բարիքի և ողջախոհության կիսալուսին : Մեր և Քո Տեր Ալլահ :»
[8] « Վստահում եմ Ալլահին քո կրոնը և քո հավատարմությունը և քո գործերի ելքը :»
[9] « Վստահում եմ ձեզ Ալլահին, ում մոտից չի կորչում Նրան վստահվածը :»

| | |
|---|---|
| | կաբբատիլ մանզարի ուա սուիլ մունկալաբի ֆիլմալի ուալ ախլ:»[1] ախլ:»[1]<br>Իսկ ետ վերադառնալուց պիտի ասել նույնը և ավելացնել. «Այյիբունա, տաիբունա, աբիդունա յիՌաբբինա համիդունա:»[2] |
| Քնելուց առաջ | «Այյահումա, ասլամտու նաֆսի իլեյկա ուա ֆավադատու ամրի ալեյկա, ուա ալջատու զահրի իլեյկա ռագբատան ուա ռահբատան իլեյկա: Լա մալջաա ուա լա մանջա մինկա իլլա իլեյկա, ամանտու բի Կիտեբիկա լեզի անզալտա ուա բինաբիյիկա աեզի արսալտա:»[3] «Ալհադու լիլեհի լեզի ատամանա ուա սականա ուա կյաֆանա ուա ավանա ֆակամ միմման լիկաֆիյա լեհու ուա լա մուվի:»[4] «Ալլահումա կինի ազաբակա յաումա տաբասու իբադակա:»[5] «Սուբհանակալեհումա, Ռաբբիբիկա ուադատու ջանբի ուաբիկա արֆաուխու, ֆա ին ամսակտա նեֆսի ֆարմախա, ուա ինարսալտահա, ֆախֆասխա բիմա տակֆազու բիհի իբադակա սալիհին:[6] Նույնպես հաղորդվում է, որ Մարգարեն (Սալլալահու ալեհի ուա սալամ) փչում էր իր ձեռքերին, ընթերցում էր 113 և 114 սուրաներր և քսում էր ձեռքերր մարմնին և որ նա չէր պառկում քնելու առանց սուրա 32 և 67 –ը ընթերցելու: |
| Տանից, մզկիթ գնալուց | «Ալլահումմա ջալ ֆի կելբի նուրան, ուա ֆի լիսենի նուրան, ուա ֆի սամի նուրան, ուա ֆի բասարի նուրան, ուա մին ֆաուկի նուրան, ուա մին տախտի նուրան, ուա անյամինի նուրան, ուա ան շիմելի նուրան, ուա մին ամեմի նուրան, ուա մին խալֆի նուրան, ուա ջալ ֆի նաֆսի նուրան, ուա ազիմ լի նուրան, ուա ազզիմ լի նուրան, ուա ջալ ֆի ասաբի նուրան, ուա ֆի լահմի նուրան, ուա ֆի դամմի նուրան, ուա ֆի շառի նուրան, ուա ֆի բաշարի նուրան:»[7] |

1 ««Ալլահը Մեծ է, Ալլահը մեծ է, Ալլահը մեծ է:» Փառահեղ է Նա, ով ենթարկել է մեզ այդ, քանի որ այդ մեր ուժերից վեր է: Իրոք, մենք վերադառնում ենք մեր Տիրոջը :» Օ, Ալլահ, իրոք, մենք խնդրում ենք Քեզ աստվածավախություն և աստվածահաճություն մեր այս ճանապարհում, նաև այն այնպիսի արարքների իրականացում, որոնցով Դու գոհ կլինես: Օ, Ալլահ, թեթևացրու մեր այս ճանապարհորդությունը և կրճատիր մեզ համար նրա տևողությունը : Օ, Ալլահ, Դու կլինես ուղեկից այս ճանապարհորդությանը և դու կմնաս ընտանիքով, Օ, Ալլահ, իրոք, ես դիմում եմ Քեզ ճանապարհի դժվարություններից, տխրությունից, որի մեջ ես կարող եմ ընկնել, և անհաջողություններից, որը վերաբերվում է ունեցվածքին և ընտանիքին :»»

2 « Մենք վերադառնում, զղջում ենք, երկրպագում և փառաբանում ենք մեր Տիրոջը :»

3 « Օ, Ալլահ, ես տրվել եմ Քեզ և տվել եմ Քեզ իմ գործը և Քեզ եմ վստահում իմ ցանկությամբ և վախով: Չկա ապաստան և փրկություն Քեզանից, բացի Քեզ դիմելուց,ես հավատացել եմ Քո Գրերին, որոնք Դու ուղարկել ես, և Քո Մարգարեյին, որին Դու ուղարկել ես :»

4 « Փառք Ալլահին, Ով կերակրել է մեզ, խմեցրել է, ապահովել և ապաստան է տվել : Իսկ որքան կան այնպիսիններ, ովքեր չունեն հովանավոր և ապաստան տվող :»

5 «Օ, Ալլահ, պաշտպանիր ինձ քո պատժից այդ Օրը, երբ Դու հարություն կտաս Քո ստրուկներին :»

6 «Օրհնյալ ես Դու, օ, Ալլահ, իմ Տեր, Քո անունով ես պառկում եմ և անունով Քո արթնանում եմ : Եթե Դու վերցնես իմ հոգին, ապա ներիր այն, իսկ եթե թողնես, ապա պաշտպանիր այնպես ինչպես պաշտպանում ես Քո առաքինի ստրուկներին :»

7 «Օ, Ալլահ դիր իմ սրտում լույս, և լեզվում լույս, և տեսողության մեջ լույս և լսողության մեջ լույս, և սփռիր իմ վրա լույս և իմ ոտքերի տակ լույս և աջ կողմում լույս և ձախ կողմում լույս և իմ առջև լույս և իմ ետև լույս և սփռիր լույս իմ հոգում և տարածիր այդ հզոր ձևով և սփռիր լույս մեծ ինձ համար, և վառիր ինձ համար լույս և դարձրու ինձ լույս: Օ, Ալլահ, նվիրիր ինձ լույս և դիր իմ անոթներում լույս և իմ մարմնում լույս, իմ երակներում լույս, իմ մազերում լույս և իմ մաշկում լույս:»

| | |
|---|---|
| Օրհնություն խնդրող դուա | Եթե ինչ որ մեկր ցանկանա անել, ինչ որ բան, թող լրացուցիչ աղոթի երկու ռաքյատ և հետո ասի. «Ալլահումա իննի աստախիրուկա բիիլմիկա, ուա աստակդիրուկա բիկուդրատիկա ուա աասուկա մին ֆադլիկա ել ազիմ ֆաիննակա տակդիրու ուա յա ակդիրու, ուա տալամու ուա լաալամու, ուա անտա ալլամուլղույուբ: Ալլահումմա, ին կունտա տաալամու աննա խաղալ ամրա խեյրուն լի ֆի դինի, ուա մաաշի ուա ակիբիտի ամրի, ֆա կուդրուհու լի ուա յասիրհու լի, սումմա բարիկ լի ֆիհի, ուա ին կունտա տալամու աննա խազալամրա շարրուն լի ֆի դինի, ուա մաաշի ուա ակիբատի ամրի, ֆա սրիֆհու աննի ուա սրիֆնի անհու ուա կդուր լիյա լ խայրա հայսու կանա, սումմա արդինի բիհի:»[1] |
| Հանգուցյալի համար արվող դուա | «Ալլահումա ղաֆիր լեհու ուա ռահամտու, ուա աֆիհի, ուա ֆու անհու, ուա ակրիմ նուզուլահու, ուա ուասի մուդհալահու, ուա ղսիլկու բիլմաի ուա սսալջի ուալ բարադի, ուա նակկիհի մինել հատայա կամա նակայտա սսաբալ աբյադա մինա դդանասի, ուա աբդիլհու դարան խեյրան մին դարիհի, ուա ախլյան խեյրան մին աhլիհի, ուա զավջան խեյրան մին զավջիհի, ուա ադխիլխու ելջանատա, ուա աիզհու մին ազաբիլ կաբրի ուա մին ազաբիննառ:»[2] |
| Տխրությունից ազատվելու աղերս | ««Եթե նա, ում հասել է տագնապ կամ տխրություն ասի. «Ալլահումմա, իննի աբդուկա, իբնու աբդիկա, իբնու ամատիկա,նասիյատի բիյադիկա մադին ֆիյա հուկմուկա ադլյուն ֆիյա կադաուկա ասալյուկա բիկուլի իսմին հուվա լյակա սամեյտա բիհի նաֆսակա, ուա անզալտահու ֆի կիտաբիկա, աու ալլյամտահու ահադան մին խալկիկա աու իստաարտա բիհի ֆի իլմիլ գայբի ինդակա ան տաջալ ել Կուրանա ռաբիյա կալբի, ուա նուրա սադրի, ուա ջալյա խուզնի ուա զահաբա խամմի»[3], ապա նրան Ալլահր անպատճառ կազատի տխրությունից, հոգսից և այն կփոխարինի ուրախությամբ:»» |

[1] « Օ, Ալլահ, ես խնդրում եմ Քեզ, օգնել ինձ, Քո գիտելիքներով, և ես խնդրում եմ քեզ ինձ ուժ տալ Քո հզորությամբ և ես խնդրում եմ Քեզ տալ ինձ գութ, քանզի, իրոք դու կարող ես իսկ ես, ոչ, Դու գիտես, իսկ ես չգիտեմ և Քեզ հայտնի է ամեն ինչ գաղտնին: Օ, Ալլահ, եթե Դու գիտես, եր այս գործը, այսինքն իստախարայի համար արվող գործը, կլինի բարիք իմ կրոնի, կյանքի և արարքների համար, ապա կանխորոշիր այն ինձ, թեթևացրու այն ինձ համար և տուր Քո օրհնությունը դրանում : Եթե Դու գիտես, որ այն կլինի չարիք իմ կրոնի, կյանքի, արարքների համար, ապա հեռացրու այն ինձանից և հեռացրու ինձ դրանից և կանխորոշիր ինձ բարիք, որտեղ էլ այն լինի և ուղեկցիր ինձ դեպի այդ :»

[2] « Օ, Ալլահ, ներիր նրան և գթա ր նվիրիր նրան բարօրություն և տուր նրան գութ և լավ վերաբերմունք և դրաձրու նրա գերեզմանը ընդարձակ, և լվա նրան ջրով, ձնով, սառույցով և մաքրիր նրան մեղքերից, ինչպես մաքրել ես աղտը սպիտակ հագուստից և տուր նրան տուն, իր տնից լավ և ընտանիք նրա ընտանիքից լավ, և կին նրա կնոջից լավ և ուղեկցիր նրան Դրախտ և պաշտպանիր նրան գերեզմանի և Կրակի տանջանքներից :»

[3] « Օ, Ալլահ, իրոք, ես Քո ստրուկն եմ և Քո ստրուկի որդին և Քո ստրկուհու որդին : Ես Քոնն եմ, Քո որոշումը պարտադիր է ինձ համար, և Քո դատավճիռը արդար է : Ես կանչում եմ Քեզ Քո ամեն անվամբ, որոնցով Դու կոչել ես ՔԵզ կամ ուղարկել ես Քո Գրքում, կամ բացահայտել ես Քո արարածներից մեկին, կամ թողել ես այդ գաղտնի բոլորից, բացի Քեզանից, դարձնելով Ղուրանը, իմ սրտի գարուն, լույս և տխրության վերացման պատճառ և անհանգստության դադար:»

# ԵԿԱՄՏԱԲԵՐ ԱՌևՏՈՒՐ

Ալլահը գերադասել է մարդուն մյուս բոլոր արարածներից և տվել է նրան խոսքի պարգև և զենքը դարձրել է լեզուն: Եվ այս պարգևը մարդ օգտագործում է և որպես բարիք, և որպես չարիք: Եվ նա, ով օգտագործել է այն որպես բարիք, նա կլինի երջանիկ այս կյանքում և նրան սպասվում է բարձր աստիճան Դրախտում: Իսկ ով այլ կերպ է վարվում, նրան սպասում է վտանգ երկու աշխարհներում: Բացի Ղուրանի ընթերցումից, լավագույն կերպով լեզուն օգտագործելը Ալլահին հիշելն է:

ԱԼԼԱՀԻՆ ՀԻՇԵԼՈՒ ԱՐԺԱՆԻՔՆԵՐԸ. Գոյություն ունեն բազմաթիվ հադիթներ այս թեմայով: Օրինակ Մարգարեի (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) խոսքերը. « Հաղորդե՞մ ձեզ լավագույն և մաքուր արարքներից մեկը ձեր Տիրոջ հանդեպ, որի շնորհիվ դուք կբարձրանաք ամենաբարձր աստիճան և որը լավագույնն է ձեզ համար, քան ոսկու և արծաթի բաժանելը:» Նրանք ասացին.« Իհարկե» և Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. «Ամենաբարձրյալ Ալլահին հիշատակելն է:» (Ատ-Տիրմիզի) Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես ասաց. « Նա, ով հիշում է իր Տիրոջը և նա, ով չի հիշում իր Տիրոջը, նման են կենդանի և մեռածի:» (Ալ-Բուխարի)

Կուդսի հադիթում Ամենաբարձրյալ Ալլահը ասում է. «Ես կլինեմ այնպիսի, ինչպիսին համարում է Ինձ Իմ ստրուկը, և Ես նրա հետ եմ, երբ նա հիշատակում է Ինձ: Եվ եթե, նա հիշի ինձ մարդկանց միջավայրում, Ես կհիշեմ նրան ավելի լավ միջավայրում, քան մարդկանցն է: Նրան, ով կմոտենա Ինձ մի թիզ, Ես կմոտենամ արմունկի չափով:» Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես ասաց. «Մուֆարիդունները առաջ են անցել:» Մարդիկ հարցրեցին, «Իսկ ովքե՞ր են մուրիդունները, օ, Ալլահի Մարգարե,» որին Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Այդ կանայք ու տղամարդիկ են, ովքեր հաճախ հիշում են Ալլահին:» (Մուսլիմ)

Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) նույնպես ասաց, երբ ուղղորդում էր իր հետևորդներից մեկին. «Թող քո լեզուն չդադարի հիշել Ալլահին:» (Ատ-Տիրմիզի)

ՊԱՐԳևԻ ԲԱԶՄԱՊԱՏԿՈՒՄԸ. Լավ արարքների պարգևը կարող է բազմապատկվել մի քանի անգամ,

1. Կախված հավատքից և հավատացյալի սրտի անկեղծությունից, ինչպես նաև նրա սիրուց առ Ալլահ և այդ սիրո հետևանքներից:

2. Կախված հավատացյալի սրտի մասնակցությանը Ալլահին հիշատակելուն: Անհրաժեշտ է մտորել հիշատակվող խոսքերի վրա, այլ ոչ թե ուղղակի ասել: Եթե այդ ամենը կատարվում է կատարյալ ձևով, Ալլահը ներում է նրա բոլոր վատ արարքները և տալիս է նրան լիակատար պարգև: Եթե ինչ որ բանում կա թերություն, ապա պարգևը փոքրանում է կխված դրանից:

ԱԼԼԱՀԻՆ ՀԻՇԱՏԱԿԵԼՈՒ ՕԳՈՒՏՆԵՐԸ. ԾԱՆՈՒՑՈՒՄ. Իսլամի շեյխ Իբն Տայմիյան ասաց. «Ալլահին հիշատակելը սրտի համար, նման է ջրին ձկան համար: Ինչպե՞ս կզգա իրեն ձուկը, եթե նրան հանենք ջրից...»

1. Այն ծնում է սեր և կապվածություն Ալլահին, ինչպես նաև վախի զգացում և գիտակցում այն բանի, որ Ալլահը միշտ հետևում է մարդուն, ստիպելով

հավատացյալին ապաշխարհել Իրեն և ձգտել Նրան ամբողջ էությամբ և օգնում է նրան լինել հնազանդ իր Տիրոջը: 2. Հեռացնում է ճնշվածությունը, տագնապը և տխրությունը և ծնում է ուրախություն, նվիրում է սրտին կենդանություն, ուժ և մաքրություն: 3. Սրտում կա դատարկություն, որը ոչինչ չի լրացնում, բացի Ալլահին հիշատակելը, իսկ դաժան սիրտը ոչինչ չի մեղմացնի, բացի Ալլահին հիշելուց: 4. Զիքրը դեղ և բուժում է սրտին, նրա հանապազօրյա հացը և հրճվանքը, որին չի համեմատվի ոչ մի հաճույք: Իսկ անխնամությունը և թափթփվածությունը սրտի հիվանդություննն են: 5. Ալլահին հիշատակելու գծուծությունը փարիսության նշան է, իսկ նրա շատ լինելը իմանի ուժն է և անկեղծ սերը դեպի Տերը, որովհետև սիրելով մեկին, մարդ միշտ հիշատակում է նրան: 6. Եթե ստրուկը հիշատակում է Ալլահին բարօրության մեջ, Ալլահը նրան չի մոռանա տխրության մեջ, մանավանդ մահվան մահճում: 7. Զիքրը փրկում է մարդուն Ալլահի պատժից, բերելով նրան հանգստություն, պարուրում է Ալլահի գթությամբ, իսկ հրեշտակները թողություն են խնդրում նրա համար: 8. Զիքրը զբաղեցնում է մարդու լեզուն, պաշտպանում է նրան սին խոսքերից, բամբասանքից, ստից, վատաբանումից և ամեն արգելվածից: 9. Այն երկրպագման ամենահեշտ տեսակն է և միևնույն ժամանակ այն ամենալավը և առաքինի ձևն է, որը Դրախտի ցանք է: 10. Զիքրը տալիս է մարդու դեմքին արժանապատվություն, գեղեցկություն և թարմություն: Նա, այս աշխարհում լույս է, լույս է նաև գերեզմանում և հաջորդ կյանքում: 11. Զիքրը բերում է իր հետ Ալլահի օրհնություն, և հրեշտակների աղերս: Ամենաբարձրյալ Ալլահը հպարտանում է Իրեն հիշատակողներով հրեշտակների դիմաց: 12. Բարի արարքներ անողներից լավագույնները նրանք են, ով ամենից շատն է հիշատակում Ալլահին այդ անելիս: Իսկ պահք պահողներից լավագույնը նա է, ով պահքի ժամանակ ամենաշատն է հիշատակում Ալլահին: 13. Զիքրը ամեն դժվար բան հեշտ է դարձնում, թեթևացնում է հոգսի բեռը, որը ճնշում է մարդուն, բերում է բարիք և ամրացնում է մարմինը: 14. Այն հեռացնում է շեյթանին, ճնշում և վարկաբեկում է նրան, և առաջացնում է Ամենագթասիրտի գոհունակությունը:

## ԳԻՇԵՐ և ՑԵՐԵԿ ԱՍՎՈՂ ՀԻՇԱՏԱԿՄԱՆ ԽՈՍՔԵՐ

| ԱՍՎՈՂ ԽՈՍՔԵՐ | ԺԱՄԸ և ՆՐԱՆՑ ՔԱՆԱԿԸ | ԱՅԴ ԽՈՍՔԵՐԻ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ և ԱՐԺԱՆԱՊԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ |
|---|---|---|
| Այաթ «Ալ-Կուրսի»[1] | Մեկական անգամ առավոտյան և երեկոյան, պարտադիր նամազներից հետո | Մարդուն չի մոտենում շեյթանը և այն օգնում է մտնել Դրախտ |

[1] «Ալլահ, չկա աստված, բացի Նրանից, Կենդանի, Կյանք պահպանող: Նա ոչ ննջում, ոչ էլ էլ քնում է: Նրան է պատկանում այն, ինչ երկնքում է և այն, ինչ երկրում է : Ո՛վ կարող է բարեխոսել Նրան առանց, Նրա թույլտվության : Նա գիտի նրանց ապագան և անցյալը : Նրանք ձեռք են բերում Նրա գիտելիքներից այն, ինչ Նա է ցանկանում : Նրա գահը պարուրում է եչկինքը և երկիրը և նրանց պաշտպանությունը դժվար չէ Նրա համար : Նա Մեծարած և Հզոր է:

| | | |
|---|---|---|
| 2 սուրայի վերջին երկու այաթները[1] | Մեկ անգամ երեկոյան, կամ քնելուց առաջ | Պաշտպանում է մարդուն ամեն չարիքից |
| 112, 113, 114 սուրաները | Երեք անգամ առավոտյան, երեք անգամ երեկոյան | Ազատում է մարդուն ինչ որ բանի ցանկությունից: |
| «Բիսմիլեհի լեզի լյադուրրու մաաասմի հի շեյուն ֆիլ արդի ուա լյա ֆի սսամաի ուա հուվա սսամիալ ալիմ»[2] | Երեք անգամ առավոտյան և երեք անգամ երեկոյան | Նրան չի հասնի դժբախտություն անսպասելի և ոչինչ չի վնասի նրան; |
| «Աուզու բիկալիմատի լեհի տտամմատ մին շարի մա խալակ»[3] | Երեք անգամ երեկոյան, և որևէ տեղ կանգնելուց | Հեռացնում է դժբախտությունը ցանկացած վայրերից: |
| «Հասբինալլահու լե իլեհե իլլա հուվա, ալեհի տաուակալատու ուա հուվա Ռաբբուլ առշի ել ազիմ:» [4] | Յոթ անգամ առավոտյան և յոթ անգամ երեկոյան | Ալլահը կազատի նրան այս և մյուս աշխարհների տագնապից: |
| «Ռադիյտու բիլեհի Ռաբբան, ուա բիլ Իսլամի դինան ուա բիՄուհամմեդին, սալալլահու ալեյհու ուա սալլամ, նաբիյան:»[5] | Երեք անգամ առավոտյան և երեք անգամ երեկոյան | Ալլահը անպատճառ կպարգևի գոհունակություն |
| «Ալլահումմա, բիկա ասբահնա, ուա բիկա ամսայնա, ուա բիկա նահյա, ուա բիկա նամուտու ուա իլեյկա ննուշուր:» Իսկ երեկոյան պետք է ասել. « Ալլահումմա, բիկա ամսայնա, ուա բիկա ասբահնա, ուա բիկա նահյա, ուա բիկա նամուտու, ուա իլեյկա ել մասիր:»[6] | Մեկ անգամ առավոտյան և մեկ անգամ երեկոյան | Փոխանցվում է դրդում, ասելու այս խոսքերը |
| «Ասբահնա ալա ֆիտրատի ել Իսլամի ուա ալյա | Մեկ անգամ | Ալլահի |

1 ««Մարգարեն և հավատացյալները հավատացել են նրան, ինչ ուղարկվել է Նրան աստծոց : Նրանք բոլորը հավատացել են Ալլահին, Նրա հրեշտակներին, Նրա Գրերին և Նրա Մարգարեներին : Նրանք ասում են .« Մենք տարբերություն չենք դնում Նրա մարգարեների միջև :» Նրանք ասում են «Լսում և Ենթարկվում ենք, Քո ներումն ենք մենք աղերսում, Տեր մեր, և Քեզ մոտ է մեր ժամանումը:»Ալլահը մարդուն ուժերից վեր ոչինչ չի տալիս : Նրան հասնում է այն, ինչ ձեռք է բերում և նրա դեմ է լինում այն, ինչ նա ձեռք է բերել :Տեր մեր, մի պատժիր մեզ, եթե մենք մոռացել կամ սխալվել ենք :Տեր մեր, մի տուր մ,եզ բեռ, որը Դու դրել ես մեր նախորդների վրա: Տեր մեր, մի տուր մեզ այն, ինչ մեր ուժերից վեր է: Եղիր մեղմ մեզ հետ : Ներիր և գթա մեզ: Դու մեր հովանավորն ես: Օգնիր մեզ հաղթելու անհավատ մարդկանց :»»

2 « Ալլահի անունով, Նրա Անունով, առանց որի ոչինչ չի վնասի ոչ երկրում, ոչ էլ երկնքում: Իրոք Նա Լսող և Իմացող է:»

3 «Դառնում եմ Ալլահի կատարյալ Խոսքերին ի պաշտպանություն այն չարիքի դեմ, որը նա արարել է :»

4 « Ինձ բավական է Ալլահը, չկա աստված, բացի Նրանից, Նրան ես վստահում եմ և Նա հզոր Գահի Տիրակալն է:»

5 «Ես գոհ եմ Ալլահից, ինչպես Տեր, իսլամից ինչպես կրոն և Մուհամեդից, ինչպես մարգարե:»

6 « Օ, Ալլահ, Քո շնորհիվ մենք ապրել ենք մինչ առավոտ և Քո շնորհիվ մենք ապրել ենք մինչ երեկո: Դու տալիս ես մեզ կյանք և Դու զրկում ես մեզ դրանից և Դու հարություն ես տալիս հաշվի համար: » Իսկ երեկոյան « Օ, Ալլահ Քո շնորհիվ մենք ապրել ենք մինչ երեկո և Քո շնորհիվ մենք ապրել ենք մինչ առավոտ: Դու տալիս ես մեզ կյանք և Դու զրկում ես մեզ դրանից և դու հարություն ես տալիս մեզ հաշվի համար:»

| | | |
|---|---|---|
| կալիմատի էլ իխլասի ուա ալյա դինի նաբիիինա Մուհամմեդ, սալալահու ալեյհի ուա սալլամ, ուա ալա միլատի աբինա Իբրահիմա խանիֆան մուսլիման ուա մա կանա մին ալ մուշրիկին:»[1] | առավոտյան | Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասում էր այս խոսքերը: |
| «Ալլահումմա, մա ասբահա, մա ամսա, բի մին նիմատին աու բի ահադին մին խալկիկա ֆամին կա ուահդակա լա շարիկա լեկա ֆալակա ելհամդու ուա լեկաշշուկր:»[2] | Մեկ անգամ առավոտյան և մեկ անգամ երեկոյան | Ալլահին շնորհակալական խոսք անցած օրվա և գիշերվա համար |
| «Ալլահումմա իննի ասբահտու, իննի ամսայտու ուշհիդուկա ուա ուշհիդու համալատա արշիկա ուա մալյաիկատա կաուա անբիյակա ուա ջամիա խալկիկա բաննակա անտա լահու լեիլեհեիլյա Անտա, ուա աննա Մուհամմեդան աբդուկա ուա ռասուլյուկա:»[3] | Չորս անգամ առավոտյան և չորս անգամ երեկոյան | Ով կարտաբերի այս խոսքերը չորս անգամ, նրան Ալլահը կպաշտպանի Կրակից |
| «Ալլահումմա, Ֆատիրաս սամաուատի ուալ արդի, ալիմա ել ղայբի ուաշ շահադատի, Ռաբբա կուլի շեյին ուա Մելիկահու, աշհադու ալլա իլյա Անտա, աուզու բիկա մին շառի նեֆսի ուա մին շառի շշեյտանի ուա շիրկիհի ուա ան ակտարիֆա սուան ալյա նեֆսու աու աջուրահու իլա մուսլիմ:»[4] | Մեկ անգամ առավոտյան, մեկ անգամ երեկոյան և մեկ անգամ քնելուց առաջ: | Պաշտպանություն շեյթանի փսփսոցից: |
| «Ալլահումա,իննի աուզու բիկա մին ալհամմի ուալ հազանի աուզու բիկա միննալ աջզու ուալ կասալի, ուա աուզուբիկա միննալ ջուբնի ուալ բուխլի, ուա աուզու բիկա մին գալյաբատի դդեյնի ուա կահրի ռռիջելի:»[5] | Մեկ անգամ առավոտյան և մեկ անգամ երեկոյան | Հեռացնում է մարդու տխրությունը և տագնապը և նա կվերադարձնի պարտքերը: |
| «Ալլահումմա, անտա Ռաբբի, լեիլեհաիլյա Անտա խալակտանի ուա անա աբդուկա | Ներման բոլոր դուաների | Ով ասում է այս խոսքերը անկեղծ |

[1] « Մենք ապրել ենք մինչ առավոտ իսլամում, համաձայն անկեղծության խոսքի, ունենալով մեր Մարգարե Մուհամմեդի կրոնը և մեր հայր Իբրահիմի կրոնը, ով եղել է հանիֆ և մուսուլման և չի պատկանել բազմաստվածներին:»

[2] « Օ, Ալլահ, շնորհները, որոնք եղել են այս առավոտ, կամ երեկոյան, ինձ կամ Քո արարածներից որևէ մեկին, գալիս են միայն Քեզանից և չկա Քեզ զուգընկեր: Քեզ փառք և Քեզ շնորհակալություն:»

[3] « Օ, Ալլահ, ճշմարիտ այս առավոտ, կամ երեկո ես կոչում եմ Քեզ և նրանց ովքեր տանում են Քո Գահը և Քո հրեշտակներին և բոլոր նրանց, ում Դու ստեղծել ես, վկայելու, որ Դու Ալլահն ես և չկա աստված, բացի միայն Քեզանից և որ Մուհամմեդը Քո ստրուկը և Մարգարեն է:»

[4] « Օ, Ալլահ երկրի և երկնքի Արարիչ, գաղտնին և բացահայտը Իմացողը, ամենի Տեր ու Տիրակալը, վկայում եմ, որ չկա աստված, բացի Քեզանից, դիմում եմ Քեզ իմ հոգու չարիքից և Շեյթանի բազմաստվածությունից ու չարիքից և նրանից, որ չվնասեմ ինքս ինձ կամ որևէ մուսուլմանի:»

[5] «Օ, Ալլահ, իրոք ես գալիս եմ Քեզ մոտ տխրությունից և անհանգստությունից, ծուլությունից և թուլությունից, գծուծությունից և վախկոտությունից, պարտքի բեռից և մարդկանց անարդարությունից:»

| | | |
|---|---|---|
| ուա անա ալլա ահդիկա ուա ուադիկա մա ստատատու: Աուզու բիկա մին շարրի մա սանատու, աբու լեկա բինիմատիկա ալլեյյա, ուա աբու բի զանբի, ֆագֆիրլի: Ֆա իննահու լեյագֆիրու զզունուբա իլլա Անտա:»[1] | տերը: Մեկ անգամ առավոտյան և մեկ անգամ երեկոյան: | հավատալով նրանց ցերեկը և մահանում է գիշերը, կամ ասում է գիշերը և մահանում է ցերեկը, նա կլինի Դրախտի բնակիչներից մեկը: |
| «Յա Հայյու, Յա Կայյումու, բի ռահմատիկա աստադիսու, ասլիհ լի շանի կուլահու ուալա տակիլնի իլա նաֆսի տարֆատա այն:»[2] | Մեկ անգամ առավոտյան և մեկ անգամ երեկոյան | Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) կտակել է Ֆաթմային կրկնել այս խոսքերը: |
| «Ալլահումմա, աֆինի ֆի բադանի Ալլահումմա աֆինի ֆի սամի, Ալլահումմա աֆինի ֆի բասարի, Ալլահումմա իննի աուզու բիկա մինալկուֆրի ուալ ֆակրի, Ալլահումմա իննի աուզու բիկա մին ազաբի ելկաբրի, լեիլեհե իլլա Անտա:»[3] | Երեք անգամ առավոտյան և երեք անգամ երեկոյան | Ալլահի Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) ասում էր այս խոսքերը: |
| «Ալլահումմա իննի ասալուկա ալ աֆիյատա ֆի դինի ուա դունյայի ուա ահլի ուա մալի, Ալլահումմա ստուր աուրատի ուա ամին ռաուատի, Ալլահումմա հաֆազնի մին բայնի յադայա ուամին խալֆի ուան յամինի ուան շիմելի ուամին ֆաուկի ուա աուզու բիազամատակի ան ուգտալա մին տախտի»[4] | Մեկ կամ տաս անգամ առավոտյան և երեկոյան | Այս խոսքերի արտաբերումը հավասար է ստրուկի ազատման, մարդուն գրվում է տաս բարի գործ, մաքրվում է տաս վատ արարք, նա բարձրանում է տաս աստիճան և նա պաշտպանված կլինի շեյթանից: |
| «Սուբհանալեհի ուա բիհամդիհի ադադա խալկիհի ուա ռիդա նաֆսիհի ուա զինատա արշիհի ուա միդադա կալիմատիհի:»[5] | Երեք անգամ առավոտյան | Այս խո սքերը ավելի լավ են, քան Ալլահին հիշելը արևածագից մինչև մայրամուտ: |

[1] « Օ, Ալլահ, դու տեր իմ, չկա աստված, բացի Քեզանից : Դու արարել ես ինձ և ես Քո ստրուկն եմ և ես հավատարիմ կլինեմ քեզ, քանի ուժ ունեմ : Դիմում եմ քեզ այն չարիքից, ինչ արել եմ Քեզ, ընդունում եմ գութը արված ինձ և ընդունում եմ իմ մեղքը : Ներիր ինձ, քանզի, իրոք ոչ ոք չի ներում մեղքեր բացի Քեզանից:»

[2] « Օ, Կենդանի, օ, Հավիտենական դիմում եմ Քեզ պաշտպանելու և Քո գթասրտությանը, կարգավորիր իմ բոլոր արարքները և մի վստահիր ինձ իմ հոգուն ոչ մի ակնթարթ:»

[3] « Օ, Ալլահ, նվիրիր ինձ առողջություն, օ, Ալլահ նվիրիր ինձ ողջամիտ լսողություն, օ, Ալլհ նվիրիր ինձ ողջամիտ տեսողություն, օ, Ալլահ, իրոք ես դիմում եմ Քեզ անհավատությունից և աղքատությունից, օ, Ալլահ իրոք, ես դիմում եմ Քեզ գերեզմանի տանջանքներից, չկա աստված, բացի Քեզանից:»

[4] «Օ, Ալլահ, իրոք ես խնդրում եմ Քեզ բարօրություն իմ կյանքի և կրոնի, ընտանիքի և ունեցվածքի համար :Օ, Ալլահ քողարկիր իմ թերությունները և պաշտպանիր ինձ վախից, օ, Ալլահ, պաշտպանիր ինձ առջևից և ետևից, աջից և ձախից : Ես դիմում եմ Քո Մեծությանը, որ հանկարծակի սպանված լինեմ ներքևից :»

[5] «Փառաբանված է Ալլահը այնքան, որքան գոյություն ունեն Նրա արարածները և այնքան, որքան Նրան պետք կլինի և համապատասխան Նրա Գահի կշռին և համապատասխան թանաքի քանակի, որը պահանջվում է Նրա խոսքերի գրառման համար:»

# ՄԵԾ ՊԱՐԳԵՎԻ ԱՐԺԱՆԻ ԽՈՍՔԵՐ և ԱՐԱՐՔՆԵՐ

| Ն | ԱՐԺԱՆԻ ԱՐԱՐՔՆԵՐ և ԽՈՍՔԵՐ | ԸՍՏ ՄԱՐԳԱՐԵՅԻ ՍՈՒՆՆԱՅԻ ՆՐԱՆՑ ՊԱՐԳԵՎԸ |
|---|---|---|
| 1 | «Լեիլեհե իլլալլահ ուահդահու լե շարիկա լեհու, լեհուլ մուլկու ուա լեհու ելհամդու ուա հուվաալե կուլլի շեյին կադիր» խոսքերը, որը նշանակում է.« Չկա աստված բացի միայն Ալլահից, Ով չունի զուգրնկեր: Նրանն է պատկանում տիրակալությունը, փառք Նրան և Նա կարող է ամեն ինչ:» | «Ով օրվա ընթացքում հարյուր անգամ կասի այս խոսքերը, ապա նրան կտրվի նույն պարգևը ինչ տրվում է տաս ստրուկ ազատելու դեպքում, և կգրանցվի հարյուր բարի արարք, կմաքրվի հարյուր վատ արարք: Այդ ամենը կհանդիսանա պաշտպանություն Շեյթանից այդ օրը, և ոչ ոք չի կարող անել ավելի լավ բան քան նա, բացի այն մարդուց, ով կանի ավելին:» |
| 2 | «Սուբհանալեհի ուա բիհամդիհի, որը նշանակում է « Փառաբանված է Ալլահը և գովք նրան » և « Սուբհանալահի ուա բիհամդիհի սուբհանա լահի ելազիմ», որը նշանակում է. « Փառաբանված է Ալլահը, գովք Նրան, փառաբանված է Մեծ Ալլահը » խոսքերը: | «Ով կասի այս խոսքերը առավոտյան և երեկոյան հարյուր անգամ, ապա կմաքրվի նրա մեղքերը, նույնիսկ եթե դրանք ծովի ալիքների չափ են: Եվ ոչ ոք չի գա Դատաստանի Օրը ավելի լավ բանով, բացի նրանից, ովարել է ավելին:» « Կան երկու խոսք, որոնք սիրում է Ամենագթասիրտը: Դրանք շատ հեշտ են լեզվի համար, սակայն կշեռքի վրա դրանք կլինեն ծանր:» Այդ խոսքերն են. «Սուբհանալահի ուա բիհամդիհի, սուբհանալահի ելազիմ:» Որը նշանակում է. « Փառաբանված է Ալլահը և գովք Նրան, փառաբանված է Ամենակարող Ալլահը:» |
| 3 | «Սուբհանալահի ելազիմ ուա բիհամդիհի» խոսքերը, որը նշանակում է, «Փառաբանված է Ամենազոր Ալլահը և գովք Նրան:» | «Նրա համար, ով կասի այս խոսքերը, Դրախտում արմավ կդրվի:» |
| 4 | «Լե հաուլա ուլա կուվատա իլլաբիլեհ» խոսքերը, որը նշանակում է. « Չկա ուժ և հզորություն ոչ ոքին, բացի Ալլահից:» | «Ցույց տա՞մ քեզ Դրախտի գանձերից:» Ես ասացի. «Իհարկե, օ, Ալլահի Մարգարե:» Այդ ժամանակ նա ասաց. «Դրանք չկա հզորություն և ուժ ոչ ոքին, բացի Ալլահից» խոսքերն են: |
| 5 | Դրախտ մտնելու խնդրանք և Կրակից պաշտպանություն | «Ով երեք անգամ կխնդրի Ալլահին մտնել Դրախտ, Դրախտը ինքը կխնդրի Տիրոջը թույլտվություն նրա համար: Իսկ, ով երեք անգամ կխնդրի պաշտպանություն Կրակից, Կրակը ինքը կխնդրի Տիրոջը նրան պաշտպանել:» |
| 6 | Դուա, ժողովի քավություն | ««Եթե մարդ գտնվել է ժողովում, որտեղ շատ բղավել և անհեթեթ խոսել են, ապա դուրս գալուց նա ասի. « Սուբհանակա լահումա ուա բիհամդիկա աշհադու լեիլեհե իլլա Անտա, աստախֆիրուկա ուա ատուբու իլեյկա», որը նշանակում է. « Փառաբանված ես Դու, օ, Ալլահ և գովք Քեզ, վկայում եմ, որ չկա աստված, բացի Քեզանից, խնդրում եմ Քեզ թողություն և ապաշխարհում եմ Քեզ», ապա այս դեպքում նրան կներվի այդ ժողովի ընթացքում կատարվածը, որին նա ներկա է եղել:» |

| | | |
|---|---|---|
| 7 | Սուրա 18 –ից այաթների սովորելը | «Ով անգիր կսովորի սուրա «Քարանձավ»-ից առաջին տաս այաթները, նա պաշտպանված կլինի Ձաղալից:» |
| 8 | Կոչ Մարգարեյին (Սալլալահու ալեյհի ուա սալամ) օրհնելու | «Ով օրհնության կկոչի ինձ համար մեկ անգամ, նրան Ալլահը կօրհնի տաս անգամ և կմաքրվի նրա վատ տաս արարք և նա կբարձրացվի տաս աստիճան: » Իսկ մեկ ուրիշ հադիթում ասվում է. «... և նրան կգրվի տաս բարի արարք:» |
| 9 | Առաքինի Ղուրանից այաթներ կարդալու արժանիքները | «Ով օրվա և գիշերվա ընթացքում կարդացել է հիսուն այաթ, չի գրվի անփույթների ցուցոկում, ով կընթերցի հարյուր այաթ, նա կգրվի Ալլահին հնազանդ և երկրպագող ստրուկների ցուցակում: Իսկ, ով կընթերցի երկու հարյուր այաթ, Դատաստանի օրը Ղուրանը կբարեխոսի նրան, իսկ ով կընթերցի հինգ հարյուր այաթ, նրան կգրվի պարգև կանտարի չափով, որը հսկայական է:»<br>««Ով կընթերցի. «Ասա, Նա Ալլահը Միակն է...» տաս անգամ, նրա համար Ալլահը կկառուցի Դրախտում տուն:»<br>«« Սուրա. « Ասա. Նա Ալլահը Միակն է...» հավասար է ղուրանի մեկ երրորդ մասին:» |
| 10 | Մուզաինի պարգևատրումը | «Ամեն ջին, մարդ և այն ամենը ինչ լսել է մուզաինի ձայնը, կվկայի նրա օգտին Դատաստանի Օրը:» «Դատաստանի Օրը մուզեինները կունենան ամենաերկար վզերը:» |
| 11 | Մուզեինի ետևից բառերի կրկնելը և ազանից հետո դուան | «Ազանը լսելուց հետո, ով ասի.« Ալլահումմա Ռաբբա հեզիհի դաուատիտամմա ուաս սալատիլ կաիմա, ատի Մուհամմեդանիլ ուասիլատի ուալ ֆադիլատա ուաբասհու մակամամ մահմուդան ալլեզի ուահադահու», որի թարգմանությունն է «Օ, Ալլահ, այս կատարյալ կոչի և աղոթքի Տեր, առաջնորդիր Մուհամմեդին դեպի ԱլՈւասիլե և բարձր դիրք և այն արժանի վայրը, որը Դու խոստացել ես նրան:, ապա իմ բարեխոսությունը պարտադիր կլինի Դատաստանի Օրը:» |
| 12 | Վուդույի, փոքր լվացման ջանասեր իրականացում | «Մեղքերը կհեռանան այն մարդու մարմնից, ով կիրականացնի վուդու պատշաճ ձևով, դուրս տանելով նույնիսկ իր եղունգների տակից:» |
| 13 | Դուա վուդույից հետո | ««Ցանկացածի առջև, ով կլվացվի պատշաճ ձևով և հետո կասի «Աշհադու ալա իլեհա իլալլահ ուահդահու լա շարիկա լեհու ուա աշհադու աննա Մուհամմեդան աբդուհու ուա ռասուլուհու», որը նշանակում է.«Վկայում եմ, որ չկա աստված, բացի Միայն Ալլահից, Ով չունի զուգընկեր և վկայում եմ, որ Մուհամմեդը Նրա ստրուկն ու Նրա մարգարեն է», անպատճառ կբացվի Դրախտի ութ դարպաս և նա կմտնի որով ցանկանա:» |
| 14 | Վուդույից հետո երկու կքանիստով աղոթքի կատարելը | «Ցանկացած մուսուլմանի համար, ով լվացում է կատարում պատշաճ ձևով, իսկ հետո կանգնում և աղոթում է երկու կքանիստով, իր ամբողջ հոգով և սրտով, Դրախտը կլինի պարտադիր:» |
| 15 | Մզկիթ գնալու | «Ով գնում է մզկիթ, որտեղ միաժամանակ աղոթում են, |

| | | |
|---|---|---|
| | Ճանապարհին մեծ քանակությամբ քայլերը | նրան ամեն քայլի համար ջնջվում է մեկ մեղք, իսկ մյուսի համար գրվում է մեկ բարի գործ այս կատարվում է և երբ նա գնում է մզկիթ, և երբ վերադառնում է:» |
| 16 | Ուրբաթ օրվա աղոթքին պատրաստվելը և տանից շուտ դուրս գալը | «Ով կատարյալ լվացվել և դուրս է եկել տանից վաղ, հասնելով քարոզի սկզբին, գնացել է մզկիթ ոտքով, նստել է իմամին մոտ, ուշադիր լսել է նրա ճառը և այդ ընթացքում չի խոսել, նրան ամեն քայլի համար կգրվի պարգև, հավասար գիշերային աղոթքի և մեկ տարվա պահքի:»« Եթե մարդը ուրբաթ օրը կատարյալ լվացում անի, մաքրվի ինչպես կարող է, օծի մազերը և մարմինը անուշաբույրով, գնա ուրբաթ օրվա աղոթքի առանց որևէ մեկին հրելու, աղոթի այնքան, որքան պետք է, լռի լսելով իմամին, ապա նրան անպատճառ կներվեն մեղքերը, որը նա կատարել է անցյալ ուրբաթ օրվանից:» |
| 17 | Բացող տակբիրին հասնելը | «Ով քառասուն օրվա ընթացքում նամազ կանի մարդկանց հետ հանուն Ալլահի, հասնելով առաջին տակբիրին, նրան կգրվի երկու ժխտում Կրակից և փարիսությունից:» |
| 18 | Պարտադիր նամազի միասնական կատարելը | «Միասնական աղոթքը գերազանցում է անհատականին քսանյոթ անգամ:» |
| 19 | Ով աղոթում է 'իշա' և 'Ֆաջր' նամազները մարդկանց հետ | «Ով աղոթում է 'իշա' աղոթքը մարդկանց հետ, նա կարծես աղոթել է գիշերվա կեսը, իսկ նա, ով հետո կաղոթի 'ֆաջր' աղոթքը մարդկանց հետ, ապա նա կարծես աղոթել է ամբողջ գիշեր:» |
| 20 | Առաջին շարքում կատարվող նամազը | «Եթե մարդիկ իմանային այն պարգևի մասին, որը սպասվում է նրան, ով կարտաբերի ազանի խոսքերը և կկանգնի աղոթողների առաջին շարքում, ապա բացի նետով ճանապարհ բացելուց ելք չէին տեսնի, որպեսզի որոշեին, ով կանի այդ:» |
| 21 | Կամավոր նամազների հաճախակի կատարելը և դրանց գաղտնիությունը | «Որքան հնարավոր է շատ երկրային կքանիստ արա Ալլահին, քանզի ամեն կքանիստի համար, Ալլահը մեծարում է քեզ մեկ աստիճանով և մաքրում է մեկ մեղք:» « Կամավոր աղոթքը, որը մարդ կատարում է մարդկանցից հեռու, գերադասելի է մարդկանց առջև կատարված աղոթքից քսանհինգ անգամ:» |
| 22 | Սուննա հանդիսացող նամազների անընդհատ կատարելը պարտադիր նամազներից առաջ և հետո | «Ով օրվա և գիշերվա ընթացքում կատարել է լրացուցիչ տասներկու ռաքյատ, նրա համար Դրախտում տուն կկառուցվի: Դրանք են, չորսը դուհր նամազից առաջ և երկուսը դրանից հետո, երկու ռաքյաթ մեղրեբ նամազից հետո, երկուսը իշա նամազից հետո և երկուսն էլ ֆաջր նամազից առաջ:» |
| 23 | Սուննա հանդիսացող երկու ռաքյատր ֆաջր նամազից առաջ և երկու ռաքյատ ֆաջր պարտադիր նամազը | «Ֆաջար նամազի երկու ռաքյատր այս աշխարհում եղած ամեն ինչից լավ է:» «Ով աղոթել է ֆաջր աղոթքը, նա գտնվում է Ալլահի պաշտպանության տակ:» |
| 24 | Դուհա | «Ամեն օր, առավոտյան, ձեզանից յուրաքանչյուրը պետք է տա |

| | | |
|---|---|---|
| | նամազը | այնքան բարեգործություն, սադակա, որքան նրա մարմնի գղերն են: Ամեն «Սուբհան Ալլահ» խոսքերի արտաբերումը սադակա է: Ամեն «համդուլիլեհ» խոսքերի օգտագործումը սադակա է և ամեն «Լե իլեհե իլա Ալլահ» խոսքերի արտաբերումը սադակա է: Ինչպես նաև ամեն « Ալլահու Աքբար» խոսքերը սադակա են: Արգելվածից խուսափելը և լավ արարքներ անելը նույնպես հանդիսանում են սադակա: Բայց այս ամենը փոխարինում են կամավոր երկու ռակյաթ աղոթքը առավոտյան, որը կոչվում է դուհա նամազ: |
| 25 | Ով նստել է նույն վայրում, որտեղ նամազ են արել և հիշատակել է Ալլահին | «Հրեշտակները դիմում են Ալլահին աղերսով ձեզանից ցանկացածի համար այնքան ժամանակ, որքան նա մնում է աղոթելու վայրում և նրանք ասում են « Օ, Ալլահ, ներիր նրան, Օ, Ալլահ, գթա նրան:» |
| 26 | Ալլահին հիշատակելը միաժամանակյա ֆաջր աղոթքից հետո մինչև արևածագ և դուհա նամազի կատարելը | «Ով աղոթել է ֆաջրը մարդկանց հետ, իսկ հետո նստել և հիշատակել է Ալլահին մինչև արևածագ, որից հետո աղոթել է դուհա, նրան սպասվում է պարգև, որը հավասար է հաջի կամ ումրայի համար տրվող պարգևին:» |
| 27 | Ով արթնացել է գիշերը աղոթելու և արթնացրել է կնոջը | «Եթե տղամարդը արթնացրել է կնոջը գիշերը և նրա հետ աղոթել է երկու ռակյաթ, ապա նրանք կգրվեն այն տղամարդկանց և կանանց ցուցակում, ովքեր շատ հիշատակում են Ալլահին:» |
| 28 | Ով մտադրվել էր աղոթել գիշերը, բայց նրան քունը հաղթահարել է | «Ցանկացած մարդու, ով սովորաբար աղոթում է գիշերը, բայց այս անգամ քնով է անցել, Ալլահը կգրի պարգևը ինչպես կատարված աղոթք, իսկ քունը կհամարվի սադակա:» |
| 29 | Աղերս Ամենաբարձրյալին, շուկա մտնելուց | «Չկա աստված, բացի Ալլահից, ով չունի զուգընկեր, Նրանն է իշխանությունը և փառքը: Նա մեռցնում է և հարություն է տալիս,իսկ Նա կենդանի է և չի մահանում: Նրա ձեռքերում բարիքն է և Նա ամեն ինչ կարող է:»[1] Ով Ով արտաբերում է այս խոսքերը, նրան գրվում է հազար բարի արարք և հազար մեղք ջնջվում է, իսկ Դրախտում նրա դիրքը հազար անգամ բարձրանում է: |
| 30 | «Սուբհանալլահ», Ալ համդուլիլեհի « և Ալլահու աքբար » խոսքերը երեսուն երեք անգամ պարտադիր աղոթքից հետո | ««Նրան, ով ամեն աղոթքի վերջում երեսուն երեք անգամ կասի «Գովք Ալլահին». « Փառք Ալլահին » և «Ալլահը մեծ է « խոսքերը և հարյուրերորդ անգամ կասի. « Չկա աստված, բացի միայն Ալլահից, Ով չունի զուգընկեր, Նրան է պատկանում տերությունը, փառք Նրան և Նա ամեն ինչ կարող է, « կներվի մեղքերը, նույնիսկ եթե այն այնքան շատ է, որքան ծովի փրփուրները:»» |
| 31 | Պարտադիր նամազից հետո, այս «Ալ Կուրսի»-ի | «Ով, ամեն պարտադիր աղոթքից հետո կկարդա «Ալ-Կուրսի» այաթը, ապա նրա և Դրախտի միջև |

[1] « Լե իլահա իլլահու լե շարիկա լեհու, լեհու ել մուլկու ուա լեհու ելհամդու յուհյն ուա յումիտու ուա հուվա Հայյուն լեյամուտու բի յադիհի ել հայրու ուա հուվա ալլա կուլլի շեյին կադիր:»

| | | |
|---|---|---|
| | ընթերցումը | կլինի նրա մահը:» |
| 32 | Հիվանդին այցելելը | «Յոթանասուն հազար հրեշտակ կղիմեն աղերսով Ալլահին մինչ երեկո ցանկացած մուսուլմանի համար, ով այցելել է հիվանդ մուսուլմանին առավոտյան: Եթե նա հիվանդին այցելել է երեկոյան, ապա յոթանասուն հազար հրեշտակ կդիմեն Ալլահին աղերսով մինչ առավոտ, իսկ Դրախտում նրա համար կհավաքեն պտուղներ:» |
| 33 | Աղերս դիմում Ամենաբարձրյալին, փորձության մեջ ընկած մարդուն տեսնելուց | ««Ով տեսել է մարդու, որին հասել է փորձություն և ասել է.« Փառք Ալլահին, Ով պաշտպանել է ինձ այն բանից, որով փորձում է քեզ և թող ինձ բարձրացնի շատերից, ում արարել է [1], ապա այդ մարդուն չի հասնի նմանատիպ փորձություն:»» |
| 34 | Ով մխիթարել է մարդու, ում հասել է դժբախտություն | «Ով մխիթարել է մարդուն, ում հասել է դժբախտություն նրան սպասվում է պարգև, հավասար նրա պարգևին:» «Ցանկացած հավատացյալի, ով կմխիթարի իր հավատքի եղբորը դժբախտության մեջ, Ալլահը կտա նրան արժանապատվության հագուստ:» |
| 35 | Հուղարկավորության աղոթքը և գերեզման գնալը | «Նրան, ով ներկա կգտնվի հուղարկավորությանը մինչ աղոթքի ավարտը, մեկ կարատի չափով պարգև է հասնում: Իսկ նրան, ով կմնա հուղարկավորելուց հետո, այն կլինի երկու կարատ:» Մարդիկ հարցրեցին. « Իսկ ո՞րն է այդ երկու կարատը:» Մարգարեն ասաց. « դրանք նման են երկու հսկա սարերի:» Իբն Ումարը ասաց. « Մենք բաց ենք թողել բազմաթիվ կարատներ:» |
| 36 | Ով մզկիթ է կառուցել հանուն Ալլահի | «Նրան, ով մզկիթ է կառուցում հանուն Ալլահի, նույնիսկ եթե այն կլինի շատ փոքր, Ալլահը կկառուցի տուն Դրախտում:» |
| 37 | Ալլահի ճանապարհի ծախսը | ««Ամեն օր, երբ Ալլահի ստրուկները առավոտյան արթնանում են, երկնքից իջնում են երկու հրեշտակ, որոնցից մեկը ասում է. «օ, Ալլահ, փոխհատուցիր նրան, ով ծախսում է իր գումարները», իսկ մյուսը ասում է. «O, Ալլահ, գծուծին հասցրու կործանման:»» |
| 38 | Բարեգործություն, սադակա | Ալլահի Մարգարեն ասաց. « դիրհեմը գերազանցել է հարյուր հազար:» Մարդիկ ասացին.« O, Ալլահի Մարգարե, այդ ի՞նչպես:» Նա ասաց. «Մարդ, ով ունի երկու դիրհեմ, վերցնում է մեկը և որպես բարեգործություն տալիս է, իսկ մյուսը ունենալով մեծ հարստություն, վերցնում է իր գումարից հարյուր հազար և տալիս է այդ ոչպես բարեգործություն:» «Ամեն մուսուլմանի, ով կտնկի բույս, որից կուտի թռչունը, մարդը կամ կենդանին, կգրվի նրան որպես |

[1] «Ալ համդու լիլեհի լեզի աֆանի միմմա բտալակա բիհի ուա ֆադալանի ալա կասիրին միման խալակա տաֆդիլան :»

| | | |
|---|---|---|
| | | բարեգթրծություն:» |
| 39 | Առանց տոկոսի փոխառություն | «Յուրաքանչյուր մուսուլման, ով տվել է իր եղբորը փոխառություն երկու անգամ, կարծես տվել է նրան գումար, որպես բարեգործություն մեկ անգամ:» |
| 40 | Չունևոր պարտատերին թեթևացում | «Ով հետաձգել է պարտքը չունևոր պարտատերին, նրան ամեն օրվա համար կգրվի բարեգործություն: Իսկ եթե նա նորից հետաձգի վճարը, ապա ամեն օրվա համար կգրվի երկակի բարեգործություն:» |
| 41 | Կամավոր պահք մեկ օրով, Ալլահի ճանապարհին | «Ցանկացած ստրուկի երեսը, ով մեկ օր պահք է պահել Ալլահի ճանապարհին, Ալլահը անպատճառ կհեռացնի Կրակից այդ օրվա համար յոթանասուն տարի:» |
| 42 | Պահքին հետևելը երեք օր ամեն ամսվա մեջ և արաֆայի, ու Աշուրայի պահքերը | «Ռամադան ամսվա և ամեն ամսվա մեջ երեք օր պահք պահելը, հավասար է ամբողջ տարվա անդադար պահքի:» Մարգարեյին (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) հարցրեցին Արաֆա օրվա պահքի մասին և Նա պատասխանեց. «Այդ օրվա պահքը ծառայում է մեղքերի թողություն անցյալ և հաջորդ տարվա համար:» Նրան նույնպես հարցրեցին Աշուրա օրվա պահքի մասին և Նա ասաց. « Այն ծառայում է նախորդ տարվա մեղքերի թողություն:» |
| 43 | Շավալ ամսվա վեցօրյա պահքը | «Ով պահք է պահել ամբողջ Ռամադան ամսում և հետո պահք է պահել Շավալ ամսվա վեց օրը, կարծես պահք է պահել ամբողջ տարին անդադար:» |
| 44 | Տարավիհ նամազի կատարելը սկզբից մինչև վերջ | «Եթե մարդ աղոթում է իմամի ետևից այքան ժամանակ, մինչև նա չի հեռանում, ավարտելով աղոթքը, նրան կգրվի ինչպես ամբողջ գիշերվա աղոթք:» |
| 45 | Ումրա, ռամադանի ընթացքում | «Ումրայի կատարելը ռամադան ամսում, հավասար է հաջի կամ հաջի ինձ հետ:» «Ով շրջում է Քաբբայի շուրջ յոթ անգամ և աղոթում է երկու ռակյատ, նրա արարքը հավասարվում է ստրուկի ազատման:» |
| 46 | Զուլ ել հիջրա ամսվա առաջին տաս օրերին կատարած բարի արարքը | «Ինչ օրեր որ կատարվեն բարի արարքները, Ալլահը սիրում է այս օրերի բարի արարքները ».նկատի է առնվում այս ամսվա տաս օրերը: Մարդիկ հարցրեցին.« Նույնիսկ ջիհադը Ալլահի ճանապարհի՞ն»: Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Նույնիսկ ջիհադը Ալլահի ճանապարհին, եթե խոսքը չի գնում մի մարդու մասին, ով դուրս է եկել իր ունեցվածքով, վտանգելով իրեն հանուն Ալլահի և չի վերադարձնում ոչ մեկը, ոչ էլ մյուսը:» |
| 47 | Զոհաբերություն | Մարգարեի հետևորդները մի անգամ հարցրեցին. « Օ, Ալլահի Մարգարե, ո՞րն է այդ զոհաբերությունը» Նա պատասխանեց.« Ձեր նախահոր, Իբրահիմի սովորույթն է:» Նրանք հարցրեցին. « Իսկ ի՞նչ է մեզ հասնում դրանց համար, օ, Ալլահի Մարգարե:'' Նա ասաց.'' Կենդանու ամեն մազի |

| | | |
|---|---|---|
| | | համար ձեզ գրվում է մի բարի գործ:» Նրանք հարցրեցին. «Իսկ բրդի համար, [1], օ, Ալլահի Մարգարե:» Նա ասաց. «Նրա բրդի ամեն մազի համար նույնպես բարի գործ:» |
| 48 | Գիտելիք ունեցողի պարգևը և նրա արժանիքը | «Գիտունի գերադասությունը հավատացյալի համեմատ, նման է ինձ և ձեզանից ամենացածրից» Հետո Ալլահի Մարգարեն ասաց. «Իրոք, Ալլահը և Նրա հրեշտակները և երկրի ու երկնքի բնակիչները և նույնիսկ մրջյունները իրենց բնում և ձուկը ջրում խնդրում են օրհնություն նրանց համար, ովքեր մարդկանց բարիք են սովորեցնում:» |
| 49 | Ալլահի վախից լացը և լացը Նրա ճանապարհին | «Կրակը չի մոտենա երկու աչքերի. Ալլահի վախից լացողի և նրա, ով գիշերը անց է կացրել Ալլահի ճանապարհին:» |
| 50 | Ով մերժել է այրելը, կախարդանքի կարդալը և թռչունների թռիչքով գուշակություններ անելը | Մարգարեին երազում տեսիլք էր երևացել տարբեր համայնքներ: Եվ Նա տեսել էր իր համայնքը, որոնց մեջ կային յոթանասուն հազար, ովքեր մտնում են Դրախտ առանց հաշվի և պատժի: Այդ այն մարդիկ են, ովքեր չեն դիմում ուրիշներին կախարդության համար, չեն գուշակում թռչունների թռիչքով և վստահում են իրենց Տիրոջը: |
| 51 | Ով համբերատար տանում են երեխայի կորուստը | «Յուրաքանչյուր մուսուլմանի, ում երեք անչափահաս երեխաները մահացել են,Ալլահը կտանի Դրախտ:» |
| 52 | Ում Ալլահը փորձում է տեսողության կորուստով և նա, համբերատար տանում է այդ | ««Իրոք, Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Եթե Ես փորձության մեջ դնեմ Իմ ստրուկին, զրկելով նրան երկու սիրելիներից և նա համբերատար լինի, ապա փոխհատուցումը կլինի Դրախտ:» «Երկու սիրելի» խոսքերը աչքերի համար են: |
| 53 | Ով, հրաժարվում է ինչ որ բանից, հանուն Ալլահի | «Ինչից որ դու հրաժարվես հանուն Ալլահի, Նա անպատճառ կնվիրի քեզ ավելի լավը:» |
| 54 | Լեզվի և սեռական պրգանների պահպանելը արգելվածից | «Այն մարդու համար, ով վստահում է ինձ այն, ինչ նրա ծնոտի և ոտքերի արանքում է, ես կվստահեցնեմ, որ նա կմտնի Դրախտ:» |
| 55 | "Բիսմիլեհ" խոսքը տուն մտնելուց և ուտելուց առաջ | ««Երբ, մարդ տուն մտնելուց և ուտելուց առաջ հիշատակում է Ալլահին, Շեյթանը ասում է իր հետևորդներին.«Այստեղ չկա ձեզ համար ոչ ապաստան, ոչ էլ ընթրիք:» Իսկ եթե նա մտել է տուն առանց Ալլահին հիշատակելու, Շեյթանը ասում է.«Դուք կստանաք ապաստան» և եթե նա ուտելուց չի հիշատակում Ամենաբարձրյալ Ալլահին, Շեյթանը ասում է. « Դուք կստանաք և ապաստան, և ընթրիք:» |
| 56 | Ով փառաբանում | ««Նրան, ով ուտելուց հետո կասի Փառք Ալլահին, ով |

[1] Այստեղ նկատի են ունենում, մազածածկույթը, որը բաղկացած է փափուկ և բարակ մազիկներից :

| | | |
|---|---|---|
| | է Ալլահին ուտելուց, ըմպելուց և նոր հագուստ հագնելուց հետո | կերակրել է ինձ այս և տվել է ինձ այս, մինչ ես ինքս ուժի կամ որևէ այլ բանի չեմ դիմում, կներվի մեղքերը:» Այս խոսքերը արաբերեն հնչում են այսպես. « Ալ- համդուլիլեհի լեզի ատամանի հեզե ուա ռազականիհի մին դայրի հաուլին մինի ուալա կուվա:»<br>«Իսկ երբ մարդ հագնում է նոր հագուստ, նա պիտի ասի. « Փառք Ալլահին, Ով հագցրել է ինձ այս, մինչ ես ես չեմ դիմել ոչ, ուժի, ոչ էլ այլ բանի, նրան կներվեն նախկին մեղքերը:» Այս խոսքերը արաբերեն հնչում են այսպես. « Ալ համդու լիլեհի լեզի ատամանի հազա ուա ռազականիհի մին դայրի հաուլին միննի ուա լա կուվա:» Այդ դեպքում կներվեն նրա նախկին մեղքերը:» |
| 57 | Ով ցանկանում է, որ Ալլահը թեթևացնի աշխատանքի բեռը | Ֆաթիման խնդրեց Մարգարեին իրեն ծառա տալ, բայց նա ասաց նրան և Ալիին. «Իսկ չսովորեցնե'մ ձեզ ավելի լավ բան, քան դուք խնդրում եք ինձ:Երբ պառկեք քնելու ասեք. « Ալլահու Աքբար» երեսունչորս անգամ, « Սուբհան Ալլահ» երեսուն երեք անգամ և «Համդուլիլեհ» երեսուն երեք անգամ: Այս ավելի լավ կլինի ձեզ համար, քան ծառա ունենալը:» |
| 58 | Սեռական գործողությունից առաջ ասվող դուա | ««Սեռական գործողությունից առաջ եթե մարդ ասի.« Բիսմիլեհի, Ալլահումմա ջանիբնա շշեյթանա ուա ջանիբի շշեյթանա մազակտանա,» որը նշանակում է Ալլահի անունով, օ, Ալլահ հեռացրու մեզանից շեյթանին և հեռացրու շեյթանին նրանից, ինչ դու կտաս մեզ:Ապա այս դեպքում Շեյթանը չի վնասի երեխային, եթե ձեզ տրված է ունենալ նրան:»» |
| 59 | Կնոջ ամուսնուն գեհացնելը | ««Եթե կինը աղոէել է իր հինգ աղոթքները, պահք է պահել ռամադան ամսում և պահպանել է իր առաքինությունը, հնազանդէ եղել ամուսնուն, Դատաստանի Օրը նրան կասեն. «Մտիր Դրախտ այն դարպասներով, որով ցանկանում ես:»»<br>«Յուրաքանչյուր կին, ով կմահանա և ամուսինը նրանից գոհ կլինի, կմտնի Դրախտ:» |
| 60 | Հարգալից վերաբերմունքը ծնողներին և բարեկամական կապերի պահպանումը | «Ալլահի գոհունակությունը, հոր գոհունակության մեջ է:» « Թող նա, ով ցանկանում է ճակատագիրը մեծացնել և կյանքի տևողությունը երկարացնել, թող պահպանի կապը բարեկամների հետ:» |
| 61 | Որբին ապահովելը | «Ես և որբին հովանավորողը Դրախտում կլինենք ինչպես այս երկուսը» և Մարգարեն մոտեցրեց ցուցամատը և միջնամատը իրար: |
| 62 | Առաքինություն | «Առաքինի հավատացյալը հասնում է աստիճանի պահքի օրով և գիշերային աղոթքներով:»<br>«Բարոյական մարդուն Դրախտի գագաթներին կտրվի տուն:» |
| 63 | Արարածների | «Ճշմարիտ, Ալլահը ներում է Իր գթասիրտ ստրուկներին: |

| | | |
|---|---|---|
| | հանդեպ գթասրտությունը և խղճմտանքը | Գթասիրտ եղեք նրանց հանդեպ, ովքեր երկրի վրա են և ձեր նկատմամբ գթասիրտ կլինի Նա, Ով երկնքում է:» |
| 64 | Մուսուլմաններին բարիք ցանկացողը | «Ձեզանից յուրաքանչյուրը չի հավատա այնքան ժամանակ, մինչ չցանկանա բարիք իր հավատքի եղբոր համար:» |
| 65 | Ամոթխածություն | «Ամոթխածությունն բերում է բարիք:» «Ամոթխածությունը հավատքից է:» «Մարգարեներին բնորոշ են չորս սուննա. Ամոթխածություն, անուշաբույրերի օգտագործում, սիվակ և ամուսնություն կնքում:» |
| 66 | Մյուսներին առաջինը ողջունելը | Մի մարդ եկավ Մարգարեյի մոտ և ասաց. «Խաղաղություն ձեզ:» Իսկ Մարգարեն պատասխանեց. «Տասը քեզ:» Հետո եկավ մեկ ուրիշը և ասաց. « Խաղաղություն և Ալլահի գթասրտությունը ձեզ», իսկ Մարգարեն ասաց.« Քսանը քեզ:» Հետո եկավ հաջորդը և ասաց.« Խաղաղություն ձեզ, Ալլահի գթասրտությունը և օրհնությունը », իսկ Մարգարեն ասաց.«Երեսուն:» Այս ամենում Նա նկատի ուներ բարի արարքները: |
| 67 | Հանդիպման ժամանակ ձեռքսեղմումը | «Երկու մուսուլմանների, ովքեր միմյանց ձեռք են սեղմում, կներվեն նրանց մեղքերը մինչ նրանք կբաժանվեն:» |
| 68 | Հավատքի եղբոր պատվի պաշտպանելը | « Այն մարդու երեսը, ով պաշտպանել է իր հավատքի եղբոր պատիվը, Ալլահը կհեռացնի Կրակից Դատաստանի Օրը:» |
| 69 | Սուրբ մարդկանց նկատմամբ սերը և նրանց հետ զրույցները | «Դու կլինես նրանց հետ, ում սիրում ես:» Անասը, թող Ալլահը օրհնի նրան, ասաց. « Մարգարեյի հետևորդները ոչինչի համար այդքան չէին ուրախանում, որքան ուրախանում էին այս հադիթի համար:» |
| 70 | Միմյանց սիրելը հանուն Ալլահի | Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Հանուն ինձ միմյանց սիրողների համար պատրաստված են միբարներ լույսից և նրանց կնախանձեն մարգարեները և նահատակները:» |
| 71 | Աղերս Ամենաբարձրյալին մուսուլմանի համար | «Մուսուլմանի խնդրանքը հավատքի եղբոր համար նրա բացակայության ժամանակ, չի մնա անպատասխան: Նրա գլխավերևում կանգնած է հրեշտակ, ում հրամայված է ամեն խնդրանքին ասել. « Ամեն, քեզ էլ նույնը:» |
| 72 | Հավատացյալ կնոջ և տղամարդու համար թողություն խնդրելը | «Ով թողություն է խնդրել հավատացյալ կնոջ կամ տղամարդու համար, նրան Ալլահը կգրի մեկ բարի գործ նրանցից յուրաքանչյուրի համար:» |
| 73 | Ճանապարհից արգելքի հեռացնելը | «Ես Դրախտում մի մարդ եմ տեսել, ով նստած էր ծառի ստվերում, որը նա հեռացրել էր ճանապարհից, որովհետև այն խանգարում էր մարդկանց անցնել:» |
| 74 | Ստից և վեճից խուսափելը | «Ես վստահում եմ տուն Դրախտի մոտակայքում նրան, ով կխուսափի վեճերից,նույնիսկ եթե ճիշտ է, և ես վստահում եմ տուն Դրախտի կենտրոնում նրան, ով չի ստի նույնիսկ կատակով:» |

| | | |
|---|---|---|
| 75 | Ով զսպել է բարկությունը | «Նրան, ով զսպել է բարկությունը ունենալով հնարավորություն արտահայտելու, Դատաստանի օրը Ալլահը կկանչի և բոլոր արարածների արքի առջև թույլտվություն կտա ընտրել ցանկացած հուրի:» |
| 76 | Ում լավաբանել եք | «Ում լավաբանել եք, նրան Դրախտը կլինի պարտադիր, իսկ ում վատաբանել եք, նրան կլինի պարտադիր Կրակը: Դուք Ալլահի վկաներն եք երկրի վրա...» |
| 77 | Ով թեթևացրել է մուսուլմանին, քողարկել է նրա արատները և արարքները և օգնել է նրան | «Նրան, ով ազատել է հավատացյալին այս աշխարհի մի տխրությունից, Ալլահը կազատի Հարության օրվա մի տխրությունից, նրան, ով կթեթևացնի չունևոր պարտատիրոջ վիճակը, Ալլահը կթեթևացնի նրա վիճակը և այս և մյուս աշխարհում, իսկ նրան, ով կքողարկի մուսուլմանին, Ալլահը կքողարկի և այս և մյուս աշխարհում: Ալլահը կօգնի իր ստրուկին, մինչ ստրուկը օգնում է իր եղբորը:» |
| 78 | Նա, ում հոգսը եղել է Հավիտենական կյանքը | «Ում հոգսը եղել է հավիտենական կյանքը, Ալլահը նրա սրտում կդնի գոհունակություն, կհավաքի մարդկանց նրա շուրջ, նա ոչինչի կարիք չի ունենա, և նրա մոտ կգա այս աշխարհը հնազանդ անկախ իր կամքից:» |
| 79 | Կառավարողի արդարությունը, երիտասարդի առաքինությունը, մզկիթների հետ կապը և սերը հանուն Ալլահի | «Յոթ տեսակի Ալլահը կթաքցնի Իր ստվերում այն Օրը, երբ բացի Նրա ստվերից ոչ մի ստվեր չի լինի. նրանք են կառավարիչը, երիտասարդը, ով մեծացել է Ամենաբարձրյալ և Ամենահզոր Ալլահին երկրպագելու, մարդու, ում սիրտը կապված էր մզկիթին, այն երկուսին, ովքեր սիրում են միմյանց հանուն Ալլահի, հանդիպում և բաժանվում են միմյանցից միայն հանուն Ալլահի, տղամարդուն, ով կկանչի իրեն ցանկացող հարուստ և գեղեցիկ կնոջը և կասի « Իրոք, ես վախենում եմ Ալլահից », նրան, ով բարեգործություն է անում այնքան գաղտնի, որ իր ձախ ձեռքը չգիտի, թե որքան է վատնում աջը, ինչպես նաև նրան, ում աչքերը լցվում են արցունքով, երբ նա միայնակ հիշատակում է Ամենաբարձրյալ Ալլահին:» |
| 80 | Թողություն խնդրելը | «Ով հաճախ Ալլահից թողություն է խնդրում, նրան Ալլահը տալիս է ելք ամեն իրավիճակից, ազատում է տխրությունից և տալիս է ելք այնտեղից, որտեղից նա չի սպասում:» |
| 81 | Աստծոց նահատակություն խնդրելը | Եթե Աստծոց խնդրեն նահատակություն անկեղծորեն, ապա Նա մահը կհամարի այդպիսին, նույնիսկ եթե մարդը մահանա տանը, անկողնում: |

# ՄԱՐԳԱՐԵՅԻ ԿՈՂՄԻՑ ԱՐԳԵԼՎԱԾ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

| | ԱՐԳԵԼՎԱԾ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ | ԱՐԳԵԼՔԸ ՀԱՍՏԱՏՈՂ ՀԱՎԱՍՏԻ ՀԱԴԻԹ |
|---|---|---|
| 1 | Հանուն մարդկանց կատարվող արարքներ | ««Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. « Ես բոլորովին կարիք չունեմ, որ Ինձ զուգրնկեր տան, եթե որևէ մեկը որևէ արարք կատարի ոչ Ինձ համար, այլ ուրիշի համար, Ես կհրաժարվեմ և նրանից, և նրա շիրկից:»»[1] |
| 2 | Ցուցադրական արարքների կատարում | «Ով խայտառակել է ինչ որ մեկին, պատմելով բոլորին նրա թերությունների մասին, նրան Ալլահը կխայտառակի Դատաստանի օրը, իսկ ով որևէ բան է արել ցուցադրաբար, նրան Ալլահը կխայտառակի ի ցույց բոլորի, թե ով է նա իրականում:» |
| 3 | Ամբարտավանություն | «Չի մտնի Դրախտ նա, ում սրտում կար փոշու հատիկի չափ ամբարտավանություն:» Ամբարտավանությունը ճիշտը ընդունելու մերժումն է, և մարդկանց ատելն է: |
| 4 | Երկար հագուստի կրելը | «Մարդիկ կրում են երկար իզար, երկար վերնաշապիկ և երկար չալմա: Ով իր ետևից տանի իր հագուստը մեծամտությունից և ինքնաբավարարվածությունից ելնելով, Հարության օրը Ալլահը նույնիսկ չի նայի նրան:» |
| 5 | Նախանձ | «Զգուշացեք նախանձից, քանզի, ճշմարիտ, նախանձը կուլ է տալիս բարի արարքները, ինչպես կրակը, փայտը:» |
| 6 | Վաշխառություն | Ալլահի Մարգարեն անիծել է վաշխառույից պարտք վերցնողին և դրանով զբաղվողին:<br>«Դիրհեմը լիհֆին, որը մարդ վերցնում է իրեն, իմանալով այդ, ավելի վատ է,քան երեսուն վեց դավաճանություն:» |
| 7 | Ալկոհոլի օգտագործումը | «Դրախտ չեն մտնի գինուն սովորածները, կախարդությանը հավատացողները և բարեկամական կապեր խզողները:»<br>«Ով գինի է խմում, նրա աղոթքը չի ընդունվի քառասուն օր:» |
| 8 | Ստելը | «Վայ նրան, ով ինչ որ բան է պատմում, որպեսզի ծիծաղեցնի մարդկանց և միևնույն ժամանակ նա ստում է: Վայ նրան, վայ նրան:» |
| 9 | Ծածուկ լսելը և նայելը | «Ով լսում է մարդկանց խոսակցությունը գաղտնի, նրա ականջի մեջ Ալլահը Դատաստանի օրը կլցնի տաք արույր:» |
| 10 | Պատկերների ստեղծումը | «Ճշմարիտ, Դատաստանի օրը ամենատանջալից տառապանքները սպասում են նրանց, ովքեր ստեղծում են կենդանի արարածների պատկերներ:»<br>«Հրեշտակները չեն մտնում տուն, որտեղ կա շուն կամ կենդանի էակի պատկեր:» |
| 11 | Չարախոսություն | «Հայտնի է ձեզ ի՞նչ է հույան:» Մարդիկ ասացին. «Ալլահը և Նրա մարգարեն ավելի լավ գիտեն այդ մասին:» |

[1] Այս նշանակում է, որ այդպիսի մարդու արարքները կլինեն հաշվելի և նա ոչ մի պարգև չի ստանա :

| | | |
|---|---|---|
| | | Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Այն, երբ դու քո եղբոր մասին հիշատակում ես այնպես, որը դուր չէր գա նրան:» Նրան հարցրեցին. «Իսկ եթե նրան բնորո՞շ է ասածը» Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. « Եթե նրան բնորոշ է այդ, նշանակում է դու չարախոսում ես նրան, իսկ եթե նա այդպիսին չէ, նշանակում է դու զրպարտում ես նրան:» |
| 12 | Բամբասանքներ | «Բամբասողի չի մտնի Դրախտ:» Բամբասողի մի մարդ է, ով տարածում է բամբասանք, մարդկանց մեջ թշնամություն առաջացնելու: |
| 13 | Անեծք | «Հավատացյալի անեծքը նման է նրա սպանության:» «Մի անիծեք քամին, որովհետև այն փչում է Ալլահի հրամանով, իսկ ով անիծում է այսպիսի մի բան, որ իրավունք չունի անիծելու, ապա անեծքը կվերադառնա նրան:» |
| 14 | Գաղտնիքի բացահայտումը | «Դատաստանի օրվա ամենավատ մարդկանցից նրանք են, ովքեր մերձենում են իրենց կանանց, իսկ նրանք ամուսիններին, որից հետո նա բացահայտում է կնոջ գաղտնիքները:»[1] |
| 15 | Անպարկեշտություն | «Իրոք,Ալլահի մոտ Դատաստանի օրը ամենավատ մարդիկ կլինեն նրանք, ումից մարդիկ շրջվում են անպարկեշտության պատճառով:» «Ադամի որդիների մեղքերի մեծամասնությունը նրանց լեզվից է:» |
| 16 | Մուսուլմանին անհավատության մեջ մեղադրելը | ««Եթե մարդ իր եղբորը ասում է.«Անհավատ», ապա այն ունի երկու հետևանք, կամ նրա եղբայրը իրոք այդպիսին է, ինչպիսին մյուսը ասում է, կամ այդպես չէ: Այդ դեպքում նրա խոսքերը վերադառնում են հենց իրեն:»» |
| 17 | Հաստատել այն, որ նա ինչ որ մեկի որդին է, ով իր հայրը չէ | «Ով տեղյակ լինելով իրեն հայր է կոչել մարդու, ով իրոք նա չէ, Դրախտը կլինի արգելված:» «Ով չի ցանկանում ընդունել, որ նա իր հոր որդին է, ապա այդ հանդիսանում է անհավատություն:» |
| 18 | Մուսուլմանին ահաբեկելը | «Մի թույլատրեք մուսուլմանին ահաբեկել մեկ ուրիշ մուսուլմանի:» «Ով իր հավատքի եղբոր վրա երկաթյա իր է ուղղել, նրան հրեշտակները կանիծեն մինչև նա չիջեցնի այդ:» |
| 19 | Ոչ մուսուլմանի սպանությունը, ով գտնվում է մուսուլմանի տարածքում պայմանագրով | «Ոչ մուսուլմանի անօրեն սպանողը, ում հետ կա խաղաղության համաձայնագիր, չի զգա Դրախտի բույրը: Իսկ այդ բույրը զգացվում է հարյուր տարվա տարածությամբ:» |
| 20 | Ալլահին հաճո մարդկանց նկատմամբ թշնամական վերաբերմունքը | «Ես պատերազմ եմ հայտարարում նրան, ով թշնամություն է անում Իմ մերձավորի հետ:» |
| 21 | Փարիսեցուն և մեղսավորին "Տեր" կոչելը | «Մի կոչեք փարիսեցուն 'տեր', քանզի եթե նա լինի տեր, դուք կզայրացնեք ձեր Ամենաբարձրյալ Տիրոջը:» |

[1] Այլ կերպ ասած, ամուսինը գիշերը անց է կացնում իր կնոջ հետ և հետո պատմում է ուրիշներին այն մասին, ինչ է կատարվել նրանց միջև և նկարագրում է կնոջը :

| | | |
|---|---|---|
| 22 | Մարդու հովանավորության տակ գտնվողի խաբեությունը | «Ցանկացած ստրուկի, ում վստահված է ժողովը և նա մահանում է խաբելով նրանց, Ալլահը կարգելի Դրախտ մտնել:» |
| 23 | Առանց գիտելիքների կրոնական հարցերին,(ֆետվա) որոշումներ կայացնելը | «Ում տրվել է ֆետվա առանց գիտելիքների, մեղք է հանդիսանում նրան, ով տվել է այդ:» |
| 24 | Ուրբաթ օրվա աղոթքի կամ ասր աղոթքի արհամարհելը | «Ով երեք անգամ արհամարհել է ուրբաթ օրվա աղոթքը, չունի արդարացում և Ալլահը կդրոշմի նրա սիրտը:» «Ով թողել է ասր նամազը, նրա արարքները կլինեն հաշվելի:» |
| 25 | Աղոթքների բաց թողնելը | «Մեր և նարնց միջև կա որոշում, նամազ, և ով թողել է այդ, նա դարձել է անհավատ:» «Մարդու, շիրկի և անհավատության միջև նամազի չկատարելն է:» |
| 26 | Աղոթողի դիմացով անցնելը | «Եթե նա, ով անցնում է աղոթողի դիմացով իմանա, թե ինչ մեղք է վերցնում իր վրա, ապա կհասկանա, որ տեղում քառասուն[1] կանգնելը ավելի լավ է, քան այդ անելը:» |
| 27 | Աղոթողին անհանգստություն պատճառելը | «Թող սոխ, սխտոր կերած անձը ոչ մի դեպքում չմոտենա մզկիթին, քանզի, իրոք հրեշտակներին նույն տառապանքն է պատճառում, ինչ Ադամի որդիներին:» |
| 28 | Հողի անօրինական զավթումը | «Այն մարդու պարանոցով, ով զավթել է մի թիզ հող առանց իրավունքի, կփաթաթվի յոթ հողերից հավաքվածը:» |
| 29 | Ալլահի զայրույթը առաջացնող խոսքերը | «Պատահում է, որ ստրուկը արտաբերում է խոսք, որը Ալլահի զայրույթն է առաջացնում, նա ինքը ուշադրություն չի դարձնում դրա վրա, բայց դրա պատճառով նա կրնկղմվի Դժոխքի ընդերքը յոթանասուն տարի:» |
| 30 | Առանց Ալլահին հիշատակելու շատախոսելը | «Մի արտաբերեք շատ բառեր, առանց Ալլահին հիշատակելու, իրոք, առանց Նրան հիշատակելը, շատախոսությունը համարվում է կարծրասրտություն:» |
| 31 | Պարծենկոտությունը | «Իսկ ամենաատելին ինձ համար կլինեն նրանք, ովքեր Հարության օրը կգտնվեն Ինձանից ամենահեռուն: Դրանք կլինեն շատախոսները, պարծենկոտները և չաչանակները:» |
| 32 | Ալլահին չհիշատակելը | «Ալլահի վրեժը կլինի այն մարդկանց, ովքեր ինչ որ տեղ կհավաքվեն միասին և չեն հիշատակի Ալլահին և չեն աղոթի Մարգարեյի համար: Իսկ եթե Նա ցանկանա, նա կենթարկի նրանց տանջանքների, իսկ եթե ցանկանա, ապա կների:» |
| 33 | Մուսուլմանի հանդեպ չար ձևով ուրախանալը | «Երբեք չար կերպով մի ուրախացեք ձեր եղբոր նկատմամբ, այլապես Ալլահը կների նրան, իսկ ձեզ կուղարկի փորձություն:» |
| 34 | Կապի կտրելը մուսուլմանների միջև | «Մուսուլմանին չի թույլատրվում թողնել իր եղբորը ավելի քան երեք օր:» |
| 35 | Բացահայտ մեղք գործողը | «Իմ ամբողջ համայնքին կներվի, բացի բացահայտ մեղք գործողից:» |

[1] Այս հադիթի փոխանցողը ասաց. «**Եվ ես չգիտեմ, ինչ է նա ասել, քառասուն օր, քառասուն ամիս, թե քառասուն տարի**» Ալ- Բուխարի և Մուսլիմ

| | | |
|---|---|---|
| 36 | Վատ վարքը | «Վատ վարքը փչացնում է մարդու արարքը, ինչպես քացախը փչացնում է մեղրը:» |
| 37 | Նվերի ետ պահանջելը | «Նվերը ետ պահանջողը նման է շան, որը վերադառնում է իր փսխած տեղին:» «Մարդուն չի թույլատրվում ինչ որ բան նվիրել և հետո հրաժարվել դրանից:» |
| 38 | Հարևանի նկատմամբ անարդար լինելը | «Տղամարդու համար տաս կնոջ հետ դավաճանելը ավելի քիչ մեղք է, քան հարևանի կնոջ հետ դավաճանելը: Տաս տուն կողոպտելը ավելի քիչ մեղք է տղամարդու համար, քան հարևանին կողոպտելը:» |
| 39 | Արգելվածին հայացք գցելը | «Ադամի որդուն կանխորոշված է դավաճանության բաժինը, որից նա չի կարող խուսափել: Աչքերի դավաճանությունը, որը հանդիսանում է արգելվածին նայելը, ականջների դավաճանությունը, որը հանդիսանում է արգելվածի լսելը, լեզվի դավաճանությունը, որը հանդիսանում է արգելվածի արտասանելը, ինչպես նաև ձեռքերի դավաճանությունը, երբ մարդ վերցնում է այն, ինչ իրենը չի և ոտքերի դավաճանությունը, երբ նա մոտենում է արգելվածին:Ինչ վերաբերվում է սրտին, ապա այն ցանկանում է, իսկ սեռական օրգանները կամ ընդունում, կամ մերժում են այդ:»[1] |
| 40 | Ուրիշ կնոջը հպվելը | «Ճշմարիտ, երկաթյա ասեղը գլուխը մտցնելը ավելի լավ է, քան կնոջ հպվելը, որի համար դուք իրավունք չունեք:» «Ես կանանց ձեռքսեղմումով չեմ բարևում:» |
| 41 | Շիգար ամուսնությունը | Ալլահի Մարգարեն արգելել է շիգարը: Այն, երբ մի տղամարդ ամուսնանում է մյուսի դստեր հետ և տալիս է նրան իր դստերը կնության: Եվ այդ կատարվում է առանց ամուսնական նվերների, մահրի: |
| 42 | Հանգուցյալի համար բարձրաձայն ողբալը[2] | «Նա, ում համար բարձրաձայն ողբում են, Դատաստանի օրը կենթարկվի տանջանքների:»[3] |
| 43 | Ոչ Ալլահի անունով երդվելը | «Ով չի երդվում Ալլահով, նա ընկնում է անհավատության կամ շիրկի մեջ:» «Ով պատրաստվել է երդվել, թող երդվի Ալլահով, կամ լռի:» «Ով երդվում է հավատարմությամբ մեզանից չէ:» |
| 44 | Սուտ երդումը | «Ով սուտ երդվել և վերցրել է ուրիշ մուսուլմանի ունեցվածքը, Ալլահը կհանդիպի նրան զայրացած:» |
| 45 | Երդումը առևտրի ժամանակ | «Խուսափեք վաճառքի ժամանակ արված բազմաթիվ երդումներից, քանզի այն օգնում է վաճառել ապրանքը, բայց չեզոքացնում է առևտրի բարիքը:» «Երդումը օգնում է վաճառել, բայց ջնջում է բարիքը:» |

---

[1] Այսինքն, նա կամ կդավաճանի, կամ կզսպի իրեն :

[2] Նկատի են ունենում ողբը բարձր ձայնով, բղավոցով, ճանգռտոցով և հագուստի պատռելով :

[3] Նա կենթարկվի տանջանքների, եթե կտակել է այդպես կամ խրախուսել է այդ կյանքի ընթացքում;

| | | |
|---|---|---|
| 46 | Անհավատին նմանվելը | «Ով նմանվում է ինչ որ մարդկանց, նա նրանցից է:» «Մեզանից չէ նա, ով նմանակում է մյուսներին, այսինքն ոչ մուսուլմաններին:» |
| 47 | Գերեզմաններին կառույցներ դնելը | «Ալլահի Մարգարեն արգելեց գերեզմանը պատել գիպսով, նստել կամ կառուցել նրա վրա:» |
| 48 | Ուխտադրժություն և դավաճանություն | ««Երբ Դատաստանի օրը Ալլահը կհավաքի նրանց, ամեն դավաճանի համար կբարձացվի դրոշ և կասվի «Այս այսինչի ուխտադրժությունն է, ով այսինչի որդին է:»» |
| 49 | Գերեզմանի վրա նստելը | «Ածուխի վրա նստելը և հագուստի այրելը մինչ մաշկը, ավելի լավ է, քան գերեզմանի վրա նստելը:» |
| 50 | Ով սիրում է, որ իր առջև ոտքի են կանգնում | «Ով սիրում է, որ իր առջև կանգնում են, անպատճառ իր տեղը կզբաղեցնի Կրակում:» |
| 51 | Մուրացիկությունը | «Ես երդվում եմ ձեզ երեք բաներում և կասեմ ձեզ մի բան, իսկ դուք հիշեք այդ: Երդվում եմ, որ բարեգործությունը չի նվազեցնում ստրուկի հարստությունը: Եթե ստրուկի հետ անարդար վերաբերվեն, և նա համբերատար լինի, Ալլահ կավելացնի նրա փառքը: Եթե ստրուկը բացի մուրացիկության դուռը, Ալլահը կբացի նրա համար աղքատության դուռը:» «Ով խնդրում է մարդկանց որպեսզի ավելացնի իր ունեցվածքը, նա խնդրում է թեժ ածուխ: Թող նա վերցնի շատ կամ քիչ:» |
| 52 | Գնի բարձրացնելը առևտրում | Ալլահի Մարգարեն արգելում է հիմնական բնակչին վաճառել բեդվինի փոխարեն[1], բարձրացնել գները և խախտել եղբոր առևտուրը: |
| 53 | Մզկիթում կորած անասունի մասին հարցնելը | «Ով լսել է մարդու, որը մզկիթում հարցնում է կորած անասունի մասին, թող ասի. « Թող Ալլահը չվերադարձնի այն:» Քանզի, մզկիթը չի կառուցվել դրա համար:» |
| 54 | Շեյթանին պախարակելը | «Մի պախարակեք շեյթանին, այլ Ալլահից խնդրեք պաշտպանություն նրանից:» **Հետևորդներից մեկը պատմում է.** ««Ես նստած էի նժույգին Մարգարեյի ետևը, և նրա կենդանին թուլացավ: Ես ասեցի. «Թող կորի շեյթանը:» Ալլահի Մարգարեն ասաց. «Մի ասա, թող կորի շեյթանը, որովհետև այդ դեպքում նա կսկսի մեծանալ չափսերով և երբ դառնա տան չափ կասի. « Այս իմ ուժերի շնորհիվ է:» Դրա փոխարեն ասա. Ալլահի անունով: Այդ ժամանակ նա կփոքրանա և կնմանվի ճանճի:»» |
| 55 | Տենդի պախարակելը | «Մի պախարակեք տենդին, քանի որ այն հեռացնում է Ադամի որդիների մեղքերը ինչպես դարբինը դուրս է փչում երկաթի տաքությունը:» |

[1] Նկատի է առնվում այն դեպքը, երբ հաստատված բնակիչը բեդվինից վերցնում է ապրանքը և վաճառում է այն նրա փոխարեն, տալով նրան որոշակի գումար : Ինքը այն վաճառում է բարձր գնով շահույթի համար, իսկ եթե բեդվինը վաճառեր իր իսկ ապրանքը, ապա այն մարդկանց կհասներ ավելի էժան :

| | | |
|---|---|---|
| 56 | Կոչ որևէ բանի, որը հանդիսանում է մոլորություն | «Ով մյուսներին մոլորության կոչ է անում, նրան կլինի մեղքի բեռ, որոնք կտանեն նրան հետևողները, որը չի թեթևանա:» |
| 57 | Ըմպելուն վերաբերվող արգելքները | Ալլահի Մարգարեն արգելել է խմել մեծ կամ փոքր տարրաների բերանից: Նա զգուշացրեց խմել կանգնած և արգելեց փչել տարրայի մեջ: |
| 58 | Ոսկյա կամ արծաթյա տարրայից ըմպելը | «Մի ըմպեք ոսկյա և արծաթյա տարրաներից և մի կրեք հագուստ մետաքսից և դիպակից, քանզի այս ամենը նախատեսված է այս աշխարհում անհավատների համար, իսկ ձեզ համար Հավիտենական աշխարհում:» |
| 59 | Ձախ ձեռքով ըմպելը | «Թող ոչ ոք ձեզանից չուտի և չըմպի ձախ ձեռքով, քանզի Շայթանը ուտում և ըմպում է ձախ ձեռքով:» |
| 60 | Բարեկամական կապի կտրելը | «Դրախտ չի մտնի բարեկամակն կապ կտրողը:» |
| 61 | Մարգարեյին օրհնելու կոչի թողնելը | «Ստորացված կլինի նա, ում մոտ հիշատակվել է իմ մասին և նա կոչ չի արել ինձ օրհնելու:» «Գծուծ է նա, ով լսելով իմ մասին հիշատակումը, չի կոչում օրհնության:» |
| 62 | Շան ձեռք բերումը | «Այն մարդու բարի արարքները, ով շուն է պահում, օրեցօր նվազում է երկու կարատով, եթե միայն նա չի պահում նրանց որսի կամ անասունների պաշտպանման համար:» |
| 63 | Անասուններին տանջելը | «Մի կին ենթարկվեց տանջանքների կատվի պատճառով, որին նա փակի տակ էր պահում, մինչ այն չի սատկում: Այդ պատճառով նա հայտնվում է Կրակում: Փակի տակ պահելով նա ոչ կերակրել, ոչ էլ ջուր էր տվել կատվին և ոչ էլ թույլ էր տվել միայնակ անել այդ:» «Մի դարձրեք թիրախ ձեր համար այն ամենը, ինչում կա հոգի:» |
| 64 | Անասուններին զանգակ կապելը | «Հրեշտակները չեն ուղեկցի այն մարդկանց խմբին, որտեղ կա շուն կամ զանգակ:» «Զանգակը Շեյթանի խողովակն է:» |
| 65 | Երբ մեղսավորին տրվում է բարիք | «Եթե տեսնես, ինչպես է Ալլահը Իր ստրուկներից մեկին աշխարհիկ բարիք նվիրում, չնայած նրա անհնազանդության, իմացիր որ Ալլահը նրան ժամանակ է տալիս և փորձում է նրան:» Ամենաբարձրյալ Ալլահը ասաց. «Երբ նրանք մոռացան այն, ինչ հիշեցվում էր, Մենք բացեցինք նրանց առջև ամենի դարպասները: Երբ նրանք ուրախացան տրվածի համար, Մենք նրանց հանկարծակի բռնեցինք և նրանք հուսահատության մեջ ընկան:» |
| 66 | Նրան, ում անհանգստացնում է այս աշխարհը | «Նրան, ում խնդիրը եղել է ՄոտիկԿյանքը, Ալլահը ցույց կտա աղքատությունը, որը կհետևի նրան և Նա այնպես կանի, որ մարդիկ կլքեն նրան և ոչինչ չի հասնի այս աշխարհում, բացի նրանից, ինչ կանխորոշված էր նրա համար:» |

## ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ.

## ՔՈ ՃԱՆԱՊԱՐՀԸ ԴՐԱԽՏ ԿԱՄ ԴԺՈԽՔ

### ➢ ԳԵՐԵԶՄԱՆ.

Հավերժ Կյանքի առաջին կանգառը, փոս, որը անհավատի և փարիսեցու համար լցված է կրակով, իսկ հավատացյալի համար այգով: Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) հաղորդում է, որ այնտեղ մարդիկ ենթարկվում են տանջանքի Ալլահին չհնազանդելու համար: Նրանք ենթարկվում են տանջանքի այնպիսի արարքների համար, ինչպիսիք են սեփական մեզից չմաքրվելը, բամբասանքի տարածելը, անարդար ձևով ունեցվածքի զավթելը, ստելը, նամազից խուսափելը, Ղուրան չընթերցելը, դավաճանելը, նույն սեռի հետ կենակցելը, վաշխառությունը, պարտքի չվերադարձնելը և այլն: Գերեզմանի տանջանքներից կփրկի բարի արարքը, որը կատարվում է հանուն Ալլահի, Ալլահից թողություն խնդրելը, սուրա 67-ի ընթերցելը և այլն: Այս տանջանքներից ձեռբազատվում է նահատակը, մարդ, ով գտնվել է Ալլահի ճանապարհի պաշտպանության ուղղում, ով մահացել է ուրբաթ օրը, որովայնի հիվանդությունից և այլն:

### ➢ ԵՂՋՅՈՒՐԻ ՀՆՉԵԼԸ.

Այդ հսկայական եղջյուր է, որը պահում է Իսրաֆիլ հրեշտակը, և սպասում է, թե երբ է նրան հրաման գալու հնչեցնել այն: Կլինի «վախի հնչոց:» Ամենաբարձրյալը ասաց. «Եվ կհնչի Եղջյուրը և այդ ժամանակ գիտակցությունը կկորցնեն կամ կմահանան նրանք, ովքեր երկնքում են և նրանք, ովքեր երկրի վրա են, բացի նրանցից, ում Ալլահը կցանկանա թողնել:» Դրանից հետո ամբողջ տիեզերքը կվերանա, իսկ քառասունից [1] հետո, կլինի «Հարության հնչյունը:» Ամենաբարձրյալը ասաց. « Հետո այն կհնչեցնեն ևս մեկ անգամ և նրանք վեր կկենան և կնայեն:» (Սուրա 39 այաթ 68)

### ➢ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ.

Հետո Ալլահը անձրև կուղարկի, որից մեռածների մարմինները կաճեն և նրանք կլինեն բոլորովին նոր, անմահ արարածներ, մերկ, անոթի և առանց թլպատման և նրանք կտեսնեն հրեշտակներին և ջիներին: Նրանք հարություն կառնեն այնպես, ինչպես մահացել են: Նրանք կանեն այն, ինչ անում էին մահից առաջ, այսինքն իհրամ ունեցողը կարտաբերի տալբիյա, նահատակի վերքերից արյուն կհոսի, իսկ անհոգը զբաղված

---

[1] Հաղորդվում է, որ մի անգամ Աբու Հուրեյրան, ասաց, որ Ալլահի Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Առաջին և երկրորդ հնչոցների միջև կանցնի քառասուն:» ««Նրանք հարցրեցին, «Օ, Աբու Հուրեյրա քառասուն օր»», ես հրաժարվեցի պատասխանել, չիմանալու պատճառով: Նրանք կրկին հարցրեցին. «Քառասուն տարի:» Եվ ես կրկին հրաժարվեցի պատասխանել: Նրանք կրկին հարցրեցին . «Քառասուն ամիս» Աբու Հուրեյրան ասաց, «Եվ ես հրաժարվեցի պատասխանել, իսկ հետո ավելացրեցի, որ Մարգարեն ասաց. «Եվ կփտեն մարդու մարմնի բոլոր մասերը, բացի պոչուկից, որից Ալլահը կարարի նրան կրկին :»

կլինի անիմաստ գործով: Մարգարեն (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ) ասաց. « Ամեն ստրուկ հարություն կառնի այնպես, ինչպես մահացել է:» (Մուսլիմ)

## ➢ ՀԱՎԱՔ.

Հետո Ալլահը կժողովի արարածներին հաշվի համար, և նրանք սարսափից արբած կլինեն մեծ Օրը, որի տևողությունը կլինի հիսուն հազար տարի, իսկ այնտեղ մնալը կթվա ժամեր:Արևը կմոտենա նրանց մղոն և մարդիկ կխեղդվեն իրենց քրտինքից,կախված արարքներից: Նրանք կսկսեն վիճել միմյանց հետ, թույլերը և գոռոզները:Անհավատները կվիճեն իրենց ընկերների, շեյթանի և սեփական մարմնի մասերի հետ:[1] Եվ նրանք կանիծեն միմյանց իսկ անարդարության մասնակիցը կկծի իր ձեռքերը: Հետո կբերեն Դժոխքը յոթանասուն հազար պարաններով, որոնցից յուրաքանչյուրը կձգի յոթանասուն հազար հրեշտակ: Եվ երբ անհավատը կտեսնի նրան, նա կցանկանա արդարացնել իրեն ցանկացած ճանապարհով, կամ կցանկանա փոշի դառնալ: Ինչ վերաբերվում է նրանց, ովքեր անհնազանդ են եղել Ալլահին, ապա հարստությունը, որը չի վերածվել զաքյաթի, կդռնա հուր կրակ և կայրի: Գոռոզները կհավաքվեն ինչպես մրջյուններ, դավաճանները, ովքեր վերցրել են այն ինչ նրանց չի պատկանում, կբացահայտվեն և կնսեմացվեն: Իսկ գողը կգա նրանով ինչ գողացել է: Ամեն զաղտնիք երևան կգա և ճշմարտությունը կբացահայտվի: Իսկ ինչ վերաբերվում է աստվածավախներին, նրանց չի հասնի այդ Օրվա սարսափը, և այն կգա նրանց համար, ինչպես դուհր նամազ:

## ➢ ԲԱՐԵԽՈՍՈՒԹՅՈՒՆ.

Ամենահզոր իրավունքը, տրված է միայն մեր Մարգարեին (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ): Նա կբարեխոսի մարդկանց համար հավաքի ընթացքում, որպեսզի նրանք ազատվեն դժբախտությունից, հաշվից և փորձությունից: Մյուս տեսակի բարեխոսությունները տեղի կունենան, ոչ միայն հավաքի օրը և միայն Մարգարեից (Սալլալլահու ալեյհի ուա սալլամ), այլև մեկ ուրիշից: Այդպիսի բարեխոսություն կարող է լինել հավատացյալի Կրակից դուրս գալը և աստիճանի բարձրացումը:

## ➢ ՀԱՇԻՎ.

Մարդիկ կներկայանան իրենց Տիրոջը շարքերով և Նա ցույց կտա նրանց արարքները և կհարցնի դրանց մասին: Նա նաև կհարցնի ապրած կյանքի, երիտասարդության, ունեցվածքի, գիտելիքների, Ալլահի կողմից տրված պատգամների մասին, ինչպես նաև հաճույքների, լսողության, տեսողության և բանականության մասին[2]: Անհավատին և փարիսեցուն

---

[1] Այսինքն նրա իսկ մարմնի մասերը կվկայեն նրա դեմ, բացահայտելով այն, ինչ նա արել է :

[2] Այսինքն մարդուն կհարցնեն, թե ինչպես է նա ապրել իր կյանքը, ինչպես է օգտագործել Ալլահի պարգևները, ինչպիսիք են տեսողությունը, լսողությունը, բանականութթյունը : Արդյոք նա օգտագործել է դրանք բարի արարքների համար, Ալլահին երկրպագելու,

Ալլահը հաշվի կկոչի բոլորի ներկայությամբ, որպեսզի ցույց տա իր իմացությունը, ցույց տա նրանց դեմ փաստերը և որպեսզի մարդիկ, հողը, ցերեկն ու գիշերը, ունեցվածքը, հրեշտակները և նրանց մարմնի մասերը վկայեն նրանց դեմ: Ճշմարտությունը կվերականգնվի և նրանք կընդունեն իրենց բոլոր վատ արարքները: Հավատացյալները կհայտնվեն իրենց Տիրոջ հետ առանձին և կխոստովանեն իրենց մեղքերը այնպես, որ երբ նրանք կորոշեն, որ կորած են, Ալլահը կասի նրանց.« Ես քողարկել եմ դրանք Մոտիկ Կյանքում և ես այսօր ներում եմ դրանք:» Առաջին համայնքը, ով հաշվի կնստի, Մուհամեդի (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) համայնքն է: Առաջին արարքը, որի համար մարդիկ հաշվի կնստեն նամազն է և թափված արյան գինը:

## ➢ ԾՐԱՐՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄԸ.

Հետո կտրվեն ծրարներ և բոլոր նրանք կվերցնեն գրառումները. « Այնտեղ բաց թողնված չեն, ոչ փոքր, ոչ էլ մեծ մեղքերը, ամենը հաշվարկված է:» (Սուրա 18, այաթ 49) Հավատացյալը այն կվերցնի աջ ձեռքով, իսկ անհավատը և փարիսեցին ձախ, մեջքի ետևից:

## ➢ ԿՇԵՌՔ.

Հետո կկշռվեն արարածների արարքները և նրանց կտրվի դրանց պատասխան: Կշիռը կկատարվի իրական, շատ ճշգրիտ կշեռքով,որը ունի երկու կողմեր: Բարի արարքների կողմը կծանրացնեն արարքները, որոնք համապատասխանել են Շարիաթին և որոնք կատարվել են հանուն Ալլահի: Այն նույնպես ծանրացնում են «Լե իլեհե իլ Ալլահ», « Ալ համդուլիլեհ », «Սուբհանա լեհի ուա բիհամդի, սուբհանա լեհիլ ազիմ» արտահայտությունները: Մարդիկ կընտրվեն ըստ իրենց բարի և վատ արարքների:

## ➢ ԼՃԱԿ.

Հետո հավատացյալները կհայտնվեն լճակի մոտ, ով կըմպի դրանից, այլևս երբեք չի զգա ծարավ: Ամեն Մարգարե ունի լճակ, սակայն ամենահզորը Մուհամեդինն է (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*): Դրա ջուրը կաթից էլ սպիտակ է, մեղրից էլ քաղցր է, իսկ համը մուսկուսից էլ հաճելի է: Նրա շուրջ գտնվում են ոսկյա և արծաթյա տարրաներ, որոնք նման են աստղերի իրենց քանակով: Լճակի երկարությունը գերազանցում է Հորդանանում գտնվող Այլիից, մինչև Աղենա: Ջուրը հոսում է Կոուսար գետից:

## ➢ ՀԱՎԱՏԱՑՅԱԼՆԵՐԻ ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆԸ.

Այդ Օրվա վերջում, անհավատները կգնան իրենց աստվածների ետևից, որոնց նրան երկրպագել են և նրանք կտանեն նրանց Դժոխք: Եվ նրանք կգնան խմբերով, ինչպես ոչխարների հոտ, իրենց ոտքերով կամ երեսների վրա և կմնան միայն հավատացյալները և փարիսեցիները և կգա նրանց

---

պատվիրանները կատարելու համար, թե օգտագործել է Ալլահի արգելքները իրականացնելու :

մոտ Ալլահը և կհարցնի. « Ինչի՞ն եք դուք սպասում:» Նրանք կասեն. « Մենք սպասում ենք մեր Տիրոջը », և նրանք կիմանան Նրան ըստ Սրունքի, երբ Նա կբացի այդ և նրանք երեսով կընկնեն գետնին, բացի փարիսեցիներից: Ամենաբարձրյալը ասաց. «Այդ Օրը, երբ Ալլահի Սրունքը կմերկանա, նրանց կկոչեն երեսը հառել գետնին, բայց նրանք չեն կարողանա անել այդ:» (Սուրա 68, այաթ 42) Հետո նրանք կհետևեն Նրան, և կդրվի կամուրջ, աս-Սըրատ և Նա կտա նրանց լույս և կմարի փարիսեցիների լույսը:

## ➢ ԱՍ-ՍԸՐԱՏ (կամուրջ).

Այդ կամուրջը Դժոխքի վրա է, որպեսզի հավատացյալները անցնեն նրանով Դրախտ: Մարգարեն (*Սալլալլահու ալեյհի ուա սալլամ*) նկարագրել է այն հետևյալ կերպ. «...սահող, նրա վրա կան կեռեր և եռաժանիներ, որոնք նման են սադանի[1] փշերի... ավելի բարակ քան մազը և ավելի սուր քան սուրը:» (Մուսլիմ) Երբ հավատացյալները հայտնվեն նրա մոտ, նրանց կպարգևեն լույս ըստ իրենց արարքների: Ամենամեծը կլինի սարի չափ, իսկ ամենափոքրը կլինի ոտքի մեծ մատի անկյունում և այս լույսով նրանք կլուսավորվեն և նրանք կանցնեն այդ, ըստ իրենց արարքների: Նրանց մեջ կլինեն «... հաջող անցածներ, քերծվածներ, բայց փրկվածներ և Դժոխք ընկածներ:» (Ալ- Բուխարի և Մուսլիմ) Ինչ վերաբերվում է փարիսեցիներին, ապա նրանք չեն ունենա լույս, նրանք կվերադառնան և նրանց և հավատացյալների միջև կկառուցվի պատնեշ, որը նրանք կփորձեն հաղթահարել և կընկնեն Կրակ:

## ➢ ԿՐԱԿ

Այնտեղ են մտնում անհավատները և որոշ հավատացյալներ, ովքեր չեն հնազանդվել Ալլահին և փարիսեցիները: Այն ունի յոթ դարպաս, և այն այս աշխարհի կրակից յոթանասուն անգամ տաք է: Անհավատի մարմինը այնտեղ մեծանում և ամրանում է, որպեսզի նա ճաշակի պատիժը: Նրա ուսերի միջև տարածությունը հավասարվում է երեք օրյա ճանապարհի, իսկ ատամը նմանվում է Ուհուդ լեռան, իսկ մաշկը հաստանում է: Կրակի բնակիչների ըմպելիքը եռացրած ջուրն է, որը պատառոտում է երիկամները, իսկ կերակուրը Զակում ծառի պտուղներն են, թարախը և աղտը: Կրակի միջի ամենաhեշտ պատիժը այն, է, երբ ոտքերի տակ կդրվի երկու ածուխ, որից կեռա նրա ուղեղը: Դրա խորությունը այնքան հեռու է, որ եթե այնտեղ գցեյին նորածին երեխա, նա կհասներ յոթանասուն տարեկանի, մինչ կհասներ այնտեղ: Վառելիքը կլինեն անհավատները և քարերը: Նրա օդը կրակի փոթորիկն է, իսկ ստվերը, այրող սև ծուխը: Այն կլանում է ամեն ինչ, առանց թողնելու և ափսոսալու, նա այրում է մաշկը և հասնում է ոսկորներին, ծխում է սրտում, փոթորկում է և ձայներ է

---

[1] Սադան, արմավի փշեր, ինչպես նաև փշավոր բույսի տեսակ

արձակում: Ամեն հազարից 999 կմտնեն այնտեղ: Նրա հագուստը կրակ է, իսկ պատիժը մաշկի այրելն է, մինչ հալվելը, երեսի այրելը, գետնով քարշ տալը և դեմքերի սևանալը:

➢ Կանտարա (կամուրջ).

Մարգարեն (Սալլալահու ալեյհի ուա սալամ) ասաց. «Երբ հավատացյալները կփրկվեն կրակից, նրանք կկանգնեն կամրջի վրա, որը գտնվում է Դրախտի և Դժոխքի միջև, որտեղ մարդիկ ներողություն կխնդրեն միմյանցից վիրավորանքների և նեղությունների համար, որ նրանք պատճառել են միմյանց այս աշխարհում, երբ նրանք կմաքրվեն և կազատվեն մեղքերից, նրանց կթույլատրվի մտնել Դրախտ և երդվում եմ Նրանով, Ում Ձեռքերում է Մուհամեդի հոգին, նրանցից յուրաքանչյուրը Դրախտում կգտնի իր բնակարանը ավելի հեշտ, քան նա գտնում էր իր տունը այս աշխարհում:» (Ալ-Բուխարի)

➢ ԴՐԱԽՏ.

Հավատացյալների բնակավայրը: Այնտեղի կառույցները ոսկուց և արծաթից են, իսկ ծածկը մուսկուսից, քարերը մարգարիտ և սուտակ են, իսկ հողը զաֆրան: Այն ունի ութ դարպաս, որից յուրաքանչյուրի լայնությունը հավասար է տարածության, որը ճանապարհորդը հաղթահարում է երեք օրում, սակայն մարդիկ մտնելուց կնեղեն միմյանց: Այն ունի հարյուր աստիճան, որի տարածությունը երկնքի և երկրի միջև եղած տարածությունն է: Ֆիրդուսը, ամենաբարձրն է, այնտեղից են սկիզբ առնում Դրախտի գետերը, իսկ նրա դամբարանը, Ամենագթասիրտի Գահն է: Գետերը հոսում են առանց հորձանուտների և հավատացյալը ուղղորդում է այն, ինչպես ցանկանում է: Այդ գետերը մեղրից, կաթից, դրախտային գինուց և ջրից են, պտուղները մշտական են և մոտ են Դրախտի բնակիչներին:Այնտեղ կա մարգարտյա վրան, որի լայնությունը վաթսուն մղոն է, և ամեն անկյունում Դրախտի բնակիչ է, նրանց մարմինները զուրկ են մազերից, աչքերը սև են, չի ավարտվում նրանց երիտասարդությունը և չի մաշվում նրանց հագուստը: Եվ չկա այնտեղ ոչ մեզ, ոչ արտաթորանք և ոչ էլ որևէ աղտ: Նրանց սանրերը ոսկուց են, իսկ քրտինքը մուսկուս: Դրախտի կանայք, գեղեցիկ կույսեր են, ովքեր սիրված են իրենց ամուսիններից, և նույն տարիքի են: Առաջինը, ով կմտնի այնտեղ Մուհամեդն է (Սալլալահու ալեյհի ուա սալամ) և մարգարեները: Նվազագույն ցանկացողին տրվում է տասնապատիկ ավելին: Դրախտում ծառայում են հավերժ երիտասարդները, ովքեր մարգարտի նման գեղեցիկ են: Իսկ Դրախտի ամենամեծ հաճույքը Ալլահին տեսնելն է, Նրա գոհությունը և անմահությունը վայելելը:

# ՓՈՔՐ ԼՎԱՑՄԱՆ ՀԵՐԹԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ «ՎՈՒԴՈՒ»



Լվացումը պիտի կատարել միայն մաքուր ջրով, այսինքն, որը մնացել է իր նախնական վիճակում:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. Ջրի քիչ քանակությունը դառնում է անմաքուր, հասարակ աղտից, իսկ մեծ քանակությունը, մոտ 210 լիտր և ավելին, դառնում է անմաքուր, եթե փոխվում է նրա գույնը, համը և հոտը:



Լվացումից առաջ պետք է արտաբերել «Բիսմիլեհ» խոսքերը և լվանալ ձեռքերը: Գիշերային քնից հետո անհրաժեշտ է լվալ ձեռքերը երեք անգամ:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. ցանկալի չէ լվալ ձեռքերը ավելի քան երեք անգամ:



Հետո անհրաժեշտ է ողողել բերանը, հավաքելով ջուրը աջ ձեռքով մեկ անգամ: Այդ պարտադիր է, սակայն ցանկալի է կրկնել այն երեք անգամ:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. 1. Բավարար չէ ուղղակի ջուր վերցնել բերանի մեջ և թքել, անհրաժեշտ է ողողել բերանը; 2. Բերանի ողողման ժամանակ, ցանկալի է մաքրել ատամները սիվակով:



Լվալ քիթը, ջուրը վերցնելով աջ ձեռքով և դուրս հանելով ձախով, մեկ անգամ: Սակայն, լավ կլինի կրկնել այդ երեք անգամ:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. Ցանկալի է թեթևակի ներս քաշել ջուրը քթի խոռոչ:



Հետո պետք է լվալ երեսը մեկ անգամ, սակայն ցանկալի է կրկնել այդ երեք անգամ: Երեսը պիտի լվալ ականջից մինչ մյուս ականջ և մազերի աճի մասից մինչ կզակ:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. Եթե մորուքը թավ է, երեսը լվանալուց պետք է մատներով սանրել այն:



Լվալ ձեռքերը մատներից մինչև արմունկները ներառյալ, մեկ անգամ: Այդ պարտադիր է: Սակայն, լավ կլինի կրկնել այդ երեք անգամ:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. Պետք է սկսել աջ ձեռքից և տրորել լվանալու ժամանակ:



Հետո պետք է սրբել մազերը թաց ձեռքերով: Դրանից հետո, ցուցամատով անհրաժեշտ է սրբել ականջի ներքին և արտաքին մասերը: Այս ամենը պիտի արվի մեկ անգամ:
ԾԱՆՈՒՑՈՒՄ. 1. Չկա անհրաժեշտություն երկար մազերը սրբել ամբողջ երկայնքով: 2. Եթե չկան մազեր, պետք է տրորել գլխի մաշկը: 3. Անհրաժեշտ է սրբել մազերի և ականջի միջև եղած մասերը:



Մեկ անգամ լվանալ ոտքի թաթերը, ներառելով կոճերը, և չմոռանալ լվանալ մատների արանքները: Պետք է սկսել աջ ոտքից, հետո անցնել ձախին: Լավ է այս ամենը կրկնել երեք անգամ:

ԿԱՐևՈՐ ԾԱՆՈՒՑՈՒՄՆԵՐ.1. Փոքր լվացման ժամանակ անհրաժեշտ է կատարել չորս գործողություն Ա, բերանի ողողելը, քթի և երեսի լվալը; Բ, մինչ արմունկներ ձեռքերի լվալը; Գ, Գլխի սրբելը; Դ. Ոտքերի լվալը: Անհրաժեշտ է հետևել գործողությունների հերթականությանը: Եթե այն խախտվի, ապա վուդուն համարվում է անվավեր:
2.Թույլատրելի է վուդու արված մամնի մասերը չորացնել, սակայն խրախուսելի է թողնել դրանք թաց: Անթույլատրելի է թափահարել վուդու արած մարմնի մասերը և ցողել ջուրը այս ու այն կողմ : 3.Վուդուն վավեր չի լինի եթե դուք լվանաք վուդույի մասերը միաժամանակ, կարծես լողավազան եք մտել: Անհրաժեշտ է հետևել հերթականությանը:
4. Լվացման ավարտից հետո, ըստ սուննայի, պետք է արտաբերել հետևյալ խոսքերը. «*Աշշհադու ալլեիլեհե իլլալլահ, ուաhդահու լա շարիկա լեhու ուա աշհադու աննա Մուհամադան աբդուhու ուա ռասուլուhու, որը նշանակում է թարգմանաբար. «Վկայում եմ, որ չկա աստված, բացի Ալլահից, Ով չունի զուգընկեր և վկայում եմ, որ Մուհամմեդը Նրա ստրուկն ու Մարգարեն է:*» Հետո աղոթել երկու ռաքյաթ:

# ՆԱՄԱԶԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՀԵՐԹԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ



Նամազից և Կիբլայի ուղղությամբ նայելուց առաջ, մուսուլմանը պիտի ասի. «Ալլահու Աքբար:» Իմամը արտաբերում է այդ և մնացած տակբիրները բարձրաձայն, որպեսզի նրա ետևում գտնվողները լսեն այդ և կրկնեն նրա ետևից: Այս խոսքերի արտաբերման ժամանակ, աղոթողը բարձրացնում է ձեռքերը ուսերին հավասար, մատները իրար միացրած:

ԾԱՆՈՒՑՈՒՄ.* Աղոթողի համար պարտադիր է ոտքի կանգնել, երբ տակբիր ալ ահրամն է, և նստելը կամ խոնարհվելը չի թույլատրվում, բացի անդամալույծ մարդկանցից: * Ավելի խրախուսելի է աղոթքի ժամանակ որևէ բան դնել դիմացը, որպեսզի պահպանի տարածությունը , և ոչ մի խանգարող հանգամանք չլինի: * Եվ բավական է , որ Իմամը միայն անի այդպես, և մարդիկ նրա ետևից կրկնեն այդ : Աղոթելու մտադրությունը չպիտի արտահայտել: * Չպետք է ձեռք պահել շատ բարձր կամ ցածր տակբիրի ժամանակ , ինչպես նշված է հինգերորդ նկարում : * Կարևոր խոսքերի արտաբերման ժամանակ, որոնք հանդիսանում են պարտադիր, աղոթողը պիտի լսի ինքն իրեն: Այս վերաբերվում է նաև նամազներին, որտեղ սուրաները պիտի կարդալ բարձրաձայն: Սակայն, այդ պիտի անել այնպես, որ կողքինը կարողանալ լսել, իսկ ինչ պիտի կարդալ ցածրաձայն, միայն աղոթողը պիտի լսի այդ: * Խրախուսելի չէ շրջվել, կամ հայացքը հեռացնել , կամ փակել աչքերը , կանգնել ոչ ճիշտ, օրինակ մեկ ոտքի վրա, կամ շատ հեռվացնել կամ մոտեցնել ոտքերը, ինչպես նշված է համար երկու նկարում :



Աղոթողը դնում է աջ դաստակը ձախի վրա, կամ բռնում է դրանով ձախը և դնում է կրծքի տակ: Հայացքը պիտի հառած լինի այն մասին, որտեղ նա պիտի կատարի երկրային կքանիստ: Հետո նա ինքն իրեն կարդում է բացող դուա, որը սուննա է: Այդպիսի դուաներից են. «Սուբհանակա լեհումա ուա բիհամդիկա ուա տաբարակա սմուկա ուա տալլա ջադուկա ուալա իլահա ղայրուկա.», որը թարգմանաբար նշանակում է « Փառաբանված ես դու, օ, Ալլահ և գովք Քեզ, օրհնյալ է Անունը Քո, ամենից վեր է Քո մեծությունը, և չկա աստված բացի Քեզանից:» Այս բոլորից հետո նա ասում է «Աուզուբիլեհի մինալ շեյթան ռռաջիմ » և « Բիսմիլեհի ռռահմեն ռռահիմ» խոսքերը և ընթերցում է «Ալ-Ֆատիհա» սուրան:Այս ամենը կատարվում է ցածրաձայն, այնպես, որ միայն աղոթողը լսի իրեն: Իմամի ետևից աղոթողը կարող է ասել այդ մտքում: Դրանից հետո նա ընթերցում է որևէ սուրա Ղուրանից: Իմամը ընթերցում է սուրա բարձրաձայն ֆաջր նամազի, մաղրեբ և իշա նամազների առաջին երկու ռակյատների ժամանակ, իսկ մյուս դեպքերում սուրաները ընթերցվում են ցածրաձայն:

ԾԱՆՈՒՑՈՒՄ. * Խրախուսելի չէ, կրկնել Ալ-Ֆատիհան մեկ ռակյաթում, կամ ուղղակի ասել առաջին երկու ռակյաթում : * Պարտադիր չէ, իմամի անմիջապես ետևում գտնվող աղոթողին կրկնել նրա ասածները բարձրաձայն, սակայն խրախուսելի է ընթերցել Ալ-ֆատիհան , երբ իմամը լուռ է : * Խնդիր չկա կրկնել նույն սուրան երկու ռակյաթում կամ առանձնացնել այն երկու մասի , երկու ռակյաթով, կամ ընթերցել ավելի քան մեկ սուրա, մեկ ռակյաթում, կամ ընթերցել սուրայի ավարտը, կեսը կամ ընթերցել այն մտադրվելով, ընթերցել նաև հաջորդը : * Աղոթողը չի կարող սկսել սուրա « Ալ-ֆատիհան» այնքան ժամանակ, մինչ ամբողջովին չի ուղղվել, որովհետև այն պիտի ընթերցվի ոտքի վրա: Եթե նա սկսել է ընթերցել մինչ ոտքի կանգնելը, ապա նա պիտի կրկնի այդ կանգնելուց հետո, այլապես նամազը կհամարվի անվավեր: Ցանկալի է սուրաները ընթերցել այն հերթականությամբ, ինչպես Ղուրանում է, և չխախտել այն: Արգելվում է փոխել սուրայի կամ այաթների խոսքերը:



Հետո նա արտասանում է տակբիր, բարձրացնում է ձեռքերը և կատարում է գոտկատեղային կքանիստ, դնելով ձեռքերը ծնկներին մատները բացված վիճակում: Նա ուղղում է մեջքը այնպես, որ գլուխը հավասարվի նրան և երեք անգամ ասում է. « Սուբհանա Ռաբբիյաել Ազիմ:» Այս ամենից հետո աղոթողը ռակյատ է կատարում:

**ԾԱՆՈՒՑՈՒՄ.*** Տակբիրը պիտի ասվի մեկ գործողությունից անցնելուց մյուսին, ինչպես նաև պիտի ասվի « Սամիալեհու լիման համիդահ» խոսքերը,այլ ոչ գործողությունից առաջ կամ հետո: Այս վերաբերվում է մյուս տակբիրներին նույնպես: * Եթե աղոթողը դիտավորյալ հետաձգում է այս խոսքերի արտասանումը, այդ ռակյատը համարվում է անվավեր: * Բավարար է ձեռքերով հասնել ծնկներին ռուկույի ժամանակ, որպեսզի այն լինի ընդունելի և եթե դուք հետևում եք իմամին, ապա բավարար է, հասնել ծնկներին , մինչ նա բարձրացրել է գլուխը, որպեսզի այն համարվի վավեր: * Մարդը , ով մտադրվել է աղոթել մզկիթում , եթե հասնում է այնտեղ այն ժամանակ, երբ իմամը կանգնում է ռուկույից, ապա այս դեպքում խրախուսելի է շարունակել նրա հետ , քան լրացնել բաց թողնված ռակյաթները : * Չի խրախուսվում, ընթերցել Ղուրան , երբ դուք ռուկույի կամ սուջուդի պարագայում եք, բացի այն դեպքերից , երբ մարդ մտադրվել է դուայի, ինչպես «Ռաբբենե եթինի ֆի դունյա հասանե,, ուա ֆիլ ախիրա հասանե:»



**Հետո նա ուղղվում է ասելով. «Սամիալլահ լիման համիդահ» և բարձրացնում է ձեռքերը: Ուղղվելով նա ասում է. « Ռաբանա ուա լակալ համդու համդան կասիրան տայիբան մուբարական ֆիհի միլու սամավատի ուա միլուլարդի ուա միլու մաշիտա մին շեյինբադ:»**

**ԾԱՆՈՒՑՈՒՄ.** * «Ռաբբանա ուա լակալհամդ » խոսքերը պիտի ասել ուղղվելուց հետո: * Եթե մարդ ցանկանում է , նա կարող է թողնել ձեռքերը կողքերը, մինչ ոտքի է կանգնում ռուկույից և եթե նա ցանկանա, կարող է դնել աջ ձեռքը ձախին : * կան չորս փառաբանման արտահայտություններ, որոնք ճիշտ են , դրանք են.

1." Ռաբբանա ուալեքե ել համդ:" 2. "Ռաբբենե լեկել համդ:" 3. " Ալլահումա ռաբբենե ուլակել համդ:" 4. " Աալլահումա ռաբբենե լեկել համդ:"



**Հետո աղոթողը կատարում է երկրային կքանիստ, արտասանելով տակբիր և ձեռքերը հեռացնելով կողքերից, փորը կոնքերից և դնելով ձեռքերի դաստակները ուսերի դիմաց: Ոտքի և ձեռքի մատները ուղղված են կիբլայի ուղղությամբ: Հետո նա ասում է « Սուբհանա Ռաբբիյաել Ալա» խոսքերը երեք անգամ:**

**ԾԱՆՈՒՑՈՒՄ.** * Սուջուդի ընթացքում խրախուսելի չէ թևքերը հեռու պահել, ինչպես նշվել է հինգերրորդ նկարում : * Պետք է հող տանել, չվնասելու կողքին կանգնած աղոթողին և եթե սուջուդը երկար է տևում , նա պիտի հենվի արմունկներին և ոտքի վերևի մասին : * Երկրային կքանիստը պիտի կատարել մարմնի յոթ կետերի հենումով: Այդ կետերն են, ոտքի մատները, ծնկները, ձեռքի ափերը, ճակատը և քիթը: Երկրային կքանիստը առանց այս հիմքերի դարձնում է նամազը անվավեր:



**Հետո աղոթողը բարձրացնում է գլուխը, արտաբերում է տակբիր և նստում է: Նստել կարելի է երկու ձևի.** (1.) Աղոթողը թեքում է ձախ ոտնաթաթը, նստելով նրա վրա, իսկ աջը դնում է ուղիղ, մատները ուղղելով դեպի կիբլայի: (2.) Նա դնում է երկու ոտքերի թաթերը, ուղղելով մատները կիբլայի ուղղությամբ, և նստում է թաթերի վրա: Հետո նա ասում է. « Ռաբբի ղաֆեր լի» երեք անգամ « Նա կարող է նաև ավելացնել «...ուա ռահամնի ուա ջաբուրնի ուա ռֆանի ուա ռզկնի ուա նսրունի ուա խդինի ուաֆինի ուաֆուանի:» Այնուհետև նա կատարում է երկրորդ երկրային կքանիստը, որից հետո բարձրացնում է գլուխը, ասում է տակբիրը և կանգնում է հենվելով ոտնաթաթերի կենտրոնին և կատարում է երկրորդ ռակյատը, ինչպես առաջինը:

**ԾԱՆՈՒՑՈՒՄ.** * Ընդունելի չէ նստել . բացի երկու դեպքերից , ինչպես նշված է վեցերրորդ նկարում : Թույլատրելի է նստել մի փոքր հանգստանալու, մինչ երկրորդ ռակյաթը : * Պետք չէ ընթերցել Ալ- ֆատիհան, բացի այն դեպքից, երբ աղոթողը ոտքի է կանգնում : * Եվ , եթե նա ընթերցում է կանգնելուց առաջ, ապա նա պիտի կրկնի այդ, այլապես աղոթքը անընդունելի կլինի :



Ավարտելով երկրորդ ռաքյաթը, նա նստում է տաշահուդի համար, բացելով ոտնաթաթերը և դնելով ձախ ձեռքը ձախ ծնկին, իսկ աջը, աջին: Այդ ժամանակ նա բոլոր մատները օղակի նման միացնում է միմյանց, իսկ ցուցամատը բարձրացնում է: Այնուհետև նա ցածրաձայն ընթերցում է. «Աստահիյատու լիլեհի ուասսալավատու ուատտայբետու, ասսալամ ալեյքա եյուհա ննաբիյու, ուա ռահմատուլեհի ուա բարակետուհու, աս սալամ ալեյնա ուա ալա իբադիլեհի ստալիհին: Աշշհադու ալլա իլահա իլլալլահ ուա աշհադու աննա Մուհամեդան աբդուհու ուա ռասուլու:» Այս թազմանաբար նշանակում է.« Ողջույն Ալլահին, և աղոթք և ավագույն խոսքեր, խաղաղություն քեզ օ, Մարգարե և Ալլահի գութն ու օրհնությունը,մեզ, Ալլահի ճշմարիտ ստրուկներին խաղաղություն: Վկայում եմ, որ չկա աստված բացի Ալլահից և վկայում եմ, որ Մուհամեդը Նրա ստրուկն ու առաքյալն է:» Այս ամենից հետո նա ոտքի է կանգնում, արտասանում է տակբիրը և կրկնում է մնացած ռաքյաթները դրանց նման: Տարբերությունն այն է, որ նա ընթերցում է միայն «Ալ-ֆատիհան» ցածրաձայն:

ԾԱՆՈՒՑՈՒՄ. * Ավելի խրախուսելի է նայել ցուցամատին թաշահուդի ժամանակ: * Եվ ավելի խրախուսելի է ցուցամատը պահել ուղղիղ և մի փոքր ցածր պահել այդ ժամանակ : * խրախուսելի չէ ավելի երկար նստել այն բանից հետո, երբ լրացվել է ատտահիյաթը:




Այսպես աղոթողը նստում է միայն վերջին տաշահուդի ժամանակ: Հետո նա ընթերցում է նույնը, ինչ ասում է տաշահուդի ժամանակ, ավելացնելով.« Ալլահումա սալլի ալա Մուհամադին ուալլա ալի Մուհամադին կամա սալայտա ալա Իբրահիմա ուա ալա ալի Իբրահիմա իննակա Համիդուն Մաջիդ: Ալլահումմա բարիկ ալա Մուհամադին ուա ալա ալի Մուհամադին, կամա բարակտա ալա Իբրահիմա ուա ալա ալի Իբրահիմա իննակա Համիդուն Մաջիդ.» Որը նշանակում է.« Օ, Ալլահ, օրհնիր Մուհամեդին և Մուհամեդի ընտանիքը, ինչպես օրհնել ես Դու Իբրահիմին և ընտանիքը Իբրահիմի, ճշմարիտ, Դու արժանի ես գովքի, Հզոր: Օ, Ալլահ ուղարկիր օրհնություն Մուհամեդին և ընտանիքին Մուհամեդի, ինչպես Դու ուղարկել ես այն Իբրահիմին և ընտանիքին Իբրահիմի, ճշմարիտ Դու արժանի ես գովքի, Հզոր:» Սուննա են համարվում նաև « Ալլահումա իննի աուզու բիկի մին ազաբիլ կաբրի ուա ազաբի ջահաննամա, ուա մին ֆիտնատի ել մահյա ուալ մամատի ուա մին շարրի ֆիտնատի ել մասիհի դջաղալ » խոսքերը, որոնք նշանակում են. « Օ, Ալլահ, ճշմարիտ ես դիմում եմ Քեզ Դժոխքի և գերեզմանի տանջանքներից, կյանքի և Ջաղալի գայթակղություններից և մահից:»

ԾԱՆՈՒՑՈՒՄ.* Հետո աղոթողը նստում է վերջին տաշահուդի համար հետևյալ կերպ. 1. նա տարածում է ձախ ոտնաթաթը, դուրս հանելով այն աջի տակից: Իսկ աջը գտնվում է ուղիղ, այս ամենը կատարվում է երբ աղոթողը նստած է: 2. Նա տարածում է ձախ ոտքը, դուրս հանելով այն աջից և տարածում է աջը, գետնին նստած վիճակում: 3. Նա տարածում է ձախ ոտնաթաթը, դուրս հանելով այն աջ ոտնաթաթի վրայից: * Խրախուսելի է դուա անել այս կեցվածքում, ինչպես հաղորդվել է Մարգարեից ." Աուղուբիլեհի մն աղեբ ել նար , ուա աղեբ ել կուբր , ուա ֆիտնեթ ել մահյե ուալմեմեթ ուա ֆիտնեթ ել մեսիհա ել Դջել :" "Ալլահումա ըննի դելեմտու նեֆսի դուլմեն քթիրան, ուալ յեղֆերու դունուբե իլե ենթ, ֆաղֆերլի մաղֆիրատան մն անդեք, եռհամնի իննեքե ենթե ել Ղաֆուր ել Ռահիմ :" * Խրախուսելի չէ , հենվել ձեռքերին, մինչ անպատճառ նստած եք:



Այնուհետև նա թեքում է գլուխը աջ և ասում է. «Ասսալամ ալեյքում ուա ռահմատուլլահ», և ձախ նույնը կրկնելով: Ավարտելով աղոթքը, նա կարդում է դուա:

ԾԱՆՈՒՑՈՒՄ.* Խրախուսելի է շրջել երեսը սալամ ալեյքում ասելուց, և սկսել աջ կողմից դեպի ձախ: * Խրախուսելի չէ շարժել ձեռքերը վերև և ներքև, կամ աջ ու ձախ սալամ ասելուց, ինչպես ցույց է տրվել յոթերորդ նկարում:

